ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ

# ԵՐԿԵՐ

# Ա

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1977

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Գլուխ իններորդ



Գլուխ տասներորդ



Գլուխ տասնմեկերորդ



Գլուխ տասներկուերորդ



Գլուխ տասներեքերորդ



Գլուխ տասնչորսերորդ



Գլուխ տասնհինգերորդ



Գլուխ տասնվեցերորդ



Գլուխ տասնյոթերորդ



Գլուխ տասնութերորդ



Գլուխ տասնիններորդ



Գլուխ քսաներորդ

## Գլուխ տասնմեկերորդ



## ՔԱՐՏԵԶՆԵՐ



## ՏԻԳՐԱՆ Բ ԵՎ ՀՌՈՄԸ
## ՆՈՐ ԼՈՒՍԱԲԱՆՈՒԹՅԱՄԲ ԸՍՏ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

## ՔԱՐՏԵԶՆԵՐ

ՀԱԿՈԲ ՀԱՄԱԶԱՍՊԻ ՄԱՆԱՆԴՅԱՆ
ЯКОВ АМАЗАСПОВИЧ МАНАНДЯН

# ԵՐԿԵՐ
## Ա

Տպագրվում է Հայկական ՍՍՀ ԳԱ
պատմության ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ

### ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| էջ | տող | տպված է | պետք է լինի |
|---|---|---|---|
| 222 | վ.5 | Խորամանկ պարթևը չմերժեց Տիգրանի ու Միհրդատի առա- | Լուկուլլոսը անզեկության տանելով հռոմեական զորքի |

Հրատարակչական խմբագիր
Փ. Հ. ՄԱԴԱՆՅԱՆ
Գեղարվեստական խմբագիր
Հ. Ն. ԳՈՐԾԱԿԱԼՅԱՆ
Նկարիչ
Լ. Ա. ՍԱԴՈՅԱՆ
Տեխնիկական խմբագիր
Մ. Ա. ԿԱՓԼԱՆՅԱՆ
Սրբագրիչ
Մ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ

Պատվեր 318 Հրատ. 4643 Տպաքանակ 5000

Հանձնված է շարվածքի 23.4.1975 թ.։ Ստորագրված է տպագրության 8.2.1977 թ.։
Տպագրական 39,75 մամուլ, հրատ. 33,12 մամուլ։ Թուղթ № 1, 60×90 1/16։
Գինը 3 ռ. 55 կ.։

Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, Երևան, 19, Բարեկամության 24 դ.
Издательство АН Армянской ССР. Ереван, Барекамутян, 24-г.
Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչության էջմիածնի տպարան

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԿՈՂՄԻՑ

Ակադեմիկոս Հ. Հ. Մանանդյանի երկերի ժողովածուի առաջին հատորում զետեղված են «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» բազմահատորյակի Ա հատորը (որտեղ շարադրանքը սկսվելով հայ ժողովրդի ծագման շրջանից, հասցվում է մինչև մ. թ. 66 թվականը՝ Արշակունիների հարստության հաստատումը Հայաստանում) և «Տիգրան Բ և Հռոմը նոր լուսաբանությամբ ըստ սկզբնաղբյուրների» մենագրությունը:

«Քննական տեսության» Ա հատորը ներկայացված է 1944 թ. հրատարակության հիման վրա՝ առանց փոփոխությունների: «Տիգրան Բ և Հռոմը» մենագրությունը հրատարակվում է ըստ 1940 թ. հրատարակության՝ ուղղագրության փոփոխումով:

Նախորդ հրատարակություններում զետեղված պատկերները գերազանցապես գծանկարներ են, որոնք հնարավոր չի եղել ներկայացնել սույն հրատարակության մեջ: Այն քարտեզները, որոնք հիշյալ հրատարակություններում կրկնվում են, ներկա հատորում տրված են միայն մեկ անգամ՝ «Քննական տեսության» Ա հատորում, իսկ «Տիգրան Բ և Հռոմը» աշխատության համապատասխան էջերում արված են հղումներ:

# ԵՐԿՈՒ ԽՈՍՔ

Հայագիտության հին սերնդի ականավոր ներկայացուցիչներից է ակադեմիկոս Հակոբ Համազասպի Մանանդյանը: Նրա գիտական հետազոտությունների ոլորտը ընդգրկել է հայագիտության մի շարք բնագավառներ՝ հայ ժողովրդի պատմություն, բանասիրություն, աղբյուրագիտություն, բնագրագիտություն, պատմական աշխարհագրություն, վիմագրություն և այլն:

Մեծ է ակադեմիկոս Հ. Հ. Մանանդյանի ավանդը հայ ժողովրդի պատմության գիտական լուսաբանման գործում: Մեծավաստակ պատմաբանի՝ հին և միջնադարյան Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական պատմությանը նվիրված աշխատությունները կարևոր ներդրում են սովետահայ պատմագրության զարգացման մեջ: Հայ և օտար աղբյուրների, ինչպես նաև հռոմեա-բյուզանդական և մերձավոր-արևելյան երկրների քաղաքական պատմության խորիմացությունը հնարավորություն են ընձեռել ականավոր պատմաբանին հայ ժողովրդի պատմության հին և միջին դարերի իր ուսումնասիրություններով ճանապարհ հարթել և ամուր հիմքեր ստեղծել պատմության մարքսիստական ուսումնասիրության համար:

Հ. Հ. Մանանդյանի գրչին պատկանող աշխատությունները հարուստ են փաստական նյութի հիման վրա կատարված գիտական խոր ընդհանրացումներով: Իրենց նշանակությամբ դրանք դուրս են գալիս ազգային պատմության շրջանակներից և մեծ արժեք են ներկայացնում հին աշխարհի, Առաջավոր Ասիայի երկրների և հատկապես Անդրկովկասի ժողովուրդների պատմության ուսումնասիրության համար:

Նրա գիտական ժառանգությունը ունի ոչ միայն պատմագիտական և ճանաչողական մեծ արժեք, այլև գիտությանը ծառայելու լավագույն օրինակ է հանդիսանում:

Ավելորդ չէ նշել, որ մեծանուն գիտնականը առանձին աշխատություններում տուրք է տվել դարեսկզբին տիրապետող տեսակետներին, որը սակայն, վերանայվել է սովետահայ պատմագրության կողմից: Բացի դրանից, վերջին տասնամյակներում զգալիորեն ընդարձակվել է հայագիտական ուսումնասիրությունների աղբյուրագիտական բազան, հայտնաբերվել են նորանոր գրավոր աղբյուրներ, նյութական կուլտուրայի մնացորդներ, որոնք հնարավորություն են ընձեռել վերանայելու ու վերագնահատելու որոշ կարևոր պրոբլեմների մասին եղած տեսակետները:

Այսուհանդերձ Հ. Հ. Մանանդյանի թողած ժառանգությունը պահպանում է իր գիտական արժեքն ու արդիականությունը:

Ակադեմիկոս Հ. Հ. Մանանդյանի ուսումնասիրությունները գրված են տարբեր տեղերում հրատարակված առանձին հատորներում, գրքերում, ժողովածուներում, ամսագրերում և տակավին ձեռագիր վիճակում՝ իր անձնական արխիվում:

Ականավոր գիտնականի ծննդյան 100-ամյակի առթիվ (1973 թ. նոյեմբեր) Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի նախագահության հանձնարարությամբ պատմության ինստիտուտը ձեռնամուխ եղավ նրա աշխատությունների ամբողջական հրատարակության նախապատրաստմանը՝ ութ հատորով:

Դրանցում չեն զետեղվելու բնագրերի հրատարակությունները և հրապարակախոսական առանձին հոդվածներ:

Հ. Հ. Մանանդյանի աշխատությունների ութհատորյակը ունենալու է հետևյալ կառուցվածքը:

1—3 հատորներ—ամփոփվելու են հայ ժողովրդի քաղաքական պատմությանը նվիրված ուսումնասիրությունները:

4 հատոր—հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական կյանքի պատմությանը վերաբերող աշխատությունները:

5 հատոր—պատմական աշխարհագրությանը և առևտրական ճանապարհներին վերաբերող ուսումնասիրությունները:

6 հատոր—քաղաքներին, առևտրին, չափ ու կշիռներին նվիրված հետազոտությունները:

7 հատոր—բանասիրություն:

8 հատոր—անտիպ աշխատություններ, նամակներ և այլ նյութեր:

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՔՆՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ

## ՍԿԶԲԻՑ ՄԻՆՉԵՎ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ (66 Թ. Մ. Թ.)

# ԱՌԱՋԱԲԱՆ

Ներկա աշխատության նպատակն է լուսաբանել սկզբնաղբյուրների մանրազննին ուսումնասիրության հիման վրա հայ ժողովրդի պատմությունը՝ վեցերորդ դարից սկսած մեր թվականությունից առաջ մինչև տասնվեցերորդ դարը մեր թվականությունից հետո (այսինքն՝ մինչև Սեֆյան դինաստիայի հաստատումը Իրանում): Աշխատությանս հիմքը կազմում են իմ՝ Երևանի պետական համալսարանում 1920—1930 թթ. կարդացած դասախոսությունները, որոնք հիմնովին վերամշակված են ու խիստ ընդարձակված համաձայն պատմագիտական հետագա իմ երկասիրությունների նոր տվյալների ու եզրակացությունների:

«Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» իմ աշխատությունը բաղկացած է լինելու երեք հատորից: Առաջին հատորի նյութն է հայ ժողովրդի հնագույն պատմությունը՝ սկզբից մինչև Արշակունիների հաստատումը Հայաստանում (66 թ. մեր թվ. հ.): Երկրորդ հատորը պարունակելու է իր մեջ Հին Հայաստանի պատմությունը Արշակունիների թագավորության հիմնումից մինչև Բագրատունիների թագավորության անկումը (XI դ. մեր թվ. հ.): Իսկ երրորդ հատորը ամփոփում է իր մեջ թուրք-թաթարական ժամանակների պատմությունը՝ Սելջուկյան շրջանից մինչև Սեֆյանների հաստատումը Իրանում (XVI դ. մեր թվ. հ.):

Ինչպես տեսնում է ընթերցողը, իմ եռեքհատորյակի մեջ Հայոց պատմությունը սկսվում է ոչ թե քաոսի դարից, ինչպես այդ ընդունված է դասագրքերից շատերում, այլ այն ժամանակաշրջանից, երբ արմենները, հաստատվելով Հայկական լեռնաշխարհում (VII դ. կամ VI դ. մեր թվ. առաջ) և միաձուլվելով հետզհետե տեղական հին ժողովուրդների հետ՝ սկիզբ դրին հայ ժողովրդի կազմավորման: Շատ պարզ է, իհարկե, որ Հայկական բարձրավանդակի հեռավոր անցյալի լուսաբանության համար կարևոր ու անհրաժեշտ

խնդիր է նաև նրա նյութական կուլտուրայի հուշարձանների ուսումնասիրությունը ոչ միայն պատմական, այլև նախապատմական շրջանի: Բայց այդ հերթական մի խնդիր է, որ պետք է պարզաբանեն հնագետները:

Ներկա իմ աշխատության մեջ տեղ չէ տրված նաև ուրարտացիների պատմությանը, թեև հայ ժողովրդի պատմական անցյալի ու կուլտուրայի լուսաբանության համար նրանց պատմության գիտական ուսումնասիրությունն ունի անազին նշանակություն: Ինչպես ցույց են տալիս արևելագիտական նորագույն հետազոտությունները, արմեններին նախորդող ու նրանց հետ ձուլված խուրրիական, խաթթական և խալդական ժողովուրդները, որոնք ունեցել են բարձր կուլտուրա ու նաև գիր ու գրականություն՝ մեծ ազդեցություն են ունեցել հայ ժողովրդի և՛ լիզվի, և՛ կուլտուրայի վրա: Սակայն Հին Արևելքի ժողովուրդների պատմական անցյալի նկարագրությունը, որ ներածական նախաբանն է կազմելու հայ ժողովրդի պատմության՝ պետք է տան, հիմնվելով բևեռագիր և պատկերագիր արձանագրությունների նորագույն հետազոտությունների վրա՝ արևելագետ և խալդագետ պատմաբան մասնագետները:

«Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» եռհատորյակը նախատեսված է իբրև ձեռնարկ մասնագետների, ուսուցիչների և ուսանողության համար, բայց կարող է օգտակար լինել և կրթված ու պատրաստված լայն հասարակության համար, որը ցանկանում է ծանոթանալ հայ ժողովրդի պատմությանը մասնավոր ընթերցմամբ:

Բավարարելու համար բարձրագույն դպրոցների պահանջները՝ ամեն մի հատորում տրված է ամփոփ տեսություն օգտագործված հայ և օտար աղբյուրների, իսկ առաջին հատորի վերջում, հատուկ հավելվածում, թարգմանաբար մեջ են բերված Քսենոփոնի «Անաբասիս»-ի և «Կյուրոպեդիա»-ի Արմենիային ու արմեններին վերաբերող հատվածները, որոնք ամենակարևոր սկզբնաղբյուրն են հայ ժողովրդի հնագույն պատմության:

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ԱՐՄԵՆՆԵՐԻ ԳԱՂԹԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՀՆԱԳՈՒՅՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

1. Նախաարմենական Ուրարտական թագավորությունը և նրա կուլտուրան։— 2.Ուրարտուի թուլացումը կիմմերական ու սկյութական արշավանքների ժամանակ։ —3. Տեղեկություններ հայերի ծագման մասին հայ պատմագիրների երկերում.—«Ազգն Թորգոմայ» և «Ասքանազյան ազգն».—Հայկի և Բելի առասպելը։ —4. Հայերի ծագման մասին հունական աղբյուրների տեղեկությունները.— Ըստ Հերոդոտոսի և Եվդոքսոսի արմենները համարվում են ազգակից փռյուգիացիներին.—Ըստ Կիրսիլոսի և Մեդիոսի արմենները գաղթել են Թեսսալիայից.— Մարկվարտի դրական կարծիքն այդ մասին։—5. Արմեներենը հնդեվրոպական լեզու էր։ —6. Արմենների գաղթը Եվրոպայից Փոքր Ասիա և այդ գաղթի ժամանակաշրջանը։ —7. Արմենների լեզուն և մարդաբանական տիպը զգալի փոփոխություններ են կրել Փոքր Ասիայում։ —8. Մարկվարտի կարծիքով՝ արմենները Հոմերոսի Իլիականի մեջ հիշատակված արիմներն են.—Զեվսի և Տյուփոնի կռիվն արիմների երկրում.—Իլիականի հորինման ժամանակ (IX—VIII դդ. մեր թվ. առաջ) արիմներն ապրել են Արգայոս լեռան մոտ՝ այժմյան Կեսարիայի շրջանում.— Urmeni ժողովուրդը Մենուասի արձանագրության մեջ, հավանորեն, արիմներ կամ արմեններն են։ —9. Զեվսի և Տյուփոնի կռվի մի ուշագրավ փոփոխակը Խորենացու պատմության մեջ։

*7/6—3-րդ դարերը մեր թվականությունից առաջ հայ ժողովրդի պատմական անցյալում կազմում են մի շատ կարևոր շրջան։ Այս ժամանակներում հետզհետե կազմավորվել է հայ ցեղը և ստեղծվել Նախկին Ուրարտյան թագավորության երկրամասերում պատմական Հին Հայաստանը։*

*19-րդ դարում կատարված գիտական ուսումնասիրություններ ու մեծ գյուտերի շնորհիվ արդեն անվիճելի կերպով պարզաբանված է, որ այժմյան հայերի նախահայրերը հնդեվրոպական արմեններն են, որոնք Փոքր Ասիայից գաղթել են Հայաստան, հավանորեն, յոթերորդ դարում կամ վեցերորդ դարի սկզբներում մեր թվականությունից առաջ։ Բևեռագիր արձանագրությունների ըն-*

թերցումից ևս հայտնի է մեզ, որ Հայաստանում արմեններից առաջ ապրել են այլ ժողովուրդներ, որոնք գտնվել են խալդ-ուրարտացիների իշխանության տակ։ Ինչպես հայտնի է, ուրարտական ժամանակաշրջանից մեր երկրում մնացել են բերդերի ու տաճարների ավերակներ, ժայռերի մեջ փորված շինություններ, ջրանցքներ ու ջրաբաշխական կառուցվածքներ, կավից ու մետաղից պատրաստված զանազան իրեր ու նաև բևեռագիր արձանագրություններ։ Այս արձանագրությունների մեջ Ուրարտուի թագավորները տալիս են տեղեկություններ իրենց արշավանքների, հաղթությունների և իրենց շինարարական գործերի մասին ու հիշատակում են իրենց շինած քաղաքները, բերդերը, արհեստական ջրանցքները և իրենց տնկած խաղողի ու պտղատու ծառերի այգիները։ Նրանց կառուցած արհեստական լճերը և հոյակապ ջրանցքները պահպանվել են մասամբ մինչև մեր օրերը։ Ուրարտական Մենուաս թագավորի կառուցած (810—778 թթ. մեր թվ. առաջ) ավելի քան 70 կիլոմետր երկարություն ունեցող Վանի մեծ ջրանցքը, որն այժմ անվանվում է Շամիրամի առու, հիմա էլ, ինչպես մեր թվականությունից մոտ 8 դար առաջ, ջուր է մատակարարում Վան քաղաքին ու նրա դաշտերին։

Ուրարտացիների թողած փառահեղ հուշարձանները և պեղումների ժամանակ հայտաբերված իրերը ցույց են տալիս, որ շինարարական տեխնիկան ու, հատկապես, քարակոփությունը, ինչպես և մետաղագործական ու կավագործական արհեստները, արդեն այդ հնագույն ժամանակներում գտնվել են զարգացման բարձր աստիճանի վրա։ Զարգացած են եղել այդ ժամանակ նաև երկրագործությունը և այգեգործությունը։

Իններորդ դարի երկրորդ կիսում (մեր թվ. ա.), Ասորեստանի թագավոր Սալմանասար Բ-ի ժամանակ (860—825 նախքան մեր թվ.), Ուրարտական թագավորությունը խիստ զորեղացել էր և ենթարկել էր իր իշխանությանը սահմանակից երկրները։ Նա դարձել էր լայնատարած ու հզոր պետություն և վտանգավոր ախոյան էր հանդիսանում ու մրցակից հզոր Ասորեստանին։ Ուրարտուի հզորացման ու նրա իշխանության ծավալման հետ համընթաց զորեղացել ու ճոխացել էր նաև նրա կուլտուրան, որը մեծ չափով ենթարկվել էր խեթական ու ասուրական կուլտուրաների ազդեցության։ Իններորդ դարի վերջերում Ուրարտուի թագավոր Սարդուրը Վանի միջնաբերդի արձանագրություններում գործ է ածում ասորեստանյան բևեռագրեր և ասուրերեն լեզու։ Սակայն նրանից հետո

արձանագրությունները գրված են տեղական լեզվով։ Այս հանգամանքը ինքնին արդեն մի նշան է, որ ուրարտացիների մոտ զորեղացել էր այդ ժամանակ նրանց ցեղային գիտակցությունն ու անկախությունը։ Ուրարտական կուլտուրայի մնացորդները վկայում են նմանապես, որ այդ կուլտուրան, որը շատ կողմերով մոտենում է խեթական ու ասուրա-բաբելոնական կուլտուրաներին, հարուստ է նաև տեղական յուրահատուկ գծերով։

8—7-րդ դարերում Ուրարտուն ենթարկվեց հյուսիսից՝ Հարավային Ռուսաստանից, եկող կիմմերների արշավանքներին, որոնք տակնուվրա արին Ուրարտուն, Ասորեստանը և ամբողջ Փոքր Ասիան։ Այս ահավոր արշավանքներին 7-րդ դարում հետևեցին սկյութացիների զարհուրելի հարձակումները, որոնք նորից ավերածության ենթարկեցին Անդրկովկասը և սրա հարևան երկրները մինչև Եգիպտոսի սահմանները։

Այս արշավանքների հետևանքն այն եղավ, որ Անդրկովկասում ու Փոքր Ասիայում տեղի ունեցան տեղահան արված զանազան ցեղերի տեղաշարժումներ և ազգացեղական վերախմբավորումներ։ Պետական հին միությունների՝ Ասորեստանի, Բաբելոնի և Ուրարտուի փոխարեն հրապարակ եկան նոր միություններ՝ նախ Մեդիան և ապա Պարսկաստանը։

Ահա այս մեծ անցքերի ու տեղաշարժումների ժամանակ, յոթերորդ դարում կամ վեցերորդ դարի սկզբներում (նախքան մեր թվ.), կարելի է ենթադրել հայերի հնդեվրոպական նախնիքների՝ արմենների, գաղթը Հայաստան, որոնք, հաստատվելով Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմտյան դաշտերում ու լեռնահովիտներում՝ հետզհետե տեր դարձան Ուրարտուի երկրներին։

* *
*

Ինչպես հայտնի է, հին պարսիկները, հույները, հռոմայեցիները և բոլոր մյուս ազգերը հայերին անվանում են «արմեններ» (հպրս. arminiya, հուն. ἀρμένιοι), իսկ նրանց երկիրը՝ «Արմենիա» (հպրս. Armîna, հուն. 'Αρμενία), և իրենք հայերն են միայն, որ իրենց անվանում են «հայեր», իսկ իրենց երկիրը՝ «Հայաստան» կամ «Հայք»։ Ինչպես և մյուս ժողովուրդներից շատերը, նույնպես և հայերը՝ իրենց ծագման ու հնագույն շրջանի պատմական անցյալի մասին չեն պահպանել պարզ ու որոշ հիշողություններ։ Նրանք իրենց համարել են Հայաստանի բնիկ

*ժողովուրդը և կամ իրենց գաղթած են համարել աշտարակաշինությունից հետո Բաբելոնից, որը նրանք ենթադրել են ըստ Հին Կտակարանի համայն մարդկության օրրանը։*

*Հինգերորդ դարի հայ պատմագիրները՝ Փավստոսը, Ագաթանգեղոսը և Կորյունը, իբրև քրիստոնեական ժամանակաշրջանի հեղինակներ, գտնվում են, բնականաբար, Հին Կտակարանի և եկեղեցական հին պատմագիրների ազդեցության տակ և համաձայն այդ սկզբնաղբյուրների հայերին սերած են համարում Հաբեթի սերնդից և Թորգոմի կամ Ասքանազի տոհմերից[1]։ Փավստոսի ու Ագաթանգեղոսի մոտ հին հայերը համարվում են «որդիք» կամ «ազգն» և «տունն Թորգոմայ»[2], իսկ Կորյունի մոտ նրանք անվանված են «Ասքանազեան ազգն»[3]։*

*Փավստոսից և Ագաթանգեղոսից դեռ առաջ հայերի նախահայր էին համարում Հին Կտակարանի եբրայական բնագրի «Թոգարմա»-ին նաև 3-րդ և 4-րդ դարերի եկեղեցական մատենագիրները՝ Հիպպոլիտոսը և Եվսեբիոս Կեսարացին։*

*Հ. Կիպերտը ենթադրում է[4], որ «Թոգարմա»-ն Հայաստանի արևմտյան կամ հարավ-արևմտյան մասի անունն է, իսկ Ֆր. Դելիչը կարծում է[5], որ «Թոգարմա»-ն կարող է համապատասխան լինել բևեռագիր արձանագրությունների մեջ հիշատակվող Տիլգարիմմու բերդի անվանը, որը գտնվում էր Հայաստանի սահմանակից հին Մելիտենեի (Մալաթիայի) շրջանում։ Հենց այս երկրին են վերաբերում, նրանց կարծիքով, Եզեկիել մարգարեի հետևյալ վկայությունները.*

*1 Գլ. ԻԷ, 14՝ «Եւ ի տանէ Թորգոմայ ձիովք և հեծելովք և ջորւովք լցին զվաճառս քո» [Տյուր քաղաքի]։*

*2 Գլ. ԼԸ, 6՝ «Գոմեր և ամենեքին որ շուրջ են զնովաւ, և տունն Թորգոմայ ի ծագացն հիւսիսոյ»։*

*Հին Կտակարանի վերոհիշյալ «Գամեր» կամ «Գոմեր» անվան տակ, որի որդին էր Թորգոմը, Կիպերտի և Դելիչի կարծիքով,*

---

[1] *Տե՛ս Ծն., գլ. Ժ, 2—3 և Ա. Մնաց. գլ. Ա, 5—6 «Որդիք Յաբեթի՝ Գամեր... եւ որդիք Գամերայ՝ Ասքանազ և Րիփաթ և Թորգոմա»։*

[2] Փավստոս, *Վենետիկ, 1832, էջ 1, 189 են.* Ագաթանգեղոս, *գլ. ՃԷ և ՃԺԲ։*

[3] Կորյուն, *Վենետիկ, 1894, էջ 7։*

[4] Monatsberichte d. Königl. Preuss. Akad. d. Wiss. zu Berlin, *1859, էջ 201 և հետ., նույնը, 1869, էջ 221 և հետ.։ Համեմատե նույն հեղինակի* „Lehrbuch der alten Geographie„, Berlin, *1878, էջ 75—76 և էջ 91։*

[5] *Տե՛ս Fr. Delitzsch*, Wo lag das Paradies?, Leipzig, *1881, էջ 246։*

*պետք է համարել կիմմերներին, որոնք Ասորեստանի արձանագրություններում անվանվում են Գիմիրրի* (Gimirri)։

*Ինչպես տեսնում ենք այս դիտողություններից, Փավստոսի և Ագաթանգեղոսի վկայությունները, որոնց մեջ համաձայն եկեղեցական հին մատենագիրների հայերի նախահայր համարվում է Թորգոմը՝ հատատուն որևէ հիմք չունեն։*

*Նույնը պետք է ասել նաև Կորյունի վերոհիշյալ վկայության մասին, ըստ որի հայերն անվանված են «Ասքանազեան ազգն»։ Այս ավանդությունը ևս պարզապես հիմնված է Երեմիա մարգարեի վկայության վրա, որը Բաբելոնի դեմ օգնության էր կանչում Արարատյան թագավորությունը և Ասքանազյան գունդը։*

*«Առէք գնշան ի վերայ երկրիդ,—ասված է այդ վկայության մեջ*[1]*,—փող հարէք ընդ ազգս ամենայն, հրաւիրեցէ՛ք ի վերայ դորա [Բաբելոնի] գունդս. պատուէր տուք յինէն Այրարատեան թագաւորութեանցն և Ասքանազեան գնդին. կանգնեցէ՛ք գնովաւ նետակալս. ելէ՛ք ի վերայ» (եբր. բնագրում ասված է՝ «Կոչեցէ՛ք ի վերայ նորա զթագաւորութիւնս Արարատայ, Միննեայ եւ Ասքենազայ», ասորականում՝ «Կոչեցէ՛ք ի վերայ նորա զթագաւորութիւնս Արարատայ և Արմինայ եւ Ասքենազայ»)։*

*Այս վկայության մեջ հիշատակված Ասքանազյան գունդը, ինչպես միանգամայն ճիշտ բացատրել է Ֆր. Դելիչը*[2]*, նույնն է բևեռագիր արձանագրությունների «Աշգուզա»-ի* (Ašgûza) *հետ, որ պարզապես հյուսիսից արևելյան Անդրկովկաս արշավող սկյութացիների անունն է։*

*Հայերի ծագման մասին մի ուրիշ ավանդություն էլ մեջ է բերված Մար Աբասի և Մովսես Խորենացու պատմական երկերում։ Ըստ այդ ավանդության հայ ազգի նախահայր համարվում է Հայկ Նահապետը, վերոհիշյալ Թորգոմի որդին, որը, չկամենալով հնազանդվել Բաբելոնի Բել արքային՝ գաղթել էր Հայաստան։*

*Այս Հայկը, ասում է Խորենացին (գիրք Ա, գլ. 10), գեղապատշաճ և անձնյա, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ, որ քաջ և երևելի էր հսկաների մեջ՝ դեմ կեցավ ամենքին, որոնք ձեռք էին բարձրացնում, որպեսզի իշխեն բոլոր հսկաների*

---

[1] *Տե՛ս* Երեմիա, *գլ. ԾԱ, 27։*

[2] *Fr. Delitzsch,* Neuer Kommentar über die Genesis, Leipzig, *1887, էջ 204։*

ու դյուցազների վրա։ Սա խրոխտալով ընդդիմացավ նաև Բելին և իր բոլոր տուն ու տեղով գնաց դեպի Արարատյան երկիրը։ Ճանապարհին նա եկավ բնակվեց մի սարի (Քարդու-Արարադի) ստորոտի մոտ գտնվող դաշտավայրում, շինեց այստեղ բնակության տեղեր և տվեց իբրև ժառանգություն իր թոռին՝ Կադմոսին, Արմենակի որդուն։ Իսկ ինքը, ճանապարհը շարունակելով՝ գնաց հյուսիսային արևմտյան կողմերը և իր նոր բնակությունը հաստատեց մի բարձր դաշտավայրի մեջ և այդ լեռնադաշտի անունը, որը գտնվում էր Նեխ-Մասիսի մոտ՝ դրեց Հայք։

Հայագետներից շատերը, օրինակ՝ Գ. Խալաթյանցը, Ա. Գարագաշյանը և Հ. Գելցերը՝ այս ավանդությունը ևս համարում են հնարված ու անարժեք[1]։

«Ինչ որ,—ասում է Գելցերը[2],—ազգային պատմագիրներ՝ Մար Աբաս Կատինա և Մովսէս Խորենացի հնագոյն պատմութեան մասին կաւանդեն, մեծաւ մասամբ և ոչ իսկ պատմական արժէք մ՚ ունին, այլ գիտական կարկատանք են»։

Հայագետների այս և նման եզրակացությունները, ինչպես կտեսնենք ներքև, ընդունելի չեն։ Մար Աբասի և Մովսես Խորենացու առասպելական հին ավանդությունների մեջ, ինչպես այժմ պարզված է, պահպանված են աղոտ հիշողություններ հին պատմական անցքերի մասին։

* *
*

Արդի արևելագետների ու հայագետների մեծագույն մասը ընդունում են, որ հայերի նախահայրեր արմենները թրակափռյուգիական ցեղերի հետ միասին գաղթել են Փոքր Ասիա Եվրոպայից Հելլեսպոնտոսի վրայով։ Այդ եզրակացությունը նրանք անում են, հիմնվելով հունական աղբյուրների հաղորդած վկայությունների և համեմատական լեզվաբանության նորագույն ցուցումների վրա։

Հինգերորդ դարի հույն պատմագիր Հերոդոտոսը (484—425 թթ. նախքան մեր թվ.) պարզ կերպով վկայում է, որ արմենները

---

1 Տե՛ս *Г. Халатьянц*, Армянский эпос в Истории Армении Моисея Хоренского, Москва, *1896, էջ 106—125.* Ա. Մ. Գարագաշյան, *Քննական պատմություն հայոց, մասն Ա, Կոստանդնուպոլիս, 1880, էջ 136 ևն։*

2 Հ. Գելցեր, *Համառօտ պատմութիւն հայոց, թարգմ. Գալեմքյարյանի, Վիեննա, 1897, էջ 5։*

Հայաստան են եկել Փռյուգիայից, այսինքն՝ արևմտյան Փոքր Ասիայից։ Հույն-պարսկական կռիվների ժամանակ, ասում է Հերոդոտոսը, փռյուգիացիները դաշն էին կապել Պարսից Քսերքսես թագավորի հետ, և արմեններն այդ ժամանակ գտնվում էին նրանց հետ Պարսից բանակում։ Վերջինները զինված էին փռյուգիացիների նման, և այս երկու ժողովուրդների հրամանատարն էր Դարեհի փեսան՝ Արտոքմեսը։

Հերոդոտոսի այս վկայությունը, որ խիստ կարևոր է, մեջ եմ բերում բառացի թարգմանությամբ հունարենից։

Հերոդոտոս, գք. VII, գլ. 73՝ «Փռյուգիացիները, ինչպես մակեդոնացիներն են ասում, անվանվում էին բրիգներ, երբ Եվրոպայում էին գտնվում և մակեդոնացիներին հարևան էին։ Անցնելով Ասիա՝ երկրի հետ միասին նրանք փոխեցին և իրենց անունը (փռյուգներ)։ Արմենները զինված էին փռյուգիացիների նման և փռյուգիացիների գաղութներն էին (ἄποικοι)։ Սրանց երկուսի առաջնորդն էր Արտոքմեսը, որն ամուսնացած էր Դարեհի աղջկա հետ»։

Նման տեղեկություն է հաղորդում նաև չորրորդ դարի (մեր թվ. առ.) աշխարհագիր Եվդոքսոսը։

«Իսկ արմենները,— ասում է նա[1],— ծագումով Փռյուգիայից են և նրանց լեզվում շատ բան փռյուգերենից է»։

Դիոնիսիոս Հալիկարնասացին էլ (I դար մեր թվ. առ.) արմեններին ու փռյուգիացիներին համարում է համալեզու։

Հույն մատենագիրների այս վերջին տեղեկությունը փռյուգերեն ու արմեներեն լեզուների մերձավոր ազգակցության մասին, դժբախտաբար, դժվար է ստուգել, որովհետև փռյուգերեն լեզվի առանձնահատկությունները մանրամասն մեզ հայտնի չեն և նրա բառամթերքից շատ քիչ բան է պահպանվել։ Արմեներեն և փռյուգերեն լեզուների մոտ ազգակցությունն ընդունում է գերմանական գիտնական Կրեչմերը[2], սակայն Մարկվարտը իրավացի կերպով առարկում է, որ փռյուգերեն լեզվից մնացած սակավաթիվ բառերը դեռևս չեն կարող հիմք ծառայել նման ենթադրության։ Պարզ է միայն այն, որ այդ երկու լեզուն էլ պատկանում են հնդեվրոպա-

---

1 Տե՛ս *Steph. Byz.* 'Αρμενία=*Eustath.* Comment. ad Dyonysii Periegesin V, 694, *C. Müller,* Geogr. graeci minores, t. II էջ, 314։

2 Տե՛ս *Paul Kretschmer,* Einleitung in die Geschicthe der griechischen Sprache, Göttingen, 1896. էջ 208 և հետ.։ Համեմատե նաև *W. Tomaschek,* Die, alten Thraker, I—II, Wien, 1893—1894։

կան լեզուների եվրոպական ճյուղին և ունեն մի քանի բնորոշ ու նման առանձնահատկություններ[1]։

Վերոհիշյալ հույն հեղինակների վկայությունները, որ խիստ թանկարժեք են, որովհետև Հերոդոտոսը ժամանակակից էր հինգերորդ դարի անցքերին՝ պարզ ցույց են տալիս, որ արմենները Հայաստան են եկել Փոքր Ասիայից և որ նրանց նախնիքները համարվում են եղել թրակա-փռյուգիական ցեղերի։

Արմենների գաղթն արևմուտքից հաստատվում է նաև հունական մի այլ ավանդությամբ, որ մեջ է բերված Ստրաբոնի աշխարհագրության մեջ։ Այդ ավանդության մեջ ցույց է տրրված նաև արմենների նախնական հայրենիքը Եվրոպայում, որտեղից նրանք գաղթել են Փոքր Ասիա և ապա Հայաստան։

Ստրաբոնի երկու վկայությունները մեջ ենք բերում բառացի թարգմանությամբ հունարենից։

1. Ստրաբոն, գր. XI, գլ. 4, 8 (503)՝

«Պատմում են, որ դեպի Կողքիս նավարկման ժամանակ Յասոնը գնացել էր թեսսալացի Արմենոսի հետ մինչև Կասպից ծովը և անցել Իբերիան, Ալբանիան և մեծագույն մասն Արմենիայի ու Մեդիայի, ինչպես այդ վկայում են Յասոնին նվիրված սրբավայրերը՝ և ուրիշ բազմաթիվ հիշատակարաններ։ Պատմում են նաև, որ Արմենոսը Արմենիոն քաղաքիցն էր, որն այն վայրերից մեկն էր, որոնք գտնվում էին Բոյբեյիս լճի շուրջը Փերեի ու Լարիսայի միջև, և որ նրա ուղեկիցները բնակվել էին Ակիլիսենում և Սիսպիրիտիսում մինչև Կալաքեն և Ադիաբեն։ Եվ պատմում են նմանապես, որ երկիրն Արմենիա էր անվանվել Արմենոսի անունով»։

2. Նույնը, գր. XI, գլ. 14, 12 (530)՝

«Հին պատմությունն այդ ժողովրդի [արմենների] մասին հետևյալն է։ Ինչպես որ ասվեց, Արմենոսը թեսսալական Արմենիոն քաղաքիցն էր, որը գտնվում է Փերեի և Լարիսայի միջև Բոյբեյիս լճի մոտ, և նա Յասոնի հետ արշավել էր Արմենիա։ Կիրսիլոս Փարսալացին և Մեդիոս Լարիսացին ու նրանց հետ եղողները, որ մասնակցում էին Աղեքսանդրի արշավանքին՝ ասում են, որ երկիրը կոչվել էր Արմենիա Արմենոսի անունով։ Սրա ուղեկիցներից ոմանք բնակություն էին հաստատում Ակիլիսենում, որն առաջ ենթարկված էր

---

[1] *J. Markwart,* Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Berlin, 1919, էջ 4—5։

Ծոփքի իշխանություն, իսկ ոմանք՝ Սիսպիրիտիսում մինչև Կալաքեն և Աղիաբեն, որ գտնվում էին Հայկական լեռնաշխարհից դուրս։ Ասում են դարձյալ, որ արմենական հագուստը թեսսալական է, ինչպես օրինակ, երկար ներքնազգեստները, որ թեսսալական են կոչվում տրագեդիաներում և գոտևորվում են կրծքի վրա, նմանապես և ներքնազգեստները, որ գործ են ածում թեսսալացիներ ներկայացնելիս տրագիկական դերասանները»։

Ստրաբոնի հաղորդած հունական այս ավանդությունը, ինչպես տեսնում ենք, ո՛չ միայն չէ հակասում Հերոդոտոսի վերոհիշյալ վկայությանը, այլև իր հերթին հաստատում է, որ արմենները ևս, ինչպես և «բռիգ» կամ «փռյուգ» ժողովուրդը, գաղթել էին Փոքր Ասիա Եվրոպայից։

Հունական բոլոր վերև մատնանշված տեղեկությունները արմենների ծագման մասին վերջերս մանրամասն քննության են ենթարկված Մարկվարտի ֆրանսերեն լեզվով գրված հոդվածում՝ «Հայերի օրորանը» վերնագրով[1]։ Նրա կարծիքով, հունական առասպելախառն վերոհիշյալ ավանդությունն արմենների գաղթի մասին Թեսսալիայից, ըստ երևույթին, ունի որոշ պատմական հիմք։ Նա մատնացույց է անում հայերեն գրաբար լեզվի մեջ մի քանի բառեր, օրինակ՝ «մանր» և «սուին», որոնք գրեթե նույն արտասանությամբ (manu և sibyna) ու միևնույն նշանակությամբ գործ են ածվել Թեսսալիային սահմանակից Իլլիրիայում և Աթամանիայում։ Այս բաղդատությունները Մարկվարտին հիմք են ծառայում ենթադրելու, որ հայերի հնդեվրոպական նախահայրերը, արմենները, երբեմն հարևան են եղել Իլլիրիայի ու Աթամանիայի ազգաբնակության և բնակվելիս են եղել, հավանորեն, Թեսսալիայում[2]։

Մարկվարտի նոր եզրակացությունը թեև կարելի է մասնավոր կետերում վիճելի համարել ու կարոտ ավելի հիմնավոր ապացուցման, սակայն միանգամայն պատմական ու ճիշտ պետք է համարել այն, որ արմենները երբեմն ապրել են, իրապես, հյուսիսային Հունաստանում կամ Բալկանյան թերակղզում,

[1] Տե՛ս *J. Markwart*, Le berceau des Arméniens, Revue des études arméniennes, Paris, *1928*, t. VIII, fasc. *2*, էջ *211—232*։

[2] Ուշագրավ է, որ հայերի գաղթը Թեսսալիայից մատնանշված է Սուքրյանի հրատարակած Աշխարհացույցի մեջ («և զմեծն Թեսաղիա, յորմէ Հայք», տե՛ս «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», Վենետիկ, 1881, էջ 17)։ Ինձ թվում է, որ այս վկայության հիմք է ծառայել վերոհիշյալ հունական ավանդությունը։

այնտեղից թրակա-փռյուգիական ցեղերի մեծ ընտանիքի հետ դաղթել են ու հաստատվել Փոքր Ասիայում, և ապա, ըստ երևույթին, կիմմերական ու սկյութական արշավանքների ժամանակ (7-րդ դ.) տեղահան են եղել և բնակություն են հաստատել Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմտյան մասերում[1]։

Որ արմինները, իրապես, կապ ունեն թրակա-փռյուգիական ցեղերի հետ՝ այդ մատնանշել է նաև Ն. Մառը։ Իր ուշագրավ հոդվածներից մեկում («Бог Σαβάζιος у армян», Изв. Имп. Академии Наук, 1911, էջ 759—774) նա պարզ կերպով ցույց է տըվել, որ հայերեն աստված բառը, որի ծագումը պետք է համարել արմենական, կատարելապես համապատասխանում է փռյուգիական Սաբաձիոսին, որը գլխավոր աստվածն էր թրակա-փռյուգիական աշխարհում։ Այս խիստ կարևոր ցուցումը ևս, ինչպես տեսնում ենք, հաստատում է Հերոդոտոսի ու մյուս հույն հեղինակների վկայությունները արմենների ու փռյուգիացիների առնչության ու հարևանության մասին։

* *
*

Եվրոպայից Փոքր Ասիա գաղթած արմենների լեզուն, ինչպես արդեն ապացուցել են լեզվագետները, պատկանելով հնդեվրոպական լեզուների խմբին՝ իր առանձնահատկություններով մոտ ազգակից է եղել այդ խմբի եվրոպական ճյուղին և ունի որոշ առնչություն նաև արիական ու սլավոնական լեզուների հետ։ Հնչյունական տեսակետից նրա տեղը, ինչպես մատնացույց է անում Մարկվարտը, որոշվում է սլավոնական-լիտվական ու ալբանական լեզուների միջև, իսկ ըստ բառապաշարի նա, ինչպես և փռյուգերենը, աչքի ընկնող նմանություններ ունի հունարենի հետ։ Այս հանգամանքը, Մարկվարտի կարծիքով, հանգեցնում է անհրաժեշտորեն այն եզրակացության, որ արմենների նախահայրերն ապրել

---

[1] Ոմանք կարծում են (տե՛ս Լեո, Հայոց պատմություն, էջ 321, Morgan, Histoire du peuple arménien, էջ 37 և ուրիշներ), որ արմենների ազգակցական կապի մասին թրակա-փռյուգիական ցեղերի հետ ուշագրավ մի հիշողություն պահպանվել է Հովհաննես կաթողիկոսի մոտ (Թիֆլիս, 1912, էջ 13), որը Հայկ նահապետի պապին, Թիրասին, նախահայր է համարում թրակիացիների։ Հովհաննես կաթողիկոսի հաղորդած տեղեկությունը հիմնված է, ըստ երևույթին, ոչ թե ժողովրդական ավանդության, այլ, հավանորեն, Հին Կտակարանի մեկնիչների վկայությունների վրա։

են երբեմն Եվրոպայում, հավանորեն, հույների ու թրակացիների նախնիքների մոտերքում[1]։

Ինչպես հայտնի է, մի շարք աշխատություններում ժխտվում է վերջերս այն մեծ ծառայությունը, որ հնդեվրոպական լեզվաբանությունը մատուցել է հայագիտության և, մասնավորապես, նաև պատմագիտության։ Սակայն այդ, իհարկե, ճիշտ չէ։ Թեև համեմատական լեզվաբանությունն ունի որոշ բացեր ու թերություններ, սակայն հնդեվրոպական լեզուների հայտնաբերումն ու ուսումնասիրությունը, անտարակույս, 19-րդ դարի ամենախոշոր գյուտերից մեկն էր։

Արմենների գաղթը Բալկանյան թերակղզու վրայով Փոքր Ասիա և այդ գաղթի մոտավոր ժամանակը նորագույն ուսումնասիրություններում ենթադրվում է մոտավորապես 13-րդ դարի վերջերում կամ 12-րդ դարի սկզբներում մեր թվարկությունից առաջ։ Հենց այդ ժամանակ, ինչպես ենթադրում են, տեղի էր ունեցել Հելլեսպոնտոսի վրայով ներխուժումը Եվրոպայից Փոքր Ասիա թրակա-փռյուգիական ցեղերի, որոնք բուռն ու երկարատև գրոհներով հետզհետե կործանեցին խեթական մեծ պետությունը։ Ըստ երևույթին սրանց հետ եկել էին Փոքր Ասիա նաև նրանց ազգակից արմենները։

Բանասիրական ու պատմագիտական բազմաթիվ աշխատություններում արմենների գաղթը Եվրոպայից Փոքր Ասիա սովորաբար ենթադրվել է կամ երրորդ հազարամյակում[2] և կամ 8—7-րդ դարերում[3] մեր թվականությունից առաջ։ Այս ենթադրությունները համարվում են այժմ անհավանական։

Նորագույն ուսումնասիրություններում ենթադրվում է նույնպես, որ արմենները, նախքան նրանց գալը իրենց նոր հայրենիքը, Հայկական լեռնաշխարհը՝ ապրել են Փոքր Ասիայում մոտավորապես վեցհարյուր տարի՝ 12-րդ դարից մինչև 6-րդ դարը մեր թվականությունից առաջ։ Այդ երկար դարերի ընթացքում նրանք, անշուշտ, ենթարկված կարող էին լինել նոր շրջապատի ազդեցությանը։ Եվ իրավի, ինչպես հետզհետե պարզվում է, հնդեվրոպական

---

[1] *Markwart*, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 5։

[2] Համեմատե *Hübschmann*, Armenische Grammatik, Leipzig, 1897, էջ 399. *Kretschmer*, Einleitung in die Geschichte der griechischen Sprache, էջ 181. Տաշյան, Ուսումն դասական հայերէն լեզուի, Վիեննա 1920, էջ 18 և ուրիշ.

[3] Տե՛ս *Халатьянц*, Очерк истории Армении, Москва, 1910, էջ 11. *В. Брюсов*, Летопись исторических судеб армянского народа, Москва, 1918, էջ 10 և ուրիշ.։

արմենների թե մարդաբանական տիպը և թե լեզուն զգալի փոփոխություններ են կրել նրանց Հայաստան ժամանելուց առաջ արդեն Փոքր Ասիայում։

Այն լեզվա-ցեղային ու կուլտուրական միջավայրը, որը մեծ ազդեցություն էր գործել արմենների վրա՝ վերջերս արդեն հաջող կերպով ուսումնասիրվում ու լուսաբանվում է շնորհիվ խեթագիտության փայլուն նվաճումներին ու խեթական բևեռագիր ու պատկերագիր արձանագրությունների ընթերցման։ Վերջին ժամանակներում երևան են հանվել փոքրասիական մի քանի նոր ժողովուրդներ ու լեզուներ, որոնցից ամենանշանավորներն են Հրոզնու[1] կողմից հնդեվրոպական համարված նեսիտ-խեթերը կամ կամխինները ու լույկները և ո՛չ հնդեվրոպական նախախեթերը, որ անվանվում են նաև խատտեր, և խուրրիները կամ խարիները, որոնք անվանվում են նաև սուբարիներ։

Ինչպես նորագույն ուսումնասիրություններից պարզվում է, հնդեվրոպական արմենները, ըստ երևույթին, խառնվել են Փոքր Ասիայում, գլխավորապես, նեսիտ-խեթերի և նախախեթերի հետ։ Նրանք ժառանգել են սրանցից, ինչպես ցույց է տվել մարդաբանական գիտությունը, իրենց ուրույն տիպը, որը հայերը պահպանել են մինչև մեր օրերը։ Խեթյան ժամանակաշրջանի որմնաքանդակային նկարները ու պեղածո գանգերը իրենց բնորոշ հատկանիշներով կազմում են, ինչպես հայտնի է, բրախիկեֆալ (կարճագլուխ) կոչվող հատուկ մի խումբ, որը կատարելապես համապատասխանում է այսօրվա հայերի ֆիզիկական տիպին։ Այս հանգամանքը հիմք է ծառայել այդ տիրապետող փոքրասիական տիպը կոչելու արմենոյիդ։

Լեզվագիտական նորագույն ուսումնասիրությունները նմանապես ցույց են տալիս, որ արմեններեն լեզուն ևս ենթարկվել է խեթերենի ազդեցությանը, որ այժմ հետզհետե ուսումնասիրվում ու լուսաբանվում է։

Պետք է ասել, որ խեթագիտությունը դեռևս երիտասարդ գիտություն է։ Բողազքյոյում գտնված խեթական թագավորական արխիվի տասնյակ հազարավոր կավե սեպագիր տախտակները, ինչպես և Փոքր Ասիայում ու Ասորիքում եղած խեթական պատկերագիր արձանագրությունները դեռևս բոլորը չեն կարդացված

[1] *B. Hrozny*, Die Sprache der Hethiter, Leipzig, 1916—1917. проф. *Б-Грозный*, Хеттские народы и языки, Вест. древ. истории, № 2, 1938, էջ 18—33։

ու մեկնված։ Յուրաքանչյուր տարի նոր ու նոր արձանագրությունների ընթերցմամբ հետզհետե ճշտվում են լեզվական ու պատմական վիճելի հարցեր։ Միանգամայն հնարավոր է, ուրեմն, որ հետագա ուսումնասիրությունները կկարողանան, հավանորեն, նոր լույս սփռել նաև Փոքր Ասիա գաղթած արմենների պատմության վրա։

* *
*

Արմենների հնագույն անցյալի մասին Փոքր Ասիայում մենք ունենք առայժմ Մարկվարտի ուշագրավ մի ենթադրությունը[1], որը սակայն դեռ կարոտ է ստուգման ու ապացուցման նոր ու ավելի անվիճելի փաստերով։ Մարկվարտը մատնանշում է, որ իրեն հաջողվել է Հոմերոսի Իլիականում գտնել արմենների մասին ամենահին տեղեկությունը։ Հոմերոսի մոտ հիշատակված է արիմներ (''Αριμοι ) անունով մի ժողովուրդ, որը կարելի է, նրա կարծիքով, նույնացնել արմենների հետ։

Նկարագրելով Զևսի ու Տյուփոնի կռիվը՝ Հոմերոսը, հիշատակելով արիմներին՝ մատնանշում է, որ նրանց երկրում է գտնվել Տյուփոնի բնակատեղին (Իլիական, B, 783)։ Տյուփոնը, ինչպես հայտնի է, դիցաբանական մի հսկա էր և անձնավորումն էր հրաբխի ու հրաբխային երևույթների։ Նրա հայրենիքը, որն ըստ Հոմերոսի արիմների երկրումն էր գտնվում՝ հունական մատենագիրները, Պինդարոսը և ուրիշները, ենթադրում են Կիլիկիայում։ Հիմնվելով ցուցումների վրա՝ գերմանական գիտնական Պարչը համոզիչ կերպով լուսաբանել է[2], որ հունական աղբյուրների ակնարկած հրաբուխը, որը գտնվել է արիմների երկրում՝ Կիլիկիայում, պարզապես Արգայոս (այժմ Երջիյաս) լեռն է Կեսարիայի շրջանի, որը հնագույն ժամանակներում գտնվում էր, իրապես, Կիլիկիայի թագավորության սահմանում, իսկ հետո, 4-րդ դարում մեր թվականությունից առաջ, միացվել էր Կապպադովկիային։

Հունական մատենագիր Պոսեյդոնիոսը, և նրան հետևելով նաև Պարչը, արիմներին նույնացնում են արամայեցիների հետ, սակայն Մարկվարտը, մերժելով այդ հին կարծիքը, հնարավոր

[1] Տե՛ս J. Markwart, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 66—68 և Le berceau des Arméniens, էջ 215—225։

[2] Տե՛ս Jos. Partsch, Geologie und Mythologie in Kleinasien, Berlin, 1888, էջ 105 են.։

է համարում նույնացնել արիմներին հայերի նախահայրերի՝ արմենների հետ։ Մարկվարտի ասելով՝ հնագույն այդ ժամանակներում սեմական աարիներն ապրում էին ո՛չ թե Կիլիկիայում կամ հարավային Կապպադովկիայում, այլ Պոնտոսի հյուսիսակողմում։ Արմենների գաղթը կարելի է, նրա կարծիքով, ենթադրել Փռյուգիայից, հատկապես, այժմյան Անգորայի շրջանից՝ Հալյուս գետի միջին հոսանքով դեպի Արգայոս լեռան մոտակայքը, ուր և նրանք հիշատակված են Իլիականում։ Հետագայում արմենները հարկադրված են եղել Կիլիկիայի հյուսիսային այս շրջանից գնալ դեպի Հալյուս գետի ակունքը, որը գտնվում էր Փոքր Հայքում, և ապա այստեղից ևս դեպի Հայկական լեռնաշխարհը։

Մարկվարտը ենթադրում է նաև, որ հայերի նախահայրերի «արմեն» անունը (հպրս. arminiya, հուն. ἀρμένιοι) կազմված է arm, ավելի ճիշտ՝ ar(i)m- կամ ar(u)m- արմատից և ուրարտական -ini (կամ -ina) վերջավորությունից (համեմատե Chald-ini, Mušk-ini են)։ Անշեշտ վանկի մեջ i հնչյունի սղումը Մարկվարտը կանոնավոր է համարում թե՛ հայերենում և թե՛ խալդերենում։

Բացի այդ, Մարկվարտն անհնարին չէ համարում, որ Urmeni ժողովուրդը, որը Մենուասի (810—778 թ. մեր թվ. ա.) արձանագրություններից մեկում հիշատակված է հյուսիսային Կիլիկիայի (հետագա Կապպադովկիայի) մոտակայքում, կարող է, իրապես, ինչպես ենթադրել է Լեման-Հաուպտը[1], նույնացվել արիմներ-արմենների հետ, որոնք հենց նույն այս շրջաններումն էին ապրում Իլիականի հորինման ժամանակ 9—8-րդ դարերում (նախքան մեր թվ.)։

Իլիականի վկայության նոր լուսաբանությունը, Մարկվարտի կարծիքով, հաստատվում է նաև նրանով, որ Մովսես Խորենացին ևս, որի մոտ պահպանվել է Զևսի ու Տյուփոնի կռվի մի այլ փոփոխակը՝ նկարագրել է հայերի նախահոր՝ Արամի դիցաբանական կռիվը Պապայիս Քաղյանի հետ և կռվի վայրը մատնանշել է նույնպես Արգայոս հրաբխային լեռան մոտ Մաժաք-Կեսարիայի շրջանում։ Տիտանյան Պապայիս Քաղյանը, ըստ երևույթին, տիտան Տյուփոնն է, իսկ Արամը, որ փոխարինում է Զևսին, հավանորեն հայերի նախահայր արիմներն են[2]։

Մովսես Խորենացու համապատասխան վկայությունը, որ

---

[1] Տե՛ս Sitzungsberichte der Berlin. Akad., 1900, էջ 621։

[2] Տե՛ս Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 67։ Համեմատե նաև էջ Le berceau des Arméniens, 221—223։

*խիստ կարևոր է ու արժանի հատուկ ուշադրության, մեջ եմ բերում ամբողջությամբ՝ առանց կրճատումների։*

*Խորենացի, գիրք Ա, գլ. ԺԴ, էջ 46—47 (Տփղիս 1913)՝*

*«Բայց ինչ քաջության գործ որ սա [Արամը] գործել է արևմտյան կողմը Տիտանյանների դեմ՝ մենք դեռ պատմելու ենք։ Սա քառասուն հազար հետևակներով և երկու հազար հեծելազորքով դեպի արևմուտք նրանց դեմ գնալով՝ հասավ Կապադովկիայի կողմերը, մի տեղ, որն այժմ Կեսարիա է կոչվում։ Եվ որովհետև նա արևելյան ու հարավային կողմերը նվաճել էր և հանձնել էր այս երկու ցեղերին, արևելքը Սիսակյաններին և Ասորեստանը Կադմոսի տան շառավիղներին՝ այնուհետև ոչ մի տեղից չուներ որևէ շփոթի կասկած։ Ուստի և նա երկար ժամանակ մնաց արևմուտքում և այստեղ նրա դեմ դուրս եկավ պատերազմի Տիտանյան Պապայիս Քաղյանը[1], որը տիրապետել էր երկու մեծամեծ ծովերի՝ Պոնտոսի և Օվկիանոսի միջև գտնված ամբողջ երկրին։ Հարձակվելով վերջինիս վրա՝ Արամը նրան փախուստի մատնեց ու քշեց ասիական ծովի մի կղզի։ Եվ թողնելով իր ազգից Մշակ անունով մեկին տասը հազար զորքով իբրև այս աշխարհի վերակացու՝ ինքը վերադարձավ Հայաստան։*

*Բայց նա հրամայեց այդ աշխարհի բնակիչներին սովորել հայկական լեզուն և խոսել հայերեն. այս պատճառով հույները մինչև այսօր այդ երկիրը կոչում են Պռոտի Արմենիա, որ թարգմանաբար նշանակում է Առաջին Հայք։ Իսկ այն դաստակերտը, որ շինեց Արամի տեղակալ Մշակը և կոչեց իր անունով ու պատեց փոքր պարիսպով՝ երկրի հին բնակիչները, չկարողանալով ուղիղ արտասանել, անվանում էին Մաժաք։ Իսկ հետո ուրիշներն ընդարձակեցին և անվանեցին Կեսարիա։ Միևնույն կերպով նաև այդ տեղերից մինչև իր բուն երկրի սահմանները շատ անբնակ աշխարհներ Արամը բնակիչներով լցրեց, որ անվանվեցին Երկրորդ և Երրորդ, նաև Չորրորդ Հայք։ Այս է առաջին և ճշմարիտ պատճառը, որ մեր արևմտյան կողմը անվանվեց Առաջին և Երկրորդ, այլև Երրորդ ու Չորրորդ Հայք։ Իսկ ինչ որ ուրիշներն այս մասին ասում են հունական կողմերում՝ մեզ հաճո չէ, ուրիշներն ինչպես կամենան։*

---

[1] *«Պայապիս Քաաղեայն» ուղղել ենք համաձայն Մարկվարտի ենթադրության «Պապայիս Քաղյան»։*

Այնքան հզոր ու անվանի դարձավ Արամը, որ մինչև այսօր, ինչպես ամենքին հայտնի է, բոլոր շրջակա ազգերը մեզ անվանում են սրա անունով»։

[«Այլ որ ինչ յարևմուտս կոյս ընդ Տիտանեանսն է սորա գործ քաջութեան՝ ասել կայ մեզ առաջի։ Աստ յարևմուտս շարժեալ ի վերայ առաջնոյն չորիւք բիւրովք հետևակազօրու և երկու հազար հեծելովք՝ հասանէ ի կողմանս Կապադովկացւոց, ի տեղի մի, որ այժմ ասի Կեսարիա։ Եւ քանզի զարևելեանն և զհարավայինն նուաճեալ, յանձնեալ էր ի ձեռն երկուց ցեղիցս այսոցիկ, Սիսականեացն զարևելս, և որք ի Կադմեայ տանէն՝ զԱսորեստանին՝ ոչ ինչ այնուհետև կասկած շփոթից ուստեք ունէր։ Վասն որոյ յերկարեալ ժամանակս լինել յարևմուտս՝ պատահէ նմա Պայապիս Քաաղէայն Տիտանեան պատերազմաւ, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց մեծամեծաց, զՊոնտոսն և զՈվկիանոս։ Որում ի դիմի հարեալ վանէ, փախստական արկանելով ի կղզի ինչ ասիական ծովուն։ Եւ իւր թողեալ զոմն Մշակ անուն յազգէ իւրմէ և բիւր մի ի զօրացն ի վերայ աշխարհին՝ և ինքն դառնայ ի Հայս։

Բայց հրաման տայ բնակչաց աշխարհին՝ ուսանել զխօսս և զլեզուս հայկական. վասն որոյ մինչև ցայսօր ժամանակի անուանեն Յոյնք զկղիմայն զայն Պռոտին Արմենիան, որ թարգմանի Առաջին Հայք։ Եւ զդաստակերտն, զոր շինեաց յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ, փոքրագունիւք պարսպեալ որմովք, անուանէին հինք աշխարհին՝ Մաժաք, որպէս ոչ կարելով ուղղախօսել. մինչև յետոյ յոմանց ընդարձակագոյն շինեալ՝ անուանեցաւ Կեսարիա։ Ըստ նմին օրինակի ի տեղեացն այնոցիկ մինչև ցբուն իւր սահմանսն, զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք Երկրորդ և Երրորդ անուանեցան Հայք, այլ և Չորրորդ։ Այս է առաջին և ճշմարիտ պատճառն անուանելոյ զարևմտեան մեր կողմն Առաջին և Երկրորդ, այլ և Երրորդ և Չորրորդ Հայք։ Իսկ որ այլ ի յոմանց ասի ի յունական կողմանսն՝ մեզ ոչ է հաճոյ. այլոց որչափ կամք իցեն։

Արդ սա այսպէս հզօր և անուանի եղեալ՝ յանուն սորա մինչև ցայսօր, որպէս ամենեցուն յայտնի է, որ շուրջ զմեօք ազգք զաշխարհս մեր անուանեն»]։

Խորենացու այս հատվածում, որը քաղված է, հավանորեն, Մար-Աբասյան աղբյուրից և ենթարկվել է գրական մշակու-

*թյան, կարող են, իրապես, ինչպես տեսնում ենք, պահպանված լինել հայ ժողովրդի աղոտ հիշողությունները իր ամենահին անցյալի մասին. հավանական կարելի է համարել ըստ իս, որ Արամի մասին այս պատմության մեջ արձագանք են գտել ո՛չ միայն Ուրարտուի հին բնակիչների ավանդությունները, այլև եկվոր արմենների։*

*Եթե ճիշտ համարվեն վերոհիշյալ դիտողությունները՝ կարելի է ընդունել, որ Մարկվարտի կարծիքը արիմների ու արմենների նույնության մասին զուրկ չէ որոշ հիմքերից։ Այդ ենթադրությունը կարոտ է սակայն դեռ հաստատման նաև փաստական նոր տվյալների օգնությամբ։*

*Պետք է ասել, որ թեև վերոհիշյալ մեր հետևությունների ու ենթադրությունների մեջ կարող են լինել վիճելի կետեր, սակայն առարկությունները այդ կետերի դեմ բնավ չեն կարող խախտել արմենների ծագման մասին մեր ստացած հիմնական եզրակացությունը։ Պարզված ու վերջնական կարելի է համարել ըստ իս արմենների լեզվի հնդեվրոպական լինելը, նրանց սերտ կապը թրակա-փռյուգիական ցեղերի հետ, նրանց գաղթը արևմուտքից ու մուտքը Ուրարտուի հարավ-արևմտյան շրջանները Կապպադովկիայի և հետագա Փոքր Հայքի վրայով։*

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ԱՐՄԵՆՆԵՐԻ ՆԵՐԳԱՂԹԻ ՈՒՂԻՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՀՆԱԳՈՒՅՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

1.—Արմենների ներգաղթի ուղիների մասին հին ու նոր կարծիքները: —2. Արմենների հնագույն գաղթավայրերը՝ Փոքր Հայքը, Ակիլիսենը և Սոփիրիտիսը.—Աղձնիքը և, մասնավորապես, այժմյան Սասունը մաս էր Մեծ Հայքի:—3. Արմենների նոր գաղթավայրերի ստրատեգիական կարևորությունը: —4. Հայկի ու նրա հաջորդների գաղթը ու տարածումը Արմենիայում ըստ Մար-Աբասյան ավանդության ու Խորենացու Պատմության.—Նրանց գլխավոր գաղթավայրերը՝ Քարդու-Արարադի, Նեխ-Մասիսի ու Մեծ Մասիսի մոտ գտնվող դաշտավայրերը.—Հայք երկիրն ըստ Մար-Աբասյան ավանդության: —5. Հայասա երկիրն ըստ խեթական արձանագրությունների.—Հայք և Հայասա միևնույն երկիրն են: —6. Արմենների ձուլումը Հայկական լեռնաշխարհում ապրող զանազան ժողովուրդների հետ.—Արմենները ենթարկվել են նրանց լեզվի ու կուլտուրայի ազդեցությանը:

*Երբ էին արմենները մտել այժմյան Հայկական լեռնաշխարհը, որը դառնալու էր նրանց նոր հայրենիքը՝ այդ դեռևս հաստատուն կերպով որոշված չէ։ Ենթադրում են սովորաբար, որ այդ կարող էր տեղի ունեցած լինել յոթերորդ դարի (նախքան մեր թվ.) մեծ իրարանցումների ու տեղահան գաղթումների ընթացքում, որոնք հետևանք էին կիմմերական ու սկյութական արշավանքների։ Սակայն այս ենթադրությունը, որ հավանական է թվում, դեռևս չէ հաստատված պատմական աղբյուրների փաստական տեղեկություններով։*

*Համեմատաբար ավելի հաստատուն կերպով են որոշված այն ճանապարհները, որոնցով արմենները մտել էին իրենց նոր հայրենիքը և տարածվել հետզհետե դեպի Արարատյան դաշտը և Հայաստանի մյուս շրջանները։*

*Հայագետ պատմաբաններն ու բանասերները բոլորն էլ համաձայն են, որ արմենների առաջին հիմնական կայանը մինչև*

Ուրարտուի շրջանները մտնելը եղել է պատմական Կապպադովկիայի հյուսիս-արևելյան լեռնային երկիրը, որը դառել էր հետագայում առանձին արմենական թագավորություն և նրանց անունով կոչվում էր Փոքր Արմենիա կամ Փոքր Հայք։ Սակայն տարբեր կարծիքներ են հայտնված արմենների տարածման մասին այստեղից դեպի Այրարատ։

Գերմանական գիտնական Տոմաշեկը և, նրան հետևելով նաև Հյուբշմանը, Խալաթյանցը, Տաշյանը և ուրիշները՝ արմենների առաջխաղացումը Փոքր Հայքից ենթադրում են Գայլ գետի հովիտներով այժմյան Սատաղ և այստեղից դեպի վերին Եփրատի կողմերը և այնուհետև դեպի Այրարատ[1]։ Ճիշտ պետք է համարել, ինչպես ներքև կտեսնենք, ո՛չ թե ընդունված ու գերիշխող այս հին կարծիքը, այլ Մարկվարտի նոր բացատրությունը[2], որը արմենների նվաճողական առաջշարժումը ենթադրում է Աղձնիքից ու Տարոնից դեպի Արածանիի վերին հովիտները ու այնտեղից դեպի Այրարատ։ Վերոհիշյալ գիտնականները, որոնք արմենների ներընթացքը դեպի Արարատյան դաշտը ենթադրել են այժմյան Էրզրումի շրջանից՝ պարզապես աչքաթող են արել, որ Դերջանը և Կարնո շրջանը, ինչպես վկայում է Ստրաբոնը (XI, 14, 5), Արտաշես Ա-ը գրավել էր խալյուբներից ու մոսինոյկներից երկրորդ դարի առաջին կիսում մեր թվականությունից առաջ։ Ուրեմն կարելի է ենթադրել, որ արմենների նվաճողական տարածումը, ինչպես երևում է Ստրաբոնի վկայությունից, տեղի էր ունեցել ո՛չ թե Բարձր Հայքից դեպի Այրարատ, այլ Այրարատից դեպի Բարձր Հայք։

Արմենների հնագույն գաղթավայրերը Հայկական լեռնաշխարհում մատնանշված են Աղեքսանդր Մեծի ուղեկիցների՝ Կիրսիլոս Փարսալացու և Մեդիոս Լարիսացու վերև մեջ բերված վկայություններում։ Նրանց հաղորդած տեղեկություններից (տե՛ս Ստրաբոն, XI, 4, 8 և XI, 14, 12) երևում է, որ արմենները մտել էին իրենց նոր երկիրը Կապպադովկիայից ու Փոքր Հայքից երկու ուղղությամբ։ Մի խումբը Փոքր Հայքից գնացել էր Եփրատ գետի հոսանքով դեպի վեր և բնակություն էր հաստատել Ակիլիսենում (Եկեղյաց գավառում), որն առաջ ենթարկված էր Ծոփքի իշխանության, իսկ մյուս խումբը, անցնելով Եփրատ գետն այժմյան

---

[1] Տե՛ս *Tomaschek*, Die alten Thraker, 1893, I, էջ 4, *Hübschmann*, Armenische Grammatik, էջ 400. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 76.։ Տաշյան. Ուսումն դասական հայերէն լեզուի, էջ 18 և ուրիշ.։

[2] Տե՛ս Entstehung und Wiederherstellung der armenischen Nation էջ 15։

*Մալաթիայի արևելակողմում՝ մտել էր Խարբերդի դաշտը և հետրդ-հետե տարածվել Արածանիի ու Վերին Տիգրիսի լեռնահովիտներում։ Երկրորդ այս խումբը հաստատվել էր գլխավորապես, ինչպես վկայում են Կիրսիլոսը և Մեղիոսը, «Սիսպիրիտիս»-ում* (ἐν τῇ Συσπιρίτιδι, *ասորեստ. արձան.* Šupria = Σουσπιρῖτις) *մինչև Կալա-քեն* (Calacene) *և Ադիաբեն* (Adiabene):

*Սիսպիրիտիսը գտնվում էր ըստ Մարկվարտի*[1] *հին Աղձնի-քում, այժմյան Սասունի արևմտակողմում, ուր նշանավոր կենտ-րոնավայրեր էին ասորեստանյան արձանագրություններում հիշա-տակված Կուլիմերին և Ուպումուն (բյուզանդական ժամանակա-շրջանի Քղիմարը և Ափումը)։ Կալաքենի տեղը ենթադրում են այժը-մյան Խաբուր-սուի հարավ-արևելքում, սրա և Մեծ Զավ գետի միջև, իսկ Ադիաբենը գտնվում էր Կալաքենից հարավ՝ հյուսիսային Ասորեստանում։*

*Կիրսիլոսի և Մեղիոսի կարևոր տեղեկությունները, ինչ-պես ներքև կտեսնենք, հաստատվում են նաև Հերոդոտոսի ու Քսե-նոփոնի վկայություններով։ Այդ տեղեկությունները, որ միանգա-մայն արժանահավատ են, ցույց են տալիս, որ արմենական գաղ-թականությունը գրավել էր Եփրատ ու Տիգրիս գետերի մոտ իրա-րից անջատ երկրամասեր, Կապպադովկիայի հյուսիս-արևելքում և Հայաստանի հյուսիս-արևմուտքում՝ Փոքր Հայքը և Ակիլիսենը, իսկ Հայաստանի հարավում՝ Ծոփքի, Աղձնիքի ու հին Կորճայքի ս-ահմանին շրջանները։*

*Հետաքրքիր է առանձնապես այն, որ արմենների այս գաղ-թավայրերը գտնվում էին միջազգային նշանակություն ունեցող երեք մեծ ճանապարհների վրա իշխող ու վերահսկող շրջաննե-րում.*

*1. Ակիլիսենի միջով կամ մոտով էին անցնում Պոնտոսից Բարձր Հայք տանող ճանապարհները.*

*2. Ծոփքը և Աղձնիքը իշխում էին ու վերահսկում Պարսից ծոցից Փոքր Ասիա գնացող հին արքայական մեծ ճանապար-հի վրա.*

*3. Կալաքենը ևս ռազմական մեծ նշանակություն ուներ, ո-րովհետև նրա մոտով էին անցնում Ուրարտուից Ասորես-տան, Բաբելոն և Մեդիա գնացող հին ճանապարհները։*

*Ի նկատի ունենալով արմենների գրաված գաղթավայրերի ստրատեգիական բացառիկ կարևորությունը, ինձ թվում է, հա-*

---

[1] *Տե՛ս* *Markwart*, Eranschahr, Berlin. *1901, էջ 159 և* Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, *էջ 15։*




Արմենների հնագույն գաղթավայրերը Հայաստանում

Գծ. 1.

վանական կարելի է համարել, որ արմենները վերոհիշյալ շրջաններում հաստատվել էին, ինչպես ուղիղ ենթադրել է Մարկվարտը[1], իբրև մեղացիների դաշնակից զինվորական գաղութներ այս վերջինների համաձայնությամբ։

Արմենական վերոհիշյալ գաղութներից առանձին ուշադրության արժանի է ըստ իս Աղձնիքում հաստատված գաղթականությունը։ Հին Աղձնիքը և, մասնավորապես, այժմյան Սասունը, ինչպես մատնանշված է իմ «Տիգրան Երկրորդը և Հռոմը» աշխատության մեջ (էջ 98)*, գտնվել է ամենահին ժամանակներից սկսած ո՛չ թե Ծոփաց երկրի մեջ, ինչպես այդ կարծում են Հյուբշմանը և Մարկվարտը[2], այլ եղել է առանձին շրջան և գտնվել է Մեծ Հայքում։ Այդտեղից էր, գլխավորապես, արմենական գաղթականությունը տարածվել դեպի հյուսիս, իջել Տարոնի դաշտը և, առաջ շարժվելով Արածանի գետի հովիտներով՝ անցել էր այժմյան Աղրի-Դաղ լեռնաշղթան ու գրավել նաև Արարատյան դաշտը։

Ուշագրավ է առանձնապես այն, որ հայերի նախահայրերի գաղթի ու տարածման ուղին ցույց է տրված նաև Մար Աբասի ու Խորենացու մոտ Վանա լճի ու Տավրոսյան լեռների հարավակողմից դեպի հյուսիս՝ դեպի Տարոն ու Հարք և այնտեղից դեպի Այրարատ։ Արդ՝ ի նկատի ունենալով, որ այս խնդրում հայկական աղբյուրների վկայությունները հիմնականում համապատասխանում են Ստրաբոնի հաղորդած վերոհիշյալ տեղեկություններին՝ կարելի է ըստ իս հավանական համարել, որ Հայկի ու նրա հաջորդների մասին առասպելական հին ավանդությունը ունի պատմական որոշ հիմքեր։

Այդ ավանդությունը կարևոր եմ համարում մեջ բերել համաձայն Խորենացու տված ընդարձակ վկայության։

Խորենացի, գիրք Ա, գլ. Ժ և ԺԲ, էջ 33 և 37—38 (Տփղիս, 1913)՝

«Հայկը, չկամենալով հնազանդել նրան [Բելին]՝ իր Արմանյակ որդու Բաբելոնում ծնվելուց հետո, չվում գնում է Արարատի երկիրը[3], որը գտնվում էր հյուսիսային կողմերում՝ իր որդիների,

[1] Տե՛ս Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 14—16։

* Տե՛ս նաև սույն հատորում, էջ 493 խմբ.

[2] Տե՛ս Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա, 1907, էջ 77. Markwart, Eranschahr, Berlin, 1901, էջ 178։

[3] Այս վկայության մեջ հիշատակված «Երկիրն Արարադայ», ինչպես հայտնի է, գտնվում էր Կորդվաց աշխարհում. Համեմատե Fr. Murad, Ararat und Masis, Heidelberg, 1901, էջ 26—30։

դուստրների և որդիների որդիների հետ, որոնք զորավոր մարդիկ էին՝ թվով մոտ երեք հարյուր հոգի, ու նաև այլ ընդոծինների ու իրեն միացած մարդկանց հետ և բոլոր իր ունեցվածքով։ Նա գնում բնակվում է լեռան մի ստորոտի մոտ դաշտավայր տեղում, ուր արդեն հաստատվել ու ապրում էին սակավաթիվ մարդիկ, որոնք տարածվել էին այստեղ նրանից առաջ։ Հայկը սրանց հնազանդեցնում է իրեն ու այնտեղ շինում է բնակության ու կալվածների տեղեր և իբրև ժառանգություն տալիս է Արամանյակի որդուն՝ Կադմոսին։ Այս արդարացնում է հիշատակված անգիր հին զրույցները։

Բայց ինքը, ասում է [Մար Աբասը], մյուս տնեցիների հետ գնում է դեպի հյուսիս-արևմուտք և գալիս բնակվում է մի բարձրավանդակ դաշտի մեջ և լեռնադաշտի անունը կոչում է Հարք, ցույց տալով դրանով, որ այստեղ բնակվողները հայրերն են Թորգոմի տան սերունդի։ Շինում է նաև մի գյուղ և կոչում է իր անունով Հայկաշեն։ Հիշվում է և այստեղ [Մար Աբասի] պատմության մեջ՝ թե այս դաշտի հարավային կողմում մի երկայնանիստ լեռան մոտ դեռ առաջուց բնակվում էին սակավաթիվ մարդիկ, որոնք ինքնակամ հնազանդվեցին դյուցազնին։ Արդարացնում է և այս հիշատակված անգիր զրույցները։ ....... Սրանից հետո [Հայկը], ապրելով դարձյալ բավական տարիներ՝ մեռնում է և հանձնում ամբողջ տոհմը իր Արամանեկ որդուն։ ........ Իսկ Արամանեկը, վերցնելով բոլոր բազմությունը՝ գնում է հյուսիս-արևելք և գալիս իջնում է բարձրագագաթ լեռներով շրջապատված մի խոր դաշտավայր, որի միջով արևմուտքից անցնում էր կարկաչասահ մի գետ»։

[«Որում ոչ կամեցեալ հնազանդ լինել Հայկայ, յետ ծնանելով զորդի իւր զԱրամանեակ ի Բաբելոնի՝ չու արարեալ գնայ յերկիրն Արարադայ, որ է ի կողմանս հիւսիսոյ, հանդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք, թուով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք և եկօք յարեցելովք ի նա և բոլոր աղխիւ։ Երթեալ բնակէ ի լեռնոտին միում ի դաշտավայրի, յորում սակաւք ի մարդկանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին. զորս հնազանդ իւր արարեալ Հայկ՝ շինէ անդ տուն բնակութեան կալուածոց և տայ ի ժառանգութիւն Կադմեայ որդւոյ Արամանեկայ։ Այս արդարացուցանէ զանգիր հին ասացեալ զրոյցս։

Եւ ինքն խաղայ, ասէ, այլով աղխիւն ընդ արեւմուտս հիւսիսոյ. գայ բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտին Հարք, այս ինքն թէ հարք են աստէն բնակեալք՝ ազգի տանն Թորգոմայ։ Շինէ և գիւղ մի, և անուանէ յիւր անուն Հայկաշէն։ Յիշի և աստանօր ի պատմութեանս՝ ի հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ, առ երկայնանիստիւ միով լերամբ, բնակեալ յառաջագոյն արք սակաւք, ինքնակամ հնազանդեալ դիւցազինն։ Արդարացուցանէ և այս զասացեալ զրոյցս անգիրս։ ...Յետ որոյ կեցեալ և այլ ևս ամս ոչ սակաւս՝ մեռանի, յանձն առնելով զբովանդակ ազնն Արամանեկայ որդւոյ իւրում։ ...Իսկ Արամանեկայ առեալ զամենայն բազմութիւնն՝ խաղայ յարևելս հիւսիսոյ, և երթեալ իջանէ ի խորին դաշտավայր մի, ի բարձրագագաթանց պարապեալ լերանց, գետոյ կարկաչասահի յարևմտից ընդ մէջ անցանելով»]։

Խորենացու այս վկայության մեջ հայ ժողովրդի նախահայրերի հնագույն գաղթավայրերը ցույց են տրված, ինչպես տեսնում ենք, երեք մեծ լեռների ստորոտներում, որոնք համարվել են Նոյի տապանի լեռներ և անվանվել են Արարատ կամ Մասիս[1]։ Այդ հին գաղթավայրերն են հաջորդական կարգով.

1. Տավրոսյան լեռնաշղթայի հարավ-արևելքում գտնվող Քարդու-Արարադ լեռան ստորոտի մոտ դաշտավայրը.

2. Սիփան կամ Նեխ-Մասիք լեռան մոտ բարձրավանդակ լեռնադաշտը, որ կոչվում է Հայք.

3. Մեծ Մասիս լեռան ստորոտի մոտ գտնվող Արարատյան դաշտավայրը։

Մար-Աբասյան ավանդության մեջ կա մի հետաքրքիր կետ ևս, որ ուշադրության չէ առնվել։ Ըստ այդ ավանդության Արարատյան դաշտը գաղթել ու գրավել էր ո՛չ թե ինքը Հայկ նահապետը, այլ նրա որդին՝ Արմենակը հոր մահից հետո։ Շատ պարզ է, ուրեմն, որ Հայկի անունով Հայք են նախապես կոչվել Վանա լճի շուրջը գտնվող այն շրջանները, ուր բնակություն էր հաստատել ինքը Հայկ նահապետը իր տոհմով։ Այդ միանգամայն պարզ է Մար-Աբասյան աղբյուրից քաղված Սեբեոսի Պատմության առաջին գլխի հետևյալ վկայությունից։

Սեբեոս, գլ. Ա, էջ 3 (Երևան, 1939)՝

---

[1] Համեմատե Fr. Murad, Ararat und Masis, էջ 30 եվ. և Markwart, Südarmenien und die Tigrisquellen, Wien, 1930, էջ 202—232։

«Եվ ապա Հայկը տվեց այն [Քարդու-Արարադի երկիրը] իբրև կալված ժառանգության իր Կադմոս թոռին՝ Արամենակի որդուն։ Եվ ինքը չվեց գնաց այնտեղից ևս դեպի հյուսիսակողմը ու բնակություն հաստատեց մի բարձրավանդակ դաշտավայրի մեջ և այդ դաշտի անունը կոչվեց Հարք՝ հարանց անունով։ Իսկ երկրի անունը նույն պատճառով կոչվեց Հայք, որովհետև նրա մեջ էին ապրում հայազգիները»։

[«Եւ ապա ետ զնա Հայկն կալուած ժառանգութեան Կադմեայ թոռին իւրում որդւոյն Արամենակայ։ Եւ ինքն չուեաց գնաց անտի ևս ի հիւսիսակողմն և չոգաւ բնակեցաւ ի բարձրաւանդ դաշտավայրի միոջ. և կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք, յանուն Հարցն։ Իսկ երկիրն ըստ նմին պատշաճի կոչեցաւ անուն Հայք, որ են հայազամբք հանդերձ»]։

Որ իսկական Հայք համարվել է ըստ Մար-Աբասյան ավանդության, գլխավորապես, Հարքը[1], Տարոնը և Աղձնիքը, որոնք, ինչպես, արմենական գաղթականության հնագույն գաղթավայրերն էին՝ այդ խիստ կարևոր մի նշում է, որովհետև, ինչպես այժմ արևելագիտական նորագույն ուսումնասիրությունները ցույց են տալիս, հենց ճշտիվ Վանա լճի շուրջը գտնվող այդ շրջանները հիմնական մասերն էին՝ խեթական արձանագրություններում հիշատակված Հայասա (Hayasa) երկրի։ Թեև արևելագետներից շատերը Հայասայի տեղը ենթադրում են Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմուտքում գտնվող Բարձր Հայքում[2], սակայն խեթական համապատասխան արձանագրությունների վկայություններից, որ մեջ են բերված Ֆորրերի մոտ՝ դժվար չէ հետևցնել, որ Հայասա է անվանվել, գլխավորապես, Վանա լճի արևմտակողմում ու հյուսիսակողմում գտնվող երկիրը։ Խեթերի թագավոր Մուրշիլ Բ-ը, ինչպես մատնանշել է հենց ինքը Ֆորրերը[3], երբ 1335 թվին (մեր թվ. ա.) արշավանք էր սկսել

---

[1] «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» իմ աշխատության մեջ (էջ 108—112) ես ցույց էի տվել, որ հայերի հին գաղթավայր համարված Հարքը համապատասխանում է Պլինիուսի հիշատակած Archene երկրին, որի մեջ գտնվել է Պեվտինգերյան քարտեզի Arachia կայարանը։

[2] *Ed. Meyer*, Geschichte des Altertums, II, I Abt., էջ 459. *А. Захаров*, Хетты и хеттская культура, стр. 105 և ուրիշ.։

[3] Տե՛ս Ա. Խաչատրյան, *Հայաստանի սեպագրական շրջանի քննական պատմություն*, Երևան, 1933, էջ 41—42։ Համեմատե *E. Forrer* und *Ungnad*, Alzi Reallex, der Assyriologie, I, 1828, էջ 89։

Հայասա-Ազզիի դեմ՝ իր զորքերի համար հավաքավայր էր նշանակել Ենգալավան (հավանորեն, Ingilena, հուն. 'Ιγγηληνή հայ. Անգեղ, այժմյան էգիլ) և այստեղից Ալզի-Աղձնիքի վրայով գնացել էր դեպի Վանա լիճը, որի ափին գտնվում էր Հայասա-Ազզիի[1] առաջին քաղաքը։

Հիմնվելով խեթագիտության նոր տվյալների վրա՝ գերմանական գիտնական Կրեչմերը մատնացույց է արել, որ Հայքը պարզապես նույնն է, ինչ որ Հայասան և որ հայ ժողովրդի անունը նախարմենական այն ցեղի անունն է, որը ժամանակի ընթացքում ձուլվել էր Հայասա-Հայք գաղթած հնդեվրոպական արմենների հետ։ Հայ ժողովրդի նախահայրերն են, ուրեմն, ո՛չ միայն արմենները, այլև ոչ-հնդեվրոպական այդ ցեղը, որը հաստատվել էր Հայաստանի վերոհիշյալ շրջաններում խալդ-ուրարտացիներից առաջ։ Կրեչմերի բացատրությամբ, Հայասա անվան-աս վերջավորությունը ծանոթ է իբրև փոքրասիական ածանց և «Հայա-սա»-ն նշանակում է, ինչպես և «Հայա-ստան»-ը պարսկական-ստան ածանցով՝ «հայերի երկիր»։ Հայասայի արմատն է ըստ Կրեչմերի հայա- կամ ավելի ճիշտ հայո-(Հայք, հայոց), որ նախաարմենական վերոհիշյալ ցեղի անունն է և համապատասխանում է հունական պատմագիրների հիշատակած Choi, Chai, Chaoi ժողովրդի անվան (տե՛ս Հեկատեյոս՝ Ստեփանոս Բյուզանդացու աշխարհագրական բառարանում և Դիոդորոս, XIV, 29)[2]։

Կրեչմերի ենթադրությունը Հայք, Հայաստան ու Հայասա անունների նույնության մասին, որ համապատասխանում է Մար-Աբասյան վերոհիշյալ ավանդությունը՝ կարելի է ըստ իս համարել հավանական[3]։

Պարզվում է ըստ այսմ, որ հայ ժողովրդի կազմավորման ընթացքում եկվոր արմենների հետ համաձուլվել են ո՛չ միայն խալդերը, ինչպես սովորաբար ենթադրվել է, այլև Հայկական լեռնաշխարհի նախախալդյան հնագույն ցեղերը և, գլխավորապես-

[1] Ըստ Götze-ի Ազզին մի մասն էր Հայաստանի, տե՛ս Խաչատրյան, էջ 42։ Ազզին, ըստ երևույթին, համապատասխանում է սարեստանյան և ուրարտական արձանագրությունների Ալզի—Ալզինի-ին, այսինքն՝ հին Աղձնիքին։

[2] Տե՛ս *Paul Kretschmer*, Der nationale Name der Armenier Haikh, Anzeiger der Akademie der Wissenschaften in Wien, Philos-hist. Klasse, **1932, № I—VII, էջ 1—9. համեմատե նաև «Հանդէս ամսօրեայ», 1933, հուլիս-օգոստոս, էջ 429—432։**

[3] Հայք և Հայասա անունների նույնությունը Կրեչմերից դեռ առաջ մատնանշել է գերմանական գիտնական Կարլ Ռոթը, տե՛ս նրա հոդվածը „Die Bedeutung des armenischen“, «Հանդէս ամսօրեայ», 1927, Թ. 11—12, էջ 743։

*Հայասայի ո՛չ-հնդեվրոպական բնակիչները, որոնցից արմենները ժառանգել են իրենց ու իրենց երկրի հայ ու Հայաստան անունները։*

*Հին Հայաստանի ու հարևան երկրների նախախալդյան ցեղերի ու լեզուների խնդիրը այժմ, ինչպես վերև ասացինք, հետզհետե լուսաբանվում է խեթագիտական նոր ուսումնասիրություններում։ Բացի խալդերից, որոնք հնդեվրոպական ծագում չունեն, Մերձավոր Արևելքում ապրել են, ինչպես այժմ պարզվում է, երկու հին նույնպես ոչ-հնդեվրոպական ժողովուրդներ՝ խաթերը կամ նախախեթերը և խուրրիները (խարրիները) կամ սուբարիները։ Այս հին ժողովուրդների լեզուները ըստ Ն. Մառի տերմինաբանության պատկանում են հաբեթական լեզվախմբին, որ համարվում է ազգակից հինկովկասյան լեզուներին։*

*Հայերը և հայերեն լեզուն, ինչպես երևում է նորագույն ուսումնասիրություններից, պատմական բավական բարդ անցյալ ունեն։ Արմենների Հայասա-Հայաստան գաղթելուց հետո նրանց մարդաբանական տիպը և լեզուն շարունակել են, անտարակույս, այստեղ ևս փոփոխություն կրել միաձուլման ընթացքում տեղական հին բնակչության հետ, որը պատկանել է, գլխավորապես, խաթական, խուրրիական և խալդական ցեղախմբերին։ Այս ազգացեղական շերտերի ճշգրիտ ու հաստատուն լուսաբանումը, կարելի է հուսալ, որ մոտ ապագայի խնդիր է։ Օրավուր զարգացող խեթագիտությունը հնարավորություն կտա, հավանորեն, ո՛չ միայն որոշելու Հայկական լեռնաշխարհի հնագույն բնակչության զանազան ցեղախմբերը, այլև պարզելու նրանց լեզուները, կուլտուրան ու պատմությունը։*

*Արմենական գաղթականության և Ուրարտական երկիրների տեղական բնակչության միաձուլումը տեղի էր ունեցել, իհարկե, աստիճանաբար, երկար դարերի ընթացքում։ Այդ ձուլման միջոցին եկվոր արմենների հնդեվրոպական լեզուն, բնականաբար, ինչպես ասացինք, ենթարկվել էր տեղական լեզուների ազդեցությանը։ Ուշագրավ է, սակայն, որ արմեներեն լեզվի վրա, ինչպես ցույց են տալիս լեզվագիտական նորագույն աշխատությունները, խիստ մեծ է եղել ոչ այնքան խալդական, որքան նեսիտ-խեթերենի և հին նախախեթական լեզուների ազդեցությունը[1]։ Մատնանշում*

---

[1] *Տե՛ս* Գր. Ղափանցյանի *աշխատությունները՝* Chetto-armeniaca, *Երևան, 1931—33,* „К происхождению национального Термина Kharthveli“ *Գիտական աշխատություններ Երևանի պետ. Համալսարանի, հատոր XI, 1939 և այլն։*

են, բացի այդ, որ եկվոր արմենները, որոնք կուլտուրապես ավելի ցածր մակարդակի վրա էին կանգնած, քան տեղացիները, ենթարկվել են սրանց զորեղ ու գերազանց կուլտուրայի ազդեցությանը։ Արմենները ժառանգել էին տեղացիներից, ինչպես ենթադրում է Ն. Մառը, նրանց խաղաղ կուլտուրան՝ երկրագործությունը, մետաղագործությունը, արհեստները, առևտրի հիմնական տարրերը և կրոնական պաշտամունքները[1]։ Պատկանյանը, Նիկոլսկին և Ադոնցը ցույց են տվել նմանապես, որ Հայկի, Բելի, Արամի, Արա Գեղեցկի, Շամիրամի և Անգեղ Տորքի դյուցազնական առասպելները, որոնք պահպանվել են Մար-Աբասից քաղված Մովսես Խորենացու Պատմության մեջ՝ նախաարմենական ծագում ունեն, պատկանում են մասամբ Ուրարտուի բնակչության կրոնաառասպելական ավանդությունների շարքին, մասամբ էլ իրենց մեջ պահպանել են աղոտ ու հեռավոր հիշողություններ Ուրարտուի պատմական անցյալի[2]։

Մեր այս դիտողություններից երևում է, որ արմենների թե՛ լեզվի և թե՛ կուլտուրայի վրա խիստ մեծ է եղել Հայկական լեռնաշխարհի նախաարմենական բնակչության ազդեցությունը և որ այժմյան հայերի նախահայրերն են ո՛չ միայն հնդեվրոպական արմենները, այլև խալդերը և Ուրարտուի տեղական այլ հնագույն ցեղերը։

---

[1] Տե՛ս *Н. Я. Марр*, Кавказский культурный мир и Армения, Петроград, 1915, էջ 30։

[2] *К. Патканов*, Ванские надписи и значение их для истории Передней Азии, СПб. 1881, *М. Никольский*, Клинообразные надписи Ванских царей, Москва, 1893. Ն. Ադոնց, Տորք աստված հին հայոց, Հուշարձան, Վիեննա, 1911, էջ 389—394։

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ԱՐՄԵՆԻԱՆ ԻԲՐԵՎ ԴԱՇՆԱԿԻՑ ՄԵԴԱՑԻՆԵՐԻ

1. Արժանահավատ աղբյուրներն այս ժամանակաշրջանի պատմության։— 2. Մեդացիները և նրանց զորեղացումը Կիաքսարի ժամանակ։—3. Մեդական մեծ թագավորությունը իբրև ցեղերի ու երկիրների դաշնակցություն։—4. Արմեններն իբրև մեդացիների դաշնակիցներ։—5. Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի տեղեկությունները Արմենիայի ու նրա թագավորի մասին.—Արմենիան վասսալ ու դաշնակից Աժդահակի և ապա Կիաքսարի.—Տիգրան և Սաբարիս.—Արմենների թագավորի զինվորական ուժը և դրամական հարստությունը.—Արմենների մշտական կռիվները խալդայների հետ.—Նրանց դաշտային ու լեռնային երկրամասերի տընտեսական կապը.—Արմենների ու խալդայների կնքած դաշինքը.—Նրանց միաձուլումը։—6. Դավթի բանաստեղծական երկը «մարաց և հայոց» պատերազմի մասին։—7. Արմենների գրաված տերրիտորիան այս ժամանակաշրջանում.—Նախկին սխալ կարծիքներն այդ մասին։ 8. Արմենների հնագույն թագավորությունը.—Ինչո՞ւ Տիգրան և Սաբարիս անունները իրանական են.—Իրանական ազդեցությունը արմենների լեզվի ու կուլտուրայի վրա սկսվել էր արդեն հնագույն այս շրջանում։

Հայ ժողովրդի պատմությունը սկսվում է հնդեվրոպական արմենների Հայաստանում, իրենց նոր հայրենիքում, հաստատվելուց հետո 7-րդ կամ 6-րդ դարերում մեր թվականությունից առաջ։ Նրա պատմության ամենահին շրջանը մնում է առայժմ մութ ու գրեթե անհայտ։

Բանասիրական քննադատությունը պարզել է արդեն, որ Մովսես Խորենացու մոտ Մար-Աբասյան աղբյուրից քաղված հայ ժողովրդի նախնական պատմությունը կարելի է առառավելն ընդունել իբրև առասպելախառն մի ավանդություն, որը շարադրված է քրիստոնեական դարերում։ Ուստի և միակ արժանահավատ աղբյուրն այդ ժամանակաշրջանի պատմության մնում են այն աղքատիկ ու հատուկտոր տեղեկությունները, որ գտնվում են Հե-

բողոտսի ու Քսենոփոնի երկերում ու պարսկական բևեռագիր արձանագրություններում։

7-րդ դարում մեր թվականությունից առաջ, կիմմերների ու սկյութացիների արշավանքների հետևանքով, ինչպես վերև ասացինք, Առաջավոր Ասիայի քաղաքական կյանքում տեղի ունեցան մեծ փոփոխություններ։ Ջախջախված ու ուժասպառ եղած հին մեծ պետություններին հաջորդեցին նոր պետություններ և միաժամանակ տեղի ունեցան զանազան ժողովուրդների տեղաշարժումներ ու գաղթումներ և էթնիկական նոր վերախմբավորումներ։

Հենց այս մեծ անցքերի ժամանակ հետզհետե կազմակերպվեց ու սկսեց ուժեղանալ յոթերորդ դարում Մեդական հզոր թագավորությունը։

Մեդական ցեղերը, որոնք ապրում էին Իրանական բարձրավանդակի հյուսիս-արևմուտքում՝ ասորեստանյան բևեռագիր արձանագրություններում հիշատակվում են սկսած իններորդ դարից (նախքան մեր թվ.)։ Այդ մանր ու բաժան ցեղերը, ինչպես վկայում է Հերոդոտոսը (I, 100—102), յոթերորդ դարի սկզբներում համախմբեց ու կազմակերպեց իբրև ցեղերի դաշնակցություն Դեյոկեսը։ Դաշնակցության կենտրոն դառավ Եկբատանան՝ այժմյան Համադանը։

Յոթերորդ դարի վերջին քառորդում (նախքան մեր թվ.), Կիաքսարի իշխանության ժամանակ, Մեդիան այն աստիճան զորեղացավ, որ վտանգավոր ախոյան դառավ հզոր Ասորեստանի։ 605 թվին Կիաքսարը Բաբելոնիայի օգնությամբ վերջ դրեց Ասորեստանի թագավորության, գրավելով նրա արևմտյան շրջանները և նրա վերջին ապաստանը՝ Կարքեմիշ քաղաքը։ Ասորեստանի Նինուե մայրաքաղաքը դաշնակից զորքերը հիմնահատակ քանդել էին և հավասարեցրել էին հողի հետ արդեն 612 թվին։ Ասորեստանի նվաճումից հետո, վեցերորդ դարի սկզբներին (նախքան մեր թվ.), մեդացիները, հարձակվելով նաև Ուրարտուի վրա՝ հիմնովին կործանեցին նրա Տուշպա մայրաքաղաքը (Տոսպ=Վան)[1] և հպատակեցրին իրենց նույնպես և այս թագավորությունը։ Մոտավորապես 590 թվին նրանք արդեն կարողացել էին մտնել Փոքր Ասիա և ուզում էին գրավել նաև ամբողջ Փոքր Ասիան։ Բայց այստեղ նրանց համար դիմադրություն ցույց տվեց լյուդիացիների հզոր պետությունը, որը կազմվել էր

[1] Տե՛ս Б. Б. Пиотровский, Урарту, Ленинград, 1939, էջ 35։

Հալիս գետի արևմտակողմում և խիստ ուժեղացել էր յոթերորդ դարում։ Մեծ ճակատամարտը երկու մեծ թագավորությունների միջև տեղի ունեցավ Հալիս գետի մոտ։ Սակայն արևի խավարման պատճառով (28 մայ. 585 թ.) ճակատամարտն ընդհատվեց և միջնորդությամբ Կիլիկիայի ու Բաբելոնիայի թագավորների հաշտություն կնքվեց, որի համաձայն Մեդիայի ու Լյուդիայի սահման դառավ Հալիս գետը։

Ինչպես տեսնում ենք, վեցերորդ դարի առաջին կիսում (մինչև մեր թվ.) Մեդիան դառել էր լայնածավալ մեծ թագավորություն։ Նրա կազմի ու ազդեցության շրջանի մեջ էին մտնում Իրանի մեծագույն մասը Պարսքի հետ միասին, բուն Ասորեստանը, Ուրարտուն և Փոքր Ասիայի արևելյան շրջանները մինչև Հալիս գետը։

Մեդական թագավորությունը կենտրոնացած ու միասնական պետություն չէր, այլ, պարզապես, համադաշնակցություն էր նվաճված ու հպատակեցված ցեղերի ու երկրների, որոնք պարտավոր էին իրենց նոր տերերին տուրք վճարել և նրանց զորք տալ պատերազմների ժամանակ։ Մեդացիների գերիշխանությանը ենթարկված ժողովուրդներն ու երկրները պահպանում էին իրենց կրոնը, լեզուն, օրենքները և իրենց ներքին ինքնուրույն կազմակերպությունը։

Ըստ երևույթին, երբ Մեդիայի Կիաքսար թագավորը արշավել ու գրավել էր Ուրարտուն և Փոքր Ասիայի արևելյան մասերը՝ հնդեվրոպական արմենները Փոքր Հայքից ու Կապադովկիայից արդեն եկած են եղել Արածանիի ու Տիգրիս գետի հովիտները։ Վեցերորդ դարի հենց առաջին կիսում նրանք հիշատակված են Քսենոփոնի մոտ իբրև խալդ-ուրարտացիների հարևաններ և իբրև հպատակ ու դաշնակից ժողովուրդ Մեդական թագավորության։ Այս տեղեկությունները հաղորդված են սակայն ո՛չ թե Քսենոփոնի պատմական կամ աշխարհագրական երկերում, այլ նրա «Կյուրոսի կրթությունը» (Κύρου παιδεία) քաղաքական վեպում[1] (տե՛ս գիրք II, գլ. 4 և գր. III, գլ. 1—3), որի մեջ Կյուրոս Մեծը դուրս է բերված որպես արդար ու բարի իշխանավորի տիպար։

Պատմաբաններից ոմանք ոչ մի արժեք չեն տալիս այդ վեպին իբրև պատմության աղբյուրի։ Սակայն անժխտելի է բատ-

---

[1] Գրաբար թարգմանել է Հ. Հ. Գարբոճյանը—«Քսենոփոնտեայ Կիւրոսի խրատու պատմութիւնք», Վիեննա, 1843։

իս, որ նրա մեջ հատկապես արմեններին վերաբերյալ տեղեկությունները չեն կարող լինել մտացածին ու հնարովի և իրենց մեջ որոշ չափով արտացոլում են պատմական իրականությունը։

Քսենոփոնի այդ երկում արմենների մասին տեղեկությունները վերաբերում են այն ժամանակաշրջանին, երբ Մեդական թագավորությունը հարկադրված էր զիջել իր գերիշխանությունն Անշանի թագավոր Կյուրոսին (558—550 թ. նախքան մեր թվ.), որը առաջ մեդացիների վասսալն էր։ Քսենոփոնն իր վեպի մեջ պատմում է, որ մեդացիների Աժդահակ թագավորը մեռել էր խաղաղ մահով և նրան հաջորդել էր որդին՝ Կիաքսար Բ-ը, իսկ սրանից հետո իբր թե Մեդական թագավորությունը խաղաղ կերպով ժառանգել էր Աքեմենյան Կյուրոսը։ Այս տեղեկությունը, ինչպես հայտնի է, ճիշտ չէ։ Բաբելոնական ժամանակագրական մի արձանագրությունից, Նաբոնիդի գլաններից, հայտնի է, որ Կյուրոսը պատերազմել էր Աժդահակի դեմ և սրան հաղթել էր մեդական զորքի ապստամբության պատճառով, որը կալանավորել էր Աժդահակին և նրան հանձնել էր Կյուրոսին (550 թ. մեր թվ. առ.)։ Այնուհետև մեդացիները հենց իրենք մտել էին կամովին պարսկամեդական նոր դաշնակցության կազմի մեջ և պարսիկների հետ միասին դառել էին իշխող ժողովուրդ։

Քսենոփոնը իր վերոհիշյալ վեպի մեջ պատմում է, որ Կիաքսար Բ-ի և Կյուրոս Մեծի ժամանակ Արմենիան եղել է առանձին փոքր թագավորություն՝ դաշնակից մեդացիների ու պարսիկների։ Նա հիշում է նույնիսկ արմենների թագավորի երկու որդիների անունները,—մեծի անունը՝ Տիգրան և փոքրինը՝ Սաբարիս [Σάβαρις, հավանորեն, Շավարշ]։ Քսենոփոնի ասելով, արմենների դեմ պատերազմ էր վարել Կիաքսարի հայրը՝ Աժդահակը։ Սա՝ հաղթելով արմենների թագավորին՝ պարտավորեցրել էր նրան, որ իրեն տուրք տա ու զորք և չշինի ամրություններ։ Արմենների թագավորի զինվորական ուժը, պատմում է Քսենոփոնը, քառասուն հազար հետևազոր էր և ութը հազար հեծելազոր։ Իսկ նրա կարողությունը՝ այն խնայողությունների հետ, որ ստացել էր իր հորից՝ ավելի քան 3000 տաղանդ էր, հաշված արծաթ դրամով (բաբելոնական-պարսկական տաղանդի կշիռը մոտ 32 կիլոգրամ էր, իսկ ատտիկականինը՝ մոտ 26 կիլոգրամ)[1]։

---

[1] Ընդունելով բաբելոնական-պարսկական տաղանդի արծաթի կշիռը մոտ 32 կիլ. 640 գր.՝ արմենների թագավորի հարստությունը իր կշռով հավասար կլինի

*Արմենների թագավորը, ինչպես պատմում է Քսենոփոնը, լսելով որ Մեդիայի ու Բաբելոնիայի միջև պատերազմ է ծագել՝ ինքը ևս սկսում է պատերազմի պատրաստություն տեսնել մեդացիների դեմ և հակառակ դաշնադրության մերժում է տուրք տալ և օգնական զորք մեդացիների թագավորին։ Այնուհետև Կյուրոսը՝ Կիաքսարի զորքերի գլխավոր հրամանատարը, որ արմենների թագավորի Տիգրան որդու մոտ ընկերն էր ու որսակիցը՝ ուղարկվում է հեծյալ ու հետևակ զորքով Արմենիա, որպեսզի հնազանդեցնե այդ ապստամբ երկիրը և արմեններից պահանջե զորք և փող։*

*Քսենոփոնը վիպական հատուկ ոճով մանրամասն նկարագրում է, թե ի՛նչպես Կյուրոսը մտնում է Արմենիա, գերում է թագավորի ընտանիքը և ստիպում նրանց անձնատուր լինել։ Բայց արքայորդի Տիգրանի խնդիրքով նա նորից արմենների թագավորի հետ բարեկամություն է հաստատում և պատերազմի համար վերցնում է նրա զորքի կեսը՝ չորս հազար ձիավոր և քսան հազար հետևակ։ Զորքի մյուս կեսը նա թողնում է երկրում, որովհետև արմենները շարունակ պատերազմ էին մղում հարևան խալդերի դեմ, որոնք Քսենոփոնի վեպում անվանված են խալդայներ* (χαλδαῖοι)*։*

*Քսենոփոնի «Կյուրոպեդիա» վեպի այս տեղեկությունները միակ հիմնական վկայություններն են արմենների հնագույն անցյալի մասին վեցերորդ դարի առաջին կիսում (մեր թվ. առ.)։ Տեղեկությունների ոճից ու բովանդակությունից երևում է, որ վեպի այս մասում Քսենոփոնին կարող էին աղբյուր ծառայած լինել տեղական ավանդությունները և հիշողությունները, որոնց նա հնարավորություն ուներ ծանոթանալու իր ու հույն զորքերի հայտնի նահանջի ժամանակ Արմենիայի միջով 401—400 թթ. (նախքան մեր թվ.)։*

*Որքան էլ կասկածանքով վերաբերվենք վերոհիշյալ վկայությունների մանրամասնություններին՝ ստույգ ու պատմական կարող ենք համարել այն, որ վեցերորդ դարի սկիզբներին արմենները, որոնք դաշնակից էին ու հպատակ մեդացիների թագավորին՝ արդեն անցած են եղել Եփրատ գետը և գտնվել են պատմական Հայաստանի հարավ-արևմուտքում։ Կարելի է նմանապես են-*

---

*3000×32,640=97.920 կիլ. արծաթ դրամի։ Իսկ եթե արծաթի և ոսկու հարաբերությունը ենթադրենք այդ ժամանակ 1:10, որ հավանական է, այդ հարստության դրամական արժեքը համապատասխան կլինի մոտ 12 միլիոն ոսկի ռուբլու։*

*թադրել, որ նրանք արդեն միացած են եղել և ունեցել են իրենց ցեղապետ-առաջնորդը, որին Քսենոփոնն անվանում է թագավոր* (βασιλεύξ)

*Միանգամայն պատմական պետք է համարել և առանձնապես հետաքրքրական Քսենոփոնի հաղորդած տեղեկությունները այն տնտեսական կապի մասին, որ գոյություն է ունեցել արմենների նոր երկրում դաշտային բնակավայրերի և լեռնային արոտատեղերի մեջ։ Քսենոփոնը վկայում է, որ դաշտային շրջաններում ապրող արմենները խիստ շահագրգռված էին, որպեսզի խալդերը նրանց թույլ տան օգտվելու լեռնային արոտավայրերից, իսկ չքավոր ու սակավահող խալդերը, որոնք ապրում էին լեռներում՝ կարիք ունեին այն անմշակ ու արգավանդ հողերի, որոնք գտնվում էին դաշտավայրերում, որ գրավել էին արմենները։*

*Քսենոփոնի վկայություններից երևում է, որ մեդացիները և պարսիկները, օգտվելով երկրի ներքին այդ երկպառակություններից՝ առանց մեծ դժվարության կարողացել էին հաստատել այստեղ իրենց իշխանությունը և այնուհետև ապահովել էին նախկին բնակիչների և եկվոր նորաբնակների խաղաղ համակեցությունը։ Եվ նրանք, պատմում է Քսենոփոնը, դաշինք կապեցին և համաձայնության եկան, որ իրավունք ունենան իրար հետ խնամիանալու ու իրար աղջիկ տալու, մշակելու միմյանց հողերը, օգտվելու միմյանց արոտատեղերից և ընդհանուր ուժերով պաշտպանվելու թշնամիներից, եթե իրենցից մեկը վտանգի ենթարկվեր։*

*Քսենոփոնի հաղորդած տեղեկությունները հարևան արմենների ու խալդերի կենակցության ու հաշտության մասին այնքան կարևոր են ու հետաքրքիր, որ կարևոր եմ համարում թարգմանաբար մեջ բերել ամբողջությամբ։*

*Քսենոփոն, «Կյուրոպեդիա», գիրք III, գլ. 2, 17—24՝*

*«Իսկ խալդայները եկան և խնդրեցին Կյուրոսին, որ իրենց հետ հաշտություն կնքե։ Եվ Կյուրոսը հարցրեց նրանց. «Արդյոք ճիշտ չէ՞, ո՛վ խալդայներ, որ դուք այժմ նրա համար եք խաղաղություն ցանկանում, որովհետև կարծում եք, որ ավելի անվտանգ կարելի է ապրել խաղաղության դեպքում, քան պատերազմի, քանի որ մեր ձեռքն են գտնվում բարձունքները»։ Խալդայները դրական պատասխան տվին։ Եվ նա ասաց. «Ի՞նչ կասեք, եթե խաղաղության պատճառով դուք ստանաք և այլ բարիքներ»։ «Ավելի ևս,—ասացին,—կուրա-*

խանանք»։ «Արդ՝ ճիշտ չէ՞,— ասաց Կյուրոսը,— որ դուք այժմ աղքատ եք, ինչպես ինքներդ գիտեք, լավ հողերի կարիք ունենալու պատճառով»։ Նրանք հաստատեցին և այդ։ «Արդյոք չէ՞իք ցանկա,— ասաց Կյուրոսը,— որ դուք ևս վճարեիք նույնը, ինչ որ մյուս արմենները, և թույլտվություն ստանայիք մշակելու Արմենիայի հողերը, որքան որ կամենայիք»։ «Եթե մենք հավատացած լինեինք,— ասացին խալդայները,— որ նրանք մեզ չեն նեղացնելու»։

«Իսկ դու, ո՛վ արմենների թագավոր,— ասաց Կյուրոսը,— չէ՞իր ցանկա, որ քո այժմյան անմշակ հողերը դառնային պտղաբեր, եթե մշակողները համաձայնեին վճարել քեզ մոտ ընդունված տուրքերը»։ «Այդ,— ասաց արմենների թագավորը,— շատ մեծ արժեք կունենար, որովհետև խիստ կավելանար եկամուտը»։

«Իսկ դուք,— ո՛վ խալդայներ,— որ լավ սարեր ունեք, արդյոք չէ՞իք թույլ տա, որ արմեններն օգտվեն նրանցից իբրև արոտատեղերից, եթե արածացնողները ձեզ համաձայնեն վճարել արդար տուրք»։ «Մեծ օգուտ կստանայինք,— ասացին խալդայները,— առանց աշխատելու»։ «Իսկ դու,— ասաց Կյուրոսը,— ո՛վ արմենների թագավոր,— արդյոք չէ՞իր ցանկա օգտվել այս արոտներից, եթե խալդայներին մի փոքր օգուտ տալով՝ ինքդ ավելի մեծ օգուտ ստանայիր»։ «Իհարկե, կցանկայի,— ասաց արմենների թագավորը,— եթե գիտենայի, որ կարելի է անվտանգ կերպով արոտներից օգտվել»։ «Չէ՞ որ դուք անվտանգ կերպով արոտատեղերից կօգտվեք,— ասաց Կյուրոսը,— եթե գագաթները լինեն ձեզ դաշնակից»։ «Այդպես է», ասաց արմենների թագավորը։ «Այլ վկա է աստված,— ասացին խալդայները,— որ մենք անվտանգ կերպով չենք կարողանա մշակել ոչ միայն նրանց, այլև մեր հողերը, եթե գագաթները լինեն նրանցը»։ «Իսկ եթե,— ասաց Կյուրոսը,— գագաթները լինեն ձե՞ր դաշնակիցը»։ «Այդպես,— ասացին նրանք,— իհարկե, մեզ համար լավ կլինի»։ «Այլ վկա է աստված,— ասաց արմենների թագավորը,— մեզ համար լավ չի լինի, եթե սրանք նորից գագաթները ստանան, մանավանդ եթե դրանք լինեն ամրացված»։ Եվ Կյուրոսն ասաց. «Ուրեմն ես հետևյալ կերպ կանեմ՝ ձեզանից և ոչ մեկին գագաթները ես չեմ տա, այլ մենք կպահենք նրանց մեր ձեռին, և եթե որևէ մեկը ձեզա-

նից անարդարություն գործե՝ մենք անարդարություն կրողների կողմը կլինենք»։

Երբ երկու կողմն էլ այդ լսեցին՝ հավանություն տվին և ասացին, որ խաղաղությունը կարող է հաստատուն մնալ միայն այդ ձևով։ Այնուհետև բոլորն էլ իրար հավատարմության խոստում տվին և համաձայնության եկան, որ երկու կողմն էլ իրար հանդեպ կպահպանեն իրենց ազատությունը. նրանք իրավունք կունենան փոխադարձ ամուսնության, իրար հողերի ու արոտատեղերի օգտագործման և կպաշտպանեն իրար ընդհանուր ուժերով, եթե իրենցից որևէ մեկին անարդարություն արվի։ Արդ՝ այսպես կարգադրվեց այն ժամանակ ու նաև այժմ խալդայների և Արմենիայի իշխանավորների միջև կնքված այն դաշինքը դեռ մնում է անխախտ։ Այս համաձայնությունը կնքելուց հետո՝ երկու կողմն էլ հոժարությամբ շինեցին իսկույն ամրությունը, որը լինելու էր ընդհանուր, և բերին այնտեղ պաշարեղեն»։

Արմենների և խալդերի խաղաղ համակեցության հետևանքն այն եղավ, որ խալդերը և տեղական այլ ժողովուրդները հետզհետե միաձուլվեցին եկվոր արմենների հետ և հետագա դարերի ընթացքում գոյացավ այժմյան հայ ժողովուրդը։

Հետաքրքիր է ու ուշադրության արժանի, որ Աժդահակի ու Կյուրոսի ժամանակակից Տիգրանի մասին, ինչպես դժվար չէ եզրակացնել Թրակացու քերականության Անանուն հեղինակի (Պողոս մեկնիչի), ինչպես և Խորենացու վկայություններից՝ գոյություն է ունեցել բանաստեղծական մի երկ, որն Անանունի մոտ անվանված է «Դաւթեան քերթութիւն որ յաղագս Տիգրանայ» և կամ Դավթի շարադրություն «մարաց և հայոց» պատերազմի մասին, իսկ Խորենացու մոտ, որին վերջինս աղբյուր է ծառայել՝ «Ջորս հագներգութիւնս, զարգասաւորին ի բանս և զիմաստնոյն իսկ և ի մէջ իմաստնոց իմաստնագունին»[1]։ Անանունի քերականության մեկնության մեջ «Դաւթեան քերթութիւնից» բերված են հետևյալ երեք տողերը՝

---

[1] Տե՛ս իմ աշխատությունը՝ «Յունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները», Վիեննա, 1928, էջ 9 և 221—222. համեմատե նաև Ն. Ադոնց, Արուեստ Դիոնիսեայ քերականի և հայ մեկնութիւնք նորին, Պետրոգրադ, 1915, էջ 128—129, 138. նաև Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, I, գլ. ԻԱ, էջ 65։

«Եւ արդ ներգործող ի միտս երեւիւր առ խորհուրդս փողարին
Մեծոգւոյ Տիգրանայ գեղանին Տիգրանուհի
Իւր ներածեալ կողաբաղ նաև ողջամիտ աշխարհածուհի»։

Դավթի բանաստեղծական այս երկի մեջ, որը հիմնված է եղել հայ ժողովրդական երգերի վրա, ինչպես և Մովսես Խորենացու մոտ, Լուկուլլոսի ժամանակակից Տիգրան Մեծը շփոթված է Կյուրոսին ժամանակակից «Երվանդյան» կամ «Հայկազանց» Տիգրանի հետ։ Բայց ուշագրավ է, որ այս հին հեղինակներին ևս հայտնի է եղել Քսենոփոնի հիշատակած Կյուրոսին ժամանակակից Տիգրանը ու նաև արմենական կամ «Հայկազանց» թագավորության գոյությունը հնագույն այս ժամանակաշրջանում։

Ընդունելով, որ արմենները, լինելով մեղացիների ու խալդերի հարևան՝ արդեն 6-րդ դարի առաջին կիսում (նախքան մեր թվ.) կարևոր դեր են կատարել իբրև Մեդական թագավորության դաշնակիցներ՝ անհրաժեշտ է որոշել նաև արմենների գրաված այն տերիտորիան, որը Քսենոփոնի մոտ անվանված է Արմենիա։ Վերև մենք արդեն տեսանք, որ արմենների հնագույն գաղթավայրերը պատմական Հայաստանում Ստրաբոնի մոտ մեջ բերված Կիրսիլոսի և Մեդիոսի վկայություններում ցույց են տրված Հայկական լեռնաշխարհի արևմուտքում և հարավ-արևմուտքում՝ Ակիլիսենում և Սիսպիրիտիս-Ծուփրիայում (մինչև Կալաքեն ու Ադիաբեն), որը գտնվում էր հին Աղձնիքում։ Հին Ծոփքում, Աղձնիքում և Վանա լճի հարավակողմում է մատնանշված արմենների երկիրը, ինչպես ներքև կտեսնենք, նաև Հերոդոտոսի պատմության ու Քսենոփոնի «Անաբասիս»-ի կամ «Նահանջ բյուրուց» երկի մեջ։ Սակայն հակառակ հունական հին աղբյուրների այս վկայություններին պատմագիտական ու բանասիրական մի շարք երկերում[1], Խորենացու Պատմության հետևությամբ, «Հայկազանց թագավորության» կենտրոնական շրջանը մատնացույց է արվում Արարատյան դաշտում, իսկ նրա մայրաքաղաքը՝ Արմավիրում։ Նույն կարծիքին են եղել մինչև իսկ Ա. Գարագաշյանը և Գր. Խալաթյանցը, որոնք թեև ամենախիստ քննադատության են ենթարկել Խորենացու Պատմության հայկազուններին վերաբերող մասը, բայց նույնպես ընդունում են արմենների «Արարատյան թագավորության»

---

[1] Տե՛ս Kevork Aslan, Études historiques sur le peuple arménien, Paris, 1909, էջ 67. Н. О. Эмин, Армавир, см. Исследования и статьи, Москва, 1896, էջ 134 և ուրիշ։

գոյությունը մեդական-պարսկական ժամանակաշրջանում[1]։ Այս շփոթությունը, ըստ երևույթին, որոշ չափով առիթ է ծառայել այն, որ Երեմիա մարգարեի (7-րդ դ. մեր թվ. առ.) հիշած «Այրարատեան թագաւորութիւն»-ը (գլ. ԾԱ, 27) մեր հին պատմագիրները[2], և նրանց հետևությամբ նաև արդի հայագետներից շատերը՝ նույնն են համարել արմենների թագավորության հետ, մինչդեռ այդ վկայության մեջ մատնացույց է արված ո՛չ թե արմենների, այլ ուրարտացիների թագավորությունը։

Մեդական տիրապետության ժամանակ Արմենական թագավորությունը չէր կարող գտնվել Արարատյան դաշտում, որովհետև այս հնագույն ժամանակաշրջանում արմենական դաղթականությունը դեռ նոր էր տեղավորվել Ծոփքում, Աղձնիքում, մասամբ նաև Կորճայքում։

Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի վերոհիշյալ տեղեկություններից մեջ առանձնապես հետաքրքիր է և այն, որ արմենների թագավորի որդիների անունները՝ Տիգրան և Սաբարիս (=Շավարշ)՝ իրանական են[3] և ոչ արմենական։ Էմինը, հենվելով այս փաստի վրա և մատնանշելով նաև, որ Խորենացու մոտ հայկազյան Տիգրանի որդու ու մյուս հաջորդների անունները ևս (Վահագն, Ներսեհ, Զարեհ ևն), մեծ մասամբ, պարսկական են՝ ենթադրել է, որ այս ամբողջ դինաստիան, ըստ երևույթին, արմենական չէ, այլ պարսկական է[4]։

Այս ենթադրությունը չէ կարող ըստ իս ճիշտ լինել, որովհետև Քսենոփոնը, որը չորրորդ դարումն էր գրել (նախքան մեր թվ.) իր «Կյուրոպեդիա»-ն Խորենացու Պատմության համեմատ, պարզ կերպով վկայում է, որ Տիգրանը, Սաբարիս-Շավարշը և նրանց հայրը եղել են արմեններ։

Տիգրանի ու Սաբարիս—Շավարշի իրանական անունները կարելի է այլ կերպ բացատրել։ Ինչպես հայտնի է աղբյուրների վկայություններից, ցեղերի ու ժողովուրդների միավորումը Մեդական թագավորության շուրջը կատարվում էր, մեծ մասամբ, դաշնակցությամբ ու խնամությամբ։ Ուստի միանգամայն հավանական կարելի է համարել, որ մեդական ու պարսկական թագավո-

---

[1] Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմութիւն Հայոց, Ա., Թիֆլիս, 1895, էջ 53, 54, 183, 189. *Халатьянц*, Очерк истории Армении, Москва 1910, էջ 77։

[2] Համեմատե Խորենացի, I, գլ. ԻԲ, էջ 67 (Տփղիս, 1613)։

[3] Տե՛ս *Hübschmann*, Armenische Grammatik, Leipzig, 1895, էջ 61 և 87։

[4] *Н. Эмин*, Династический список Хайкидов, Москва, 1884, էջ 24—31։

րական տոհմերը իրենց ու արմենների դաշնակցությունը ամրացնելու համար աշխատել են կապվել նրանց հետ խնամիական կապերով և ամուսնացրել են արմենական թագավորների ու թագավորազունների հետ իրենց աղջիկներին։ Նման խնամությունների մասին վկայություններ ունեն ո՛չ միայն Հերոդոտոսը և Քսենոփոնը, այլև Խորենացին, որի մոտ հիշատակված է Երվանդյան Տիգրանի Տիգրանուհի քրոջ ամուսնությունը մեդացիների Աժդահակ թագավորի հետ։

Ընդունելով Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի վերոհիշյալ վկայություններն ըստ էության պատմական՝ կարելի է ըստ իս նույն այդ վկայություններից հետևցնել, որ արդեն վեցերորդ դարի առաջին կիսում (մեր թվ. առ.) արմենները, կապված լինելով մեդացիների հետ դաշնակցությամբ ու խնամությամբ՝ սկսել էին որոշ չափով ենթարկվել իրանական մշակույթի ու կենցաղի ազդեցության։

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ԱՐՄԵՆՆԵՐԸ ԱՔԵՄԵՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԱԿ

1. Կյուրոս Մեծը և պարսկական աշխարհակալության հիմնումը.—Արմենները դաշնակից Կյուրոս Մեծի։—2. Ապստամբությունները Պարսկաստանում Դարեհ Ա-ի ժամանակ.—Արմենների ապստամբությունը.—Արմենների ազատասիրությունն ըստ «Կյուրոպեդիա»-ի.—Բեհիստունի արձանագրության վկայությունները արմենների և արմեն Արախայի ապստամբությունների մասին։—3. Կռիվների ընթացքը և վայրերը։—4. Պարսկաստանի պետական վերակազմությունը Դարեհ Ա-ի ժամանակ.—Սատրապությունները, զորքը, առևտրի զարգացումը, դրամական ռեֆորմը և ճանապարհների կանոնավորումը։—5. Արմենները Դարեհ Ա-ի հաջորդների ժամանակ.—Արմենիան Պարսից 13-րդ սատրապության մի մասը.—Պարսկաստանին տրվող դրամական ու բնական հարկերը։—6. Արմենների օժանդակ զորամասի մասնակցությունը Դարեհ Ա-ի ու նրա հաջորդների վարած պատերազմներին.—Արմենների սպառազինությունը ըստ Հերոդոտոսի։—7. 18-րդ սատրապությունն ըստ Հերոդոտոսի.—Նրա ցուցմունքները արմենների երկրի սահմանների ու տեղադրության մասին.—Արմենիայի միջով անցնող «արքայական» ճանապարհը —8. Հերոդոտոսի վկայությունը առևտրի մասին Արմենիայի ու Բաբելոնի միջև։

Մեդացիների տիրապետությունն Առաջավոր Ասիայում երկար չտևեց։ Արդեն 550 թվին (նախքան մեր թվ.), երեք տարվա կռիվներից հետո, Պարսից Կյուրոս թագավորը գրավեց Եկբատանա մայրաքաղաքը և այնուհետև Մեդական թագավորության գերիշխանության տակ գտնվող երկրները, նրանց թվում նաև Արմենիան, ճանաչեցին Կյուրոս Մեծի (550—529) գերիշխանությունը։ Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի վկայություններից կարելի է հետևցնել, որ Արմենական թագավորությունը դառել էր այդ ժամանակ դաշնակից ու վասալ Կյուրոս Մեծի, որին նա պարտավոր էր տալ տուրք և զորք։

Կյուրոս Մեծը, շարունակելով Կիաքսարի քաղաքականու-

թյունը՝ շուտով ինքը ևս անչափ ընդարձակեց պարսկական—մեդական թագավորությունը։ 546 թվին նա ծանր պարտության մատնեց լյուդիացիների Կրեսոս թագավորին և նվաճեց Փոքր Ասիան մինչև էգեյան ծովը։ Իսկ 539 թվին նա գրավեց Բաբելոն քաղաքը և տիրեց նաև Բաբելոնական թագավորությանը։ Այս մեծ պատերազմներին մասնակցել էին, ինչպես իր «Կյուրոպեդիա»-ում հաղորդում է Քսենոփոնը, արմենների հեծելազորը և հետևազորը՝ Տիգրանի և Եմբասի առաջնորդությամբ։

Կյուրոսին հաջորդեց նրա որդին՝ Կամբյուսը (529—522 թ. մեր թվ. առ.), որը նվաճեց նաև Եգիպտոսը։ Սրա բացակայության ժամանակ, 522 թվին, Աքեմենյան Պարսկաստանի թագավոր հայտարարեց իրեն մեգացի Գաումատա մոգը և հայտնեց, որ ինքը Կյուրոսի Բարդիյա որդին է։ Նույն 522 թվին, Եգիպտոսից վերադառնալիս, վախճանվեց Կամբյուսը, իսկ Գաումատային գահազուրկ արեց և սպանեց Աքեմենյան Դարեհը, պարսկական ազնվական տոհմերի մի քանի ներկայացուցիչների աջակցությամբ։

Այս խռովահույզ անցքերից հետո՝ Պարսից նոր թագավոր Դարեհ Ա-ի (522—486 թ.) իշխանության հենց առաջին տարում, ապստամբեցին սրա դեմ և իրենց անկախ հայտարարեցին նախ Շոշաստանը և Բաբելոնիան ու ապա նաև Մեդիան, Արմենիան և այլ երկրներ։

Արմենների 521—520 թթ. ապստամբությունը մանրամասն նկարագրված է Բեհիստունի բարձր ժայռի վրա (Քիրմանշահի մոտ) քանդակված Դարեհ Ա-ի բևեռագիր արձանագրության վկայություններում, որ գրված են երեք լեզվով՝ հին պարսկական, էլամական և բաբելոնական։ Արմենիան, որ այդ արձանագրության մեջ հիշատակված է իբրև երկրի անուն՝ անվանված է «Արմինա», իսկ արմենները՝ «արմինիյա»։

Թե Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի և թե այս արձանագրության վկայություններից երևում է, որ արմենները եղել են ռազմիկ ժողովուրդ, ձգտել են ազատ ու անկախ լինել և, օգտվելով բարեհաջող հանգամանքներից, պարբերաբար ապստամբել են և աշխատել են թոթափել օտար տիրապետության լուծը։ Հետաքրքրքիր է այս տեսակետից Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի մեջ Կյուրոսի ու արմենների թագավորի հետևյալ խոսակցությունը։

Քսենոփոն, «Կյուրոպեդիա», գիրք III, գլ. 1, 10՝

«Ասա՛ ինձ,—հարցնում է Կյուրոսը,—պատերազմե՞լ էիր դու առաջ իմ պապի՝ Աստյուագեսի և մյուս մեդացիների

դեմ»։ «Այո»,—ասում է նա։ «Հաղթված լինելով նրանից, համաձայնե՞լ էիր հարկ վճարել նրան, պատերազմի գնալ միասին, ուր որ հրամայե, և ամրոցներ չկառուցել»։ «Այդպես է»։ «Արդ՝ ինչո՞ւ համար ո՛չ հարկ էիր տալիս, ո՛չ զորք էիր ուղարկում և կառուցում էիր ամրոցներ»։ «Որովհետև ես ազատության էի ձգտում. ինձ թվում էր՝ լավ կլինի որ և ինքս ազատ լինեմ և զավակներիս էլ ազատություն թողնեմ»։

Արմենների խիզախության և ռազմունակության մի պարզ ցուցանիշ է նաև այն, որ նրանց ապստամբությունը Դարեհ Ա-ի զորավարները կարողացել էին ճնշել միայն հինգ ճակատամարտից հետո, որ տեղի էին ունեցել 521—520 թվերին։

Բեհիստունի արձանագրության արմեններին վերաբերող մասը, որ հայ ժողովրդի հնագույն պատմության կարևորագույն աղբյուրներից մեկն է՝ մեջ եմ բերում ամբողջությամբ[1]։

«Դարեհ թագավորն ասում է.—Երբ ես Բաբելոնի մեջ էի գտնվում, իմ դեմ ապստամբեցին հետևյալ երկրները՝ Պարսկաստան, Շոշաստան, Մեդիա, Ասորիք, Եգիպտոս, [«Արմինա»?], Պարթևստան, Մարգիանա, Սատտագուշ (=Պենջաբ), Սագաստան»։

«Դարեհ թագավորն ասում է.—Արդ՝ Արմենիա [«Արմինա»] ուղարկեցի մի արմեն [«արմինիյա»]՝ իմ Դադարշիշ անունով ծառային, և այսպես պատվիրեցի.—«Գնա և նվաճե այդ ապստամբ զորքը, որ ինձ չէ հպատակվում»։ Դադարշիշը գնաց Արմենիան նվաճելու։ Երբ նա եկավ Արմենիա՝ ապստամբները դուրս ելան Դադարշիշի դեմ նրան ճակատամարտ տալու համար։ Դադարշիշը ճակատամարտն ընդունեց։ Արմենիայի մեջ Զուզա [Zūza] անունով մի ավան կա. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ կոտորեց թշնամու բանակից։ Թուրավահարա ամսի 8-ն էր [ըստ Յուստիի՝ 19 ապրիլի 521 թ.[2], իսկ ըստ Կյոնիգի՝ 21 մայիսի

---

[1] Օգտվել եմ, գլխավորապես, Բասմաջյանի հայերեն թարգմանությունից, որը համեմատել եմ այլ թարգմանությունների հետ. տե՛ս Կ. Բասմաջյան. Դարեհի արշաւանքն ի Հայս, Բանասէր, հատ Ա., Պարիս, 1899, էջ 6—45. *Г. Халатьянц*, Очерк истории Армении, էջ 85—88. *Fr. W. König*. Relief und Inschrift des Königs Dareios I, Leiden, 1938։

[2] Ամսաթվերը, որ կարող են վիճելի լինել, մեջ ենք բերել ըստ Յուստիի և Կյոնիգի հաշվումների. տե՛ս *F. Justi*. Geschichte Irans, Grundriss der Iranis-

521 թ.], երբ ճակատամարտը տեղի ունեցավ»։ «Դարեհ Թագավորն ասում է.—Ապստամբները երկրորդ անգամ հավաքեցին իրենց ուժերը և նորից դուրս եկան Դադարշիշի դեմ պատերազմի։ Արմենիայի մեջ Տիգրա անունով մի բերդ կա. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը թշնամու բանակը հալածեց։ Թուրավահարա ամսի 18 էր [ըստ Յուստիի՝ 29 ապրիլի 521 թ., իսկ ըստ Կյոնիգի՝ 31 մայ. 521 թ.], երբ ճակատամարտը տեղի ունեցավ»։

[Բաբելոնական բնագրի մեջ նշանակված են արմենների կորուստները՝ «Թշնամին 546 սպանված թողեց պատերազմի դաշտում և Դադարշիշը 520 հոգի գերի վերցրեց»]։

«Դարեհ Թագավորն ասում է.—Ապստամբները երրորդ անգամ հավաքվեցին և դուրս եկան Դադարշիշի դեմ պատերազմի։ Արմենիայի մեջ Ուհյամա։ [Ըստ Յուստիի՝ Uhyama, ըստ Կյոնիգի՝ Hujawa][1] անունով մի բերդ կա. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ կոտորեց թշնամի բանակից։ Թայգրաչի ամսի 9-ն էր [ըստ Յուստիի՝ 20 մայ. 521 թ., ըստ Կյոնիգի՝ 21 հունիսի 521 թ.], երբ ճակատամարտը տեղի ունեցավ։ Հետո Դադարշիշը, հնազանդվելով իմ հրամանին՝ մնաց Արմենիայում, մինչդեռ ես իմ նիզակը ուղղում էի դեպի Մեդիա»։

«Դարեհ Թագավորն ասում է.—այնուհետև Արմենիա ուղարկեցի Վահումիսա անունով մի պարսկի, իմ ծառային և այսպես պատվիրեցի՝—«գնա՛, նվաճե՛ այդ ապստամբ զորքը, որ ինձ չէ հնազանդվում»։ Վահումիսան [ըստ Կյոնիգի՝ Wōmisa] գնաց Արմենիան նվաճելու։ Ապստամբները հավաքվեցին և դուրս եկան Վահումիսայի դեմ պատերազմի։ Ասորեստանի մեջ Իզալա [ըստ Յուստիի՝ Izzila. իսկ ըստ Կյոնիգի՝ Izalā][2] անունով մի երկիր

---

chen Philologie, Bd, II, 5 Lief, Strassburg 1903, էջ 429. *König*, Relief und Inschrift des Königs Dareios 1, էջ 43—51։

[1] Բերդի Ուհյամա անունը, որ ջարդված է պարսկական և բաբելոնական բնագրերի մեջ՝ պահված է էլամական բնագրում։

[2] Իզալա անունը անեղծ պահպանված է միմիայն էլամական բնագրի մեջ։ Վայսբախը և Բանգը նույն տեղանունը կարդում են Իզիտու. տե՛ս *F. Weissbach und W. Bang*, Die altpersischen Keilinschriften, Leipzig, 1893, էջ 18—19։

կա. Ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ սպանեց ապստամբների բանակից։ Անամակա ամսի 15-ն էր [ըստ Յուստիի՝ 18 հունվարի 520 թ., իսկ ըստ Կյոնիգի՝ 31 դեկտ. 522 թ.], երբ ճակատամարտը տեղի ունեցավ»։ [Բաբելոնական բնագրում մեջ է բերված նաև արմենների կորուստը՝ 2024 սպանված]։

«Դարեհ թագավորն ասում է.—Ապստամբները երկրորդ անգամ հավաքվեցին և դուրս եկան Վահումիսայի դեմ պատերազմի։ Արմենիայի մեջ Աուտիյարա [ըստ Յուստիի Autiyāra, իսկ ըստ Կյոնիգի՝ Ōtijāra] անունով մի գավառ կա։ Ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ կոտորեց թշնամի բանակից։ Թուրավահարա ամսի վերջն էր [ըստ Յուստիի՝ 1 հունիսի 520 թ., իսկ ըստ Կյոնիգի՝ 12 հունիսի 521 թ.], երբ ճակատամարտը տեղի ունեցավ։ Հետո Դադարշիշը, հնազանդվելով իմ հրամանին, մնաց Արմենիայում, մինչդեռ ես իմ նիզակը ուղղում էի դեպի Մեդիա»։

[Բաբելոնական բնագրում ցույց է տրված նաև արմենների կորուստը՝ «նրանցից սպանված էին 2045 մարդ և գերի էին վերցված 2559 հոգի»]։

Ինչպես ենթադրում են Մարկվարտը, Խալաթյանցը[1] և ուրիշները, արմենների այս ապստամբությունը կարող էր կապ ունեցած լինել Բաբելոնիայի ապստամբության հետ, ուր Բաբելոնական թագավորական գահի թեկնածու էր համարում իրեն Արախա անունով մի արմեն, Հալդիտայի որդին։

Բեհիստունի արձանագրության համապատասխան այդ հատվածը ես մեջ եմ բերում ընդարձակ բովանդակությամբ.

«Դարեհ թագավորն ասում է.—Իմ Պարսկաստան ու Մեդիա գտնված ժամանակ բաբելոնացիները երկրորդ անգամ ապստամբեցին իմ դեմ։ Ապստամբեց Արախա անունով մի մարդ՝ արմեն, Հալդիտայի որդին։ Բաբելոնիայի մեջ Դուբալա անունով մի երկիր կա. այնտեղ ապստամբեց։ Այսպես խոսեց և ստեց. «Ես Նաբուքուդորոսորն եմ,

---

[1] Տե՛ս J. Markwart, Untersuchungen zur Geschichte von Eran. Zweites Heft, Leipzig, 1905, էջ 166—167. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 85 և ուրիշ.։

Նաբոնիդի որդին»։ Բաբելոնացիներն ապստամբեցին իմ դեմ և բռնեցին այս Արախայի կողմը, որը Բաբելոնը գրավեց և դառավ Բաբելոնի թագավոր»։

«Դարեհ թագավորն ասում է.—Ուստի Բաբելոն ուղարկեցի մի բանակ, որի հրամանատար կարգեցի Վինդաֆրա անունով մի մեդացու, իմ ծառային։ Այսպես պատվիրեցի նրան,—«Գնա՛ Բաբելոն և կոտորի՛ր այն ապստամբ բանակը, որ ինձ չէ ճանաչում»։ Վինդաֆրան գնաց զորաբանակի հետ Բաբելոնիա։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի Վինդաֆրան նվաճեց բաբելոնացիներին և [նրանց] գերի վերցրեց»։

[«Մարկազանա ամսի 22-րդ օրն էր [ըստ Կյոնիգի՝ 2 նոյ. 521 թ.], երբ այս Արախան, որ ասել էր—«ես Նաբուքուդորոսսորն եմ»՝ ձերբակալվեց իր դավակիցների հետ միասին։ Նրանք ինձ մոտ բերվեցին։ Այնուհետև ես այսպես վճռեցի՝ Արախան և գլխավոր իր գործակիցները պետք է Բաբելոնի մեջ ցից հանվեն։ Ահա այսպես մեռան»][1]։

Այս արձանագրության մեջ մատնանշված են, ինչպես տեսնում ենք, Դարեհի զորավարների անընդհատ հաղթությունները։ Սակայն այդ հավանական ու համոզիչ չէ։ Ուշագրավ է նախ և առաջ, որ ապստամբների դեմ անհրաժեշտ է եղել վարել հինգ ճակատամարտ և նրանց հետ պատերազմել ավելի քան մեկ տարի։ Բացի այդ, արձանագրությունից բնավ չէ երևում, որ առաջին երեք մարտերում Դադարշիշը հաղթած լիներ արմեններին։ Ընդհակառակը, արմենները, ըստ երևույթին, իրենք էին հաղթել թշնամուն։ Այդ հաջողությունն է եղել, հավանորեն, պատճառը, որ Դարեհը հարկադրված է եղել նոր զորավար ու նոր բանակ ուղարկել արմենների դեմ, որոնք առաջացել էին մինչև Ասորեստան։

Արմենները, որոնք ձգտում էին ազատություն ձեռք բերել, ինչպես ենթադրում են պատմագետները[2], որոշ դաշնավորություն էին կազմել Բաբելոնիայի և թերևս նաև Մեդիայի հետ։ Բայց ապստամբած երկրներից և ոչ մեկը չկարողացավ թոթա-

---

[1] Փակագծերի մեջ դրված հատվածը, որը պարսկական բնագրի մեջ ջարդված է, ավելացված է համաձայն էլամական և բաբելոնական բնագրերի։

[2] Համեմատե K. Aslan, Études historiques sur le peuple arménien, Paris, 1909, էջ 71. Hübschmann, Armenische Grammatik, Leipzig, 1895, էջ 9 և ուրիշ։

փել պարսկական լուծը և վերջնական հաղթությունը մնաց Դարեհի կողմը։

Բեհիստունի արձանագրության մեջ առանձին կարևորություն ունեն աշխարհագրական այն վայրերի հիշատակումները, ուր տեղի էին ունեցել վերոհիշյալ մարտերը։

Արմենների առաջին երեք կռիվները պարսից դեմ տեղի էին ունեցել, ինչպես տեսանք, Արմենիայի սահմաններում՝ Զուզա ավանի և Տիգրա ու Ուհյամա կամ Հույավա բերդերի մոտ. չորրորդ կռիվը տեղի էր ունեցել Արմենիայի սահմաններից դուրս՝ Ասորեստանի Իզալա (կարդում են նաև Իզզիլա և Իզիտու) երկրում, իսկ հինգերորդը՝ նորից Արմենիայի Աուտիյարա կամ Օտիյարա գավառում։

Մատնանշված այս հինգ պատմական հին վայրերի անունների ու տեղադրության ճշտմամբ կորոշվի հարկավ, թե ո՛րտեղ էր գտնվում ապստամբած արմենների այն նոր հայրենիքը, որը Դարեհ Ա-ի արձանագրության մեջ կոչվում է «Արմինա»։

Գերմանական գիտնական Ֆերդինանդ Յուստին իր «Իրանի պատմության» մեջ[1] Զուզա ավանի անունը զուգադրում է քրդական այժմյան Զոզանի հետ և մատնացույց է անում, որ նման անուն ունեցող մի տեղ գտնվում է նաև այժմյան Ջեզիրեի մոտ։ Տիգրա բերդը նա նույնն է համարում այժմյան Տիլ ամրության հետ Տիգրիս գետի ափին։ Իսկ Աուտիյարա կամ Օտիյարա գավառը համարում է այժմյան Քուրդիստանի Տիյարի շրջանը, որ գտնվում է Վերին Զաբ գետի հովտում Ջուլամերկի ու Ռևանդուզի միջև։ Յուստիի այս ենթադրություններն ընդունելի են համարվել և մեջ են բերվում պատմագիտական ու այլ երկերում[2]։

Ուշադրության արժանի են Իզալայի և Աուտիյարայի մասին նաև Մարկվարտի և Սանդալճյանի բացատրությունները[3]։ Իզալա երկրի անունը Մարկվարտի ենթադրությամբ համապատասխանում է Իզըլա (Izəlā) լեռների անվան (այժմյան Տուր-Աբդինի լեռների)։ Իսկ Աուտիյարա գավառի անունը Սանդալճյանը համապատասխան է համարում Խորենացու Աշխարհացույցի Այտվանք

---

[1] Տե՛ս Grundriss der Iranischen Philologie, Bd, II. 5, էջ 429։

[2] Համեմատե *Халатьянц*. Очерк, էջ 86–88. Խոլենս և հայ. Պատմութիւն հին հայերի, պր. 2, Թիֆլիս, 1909, էջ 84—85 և ուրիշ.։

[3] Տե՛ս *Markwart*, Untersuchungen zur Geschichte von Fran, II էջ 167. *J. Sandalgian*, Histoire documentaire de l'Armenie, II. Rome, 1917։

(«Այտունք», «Ատրունք»)[1] գավառի անվան, որը գտնվում էր պատմական Հայաստանի Կորճայք նահանգում։

Տեղանունների վերոհիշյալ համեմատություններն ու նույնացումները չէ կարելի ըստ իս համարել հաստատուն և վերջնական։ Մեջ բերված ենթադրությունները կարոտ են դեռ ապացուցման նոր ու ավելի համոզիչ տվյալների օգնությամբ։ Սակայն, ինձ թվում է, որ միանգամայն անվիճելի կարելի է ընդունել, որ Զուզա, Տիգրա, Ուհյամա, Իզալա և Աուտիյարա աշխարհագրական տեղերը և երկրները գտնվել են Հին Ասորեստանի հյուսիսակողմում՝ պատմական Հայաստանի Աղձնիքում ու Կորճայքում և կամ նրանց հարևան շրջաններում, ուր, ինչպես տեսանք, հին հունական աղբյուրները և հայկական ավանդությունը մատնացույց են անում հայ ժողովրդի նախահայրերի հնագույն գաղթավայրերը։

Հին պարսիկների իշխանությունը, որ հաստատվել էր Արմենիայում Կյուրոս Մեծի ժամանակ (550—529 թ. նախքան մեր թվ.)՝ շարունակվեց այստեղ մոտ երկու հարյուր տարի մինչև Աքեմենյանների թագավորության անկումը 330 թվին։

Դարեհ Ա-ի ժամանակ (522—486 թ. մեր թվ. առ.) Աքեմենյան Պարսկաստանի բոլոր երկրները, նրանց թվում նաև Արմենիան, որոնք Դարեհի թագավորելուց առաջ, մեծ մասամբ, ավելի անկախ էին ու ինքնուրույն՝ ենթարկվեցին պետական ու վարչական վերակազմության։ 522—520 թվերի ապստամբություններից հետո Դարեհ Ա-ը հասկացել էր, որ թուլակազմ ու ապակենտրոնացած Պարսկաստանն անհրաժեշտ է դարձնել կենտրոնացած ու սերտ միացած պետություն։ Ուստի նա ամբողջ պարսկական պետությունը բաժանեց, ինչպես վկայում է Հերոդոտոսը, 20 մեծ շրջանների, որոնց կառավարությունը հանձնեց հատուկ պաշտոնյաների, որ անվանվում էին սատրապներ (հին պարսկ. «խշաթրապա»=հայեր. «աշխարհապահ»)։ Սատրապները ենթարկված էին անմիջապես Դարեհի բարձրագույն իշխանությանը։ Նրանք ունեին իրենց շրջաններում վարչական ու դատական իշխանություն և նրանց գլխավոր պարտականություններից մեկն էր նաև հարկերի հավաքումը։

Աղբյուրների վկայություններից երևում է, որ շատ տեղերում և, ըստ երևույթին, նաև Արմենիայում, նախկին տեղական

---

[1] Տե՛ս Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, թարգմ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1907, էջ 205։

իշխանավորները, ենթարկված լինելով սատրապների վերահըսկողությանը՝ պահպանել էին իրենց նախկին որոշ իրավունքները և իրենց կապը բնակչության հետ։

Զինվորական իշխանությունը Դարեհը հանձնարարել էր հատուկ զորապետների, որ անկախ էին սատրապներից և ունեին իրենց տրամադրության տակ պարսկական, տեղական ու վարձկան զորքեր։

Աքեմենյան Պարսկաստանի տիրապետությունն Առաջավոր Ասիայում տնտեսագիտական նորագույն երկերում[1] համարվում է տնտեսական կանգառման ու անշարժության մի ժամանակաշրջան։ Բայց այդ, ինչպես ցույց ենք տվել «Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին» ռուսերեն մեր աշխատության մեջ[2], անտարակույս, սխալ է։

Պատմական աղբյուրների վկայություններից պարզ երևում է, որ բաժան ու թշնամի արևելյան մեծ պետությունների՝ Ասորեստանի, Բաբելոնիայի, Լյուդիայի և Եգիպտոսի՝ միավորումը մեծապես նպաստել էր առևտրի ու փողային տնտեսության զարգացման։

Աքեմենյանների ժամանակ արդեն գոյություն ունեին առևտրական հարաբերություններ ցամաքով ու ծովով Հնդկաստանի հետ։ Դարեհ Ա-ի հրամանով Նեղոս գետը Կարմիր ծովի հետ միացնելու համար վերականգնել էին հին ջրանցքը, որը կառուցել էին Եգիպտոսի փարավոնները։

Փոխանակության ու առևտրի զարգացմանը մեծ չափով աջակցած պետք է լինեին Դարեհ Ա-ի դրամական ռեֆորմը և դրամների կշռի ու որակի բարելավումը։ Առանձին հոգատարությամբ կանոնավորվել ու բարեկարգվել էր Դարեհ Ա-ի ժամանակ ցամաքային հաղորդակցությունը ու պահպանվել էր նաև ճանապարհների անվտանգությունը։

Աքեմենյան Պարսկաստանի տնտեսական այս զարգացումը, որ առանձնապես նշանակալի էր Բաբելոնիայի և հին կուլտուրական երկրների առևտրական ու արդյունաբերական կենտրոններում՝ չպետք է, իհարկե, գերագնահատել։ Մեծագույն մասը մյուս երկրների ապրում էին դեռ առանձնացած և գրեթե մասն-

[1] Համեմատել Макс Вебер. Аграрная история древнего мира перевод под редакцией Д. М. Петрудевского. М., էջ 224։

[2] Տե՛ս „О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних врамен“, Ереван, 1930, էջ 5—8։

նակից չէին տնտեսական այդ զարգացմանը։ Ուստի և, ինչպես մանրամասն ցույց եմ տվել վերոհիշյալ իմ աշխատության մեջ[1], Աքեմենյան Պարսկաստանի տնտեսակարգը կարելի է բնորոշել, ընդհանրապես, իբրև բնական տնտեսություն։

Արմենիայի ու արմենների պատմական անցյալի մասին Դարեհ Ա-ի և նրա հաջորդների ժամանակ կարևոր տեղեկություններ հաղորդում են մեզ պատմության հայր համարվող Հերոդոտոսը (484—425 թ. մեր թվ. առ.) ու նաև Քսենոփոնը (մոտ 430—354 թ. մեր թվ. առ.)։

Արմենների ապստամբությունը, ինչպես տեսանք, պարսիկները վերջնականապես ճնշել էին 520 թվին։ Արմենիան այնուհետև դառավ պարսկական սատրապություն և նրա կառավարությունը հանձնվում էր կամ պարսկական բարձր ազնվականության և կամ թագավորի մերձավոր ազգականներին։

Հերոդոտոսը, Պարսկաստանի հարկատու շրջանները թվելիս (գիրք III, գլ. 93)՝ Արմենիան համարում է Պարսից տասներեքերորդ սատրապության մի մասը։

«Պակտյուիկեից, արմեններից և նրանց հարևաններից մինչև Եվքսինյան ծովը,—ասում է Հերոդոտոսը,—[Պարսկաստանը հարկ էր ստանում] 400 տաղանդ, 13-րդ շրջանն էր այս»։

Մատնանշված այս հարկը, ընդունելով պարսկական տաղանդի արծաթի կշիռը մոտ 32 կիլո 640 գր.՝ այժմյան կշռով հավասար կլինի մոտ 13.056 կիլոգրամ արծաթ դրամի։ Հուլչը պարսկական մեկ տաղանդ արծաթի դրամական արժեքը համապատասխան է համարում 6048 ոսկի մարկի [մոտ 3024 ոսկի ռուբլու][2]։ Ուրեմն՝ 400 տաղանդ հարկը հավասար կլինի մոտ 2.419.200 ոսկի մարկի կամ 1.209.600 ոսկի ռուբլու։ Այս հարկագումարը, ինչպես վկայում է Հերոդոտոսը, վճարել են ո՛չ միայն արմենները, այլև Պակտյուիկե երկիրը[3] ու նաև արմենների մյուս հարևանները։

---

1 Նույնը, էջ 7—8։

2 Տե՛ս *Hultsch*, Griechische und römische Metrologie. Berlin, 1882, էջ 492—493։

3 Պակտյուիկե երկրի տեղը ենթադրում են Վանա լճի հարավում, այժմյան Բոհտանում. տե՛ս *H. Kiepert*, Lehrbuch der alten Geographie, Berlin, 1878, էջ 80։ Այս ենթադրությունը, ինձ թվում է, չէ կարելի համարել հաստատուն ու վերջնական։ Պակտյուիկեի տեղադրության ու անվան խնդիրը դեռևս որոշ չէ։

Բացի դրամական հարկագումարից Արմենիան պարտավոր է եղել ուղարկել Պարսից թագավորին յուրաքանչյուր տարի 20.000 քուռակ։

«Երկիրը [Արմենիան],—ասում է Ստրաբոնը (XI, 14, 9),—ունի ձիերի համար շատ արոտներ, որոնք մեդականներից վատ չեն. այնպես որ նեսեական ձիերը, որ գործածում էին Պարսից թագավորները, այստեղ էլ էին սնուցանվում, և Արմենիայի սատրապը Պարսից թագավորին ուղարկում էր տարեկան 20.000 քուռակ Միթրայի տոնի համար»։

Ինչպես և Դարեհ Ա-ի նախորդների ժամանակ, արմենները 519 թվից հետո ևս տալիս էին Պարսկաստանին հետևակ ու ձիավոր զորք։ Արմենական օժանդակ այս զորամասը, ինչպես կարելի է եզրակացնել աղբյուրների վկայություններից, մասնակցել է, հավանորեն, այն բոլոր պատերազմներին, որ վարում էին Դարեհ Ա-ը և նրա հաջորդները սկյութացիների, հույների, ու եգիպտացիների դեմ։ Արմենները հիշատակված են, օրինակ, Քսերքսեսի զորաբանակի շարքերում, որն արշավելու էր Հունաստան (480 թ. նախքան մեր թվ.)[1]։ Հերոդոտոսը վկայում է (VII, 73), որ այս արշավանքին մասնակցող արմենները զինված են եղել փռյուգիացիների նման և վերջինների հետ գտնվել են Դարեհի փեսա Արտոքմեսի հրամանատարության տակ։ Նրանք ունեցել են թեթև զենք ու հանդերձանք՝ հյուսված սաղավարտներ, փոքր վահաններ, կարճ նիզակներ, տեգեր, սրեր և բարձր ճոքավոր կոշիկներ։

Ուշագրավ է առանձնապես, որ Հերոդոտոսի ցուցումները լիովին հաստատում են վերոհիշյալ մեր եզրակացությունը նախնական Արմենիա-Արմինայի տեղագրության մասին և արմենների գաղթավայրերը պարզ կերպով մատնանշում են բացի Փոքր Հայքից, հատկապես, Ծոփքում և Աղձնիքում։ Հերոդոտոսի վկայություններից երևում է, որ նրա ժամանակ արմենները գրաված են եղել Հայկական լեռնաշխարհի միմիայն հարավային ու, գլխավորապես, հարավ-արևմտյան շրջանները, իսկ Արարատյան դաշտում այդ ժամանակ ապրել են սասպեյրները և ուրարտացիները։ Այս վերջինները նրա մոտ անվանված են ալարոդներ։

«Մատիենները, սասպեյրները և ալարոդները,—ասում է նա (III, 94),—հարկ էին վճարում 200 տաղանդ։ Նրանք կազմում էին 18-րդ սատրապությունը»։

---

[1] Տե՛ս Հերոդ., VII, 73։

Այս վկայությունն իրավամբ մի պարզ ապացույց է համարվում, որ պատմական Հայաստանի հյուսիսային շրջանները՝ Սպերը, Այրարատը և Ատրպատականը 5-րդ դարում մեր թվականությունից առաջ գտնվել են Արմենիայի սահմաններից դուրս և համարվել են առանձին սատրապություն։

Արմենների երկրի տեղադրության վերաբերող Հերոդոտոսի կարևոր վկայությունները, որ Հայաստանի պատմական աշխարհագրության համար ունեն խոշոր նշանակություն՝ թարգմանաբար մեջ եմ բերում գրեթե առանց կրճատումների։

1. Հերոդոտոս, Պատմություն, I, 72՝

«Մեդական և Լյուդիական թագավորությունների մեջ սահմանն էր Հալիս գետը, որը հոսում էր Արմենների լեռից կիլիկեցիների միջոցով»։

2. Նույնը, I, 180՝

«Նրա [Բաբելոն քաղաքի] միջով անցնում է մի մեծ և խոր ու արագ գետ, որի անունն է Եփրատ. նա հոսում է արմենների կողմից ու թափվում է էրյութրեական ծովը»։

3. Նույնը, V, 49՝

«Փռյուգիացիներին հարևան են կապադովկիացիները, որոնց մենք անվանում ենք սյուրիացիներ, սրանց հարևան են կիլիկեցիները... Կիլիկեցիներին սահմանակից են արմենները, և սրանք հարուստ են անասուններով, իսկ արմեններին հարևան են մատիենները»։

4. Նույնը, V, 52՝

«Կիլիկիայի և Արմենիայի սահմանը կազմում է նավարկելի մի գետ, որի անունն է Եփրատ։ Արմենիայում գտնվում են 15 կայարան հանգստյան տեղերով $56^{1}/_{2}$ փարսախ տարածության վրա. այնտեղ կա և մի բերդ։ Արմենիայից Մատիենե անցնելուց հետո այստեղ ևս գտնվում են 34 կայարաններ 137 փարսախ տարածության վրա»։

Այս վկայություններից առաջինը, որի մեջ մատնանշված է, որ Հալիս գետը հոսում է Արմենների լեռից՝ վերաբերում է Փոքր Հայքին։ Իսկ երրորդ և չորրորդ վկայությունները պարզ կերպով որոշում են Արմենիայի սահմանները, որը գտնվում էր Եփրատի արևելակողմում։

Հերոդոտոսի մոտ հին Կապադովկիայի արևելյան մասը, այսինքն՝ Մելիտենեի (այժմյան Մալաթիայի) շրջանը՝ համարվում է Կիլիկիայի մաս։ Սրա ու հարավ-արևմտյան Արմենիայի

միջև իբրև սահման ցույց է տրված Եփրատ գետը։ Այս գետի մոտից, ինչպես երևում է չորրորդ վկայությունից, 56½ փարսախ (մոտ 300—350 կիլոմետր) տարածության վրա Արմենիայի միջով անցել է Սարդեսից Շոշ գնացող Պարսից «արքայական» կոչվող մեծ ճանապարհը, որի ուղղությունը պետք է ենթադրել այժմյան Մալաթիայից Խարբերդի դաշտի միջով դեպի Տիգրիս գետն Ամիդ-Դիարբեքիրի մոտ և այստեղից դեպի այժմյան Ջեզիրե, որը գտնվել է, հավանորեն, մատիենների երկրում[1]։

Ինչպես տեսնում ենք, Եփրատի արևելակողմում գտնվող Արմենիայի տեղադրությունը Հերոդոտոսի մոտ ևս ցույց է տրված Ստորին Արածանիի և Վերին Տիգրիսի շրջաններում՝ հին Ծոփքում ու Աղձնիքում։

Առանձնապես կարևոր է ու հետաքրքիր Հերոդոտոսի մոտ նաև նրա մանրամասն վկայությունը առևտրի մասին, որը Եփրատ գետի հոսանքով տեղի էր ունենում Արմենիայի ու Բաբելոնի միջև։

Հերոդոտոս, Պատմություն, գիրք I, 194՝

«Այժմ ես կպատմեմ, թե ի՛նչն է, իմ կարծիքով, ամենից զարմանալին իրեն քաղաքից [Բաբելոնից] հետո սրանց մոտ։ Նրանց [ասորեստանցիների] նավերը, որոնք գետի վրայով գալիս են Բաբելոն՝ կլոր են և բոլորը կաշիապատ են։ Արմենների երկրում, որոնք բնակվում են ասորեստանցիներից վերև՝ սրանք կտրում են ուռիներ, շինում նավի կողերը և պատում են այդ կաշվե ծածկով, տալով հատակի ձև. և ո՛չ նավի ետևի կողմն են ընդարձակում, ո՛չ էլ նրա առջևի կողմը նեղացնում, այլ տալիս են նրան վահանի նման կլոր ձև. լցնում են ամբողջ նավը ծղոտով, բեռնում են և թողնում, որ իջնե գետն ի վայր։ Մեծ մասամբ նավերով տանում են գինիով լիքը արմավենի տակառներ։ Նավը վարում են երկու ղեկի օգնությամբ երկու կանգնած մարդ՝ մեկը նրանցից ղեկը քաշում է դեպի իրեն, մյուսը հրում է իրենից։ Այդ նավերը լինում են և շատ մեծ և ավելի փոքր։ Նրանցից ամենամեծերը տանում են հինգ հազար տաղանդ բեռ։ Ամեն մի նավում գտնվում է մեկ էշ, իսկ մեծ նավերում մի քա-

---

[1] Համեմատե իմ նախորդ աշխատությունները՝ „О торговле и городах Армении", էջ 14—16 և «Տիգրան Երկրորդը և Հռոմը», էջ 97 և 99։ [Տե՛ս նաև սույն հատորում, էջ 195, 492 խմբ.]։

նիսը, Բաբելոն հասնելուց և բեռը ծախելուց հետո՝ նրանք [սարեստանցիները] վաճառում են նաև նավի կմախքը և ամբողջ ծղոտը, իսկ կաշին բարձում են էշերի վրա և նորից գնում արմենների երկիրը։ Որովհետև գետն ի վեր անկարելի է նավել գետի արագության պատճառով՝ ուստի և նրանք նավերը պատրաստում են ո՛չ թե փայտից, այլ կաշվից։ Իսկ երբ նրանք, էշերը քշելով, ետ են դառնում արմենների երկիրը, նույն եղանակով պատրաստում են ուրիշ նավեր։ Այսպես են նրանց նավերը»։

Հույն պատմագրի ուշագրավ այս վկայությունը, ինչպես մատնանշել եմ Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին ռուսերեն իմ աշխատության մեջ[1], սխալ է հասկացվել պատմագիտական գրեթե բոլոր նորագույն երկերում։ Հիմնվելով այս վկայության վրա՝ պատմագետները կարծել են, որ առևտրի միջնորդներն Արմենիայի ու Բաբելոնի միջև, որը նկարագրված է Հերոդոտոսի մոտ, եղել են արմենները։ Բայց, իրապես, Հերոդոտոսի բնագրում պարզ ասված է, որ ապրանք էին փոխադրում Արմենիայից Բաբելոն ո՛չ թե արմենները, այլ սարեստանցիները։ Այս հնագույն ժամանակաշրջանում, ինչպես ցույց է տրված նույն իմ աշխատության մեջ՝ սոցիալական շերտավորումը դեռևս շատ թույլ էր արմենների մոտ և առևտուրը կենտրոնացած էր այդ ժամանակ, գլխավորապես, սեմական ժողովուրդների ձեռքում։

Ինչպես ներքև կտեսնենք, արմենների տնտեսության հիմքը Հերոդոտոսի ու Քսենոփոնի ժամանակ անասնապահությունն էր՝ միացած նստակյաց հողագործության հետ։

[1] Տե՛ս „О торговле и городах Армении“, էջ 10—11։

ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ԵՎ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԱՐՄԵՆԻԱՆ ԸՍՏ ՔՍԵՆՈՓՈՆԻ

1. Հույն զորքի նահանջի ճանապարհն Արմենիայի միջով.—Նորագույն ենթադրությունները այդ մասին:—2. Կենտրիտես գետը՝ սահման հարավ-արևելյան Արմենիայի:—3. Արմենիայի սատրապն էր Օրոնտասը:—4. Արևմտյան Արմենիայի կառավարիչն էր Տիրիբազը:—5. Արևելյան և Արևմտյան Արմենիայի տեղադրությունը.—ընդհանրացած սխալ ենթադրությունները այդ մասին.—արմենները դեռևս չէին մտել Արարատյան դաշտը:—6. Հայկական լեռնաշխարհում ապրող արմենների հարևան հին ցեղերը.— կարդուխները—խալդայները.— մարդերը.—խալյուբները.—տաոխները, փասիանները և այլ ցեղեր:

*Արմենների ու նրանց երկրի մասին Աքեմենյան Պարսկաստանի ժամանակաշրջանում միակ ու ամենակարևոր աղբյուրը Քսենոփոնի «Անաբասիս»-ն է (=«Արշավանքը»), որի մեջ նկարագրված է Քսենոփոնի և տասը հազար հույն զորքի վերադարձը Բաբելոնի մոտից Արմենիայի ու Տրապիզոնի վրայով Հունաստան (401—400 թթ. նախքան մեր թվ.)։ Հունական զորքն օգնության էր գնացել Կրտսեր Կյուրոսին, որն ապստամբել էր իր եղբոր՝ Արտաքսերքսես Բ-ի դեմ (404—358 թթ. մեր թվ. առ.), և վերադառնում էր հայրենիք Կունաքսայի մոտ տեղի ունեցած անհաջող ճակատամարտից հետո։ Քսենոփոնի հաղորդած տեղեկությունները Արմենիայի մասին միանգամայն արժանահավատ են ու վստահելի, որովհետև նա ինքն անձամբ եղել է Արմենիայում և նկարագրել է այս երկիրն իբրև ականատես։*

*Այդ տեղեկությունները վերաբերում են Արմենիայի այն շրջաններին, որոնց միջով անցել էին հույները։ Ուստի և կարևոր է, ամենից առաջ, որոշել Քսենոփոնի և հույն զորքերի նահանջի ճանապարհն Արմենիայի վրայով։*

*Նահանջի այդ ճանապարհը, դժբախտաբար, դեռևս վիճաբանության առարկա է և վերջնականապես դեռ չէ պարզված։*

Պատմական ու աշխարհագրական հին ու նոր երկերում այդ մասին հաղորդվում են տարբեր, մեծ մասամբ, շփոթ ու հակասական տեղեկություններ, և այս կարևոր խնդիրը կարոտ է դեռ նոր ու լուրջ ուսումնասիրության։

Մինչ այդ՝ մեջ ենք բերում եվրոպական պատմագետների ու աշխարհագրագետների նորագույն ենթադրություններն այդ մասին, որ համարվում են հավանական։

Ըստ Քսենոփոնի՝ նահանջող հելլեն զորքը մտել էր Արմենիա, անցնելով Կենտրիտես գետը, այժմյան Բոհտան-սուն, որը Արմենիան բաժանում էր կարդուխների երկրից։ Լեման-Հաուպտը, որը հենվելով Քսենոփոնի հաղորդած տեղեկությունների վրա՝ նահանջի ճանապարհը մանրամասն ուսումնասիրել է տեղում,— ենթադրում է[1], որ հույները Կենտրիտես գետն անցել էին այժմյան Թիլի հյուսիսակողմում գտնվող Քանիմիրի գյուղի մոտ։

Հավանական է համարվում, բացի այդ, որ Կենտրիտես գետն անցնելուց հետո հույները գնացել էին դեպի հյուսիս և Տավրոսյան լեռներով իջել էին Մշո դաշտը ու հասել մինչև Տելեբոաս գետը, որը Մարկվարտը համապատասխան է համարում հին Մեղ (այժմյան Կարասու) գետին[2]։

Շարունակելով իրենց ճանապարհը Տելեբոաս գետի մոտից՝ նրանք գնացել էին վեց օրվա հանապարհ, 30 փարսախ, և հասել մինչև Եփրատ գետը, որն անցել էին, թրջվելով մինչև պորտ։ Հույները լսած են եղել, որ այդ տեղից հեռու չեն Եփրատի ակունքները։

Գերմանական գիտնականները, որ մանրամասն ուսումնասիրել են հույն զորքի նահանջի ճանապարհը, ենթադրել են, որ Քսենոփոնի մոտ հիշատակված Եփրատն Արևելյան Եփրատն է՝ հին Արածանին։ Գիտնականների մի մասի կարծիքով, Մշո դաշտից հույները շարունակել էին իրենց ճանապարհը դեպի հյուսիս կամ հյուսիս-արևելք և, անցնելով Եփրատ-Արածանին՝ ուղղվել էին դեպի Խնուսի դաշտը և այստեղից Կարնո շրջանը, իսկ մյուս մասի կարծիքով՝ հույները Մշո դաշտից մտել էին Մանազկերտի շրջանը, գնացել էին այստեղից դեպի հյուսիս և Եփրատ-Արածա-

---

[1] Տե՛ս *C. F. Lehmann-Haupt*, Armenien einst und jetzt, Bd. 1, Berlin, 1910, էջ 340—352։

[2] Տե՛ս *Markwart*, Untersuchungen zur Geschichte von Eran, Philologus, X, Heft, 1, էջ 236։




Քսենոփոնի և Տասը հազարի նահանջի ճանապարհը

գծ. 2.

նին անցել էին այժմյան Ղարաքիլիսեի մոտ ու դուրս եկել Ալաշկերտի դաշտը։

Հռոմեական հին աշխարհաքարտեզի ուսումնասիրությունն ինձ հիմք էր ծառայել ենթադրելու[1], որ հույները Մանազկերտի շրջանից գնացել էին ո՛չ թե դեպի Ղարաքիլիսե, այլ քարտեզում նշանակված Ծումբ—Դիդեմ հաղորդակցության գծով դեպի Դիադին—Բագավանի շրջանը, որը, հավանորեն, կազմում էր այդ ժամանակ Արմենիայի հյուսիս-արևելյան սահմանը։

Նահանջող հույն զորքի ճանապարհը Բագավանի կողմերից մինչև Տրապիզոն լուսաբանված է իմ «Հին Հայաստանի և Անդրկովկասի պատմության մի քանի պրոբլեմների մասին» նորագույն աշխատության մեջ[2]։ Նրանց ճանապարհի շարունակությունը ես ենթադրել էի այստեղից հետևյալ ուղղությամբ,— Ալաշկերտի դաշտի և Դելիբաբայի վրայով դեպի Պասին-սու գետը, որը Քսենոփոնի մոտ անվանված է Փասիս, այստեղից դեպի Օլթիի շրջանը, ուր գտնվում էր տաոխների երկիրը, և այնուհետև Սարիղամիշի շրջանով և Կարսի հարավակողմով դեպի Կաղզվանի կողմերը և Հարբազոս գետը՝ այժմյան Արաքս—Արազը։

Հարբազոսի նույնացումը Արազ գետի հետ հնարավորություն էր տվել ինձ Քսենոփոնի մոտ հիշատակված «մեծ, հարուստ և բազմամարդ» Գյումնիաս քաղաքի տեղադրությունը որոշելու սկյութենների երկրում՝ այժմյան Գյումրի-Լենինականում։ Այստեղից հույների ճանապարհը մինչև Տրապիզոն որոշվում է միանգամայն բավարար ճշտությամբ։ Լենինական-Գյումրիի մոտից նրանք գնացել էին Ջարիշատի շրջանի միջով և Արդահանի հարավակողմով դեպի Ճորոխ գետը և այնտեղից մակրոնների ու կոլխերի երկրների միջով ու դժվարանցանելի լեռնային տեղերով դեպի Տրապիզոն։

Քսենոփոնն Արմենիան անվանում է ընդարձակ ու բարեկեցիկ երկիր։ Նրա ժամանակ Արմենիայի սատրապն է եղել Օրոնտասը (’Ορόντας=«Երուանդ»)։ Սա ծագում էր, ինչպես երևում է Ստրաբոնի մի վկայությունից (XI, 14, 15)՝ պարսկական բարձր ազնվականության Վիդարնայի սերունդից, որը գահ էր բարձրացրել Դարեհ Ա-ին։

---

[1] Տե՛ս «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», Երևան, 1936, էջ 37—40։

[2] Երևան, 1944 թ.։

«Կարդուխների երկիրն անցնելուց հետո,—վկայում է Քսենոֆոնը[1],—ասում էին, որ [հույները] կգան Արմենիա, որը մեծ է ու հարուստ և գտնվում է Օրոնտասի իշխանության տակ»։

Թեև պատմագիտական գրեթե բոլոր երկերում մատնանշվում է, որ Արմենիան Քսենոֆոնի ժամանակ ունեցել է երկու սատրապ[2], սակայն մեջ բերված այս վկայությունից կարելի է թերևս հետևցնել, որ ինչպես Հերոդոտոսի, նույնպես և Քսենոֆոնի ժամանակ, Արմենիան ունեցել է, հավանորեն, միայն մեկ սատրապ։

Վերոհիշյալ երկերի մեջ բերված հետևության հիմք է ծառայել, անշուշտ, այն, որ բացի սատրապ Օրոնտասից Քսենոֆոնի մոտ հիշատակված է նաև Արևմտյան Արմենիայի—Տավրոսյան լեռների հյուսիսակողմում գտնվող արմենական շրջանների—առանձին կառավարիչը, Տիրիբազը, որին համարել են Արմենիայի այս մասի սատրապ։ Կարելի է սակայն ենթադրել, որ այս Տիրիբազը, որը Քսենոֆոնի մոտ (IV, 4, 4) անվանված է Արևմտյան Արմենիայի «հյուպարքոս» (ὕπαρχος), այսինքն՝ փոխկառավարիչ, եղել է, հավանորեն, Օրոնտաս սատրապի օգնականը։ Ինչպես վկայում է Քսենոֆոնը, Տիրիբազը Պարսից թագավոր Արտաքսերքսես Բ-ի բարեկամն էր և ուներ Պարսից թագավորին ձի նստեցնելու հատուկ արտոնություն (IV, 4, 4)[3]։ Նույն այս Տիրիբազը, ասում է Քսենոֆոնը «Անաբասիս»-ի վերջաբանում (VII, 8, 25), կուսակալն էր փասիանների և հեսպերիտների։

Ենթադրելով, որ Քսենոֆոնի ժամանակ Արմենիան վարչականապես բաժանված է եղել երկու մասերի՝ արևելյան և արևմտյան, պատմագետները, իմ կարծիքով, սխալ են որոշել սրանց տեղերը։ Ադոնցը, օրինակ, կարծում է, որ Քսենոֆոնի հիշատակած Արմենիայի արևելյան ու արևմտյան մասերը համապատասխանում են, իսկապես, Աքեմենյան ժամանակաշրջանի վերոհիշ-

---

[1] «Անաբասիս», գք. III, գլ. 5, 17։

[2] Տե՛ս Գառագաշյան, քննական պատմություն Հայոց, Ա, էջ 67. Халатьянц, Очерк истории Армении, էջ 92. Հ. Գելցեր, Համառօտ պատմութիւն Հայոց թարգմ. Գալեմքարյանի, էջ 7. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, էջ 760 և ուրիշ։ Որ Արմենիան Քսենոֆոնի ժամանակ ունեցել է միայն մեկ սատրապ՝ այդ մատնանշված է նաև Լեոյի մոտ՝ «Հայոց պատմութիւն», հատ. Ա., Թիֆլիս, 1917, էջ 331։

[3] Քսենոֆոնի վկայությունները Օրոնտասի և Տիրիբազի մասին շփոթված են ու սխալ են մեկնված պատմագիտական մի շարք երկերում։ Վիդարնայի սերունդից էր ծագում ո՛չ թե Տիրիբազը, ինչպես մատնանշում են Գառագաշյանը, Խալաթյանցը և ուրիշները, այլ Օրոնտասը։

յալ 13-րդ և 18-րդ սատրապությունների[1]։ Այդ, իհարկե, ճիշտ չէ։ Հերոդոտոսի ժամանակից հետո մինչև Քսենոփոնը սասպեյրների, ալարոդների և մատիենների երկիրը չէր կարող, անշուշտ, դառած լինել Արևելյան Արմենիա։ Վերջինս, ինչպես դժվար չէ կռահել Քսենոփոնի վկայություններից, ըստ երևույթին, գտնվում էր այդ ժամանակ Տավրոսյան լեռների ու Վանա լճի հարավակողմում։ Սխալ է, անտարակույս, նաև Լեոյի ենթադրությունը[2], որ իբր թե Արևելյան Արմենիան պարունակում էր իր մեջ Արածանիի վերին հովիտը (Ալաշկերտը, Դիադինը)։ Ճիշտ չէ ըստ իս նաև Գևորգ Ասլանի ենթադրությունը, որը Արևելյան Արմենիա է համարում Արաքս գետի ավազանի շրջանները, իսկ Արևմտյան Արմենիա՝ Եփրատ գետինը[3]։

Ի նկատի ունենալով արմենների վերև մատնանշված զաղթավայրերը, ինձ թվում է, կարելի է ենթադրել, որ Քսենոփոնի ժամանակ Արևելյան Արմենիա է համարվել, հավանորեն, Տավրոսյան լեռների ու Վանա լճի հարավակողմում գտնվող արմենական երկիրը, իսկ Արևմտյան Արմենիա՝ նույն լեռների հյուսիսակողմում գտնվող Արածանիի հովիտները և Մշո դաշտը մինչև Փոքր Հայք ու Սև ծով։

Արմեններն այս ժամանակաշրջանում դեռևս չէին անցել Արարատյան դաշտը և այնտեղ դեռ ապրում էին սասպեյրները, ալարոդները և հին բնիկ ցեղերը։ Արմենների երկիրը, ըստ երևույթին, հասնում էր հյուսիս-արևելքում մինչև Բագրևանդ ու Ծաղկոտն։

Քսենոփոնի ժամանակ Հայկական լեռնաշխարհի զանազան կողմերում բացի արմեններից ապրել են այլևայլ ցեղեր, որոնց մի մասը հիշատակված է Հերոդոտոսի ու Քսենոփոնի երկերում։ Պատմագիտական ուսումնասիրություններում այս ցեղերի մասին հաճախ տրվում են սխալ լուսաբանություններ, ուստի և այս խնդիրը կարոտ է հատուկ ընդարձակ քննության։

Արմեններին հարևան էին հարավում կարդուխները, որոնք

---

[1] Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 390։ Համեմատել նաև K. Aslan, Études historiques sur le peuple arménien, Paris, 1909, էջ 71 և ուրիշ.։

[2] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, Ա., էջ 331։ Համեմատե նաև Халатьянц, Очерк истории Армении, էջ 92, որը Արևելյան Արմենիայի մայրաքաղաք է համարում Տահապիվանը։

[3] Տե՛ս K. Aslan, Etudes historiques, էջ 71։

գտնվում էին, ինչպես տեսանք, Կենտրիտես գետի (այժմյան Բոհտան-սուի) հարավում։ Քսենոփոնի նկարագրած կարդուխների երկիրը համապատասխանում է հին հայ պատմիչների մոտ հիշատակված «Կորդուք»-ին, «Կորդուաց աշխարհ»-ին։ Քսենոփոնի ժամանակ կարդուխների քաջ ու ռազմիկ ցեղը եղել է անկախ և ենթարկված չէ եղել Պարսից իշխանության։ Կարդուխների ու արմենների միջև գոյություն է ունեցել այդ ժամանակ անհաշտ թշնամություն։ Կենտրիտես գետի աջ ափի մոտ, մոտավորապես այժմյան Սղերտի շրջանում, Քսենոփոնի ասելով՝ արմենների գյուղեր չկային պատերազմների պատճառով կարդուխների հետ[1]։

Պատմագիտական երկերում, մեծ մասամբ, ենթադրում են, որ կարդուխներն այժմյան քրդերի նախահայրերն են[2]։ Այդ ենթադրությունը համարվում է այժմ սխալ և անընդունելի։ Քսենոփոնի վկայություններից երևում է, որ կարդուխները նստակյաց ժողովուրդ էին և ունեին համեմատաբար բարձր մշակույթ։ Հելլենական զորքերը, որ բանակել էին նրանց լքված գյուղերում՝ կարդուխների գեղեցիկ տներում, որ կահավորված էին մեծ քանակությամբ պղնձե ամաններով՝ գտել էին պարենի առատ պաշարներ ու նաև շատ գինի, որ նրանք պահում էին ծեփված հորերում (IV, 2, 22)։ Առանձնապես հետաքրքիր է նաև Ստրաբոնի վկայությունը (XVI, 1, 24), որը մատնանշում է, որ կարդուխները համարվում էին նշանավոր ճարտարապետներ և փորձառու էին քաղաքների ու բերդերի պաշարման աշխատանքներում։ Իբրև զենք նրանք գործ էին ածում, ինչպես վկայում է Քսենոփոնը («Անաբասիս», IV, 2 28), աղեղներ ու պարսատիկներ։ Աղեղներն ունեին մոտավորապես երեք կանգուն, այսինքն, մոտ $1^2/_5$ մետր երկարություն, իսկ նետերն՝ ավելի քան երկու կանգուն, այսինքն ավելի քան 1 մետր երկարություն («Անաբասիս», IV, 2, 27—28)։

Նստակյաց և երկրագործ այս հին ժողովուրդը, ինչպես երևում է մեջ բերված վկայություններից, չէ կարող լինել այժմյան

---

[1] Կարդուխների մասին վերոհիշյալ տեղեկությունները տալիս է Քսենոփոնը «Անաբասիս»-ի երրորդ ու չորրորդ գրքերում՝ III, 5, 16, IV, 4, 1։ Արմեններին ու նրանց հարևաններին վերաբերող «Կյուրոպեդիա»-ի ու «Անաբասիս»-ի համապատասխան հատվածները, որ թարգմանել եմ հունարենից, տպագրված են սույն գրքի վերջում՝ հատուկ հավելվածում։

[2] Տե՛ս *Justi*, Geschichte Irans, Grundriss der Iranischen Philologie, II, 5, էջ 464. *H. Kiepert*, Lehrbuch der alten Geographie, Berlin, 1878, էջ 80. *J. Morgan*, Histoire du peuple arménien, Paris, 1919, էջ 24. Լեո, Հայոց պատմություն, հատ. Ա., Թիֆլիս, 1917, էջ 330 և ուրիշ.։

խաշնարած ու թափառակյաց քուրդերի նախահայրը։ Պրոֆ. Մարկվարտը ենթադրում է[1], որ իրենց լեզվով ու բարքերով կարդուխները, հավանորեն ցեղակից էին խալդ-ուրարտացիներին։ Բայց այս ենթադրությունը ևս, որը հիմնավորված չէ փաստական տվյալներով՝ չէ կարող համոզիչ լինել ու ընդունելի։ Ուստի և կարդուխների ազգակցության խնդիրը փոքր-ասիական այս կամ այն ցեղի հետ մնում է դեռևս մութ և անորոշ։

Ինչպես հաղորդում է Քսենոփոնը («Անաբասիս», IV, 3, 4), Կենտրիտես գետի մոտ Օրոնտասի զորքի մեջ բացի արմեններից կային նաև մարդեր և խալդայներ (χαλδαιοι)՝ վարձկան։

«Ասում էին,—պատմում է Քսենոփոնը,—որ խալդայներն ազատ են ու ռազմունակ։ Իբրև զենք գործ են ածում երկար վահաններ ու նիզակներ» (IV, 3, 4)։

Որ խալդայներն ինքնուրույն են եղել և չեն եղել հպատակված Պարսից թագավորին՝ այդ Քսենոփոնի մոտ մատնանշված է նաև երկու այլ վկայությունների մեջ։

«Իսկ կարդուխներին, տաոխներին և խալդայներին,—ասում է Քսենոփոնը,—որոնք չէին հպատակված թագավորին ու նաև խիստ երկյուղալի թշնամիներ էին՝ մեզ հնազանդեցրինք, որովհետև պետք է վերցնեինք կենսամթերքներ, որ նրանք չէին ուզում մեզ մատակարարել» («Անաբասիս», V, 5, 17)։

Պրոֆ. Մարկվարտը ենթադրում է, որ Օրոնտասի զորքի մեջ եղած վարձկան խալդայները, հավանորեն, Հարավային Արմենիայի խալդ-ուրարտացիներն էին, իսկ երկրորդ վկայության մեջ տաոխների հետ նշված խալդայները, որոնք հիշատակված են իբրև անկախ ժողովուրդ խալյուբների ու մակրոնների միջև նաև «Անաբասիս»-ի վերջաբանում (VII, 8, 25), ըստ երևույթին, խալյուբների հարևան հյուսիսային խալդ-ուրարտացիներն են[2]։

Մարկվարտի կարծիքով, որ ինձ ևս հավանական է թվում՝ Օրոնտասի զորքի մեջ եղած խալդայները Հին Աղձնիքի և, գլխավորապես, Սասունի ու Խույթ լեռան խալդերն էին, որոնք հիշատակված են նաև 6-րդ դարի (նախքան մեր թվ.) հույն պատմագիր Հեկատայոսի մոտ[3]։

---

[1] *Markwart*, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 34։

[2] *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, Wien, 1930, էջ 229—230։

[3] Տե՛ս նույնը, էջ 229։ Համեմատե նաև Մարկվարտի նախորդ աշխատու-

Վերոհիշյալ վկայություններից, որ վերաբերում են խալդայներին, կարելի է, ինչպես տեսնում ենք, հետևցնել, որ մինչև իսկ 401—400 թվերին մեր թվականությունից առաջ խալդ-ուրարտացիները, որ հարևան էին հնդեվրոպական եկվոր արմեններին, որոշ շրջաններում պահպանել էին իրենց անկախությունն ու ինքնուրույնությունը։ Դժվար չէ Քսենոփոնի վկայություններից նաև հետևցնել, որ Աքեմենյան Պարսկաստանի իշխանությունը հենված է եղել Արմենիայում, գլխավորապես, արմենների ռազմական ուժի վրա, որը, հավանորեն, հիմնական մասն էր կազմում Օրոնտաս սատրապի զորքերի։

Բացի արմեններից ու վարձկան խալդայներից Օրոնտասի զորքի շարքերում հիշատակված են նաև մարդերը։ Քսենոփոնի վկայությունից, դժբախտաբար, պարզ չէ, թե արդյոք միայն խալդայներն էին վարձկան, թե նաև մարդերը։

«Սրանք [ձիավորները և հետևակները],—ասում է Քսենոփոնը,—էին Օրոնտասի և Արտուխասի արմենները և մարդերը և խալդայները վարձկան» («Անաբասիս», IV, 3, 4)։

Մարկվարտը ենթադրում է, որ այս հատվածում «վարձկան» բառը վերաբերում է ո՛չ միայն խալդայներին, այլև մարդերին[1]։ Եթե ընդունենք, իրոք, որ մարդերը ևս վարձկաններ էին՝ այդ դեպքում հավանական կարելի է համարել, որ նրանք ևս եղել են ազատ ու անկախ, ինչպես և խալդայները։

Հերոդոտոսը իր պատմության մեջ մարդերին համարում է իրանական նոմադ ժողովուրդ (գք. I, գլ. 125)։ Բայց Մարկվարտի ասելով՝ մինչև այժմ դեռ պարզ չէ, թե արդյոք մարդերն ի բնե իրանական նոմադնե՞ր էին, թե՛ նախաիրանական նոմադ ցեղ էին, որ ժամանակի ընթացքում խառնվել էր իրանցիների հետ և իրանացել[2]։

Մարկվարտը հավանական է համարում, որ մարդերն այժմյան քրդերի նախնիներն են։ Նրա կարծիքով, այդ ակնարկված է տասներորդ դարի արաբ մատենագիր Մասուդիի մոտ, որը քուրդ ազգաբաններից իմացել էր, որ քրդերի նախահայրը,

---

թյունները—„Untersuchungen zur Geschichte von Eran", I Göttingen, 1896, էջ 65—66 և „Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation„, Berlin 1919, էջ 17։

[1] Տե՛ս „Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation„, էջ 24։

[2] Նույնը, էջ 21։

Քուրդը, Մարդի որդին էր[1]։ Մասուդիի այս վկայությունը, իրապես, ուշագրավ է, որովհետև հայ մատենագրության մեջ ևս քուրդերն անվանվում են «ազգն մարաց»։

Մարդերը, ինչպես ենթադրում են, ապրել են պատմական Հայաստանի երկու հին գավառներում, որոնք նրանց անունով կոչվել են Մարդաստան և Մարդաղի։ Այս գավառներից առաջինը, Մարդաստանը, գտնվել է ո՛չ թե Արճակ լճի արևելակողմում կամ հյուսիս-արևելակողմում, ինչպես ենթադրել են Հյուբշմանը և Ադոնցը[2], այլ հին Արտազ գավառի և այժմյան Մակուի արևմտակողմում[3]։ Իսկ Մարդաղին գտնվել է այժմյան Բինգյոլի հյուսիսակողմում՝ Կարինի շրջանից դեպի հարավ։ Ադոնցը ենթադրում է, որ այս գավառի մարդերը հետնորդներն էին հավանորեն, Քսենոփոնի հիշած մարդերի, որոնք, նրա կարծիքով, կարող էին գաղթած լինել հյուսիս հարավից[4]։

Քսենոփոնի ժամանակ, ինչպես մատնանշում է Մարկվարտը, Օրոնտասի զորքի մեջ եղած մարդերը, նաև արմեններն ու խալդայները, ըստ երևույթին, Արևելյան Արմենիայի կամ նաև նրա սահմանակից շրջանների բնակիչներն էին։ Այս մարդերի բնակության վայրը Մարկվարտը, հիմնվելով հռոմեական աղբյուրների վրա՝ մատնացույց է անում Աղիաբենի ու Կալաքենի հյուսիսակողմում, Վասպուրականի Անձավացիք գավառում, որը գտնվում էր Կենտրիտես գետի (այժմյան Բոհտան-սուի) վերին հոսանքի կողմերում[5]։

Հյուսիս-արևմտյան կողմից արմեններին հարևան էին խալյուբները։ Սրանք, ինչպես և տաոխները, հիշատակվում են Քսենոփոնի «Անաբասիս»-ի մեջ իբրև վարձկան զինվորներ Տիրիբազի զորքի շարքերում (IV, 4, 18)։ Խալյուբների երկրի միջով հելլեններն անցել էին յոթը օրվա ճանապարհ, մոտ 50 փարսախ՝ ավե-

---

1 Նույնը, էջ 22։

2 Տե՛ս Hüpschmann, Die altarmenischen Ortsnamen, Indogermanische Forschungen,, Bd. 16, 1904, էջ 239 և Абонц, Армения в эпоху Юстиниана, էջ 316:

3 Տե՛ս Ա. Խաչատրյան, Արիական խավը նախաուրարտյան Հայաստանում, «Տեղեկ. գիտ. և արվ. ինստ.», № 4 (1930), էջ 25 և իմ աշխատությունը «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 158—159։

4 Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 417, ծան. 5։

5 Տե՛ս Markwart, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 23—26։

*լի քան 250 կիլոմետր։ Քսենոփոնը սրանց համարում է ամենառազմիկ ժողովուրդն այն բոլոր ցեղերից, որոնց հետ կռիվներ էին ունեցել հելլենները (IV, 7, 15)։ Քսենոփոնի և Ստրաբոնի վկայություններից հայտնի է նմանապես, որ խալյուբների մի մասը, որն ապրում էր պոնտական լեռներում՝ զբաղվում էր երկաթագործությամբ («Անաբասիս», V, 5, 1 և Ստրաբոն, XIV, 3, 19)։*

*Ուշագրավ է այն, որ Քսենոփոնի հիշատակած պոնտական խալյուբները Ստրաբոնի մոտ (XII, 3, 8) անվանված են խալդայներ։ Ի նկատի առնելով Ստրաբոնի այս վկայությունը, նաև այն, որ խալյուբները գտնվում էին ըստ Քսենոփոնի կուլտուրական զարգացման համեմատաբար բարձր աստիճանի վրա՝ գիտնականներից շատերը ենթադրում են, որ նրանք ցեղակից էին խալդ-ուրարտացիներին*[1]*։*

*Խալյուբների բարքերի, զենքերի ու ամրությունների հետաքրքիր նկարագրությունը տալիս է Քսենոփոնը հետևյալ իր վկայության մեջ։*

*Քսենոփոն, «Անաբասիս», IV, 7, 15—17՝*

*«Սրանք [խալյուբները] բոլոր ժողովուրդներից, որոնց միջով անցել էին հելլենները, ամենաքաջն էին և մարտի էին բռնվում։ Նրանք ունեին վուշից պատրաստված զրահներ մինչև փորը, իսկ զրահածայրերի փոխարեն՝ հաստ հյուսված քուղեր։ Ունեին նաև սռնապաններ և սաղավարտներ ու գոտիների մոտ դաշույն՝ նման լակեդեմոնական կեռ փոքր դանակի, որով սպանում էին, ում որ կարողանում էին հաղթել, և, կտրելով ու վերցնելով գլուխները՝ մեկնում էին։ Նրանք երգում և պարում էին, երբ թշնամիները կարողանում էին իրենց տեսնել։ Ունեին նաև նիզակ, որը ուներ մեկ ծայր մոտ տասնհինգ կանգուն երկարությամբ։ Նրանք պաշտպանվում էին քաղաքավայրերում և, երբ հելլենները մոտով անցնում էին՝ հետապնդում էին և պատրաստ էին միշտ կռվելու։ Ապրում էին ամուր տեղերում, որոնց մեջ հավաքված էր նաև պաշարեղենը. այնպես որ հելլենները ոչինչ չկարողացան վերցնել այստեղից, այլ սնվում էին այն կենսամթերքներով, որ վերցրել էին տաոխներից»։*

---

[1] *Տե՛ս S. Feist,* Kultur, Ausbreitung und Herkunft der Indogermanen, Berlin, 1913, էջ 403. *Markwart,* Südarmenien und die Tigrisguellen, Wien, 1930, էջ 230 և ուրիշ.։

Ինչպես վարձկաններ Տիրիբազի զորքի շարքերում Քսենոփոնի մոտ հիշատակված են, բացի խալյուբներից, նաև տաոխները։ Սրանց երկրի միջով հելլեններն անցել էին հինգ օրվա ճանապարհ՝ մոտ 30 փարսախ[1] (=մոտավորապես 150 կիլոմետր)։ Սրանք, ըստ երևույթին, հարևան են եղել խալյուբներին ու փասիաններին և միասին դիմադրել էին հելլեններին, երբ սրանք Փասիս—Պասին-սու գետի ավազանից անցել էին մոտակա լեռնանցքը։ Տաոխների ու փասիանների անուններից, ինչպես հայտնի է, ծագել են պատմական Հայաստանի «Տայք» և «Բասյան» գավառների անունները։

Բացի վերոհիշյալ ժողովուրդներից՝ Հայկական լեռնաշխարհի թե արևմտյան և թե հյուսիսային ու արևելյան մասերում բնակվում էին նաև զանազան այլ ցեղեր, որոնք մասամբ հիշատակված են Հերոդոտոսի, Քսենոփոնի և հունա-հռոմեական այլ երկերում։

Քսենոփոնի վկայություններից գիտենք, որ նահանջող հելլենները Հայկական բարձրավանդակի հյուսիս-արևմտյան կողմերում՝ Արաքս, Արփա-չայ և Ճորոխ գետերի ուղղությամբ և ավելի արևմուտք դեպի Տրապիզոն՝ անցել էին սկյութենների, մակրոնների, կոլխերի, տիբարենների և մոսինոյկների երկրներով, որոնք բոլորը ազատ են եղել և Պարսից թագավորությունից միանգամայն անկախ։ Նույն կողմերում ապրել են հեսպերիտները և փասիանները, որոնք սակայն գտնվել են Տիրիբազի իշխանության տակ։

«Հին Հայաստանի և Անդրկովկասի պատմության մի քանի պրոբլեմների մասին» իմ աշխատության մեջ ես մանրամասն ցույց եմ տվել, որ դեռևս ութերորդ դարում մեր թվականությունից առաջ Հայկական լեռնաշխարհի հյուսիսում հաստատվել էին Հարավային Ռուսաստանից գաղթած կիմմերական-սկյութական ցեղեր, որոնց մի մասը հունա-հռոմեական աղբյուրներում անվանված են սարապարաներ[2], սակասաններ[3] և այնիաններ[4]։

Հերոդոտոսի վկայություններից ևս հայտնի է, որ նրա ժամանակ (մոտավ. 484—425 մեր թվ. առաջ) Կողքիսից սկսած մինչև Մեդական երկիրը (հավանորեն, այժմյան Նախիջևանի կողմերը)՝ ապրել են սկյութական ցեղեր, որ նրա մոտ անվան-

[1] «Անաբասիս», IV, 7, 1։
[2] Strabo, XI, 14, 14։
[3] Plin., Nat. Hist., VI, 11,I (հրատ. Littré—ի)։
[4] Տե՛ս Herod., I, 104 և 110, IV, 37 և 40, III, 94. IV, 7, 18։

*ված են սապեյրներ։ Նույն այս ցեղերը, որոնք Տասը Հազարի նահանջի ժամանակ (401—400 մեր թվ. առաջ) գտնվել են այժմյան Կարս-Լենինականի շրջաններում և Արարատյան դաշտում՝ Քսենոփոնի մոտ[1] անվանված են սկյութեններ։*

*Նույն զորքերի նահանջից հետո, ինչպես ցույց է տրված նույնպես վերոհիշյալ իմ աշխատության մեջ, Անդրկովկաս էին արշավել և բնակություն էին հաստատել պատմական Հայաստանի հյուսիսում սարմատական ցեղեր, գլխավորապես, սիրակները և, հավանորեն, նաև գոգերը, որոնց անունն են կրում Հին Հայաստանի Շիրակ գավառը և Գուգարք նահանգը։*

*Կիմմերական, սկյութական և սարմատական ցեղերի գաղթը և հաստատումը Հայաստանի հյուսիսում պատմական կարևոր մի նոր փաստ է, որ պետք է այսուհետև նկատի ունենան ո՛չ միայն պատմագետները, որ լուսաբանում են հայ ժողովրդի էթնիկական ծագումը և կազմավորումը, այլև լեզվաբաններն ու հնագետները, որոնք ուսումնասիրում են հայերեն լեզուն, հին Հայաստանի տեղանունները ու նաև նրա նյութական կուլտուրան։*

*Բացի վերոհիշյալ ժողովուրդներից՝ իբրև Հայկական լեռնաշխարհի բնակիչներ աղբյուրների մեջ հիշատակված են նաև մոսխեր, ուտիներ, պակտիներ և ուրիշ ցեղեր։*

*Այս բազմազան ցեղերը, որոնց մեծագույն մասը հետագա դարերում ձուլվել էր արմենների հետ՝ Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ եղել են առանձին ժողովուրդներ՝ յուրաքանչյուրը իր սեփական լեզվով կամ բարբառով։ Նրանք գտնվել են, ինչպես երևում է աղբյուրների վկայություններից, կուլտուրական ու սոցիալական զարգացման տարբեր աստիճանների վրա։*

*Դժվար չէ ուրեմն եզրակացնել, որ հայ ժողովրդի պատմության հնագույն այս ժամանակաշրջանում դեռևս չէր կազմվել մի՛ ժողովուրդ և մի՛ երկիր՝ հայ և Հայաստան, և որ հայության ու պատմական Հայաստանի կազմավորման ընթացքում մեծ դեր են կատարել, բացի խեթերից ու խալդերից, նաև վերև հիշատակված մյուս ժողովուրդները։*

---

[1] *Xenoph.*, Anabasis, IV, 7, 18.

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ԱՐՄԵՆՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱՅԻՆ ԿԵՆՑԱՂԸ ԸՍՏ ՔՍԵՆՈՓՈՆԻ

**1. Արմենիայի բարեկեցիկ վիճակը.—Սատրապանիստ գյուղը Սղերտի կամ Թեղվանի շրջանում.—Տելեբոաս գետը:—2. Գյուղերի առատ պաշարեղենը Տելեբոաս գետի արևելակողմում:—3. Արմենական գյուղերը Եփրատ գետի ակունքների մոտ.—գետնափոր տները.—գարուց պատրաստված խմիչքը.—հույների կերուխումը:—4. Արմենական ձիերը:—5. Արմենների տնտեսության հիմքը—նստակյաց հողագործություն՝ միացած անասնապահության հետ:—6. Կուլտուրական ու կենցաղային տարբերությունները Արմենիայի զանազան շրջաններում:—7. Արմենիայի սոցիալական ու տնտեսական վիճակը.—տոհմային կենցաղը.—գյուղապետները կամ կոմարխները.—քաղաքների բացակայությունը.—բնական տնտեսությունը:—8. Տոհմացեղերի համախմբումը բասիլեվս-արքայի իշխանության տակ.—բասիլեվսի զորքը և դրամական հարստությունը.—տոհմային հարաբերությունների բեկումը և տոհմապետների իշխանության զորեղացումը:—9. Արմենական ամբողջ ժողովուրդը զորք էր.—հին վրացերեն «էրի», որ նշանակում է ժողովուրդ և զորք:—10. Արմենները որպես զինվորական գաղթականներ և իբրև «ռազմական դեմոկրատիա».—նման կազմակերպությունը մեդացիների ու հին պարսիկների:—11. Դաշնակից այս ժողովուրդների համագործակցությունը և Հին Արևելքի մեծ պետությունների կործանումը.—Մառի կարծիքն այդ մասին:**

*Խիստ հետաքրքրական են, մասնավորապես, Քսենոփոնի տված տեղեկությունները արմենների տնտեսական կյանքի և ներքին կենցաղի մասին[1]։ Արմենիան նա անվանում է «ընդարձակ ու բարեկեցիկ երկիր»։ Եվ, իրավի, Քսենոփոնի նկարագրություններից պարզ երևում է և Արմենիայի բարեկեցիկ վիճակը և, մասնավորապես, արմենների գյուղերի լիությունն ու պաշարեղենի առատությունը։*

*Հույները, ինչպես վերև ասացինք, մտել էին Արմենիա*

[1] *Տե՛ս «Անաբասիս», գիրք IV, գլ. 3, 4, և 5։*

Կորդուքի կողմից, անցնելով Կենտրիտես (Բոհտան-սու) գետը, որը բաժանում էր Արևելյան Արմենիան կարդուխների երկրից։ Այս գետի մոտ, աջ ափի վրա, Քսենոփոնի ասելով, գյուղեր չեն եղել կարդուխների հետ կռիվների պատճառով։ Գետից 5 փարսախ կամ մոտավորապես 25 կիլոմետր հեռավորության վրա, այժմյան Սղերտի կամ Բեղվանի շրջանում, հույները մտել էին մի մեծ գյուղ, ուր տների մեծամասնության վրա եղել են աշտարակներ։ Այս գյուղն ունեցել է սատրապի բնակության համար ապարանք-ամրոց։ Ինչպես առանձնապես մատնանշում է Քսենոփոնը, հույները կարողացել էին ձեռք բերել այստեղ կենսամթերքների առատ պաշարներ։

Շարժվելով այստեղից դեպի հյուսիս և անցնելով 25 փարսախ կամ մոտ 125 կիլոմետր՝ հույներն իջել էին Մշո դաշտը և հասել մինչև Տելեբոաս գետը, որը, ինչպես ասացինք, Մարկվարտը համապատասխան է համարում հին Մեղ գետին (այժմ՝ Կարասու)։ Այս շրջանը համարվել է Արևմտյան Արմենիայի մասը և գտնվել է, ինչպես տեսանք, հյուպարքոս Տիրիբազի իշխանության տակ։

«Տելեբոաս գետը,—ասում է Քսենոփոնը,—գեղեցիկ էր, բայց ոչ մեծ։ Գետի շուրջը կային բազմաթիվ գյուղեր» («Անաբասիս», գք. IV, գլ. 4, 3)։

Այստեղ Տիրիբազը ձիավորների ուղեկցությամբ մոտեցել էր հույներին և, ուղարկելով մի թարգման, հայտնել էր, որ ցանկանում է բանակցել նրանց հետ։ Բանակցությունների ընթացքում պայման կապվեց, որ հույները չպիտի այրեն արմենների գյուղերն ու տները, իսկ պաշարը կարող են վերցնել՝ որքան որ իրենց հարկավոր է։

Տելեբոաս գետի մոտից հույները գնացել էին երեք օրվա ճանապարհ դաշտի միջով, ընդամենը՝ 15 փարսախ կամ մոտ 75 կիլոմետր դեպի արևելք և հասել էին ապարանք-ամրոցի մոտ, որի շուրջը եղել են դարձյալ բազմաթիվ գյուղեր, լիքը պաշարեղենով։ Այստեղ նրանք գտել էին մսացու անասուններ, հաց, հին անուշահոտ գինիներ, չամիչ, զանազան ընդեղեններ, նաև խոզի ճարպ, քնջութ, դառն նշի և բևեկնի յուղ ու սրանցից պատրաստված անուշահոտ յուղ։

Քսենոփոնի ասելով, հույն զինվորներից ոմանք, հակառակ Տիրիբազի հետ կապված պայմանի, «ամբարտավանաբար այրել էին» այս գյուղերում տների մի մասը։

Շարունակելով իրենց ճանապարհը՝ հույները բարձրացել

էին այնուհետև լեռները և հարձակվել էին լեռնանցքում Տիրիբազի բանակի վրա։ Նրանք գրավել էին Տիրիբազի վրանը և վրանի մեջ արծաթի ոտքերով գահույքներ ու ըմպանակներ և գերի էին վերցրել նրա հացարարներին ու մատռվակներին։

Անցնելով լեռան կատարը՝ նրանք գնացել էին անմարդաբնակ վայրերով երեք օրվա ճանապարհ, 15 փարսախ կամ մոտ 75 կիլոմետր, մինչև Եփրատ գետը և, առաջ շարժվելով այստեղից ու գնալով դաշտի միջով 5 փարսախ կամ մոտ 25 կիլոմետր՝ իջևանել էին արմենների գյուղերում, որոնց նկարագիրն առանձնապես հետաքրքրական է։

Նրանց առաջապահ գունդը, հասնելով մի գյուղ, աղբյուրի մոտ պատնեշի առջև հանդիպել էր ջուր տանող գյուղացի կանանց ու աղջիկներին։ Սրանք հարցնում են հյուրերին, թե ո՞վքեր են։ Իսկ վերջիններս, թարգմանելով իրենց ով լինելը՝ պարսկախոս թարգմանի միջոցով ասում են, որ իրենք թագավորի կողմից գնում են սատրապի մոտ։ Կանայք հայտնում են, որ սատրապն այստեղից մի փարսախ հեռու է։ Հույները, որովհետև արդեն ուշ էր, կանանց հետ մտնում են ամրություն, ուր գտնվում էր գյուղապետը, և տեղավորվում այնտեղ։

Երբ մյուս զորավարները ևս իրենց զորքերով հասնում են այդ գյուղը, ուր իջևանել էր առաջապահ գունդը՝ իրենց մեջ բաժանում են շրջակա գյուղերը։ Քսենոփոնը պատմում է, որ իր զորքի մի մասը արագ վազում է այն գյուղը, որը ստացել էր ինքը վիճակակարկությամբ, և

> «ձերբակալեց ներսում գտնվող բոլոր գյուղացիներին ու գյուղապետին և 17 ձիու քուռակ, որ սնվում էին իբրև տուրք թագավորին, նույնպես գյուղապետի աղջկանը, որն իններորդ օրն էր, որ ամուսնացած էր։ Իսկ նրա մարդը գնացել էր նապաստակ որսալու և գյուղում չգերվեց»[1]։

Այս շրջանի գյուղերում,— ասում է Քսենոփոնը՝

> «տները... գետնափոր էին, մուտքը ջրհորի բերնի նման, իսկ ներքևն ընդարձակ։ Կենդանիների համար հատուկ մուտք կար փորված, իսկ մարդիկ իջնում էին ցած սանդուղքներով։ Տների մեջ կային այծեր, ոչխարներ, եզներ, հավեր և սրանց ձագերը։ Բոլոր կենդանիները կերակրվում էին ներսում խոտով։ Բայց կար նաև ցորեն, գարի, ընդեղեն-

---

[1] «Անաբասիս», գիրք IV, գլ. 5, § 24։



6—318

ներ և կարասներում՝ գարուց պատրաստված գինի, որի երեսին լողում էին իրենք գարու հատիկները։ Կարասների մեջ դրված էին մեծ ու փոքր եղեգներ, որոնք ծունկեր չունեին։ Երբ մեկն ուզենար խմել՝ պետք է այդ եղեգները բերանին դներ ու ծծեր։ Եվ շատ թունդ էր, եթե ջուր չխառնեին. բայց սովոր մարդու համար խիստ ախորժելի խմիչք էր»[1]։

Հույները, որ տեղավորվել էին գյուղերից փախած կամ կալանավորված գյուղացիների տներում՝ յոթը օր մնացին այստեղ և, ունենալով առատությամբ պաշարեղեն՝ կերուխում էին անում և փոխադարձաբար իրար հյուրասիրում։ Պատմագիտական երկերում ընդունված ենթադրությունը, որ իբր թե նահանջող հույն զորքը արմենների գյուղերում հյուրասիրվում էր իրենց գյուղացիների կողմից՝ սխալ մի կարծիք է, որ չէ համապատասխանում իրականության։

«Հետևյալ օրը,—պատմում է Քսենոփոնը,—ինքը, վերցնելով իր հետ գյուղապետին՝ գնաց Խեյրիսոֆոսի մոտ։ Ուր որ գյուղ էր մտնում՝ գնում էր գյուղերում եղողների մոտ և ամեն տեղ գտնում էր նրանց կերուխում անելիս և ուրախ։ Եվ ոչ մի տեղից բաց չէին թողնում, մինչև չմատուցանեին նրանց ամենաընտիր կերակուրները։ Չկար մի տեղ, ուր չդնեին սեղանի վրա ոչխարի, այծի, խոզի, հորթի ու հավի միս և մեծ քանակությամբ գարու և ցորենի հաց։ Երբ մեկը մտերմաբար կամենում էր մի ուրիշի կենացը խմել, քարշ էր տալիս նրան կարասի մոտ, և այնտեղ պետք էր խմել, կռանալով ու ծծելով եզան նման։ Գյուղապետին ևս թույլ տվին վերցնել՝ ինչ որ կամենում էր։ Իսկ նա ոչինչ չէր վերցնում, այլ երբ որևէ տեղ տեսնում էր ազգակիցներից մեկին՝ տանում էր միշտ իր մոտ։ Երբ նրանք եկան Խեյրիսոֆոսի մոտ, սրանց ևս գտան կերուխում անելիս՝ պսակված չոր խոտե պսակներով։ Սպասավորում էին արմենների երեխաները բարբարոսական զգեստներով և նրանք երեխաներին ցույց էին տալիս, իբրև մունջերի, թե ինչ պիտի անել։ Երբ Խեյրիսոֆոսը և Քսենոփոնն իրար ողջունեցին՝ սկսեցին միասին հարցուփորձ անել գյուղապետին պարսկերեն խոսող թարգմանի միջոցով, թե ի՞նչ երկիր է այս։ Եվ նա ասաց, որ Արմենիան է։ Եվ դարձյալ հարցրին, թե ո՞ւմ համար են սնվում ձիերը։ Եվ նա ասաց, որ թագավորի համար իբրև տուրք։

[1] Նույնը, § 25—27։

Հարևան երկիրը, ասաց, խալյուբներն են և ցույց տվեց, թե ո՛րն է ճանապարհը»[1]։

Քսենոփոնը մի քանի անգամ հիշում է արմենների ձիերը և առանձնապես շեշտում է, որ Արմենիայի ձիերը թեև պարսկական ձիերից փոքր են, բայց շատ ավելի կայտառ են։ Նա վըկայում է, բացի այդ, որ ձիերը, ինչպես ինքը լսել է, զոհ են բերում այստեղ արևին։ Այս լսած լինելով՝ Քսենոփոնն իր ծերացած ձին տալիս է գյուղապետին, որպեսզի սա կերակրե, պարարտացնե նրան ու զոհ բերե արևին, իսկ փոխարենը վերցնում է ձիաքուռակներից մեկը։

Քսենոփոնի հաղորդած վերոհիշյալ տեղեկությունների վրա մենք մանրամասն կանգ առանք, որովհետև դրանք են, գլխավորապես, աղոտ կերպով արտացոլում Աքեմենյան ժամանակաշըրջանի Արմենիայի տնտեսական դրությունը և հասարակային կենցաղը։

Քսենոփոնի վկայություններից պարզ երևում է, որ արմենները եղել են նստակյաց ու հողագործ ժողովուրդ և երկրագործական մշակույթի տեսակետից կանգնած են եղել համեմատաբար բարձր աստիճանի վրա։

Վերոհիշյալ վկայություններում, ինչպես տեսանք, բացի ցորենի, գարու և ընդեղենների առատ պաշարներից, որ գտնըվում էին արմենների գյուղերում, և բացի չամիչից ու անուշահոտ գինիներից, որ պարզ ակնարկ են այգեգործության զարգացման՝ հիշատակվում են նաև քնջութ, դառն նշի և բևեկնի յուղ ու սրանցից պատրաստված անուշահոտ յուղ։

Արմենիայում զարգացած է եղել ո՛չ միայն երկրագործությունը, այլև անասնապահությունը։ Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի մեջ, ինչպես վերև տեսանք, մատնանշված է, որ արմենները, որոնք գրավել էին իրենց նոր երկրի դաշտային պտղատու մասերը՝ անասնապահության համար մեծ կարիք էին զգում լեռնային արոտատեղերի, որ գտնվում էին լեռներն ապաստանած խալդայների ձեռին։ Ստրաբոնի վկայությունից ևս մեզ հայտնի է, որ Արմենիան շատ հարուստ է եղել ձիաբուծական արոտներով և որ Արմենիայի սատրապը Պարսից թագավորին ուղարկում էր, ինչպես վերև ևս հիշեցինք, տարեկան 20.000 քուռակ[2]։ Իսկ Հերոդոտոսը արմեններին անվանում է πολυπρόβατοι, այսինքն՝ «հարուստ

---

[1] Նույնը, §§ 30—34։

[2] Տե՛ս Ստրաբոն, գիրք XI, գլ. 14, § 9։

անասուններով», և այս վկայությունը դարձյալ մի պարզ ցուցումն է, որ նրանք զբաղվել են խաշնարածությամբ[1]։ Ուրեմն վերոհիշյալ վկայություններից երևում է, որ Քսենոփոնի ժամանակաշրջանի արմենների տնտեսության հիմքը եղել է նստակյաց հողագործությունը՝ միացած անասնապահության հետ։

Քսենոփոնի հաղորդած տեղեկությունները «Կյուրոպեդիա»-ում ու «Անաբասիս»-ում ուշագրավ են, ի միջի այլոց, այն տեսակետից, որ ցույց են տալիս կուլտուրական ու կենցաղային տարբերությունները Արմենիայում ու նրա հարևան այլևայլ շրջաններում։ Մենք տեսանք վերև, որ Հայկական լեռնաշխարհի նախաարմենական տիրող հին ժողովուրդը, խալդ-ուրարտացիները, ունեցել է բավական բարձր քաղաքակրթություն։ Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության շրջանում ևս կուլտուրական զարգացման համեմատաբար բարձր աստիճանի վրա էին գտնվում, ինչպես տեսանք, կարդուխները և խալյուբները։

Ուշագրավ է, բացի այդ, որ մինչև իսկ իրեն Արմենիայի որոշ շրջանները, որ նկարագրված են Քսենոփոնի «Անաբասիս»-ում, կուլտուրական իրենց կենցաղով որոշակի տարբերվում էին իրարից։ Կենտրիտես գետի մոտ գյուղերում տների մեծագույն մասը, ինչպես տեսանք, ունեցել են աշտարակներ, իսկ Եփրատ գետի ակունքների մոտ արմենական գյուղերի տները, որոնց նկարագրությունը մեջ էինք բերել վերև՝ եղել են գետնափոր։

Կենցաղային ու կուլտուրական այդ տարբերությունները մի ակնարկ են, անշուշտ, որ Հայկական լեռնաշխարհում և, մասնավորապես, նաև Արևելյան և Արևմտյան Արմենիայում, միակերպ չէր կարող լինել նաև սոցիալական կենցաղը ցեղային զանազան խմբավորումներում։

Այս տեսակետից Աքեմենյան ժամանակաշրջանի Արմենիայի սոցիալական-տնտեսական կենցաղի քննությունն ու լուսաբանումը հայոց ներքին կյանքի ամենադժվար ուսումնասիրելի խնդիրներից մեկն է։ Եվ այդ բացատրվում է ո՛չ միայն աղբյուրների ու նյութերի աղքատությամբ, այլև, գլխավորապես, նրանով, որ այս ժամանակաշրջանում հասարակական հարաբերությունների զարգացումը Արմենիայում տեղի էր ունենում նոր եկվոր ժողովրդի և Ուրարտական թագավորության հին ժողովուրդների հասարակական կարգերի ու կենցաղի բախման ու փոխհարաբերության բարդ պայմաններում։

---

1 Հերոդ., գիրք V, գլ. 49։

Հատկապես արմենների հասարակարգը, ինչպես միանգամայն ճիշտ ենթադրել է Ն. Ադոնցը, հենվելով Քսենոփոնի վկայությունների վրա՝ բնորոշվում է իբրև տոհմատիրական[1]։ Այդ երևում է, իրապես, Քսենոփոնի վերոհիշյալ վկայություններից, որոնց մեջ նկարագրված է արմենների գյուղական կենցաղը։

Արմենները, ինչպես վերև տեսանք, համաձայն Քսենոփոնի նկարագրության, ապրում էին իրար մոտ խմբված գյուղերում, որոնք արտաքին հարձակումներից պաշտպանվելու համար գտնվում էին ամրոցների շուրջը և շրջապատված էին պատնեշներով։ Գյուղերի գլուխ կանգնած էին գյուղապետները, որ Քսենոփոնի մոտ անվանված են կոմարխներ (κωμάρχης կամ ἄρχων τῆς κώμης)։ Սրանք սատրապների հետ միասին իշխանության ու կառավարության ներկայացուցիչներն էին։ Արմենական գյուղերի նահապետական պատկերը՝ հատուկ պատնեշները, որոնցով շրջապատված են եղել գյուղերը, ստորերկրյա նախնական տները, որոնց մեջ մարդկանց հետ միասին ապրել են նաև նրանց անասունները՝ որոշ ակնարկներ են հարկավ, որ արմենների մոտ հասարակական կենցաղը ունեցել է տոհմային հիմքեր։ Քսենոփոնի պատմելով՝ ձերբակալված գյուղապետին, որ ուղեկցում էր հույներին՝ սրանք առաջարկում էին վերցնել, ինչ որ կամենում էր. սակայն նա հրաժարվում էր և «երբ որևէ տեղ տեսնում էր ազգակիցներից մեկին՝ տանում էր միշտ իր մոտ»։ Ադոնցի կարծիքով՝ գյուղապետի այս հայրական վերաբերմունքը և հոգատարությունը իր ազգակիցների հանդեպ բնորոշ մի հատկանիշ է դարձյալ տոհմային կենցաղի։

Արմենների գյուղերից մեկում հույները խլել ու իրենց էին վերցրել 17 ձիաքուռակ, որ իբրև տուրք սնվում էին, ինչպես տեսանք, Պարսից թագավորի համար։ Գյուղերի հարկատվության նաև այս կոլեկտիվ բնույթն ուշադրության արժանի է և կարծես թե մի նշան է գյուղերի համայնական-տոհմական կազմակերպության։

Քսենոփոնի հաղորդած տեղեկությունները, ինչպես հայտնի է, վերաբերում են միմիայն գյուղերին։ Արմենիայի միջով նահանջող հունական զորքը տեսել էր ճանապարհին միմիայն գյուղեր ու ամրոցներ, սակայն չէր տեսել և ոչ մի քաղաք։ Որ քաղաքներ, իբրև առևտրի ու արհեստագործության կենտրոններ, Արմենիայում գոյություն չունեին Քսենոփոնի ժամանակ՝ այդ ավելի

---

[1] Տե՛ս Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 390—391։

քան հավանական է, որովհետև, ինչպես տեսանք, Արմենիայի սատրապի նստավայրը գտնվում էր ո՛չ թե քաղաքում, այլ մեծ գյուղում, կենտրոնից գետի մոտ՝ հատուկ պալատանք-ամրոցում։

Քաղաքների բացակայությունը, ինչպես և երկրի նահապետական դրությունը, թույլ են տալիս կարծելու, որ ժողովրդի դասակարգային շերտավորումը գտնվել է դեռևս սաղմնային վիճակի մեջ։ Իսկ պաշարեղենի առատությունը գյուղերում, ինչպես և արմենների տնային կենցաղը, կարող են նույնպես անուղղակի մի նշան համարվել, որ Քսենոփոնի ժամանակ Արմենիան գտնվել է բնական տնտեսության զարգացման շրջանում։

Ընդունելով որ Քսենոփոնի նկարագրած Արմենիայում հասարակարգը եղել է տոհմային՝ պետք է ի նկատի ունենալ և այն, որ արդեն այս հնագույն շրջանում կարելի է ենթադրել տոհմային հարաբերությունների որոշ բեկում և տոհմապետների ու առաջնորդների իշխանության ու հեղինակության ուժեղացում։

Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի վկայություններից, որ աղոտ կերպով ուրվագծում են Արմենիայի քաղաքական վիճակը մեդապարսկական տիրապետության հնագույն շրջանում՝ կարելի է հետևցնել, որ արմենների առանձին տոհմերը համախմբված են եղել և կազմել են արդեն տոհմացեղային միություններ, որոնք գտնվել են բասիլևս-արքայի իշխանության տակ։ «Կյուրոպեդիա»-ի մեջ, ինչպես տեսանք, հիշատակված են Կյուրոս Մեծի ժամանակակից արմենների արքան և նրա երկու որդիները։ Արմենների արքան ունեցել է ըստ Քսենոփոնի 40.000 հետևակ զորք և 8.000 հեծելազոր, իսկ դրամ 3.000 տաղանդից ավելի։

Կարևոր այս վկայություններից, որոնց հիմքը, ըստ երևույթին, Քսենոփոնի լսած տեղական ավանդություններն էին՝ կարելի է հետևցնել, որ Աքեմենյան տիրապետության դեռ սկզբնական շրջանում, արդեն 6-րդ դարում, արմենները ունեցած պիտի լինեին տոհմապետներ ու առաջնորդներ, որոնք ենթարկվում էին իրենցից ավելի հզոր բասիլևս-արքայի իշխանության։ Այսպիսի առաջնորդներ էին, հավանորեն, Բեհիստունի արձանագրության մեջ հիշատակված Դարեհ Ա-ի զորավար Դադարշիշը, որը պատերազմել էր ապստամբած արմենների դեմ, և Արախան, որը տիրել էր Բաբելոնին և այնտեղ իրեն հռչակել էր թագավոր։

Արմենների տոհմապետներն ու առաջնորդները, ըստ երևույթին, արդեն այս ժամանակաշրջանում հետզհետե դառնում էին տոհմակալ իշխանները։ Նոր երկրների գրավումը, տեղական ցեղերի

*նվաճումը և նրանց ենթարկումը նվաճողների իշխանության՝ չէին կարող չթողնել իրենց ազդեցությունը տոհմային հարաբերությունների վրա և նպաստելու էին, անտարակույս, արմենների մոտ ևս տոհմապետների ու ցեղապետների իրավունքների ընդարձակման։ Միևնույն ժամանակ տնտեսական անհավասարությունը, որ ըստեղծվում էր հաղթված ժողովուրդների ստորադրմամբ նվաճողներին, հավանորեն, արմենների տիրապետության հնագույն, նույնիսկ այս շրջանում սկսել էր վերածվել քաղաքական ու իրավական անհավասարության և նպաստում էր հետզհետե դասերի ու դասակարգային հասարակության կազմակերպման։*

*Քսենոփոնի հաղորդած վերոհիշյալ վկայություններից հատուկ ուշադրության արժանի է նրա տված տեղեկությունը, որ արմեններն օգնական զորք էին տալիս Պարսկաստանին՝ 40.000 հետևազոր և 8.000 հեծելազոր։*

*Զորքի այս մեծ թիվը արմենների, որոնք այդ ժամանակ գրավել էին Հայկական լեռնաշխարհի միայն մի փոքր մասը՝ որոշ հիմք է տալիս ըստ իս ենթադրելու, որ արմենական համեմատաբար փոքրաթիվ գաղթականները բոլորն էլ եղել են, հավանորեն, զինվորներ։*

*Նման կարծիք հայտնել է հին վրացական ցեղերի մասին ակադ. Ի. Ջավախիշվիլին։ Հիմնվելով Ստրաբոնի վկայության վրա Իբերիայի ազատ բնակչության մասին, որը խաղաղ ժամանակ զբաղվում էր երկրագործությամբ, իսկ պատերազմի ժամանակ դուրս էր գալիս կռվի՝ Ջավախիշվիլին մատնանշում է, որ հնագույն այդ ժամանակաշրջանում Իբերիայում, ինչպես և Աղվանքում, ամբողջ ժողովուրդը դառնում էր վտանգի ժամանակ զորք։ Հենց այդ է պատճառը, ենթադրում է Ջավախիշվիլին, որ հին վրացերենում «էրի» նշանակում է և ժողովուրդ և զորք*[1]*։*

*Ըստ երևույթին, ճիշտ պետք է լինի ըստ այսմ նաև Մարկվարտի վերոհիշյալ կարծիքը, որ մեդացիները, Ուրարտուն նվաճելուց հետո, նրա անհանգիստ ժողովուրդների դեմ պայքարելիս՝ հենվում էին դաշնակից արմենների վրա։ Վերջինները, Մարկվարտի կարծիքով, օգտագործում էին որպես զինվորական գաղութականներ, և հենց այդ պատճառով մեդացիները, ինչպես վերև տեսանք, նրանց բնակեցրել էին Հայկական լեռնաշխարհի ստրատեգիական ամենակարևոր շրջաններում։*

---

[1] *Տե՛ս И. Джавахишвили*, Государственный строй древней Грузии и древней Армении, СПб., *1908, էջ 62—63։*

Ընդունելով, որ արմենների հասարակարգի հիմքը Աքեմենյան տիրապետության ժամանակ կազմում էր տոհմական կենցաղը, որի մեջ սկսվել էր արդեն որոշ բեկում, և, ի նկատի առնելով աղբյուրների տվյալներն արմենների բասիլևս-արքայի, ռազմառաջնորդների և մեծաթիվ ու ընդհանուր աշխարհազորի մասին՝ կարելի է ըստ իս եզրակացնել, որ հին արմենները, ինչպես և 6—7-րդ դ. (մեր թվ. հ.) հին սլավոնները, գտնվել են «ռազմական դեմոկրատիայի» այն ընթացաշրջանում, որը հիշատակված է էնգելսի մոտ[1]։

Հասարակական զարգացման նման ընթացաշրջանում գտնվել են, ինչպես դժվար չէ համոզվել, ուշադիր կերպով քննելով դասական հեղինակների վկայությունները՝ նաև մեդացիների ու հին պարսիկների տոհմացեղային միությունները։ Հին պարսիկների ներքին կենցաղը մանրամասն նկարագրված է Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ում[2], որը թեև միտումնավոր գրական երկ է, սակայն հիմնականում ճիշտ է արտացոլում սրանց հասարակարգի էական կողմերը։ Քսենոփոնի մոտ մանրամասն նկարագրված է ինչպես այս ռազմիկ ժողովրդի դեմոկրատական կազմակերպությունը, մասնավորապես, նրա հատուկ համայնաժողովը, նույնպես և մատնացույց է արված և նրա ժողովուրդ-զորք լինելը։

Հիմնվելով ուշագրավ ու կարևոր այս դիտողությունների վրա, ինձ թվում է, որ ավելի քան հավանական պետք է համարել, որ այստեղ Արևելքում ևս, ինչպես և միջին դարերում Արևմուտքում, հին կուլտուրական մեծ պետությունների կործանման գործում վճռական դեր էին կատարել բարբարոս կոչվող նոր ժողովուրդները, գլխավորապես, մեդացիները, պարսիկները և արմենները, «որոնց համար այն ժամանակ,—ինչպես ասում է էնգելսը,— պատերազմը և կազմակերպումը պատերազմի համար ժողովրդական կյանքի կանոնավոր ֆունկցիաներն էին»[3]։

Նման կարծիք հայտնել է, հատկապես, արմենների մասին, ակադ. Մառը իր «Անի» աշխատության մեջ։

«Նվ ահա երևան են գալիս,—ասում է Մառը,—մեկը մյուսի հետևից ռազմատենչ արիական ցեղեր, ճիշտ այնպես, ինչպես ավելի ուշ շրջանում ներգաղթող թուրքերի հոծ

---

[1] *Энгельс*, Происхождение семьи, частной собственности и государства, М., **1932**, էջ *165*։

[2] *Տե՛ս Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ *373—383*։

[3] *Նույնը*, էջ *165*։

*բազմությունը։ Այս արիական ցեղերը, որոնք այդ ժամանակ, անկասկած, վայրենիներ էին համեմատած տեղական բնակչության հետ, սակայն ուժեղ էին իրենց ռազմական կազմակերպության պատճառով՝ հպատակեցնում են կուլտուրապես ավելի զարգացած ռասան, խառնվում են նրա հետ և ստեղծում են մի նոր աշխարհ»*[1]։

*Որ արմեններն այս շրջանում դաշնակից կամ համագործակից էին դառել մեդացիներին ու պարսիկներին՝ այդ բացատրվում է, ըստ երևույթին, մասամբ նրանով, որ այս երեք ժողովուրդները գտնվում էին այդ ժամանակ հասարակական զարգացման նման ընթացաշրջանում, որը բնորոշվում է իբրև «ռազմական դեմոկրատիա»-ի հասարակարգ։*

---

1 *Н. Я: Марр*, Ани, Л., 1934, էջ 5—6։

## ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ԱՐՄԵՆԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԸ ԱՂԵՔՍԱՆԴՐ ՄԱԿԵԴՈՆԱՑՈՒ ԵՎ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ

1. Աքեմենյան Պարսկաստանի թուլացումը.—հույների ձգտումը նվաճելու Պարսկաստանը:—2. Աղեքսանդր Մակեդոնացու հաղթական արշավանքը և մակեդոնական իշխանության հաստատումը Արևելքում.—Աղեքսանդր Մեծի միացյալ մեծ պետության մասնատումը նրա հաջորդների ժամանակ:—3. Առաջավոր Ասիայի տնտեսական ու կուլտուրական արագ վերելքը և հելլենիստական քաղաքակրթության տարածումը Արևելքում:—4. Ինքնավար քաղաքների հիմնումը և առևտրի, արհեստների ու արդյունագործության զարգացումը.—առևտրի համաշխարհային բնույթը.—փոխանակությունը և փողային տնտեսությունը:—5. Արմենական երկրները մակեդոնական տիրապետության շրջանում.—արմենների մասնակցությունը մեծ կռիվներին.—Մեննոնի անհաջող արշավանքը Սպերում.—Միթրինես կուսակալի առաքումը Փոքր Հայք.—Արմենիայի տեղական իշխանների ինքնուրույնությունը:—6. Կապպադովկիայի նվաճումը և հանձնումը իբրև սատրապություն Եվմենեսին:—7. Նեոպտոլեմոսը՝ կուսակալ Փոքր Հայքի.—8. Բանասերների սխալ կարծիքը Փրատափեռնեսի առաքման մասին Հայաստան:—9. Երվանդյանների իշխանությունն Արմենիայի մեծագույն մասում.—10. Կապպադովկիայի ազատագրումը արմենների Արդոատես թագավորի զորքերի օգնությամբ:—11. Պոնտական թագավորության հիմնումը:

Քսենոփոնի ժամանակից հարյուր տարի չանցած՝ Առաջավոր Ասիայի պատմության համար սկսվեց մի նոր դարաշրջան։

Չորրորդ դարում մեր թվականությունից առաջ Պարսից մեծ պետությունը աստիճանաբար գնում էր դեպի անկում։ Պետական կենտրոնացման այն հզոր կազմակերպությունը, որ ստեղծել էր Դարեհ Ա-ը՝ սրա հաջորդների ժամանակ սկսել էր հետզհետե թուլանալ։ Սատրապները, որոնք միացրել էին իրենց ձեռքում զինվորական ու քաղաքական իշխանությունը՝ չափազանց զորեղացել էին և դառել էին գրեթե անկախ գերապետներ։ Կենտրո-

նական իշխանությունը հարկադրված էր լինում պարբերաբար կռիվ մղել ապստամբած սատրապների ու անկախության ձգտող ժողովուրդների դեմ։ Աքեմենյան Պարսկաստանի քաղաքական այս վատթար կացությունը շատ լավ հայտնի էր հույներին, որոնք իբրև վարձկան զինվորներ կատարում էին այստեղ նույն դերը, ինչ որ գերմանացիները Հռոմեական կայսրության անկման շրջանում։

Հույները վաղուց արդեն ձգտում ունեին նվաճելու այս մեծ երկիրը և գրավելու նրա հարստությունները։ Դեռևս Սպարտայի թագավոր Ագեզիլաոսը փորձ էր արել արշավելու Պարսկաստան և, Սարդեսի մոտ պարտության մատնելով պարսիկներին՝ հասել էր մինչև Կապպադովկիա (395 թ. մեր թվ. առաջ)։ Սակայն նա հարկադրված եղավ ետ նահանջել, որովհետև պարսիկներին հաջողվել էր Սպարտայի դեմ ոտքի հանել նրա հակառակորդներին բուն Հունաստանում։

Մակեդոնիայի Փիլիպպոս թագավորը (359—336 թ. մեր թվ. առաջ), որը կարողացել էր միացնել իր իշխանության տակ ամբողջ Հունաստանը՝ սպանվեց 336 թվին, երբ նա պատրաստվում էր հարձակվելու Պարսկաստանի վրա և հայտարարելու էր նրան պատերազմ։ Սրա մահից հետո այդ մեծ ծրագիրը իրագործեց նրա որդին։

Աղեքսանդր Մակեդոնացին (336—323 թ. մեր թվ. ա.) երեք մեծ ճակատամարտից հետո—334 թվին Գրանիկ գետի մոտ, 333 թվին Կիլիկիայի Իսսոս հարթավայրի շրջանում և 331 թվին Նինվեի ավերակների մոտ գտնվող Գավգամելայի ու Արբելայի շրջակայքում—վերջնականապես ջախջախեց ու ոչնչացրեց Պարսկաստանի ռազմական ուժը, նվաճեց Դարեհ III Կոդոմանոսի[1] աշխարհածավալ պետությունը ու Հնդկաստանի մի մասը և հայտարարեց իրեն մակեդոնական-պարսկական միացյալ պետության ինքնակալ։

Այսպիսով 331 թվից սկսած պարսից տիրապետությունը փոխարինվեց Առաջավոր Ասիայում հունական-մակեդոնական տիրապետությամբ։ Նոր վիթխարի պետության կենտրոնը դառավ Բաբելոն քաղաքը։

---

[1] Այս Դարեհ Կոդոմանոսը թագավոր դառնալուց առաջ, ինչպես հաղորդում է Յուստինոսը, եղել է Արմենիայի սատրապ, տե՛ս *M. Juniani Justini,* Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, X, 3, 4—5։

Աղեքսանդր Մակեդոնացին մտադիր էր նոր արշավանք սկսել դեպի արևմուտք և մտադիր էր նվաճել նաև ամբողջ հյուսիսային Աֆրիկան ու Իտալիան, սակայն նա 323 թվին անակնկալ կերպով վախճանվեց համեմատաբար երիտասարդ հասակում (նա ծնվել էր 356 թվին)։

Աղեքսանդր Մակեդոնացու մահից հետո մակեդոնական զորավարների մեջ, որոնք փորձում էին ժառանգել ու տեր դառնալ մեծ աշխարհակալի նվաճած երկրներին՝ ծագեցին կատաղի ու երկարատև կռիվներ։ Վերջ ի վերջո Աղեքսանդրի միապետությունը բաժան-բաժան եղավ և ստեղծվեցին երեք խոշոր ու մի քանի փոքր թագավորություններ։

Առանձին խոշոր ու անկախ պետություն դառավ Մակեդոնական թագավորությունը, որը պարունակում էր իր մեջ Հունաստանը և Մակեդոնիան։ Ասիական նվաճումների մեծագույն մասը ժառանգեց Սելևկոս զորավարը, որը հիմնադիր եղավ Սելևկյան մեծ պետության։ Այս զորավարը, որն անվանվում է Սելևկոս Նիկատոր Νιxχ'ωρ =«հաղթող», 312—281 մեր թվ. առաջ)՝ իրեն մայրաքաղաք էր ընտրել նախ Բաբելոնը, հետո իր կառուցած Սելևկիա քաղաքը, որը գտնվում էր Տիգրիս գետի վրա, և ապա իր հիմնած Անտիոք քաղաքը, որը գտնվում էր Ասորիքում Օրոնտես գետի վրա։ Երրորդ մեծ պետությունն էր Եգիպտական թագավորությունը, որի հիմնադիրը եղավ Պտոլեմայոս զորավարը։ Բացի այս խոշոր պետություններից՝ հիմնվեցին Փոքր Ասիայում նաև մանր թագավորություններ՝ Բյութանիան, Պերգամոնը և ուրիշները։

Աղեքսանդր Մակեդոնացու և Սելևկյանների տիրապետությունը Առաջավոր Ասիայի պատմության համար սկիզբն եղավ սրա տնտեսական մեծ զարգացման ու արագ վերելքի և մինչևիսկ սրա սոցիալական կերպափոխման։

Մակեդոնական տիրապետությունն այստեղ արտակարգ մի շրջան դառավ առևտրի, արհեստների ու արդյունագործության բուռն բարգավաճման, բազմաթիվ հունական գաղութների ու քաղաքների հիմնարկման և հելլենիստական քաղաքային կուլտուրայի առաջացման, որով միանգամայն նոր ընթացք տրվեց Մերձավոր Արևելքի հետագա զարգացման։

Աղեքսանդր Մակեդոնացին, որ հանճարեղ Արիստոտելի աշակերտն էր, իրեն նպատակ էր դրել մերձեցնել իրար ու հաշտեցնել Արևմուտքն ու Արևելքը, որոնք ըստ իրենց հասարակական կազ-

մակերպության և կուլտուրական կենցաղի առանձին ու տարբեր աշխարհներ էին։ Այս հսկայական ծրագիրն իրագործելու համար Ալեքսանդրը աշխատում էր հելլենական ոգով քաղաքակրթել արևելցիներին, որոնք հույն և մակեդոնացի մտավորականների աչքում համարվում էին արդեն բարեկիրթ օտար ժողովուրդներ։ Արևելքի հելլենացման համար նա դիմում էր արմատական ու կտրուկ միջոցների։ Արևելցիներին նա խումբ-խումբ փոխադրում էր Եվրոպա, իսկ Եվրոպայից գաղթեցնում էր Ասիա հույներ ու մակեդոնացիներ։ Նա հիմնել էր Արևելքում բազմաթիվ ինքնավար քաղաքներ, որոնց բնակչության հիմնական մասը կազմում էին հունական և մակեդոնական զինվորական գաղութները։ Նա ամեն կերպ խրախուսում էր խառն ամուսնությունները և, օրինակ տալու համար իր հպատակներին՝ հենց ինքը ամուսնացել էր բակտրուհի Ռոքսանեի հետ։

Հելլենացման նույն քաղաքականությունը շարունակվել էր Ալեքսանդր Մակեդոնացու հաջորդների և, մանավանդ, Սելևկյանների ժամանակ, որոնք բազմաթիվ քաղաքներ էին հիմնել, գլխավորապես, Հայաստանի սահմանակից երկրներում՝ Միջագետքում և Ասորիքում։

Այսպիսով Ալեքսանդր Մակեդոնացու նվաճումների շնորհիվ հունական կուլտուրան տարածվեց Առաջավոր Ասիայում։ Նա խառնվեց այստեղ տեղական արևելյան կուլտուրաների հետ և այդ միացումից ծագեց հունական-արևելյան խառն կուլտուրան, որն անվանվում է հելլենիստական։

Առաջավոր Ասիայում, վերոհիշյալ նոր պետություններում, որոնք կազմվել էին Ալեքսանդր Մակեդոնացու հաջորդների ժամանակ, մեծ չափով հարգված ու տարածված էր հունարեն լեզուն, հունական գրականությունը, գիտությունը և փիլիսոփայությունը։

Նվաճելով Մերձավոր Արևելքը և հիմնելով այստեղ աշխարհակալ մի մեծ պետություն, որը տարածվում էր մինչև Հնդկական օվկիանոսը և Իրանի հյուսիս-արևելյան շրջանները՝ Հելլենական արևմուտքը, ինչպես տեսանք, ամենամեծ չափով աշխատել էր զարկ տալ այստեղ առևտրի, արհեստների և արդյունագործության զարգացման։ Ալեքսանդր Մակեդոնացին և նրա հաջորդները բարեկարգեցին և պահպանեցին Եվրոպայի ու Առաջավոր Ասիայի հաղորդակցությունը Միջին Ասիայի ու Հնդկաստանի հետ։ Առևտուրը ստացավ նրանց ժամանակ համաշխարհային բնույթ, և նրա գլխավոր կենտրոնները դարան Եգիպտոսում Ալեքսանդրիա քաղաքը, իսկ Մերձավոր Արևելքում՝ Սելևկիան ու Անտիոքը։

Նոր քաղաքները, մեծ մասամբ, հիմնված էին առևտրական մեծ ճանապարհների վրա։ Այդ քաղաքներն ինքնավար էին և իրենց ներքին էությամբ միանգամայն տարբեր էին Արևելքի գյուղաքաղաքներից։ Լինելով խոշոր համաշխարհային առևտրի միջնորդներ՝ նրանք աներևակայելի արագությամբ բարգավաճում ու հարստանում էին և, բնականաբար, դեպի Արևելք էին գրավում Հունաստանի առևտրական կապիտալը, միաժամանակ նաև նրա ժողովրդի ձեռներեց ու ընդունակ տարրերը։ Փոխանակության ու փողային տնտեսության զարգացմանը մեծապես նպաստում էին Աղեքսանդր Մակեդոնացու գրաված ոսկի ու արծաթ դրամի այն հսկայական հարստությունները, որ մինչև այդ անօգտաբար կիտված էին Պարսից թագավորի գանձապահեստներում։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ համաշխարհային մեծ առևտրի հետ միասին հելլենիստական քաղաքներում կենտրոնացավ նաև հելլենիստական համատարած կուլտուրան՝ արվեստը, կրթությունը և գիտությունը։ Որքան մոտ լիներ այդ քաղաքներից որևէ երկիր՝ այնքան նա ավելի էր ենթարկվում հելլենիզմի ազդեցությանը։ Իսկ որովհետև առևտրական մեծ ճանապարհները գտնվում էին Առաջավոր Ասիայի հարավային կողմերում և Միջերկրական ծովափնյա երկրներն ամենամեծ նշանակություն ունեին առևտրական հաղորդակցության համար՝ ուստի և հելլենիզմն ամենից շատ տարածվեց Ասորիքում, Միջագետքում, Եգիպտոսում և Փոքր Ասիայի արևմտյան մասերում, ուր և գտնվում էր մակեդոնական ու սելևկյան քաղաքների մեծագույն մասը։

Աքեմենյան Պարսկաստանի նվաճումը և Աղեքսանդր Մակեդոնացու աշխարհակալության ու Սելևկյանների հելլենիստական մեծ պետության հաստատումը Առաջավոր Ասիայում Հայաստանի պատմության և նրա քաղաքական ու տնտեսական զարգացման համար սկիզբն են համարվում նոր դարաշրջանի, որը տևեց մինչև Զարեհյան ու Արտաշեսյան թագավորությունների հիմնադրումը Ծոփքում ու Մեծ Հայաստանում (330—190 մեր թվ. առաջ)։

Հայ ժողովրդի անցյալի այս հարյուր քառասուն տարվա պատմությունը, դժբախտաբար, մեզ որոշ հայտնի չէ։ Հայկական հին աղբյուրները չեն տալիս այդ դարաշրջանի անցքերի մասին ոչ մի տեղեկություն։ Ուստի անհրաժեշտ է դիմել բացառապես օտար աղբյուրների օգնության, որոնք թեև Հայաստանի մասին ունեն

կցկտուր միայն ու պատահական վկայություններ, բայց և այնպես փոքր ի շատե լույս են սփռում նրա քաղաքական դրության վրա այս ժամանակաշրջանում։

Պետք է ասել, որ այդ մութ ու աղոտ տեղեկությունները խառնաշփոթված ու հաճախ սխալ են լուսաբանված պատմական գրքերի բոլոր հայկական երկերում։

Հռոմեական-հունական աղբյուրների—Արրիանի և Կուրտիուս Ռուֆուսի—վկայություններից մեզ հայտնի է, որ արմենները պարսիկների հետ միասին մարտնչել էին Աղեքսանդր Մակեդոնացու դեմ Գավգամելայի ճակատամարտում[1]։ Արմենական զորքի թիվը Կուրտիուս Ռուֆուսի մոտ ցույց է տրված 40.000 հետևազոր և 7.000 հեծելազոր[2]։ Գավգամելայի ճակատամարտում, ինչպես վկայում է նույն այս հեղինակը, պարսկական բանակի ձախ թևում գտնվել են Փոքր Հայքի արմենները, իսկ աջ թևում՝ Մեծ Հայքի զորքերը[3]։ Արրիանի վկայությամբ՝ արմենական այս զորքերի առաջնորդներն են եղել Օրոնտասը և Միթրաուստեսը (Ὀρόνης καὶ Μιθρύστης)[4]։

Մեջ բերված այս փաստական տեղեկություններն ըստ իս կարևոր են ու ուշագրավ, որովհետև չորրորդ դարի երկրորդ կեսում մեր թվականությունից առաջ նրանք հիշատակում են իբրև երկու առանձին երկրներ ո՛չ թե Արևելյան ու Արևմտյան Հայաստանը, ինչպես այդ մատնանշված է Քսենոփոնի «Անաբասիս»-ում, այլ Մեծ Հայքը և Փոքր Հայքը։

Ինչպես հայտնի է, Աղեքսանդր Մակեդոնացին արշավել էր Արևելք Փոքր Ասիայի հարավային շրջաններով և Կիլիկիայի ու հյուսիսային Միջագետքի վրայով անցել էր դեպի Բաբելոն, Սուզա և Պերսեպոլիս։ Նա Հայաստան ինքը բնավ չէր մտել, ուստի և թե Հայաստանը և թե Փոքր Ասիայի լեռնային հյուսիսային շրջանները նրա արշավանքի ժամանակ չէին ենթարկվել հարձակումների։

Ստրաբոնը վկայում է սակայն, որ Պարսկաստանի նվաճումից հետո Աղեքսանդրի կողմից Մեննոնի առաջնորդությամբ առանձին զորամաս է ուղարկված եղել Հայկական լեռնաշխարհը

---

[1] *Arriani,* De expeditione Alexandri, III, *11, 7*։ *Cartius Rufus,* Historiae Alexandri Magni, IV, *12, 10*։

[2] *Cartius Rufus,* III, *2, 6*։

[3] *Նույնը, IV, 12, 12*։

[4] *Arrian.*, III, *8, 5*.

գրավելու համար Հյուսպիրատիսի[1] շրջանում (Սպեր գավառում) գտնվող ոսկու հանքերը։

> «Հյուսպիրատիսի մեջ Կաբալլայի մոտ,—ասում է Ստրաբոնը,—գտնվում են ոսկու հանքեր և Աղեքսանդրը ուղարկեց այնտեղ Մենոնին զորքով, սակայն սա խեղդամահ արվեց տեղացիների կողմից»[2]։

Արրիանի և Կուրտիուս Ռուֆուսի մի այլ թռուցիկ ու անորոշ վկայությունից հայտնի է դարձյալ, որ Գավգամելայի ճակատամարտից հետո Աղեքսանդր Մակեդոնացին ուղարկած է եղել Հայաստան պարսիկ Միթրինես սատրապին, որը դավաճանաբար հանձնել էր իրեն Սարդեսի ամրոցը։

> «Եվ նա ուղարկեց Արմենիա,—վկայում է Արրիանը,—Միթրինես սատրապին, որը Աղեքսանդրին հանձնել էր Սարդեսում ամրոցը»[3]։

Մեջ բերված այս անորոշ վկայությունը հիմք է ծառայել բանասերներին ու պատմագետներին ենթադրելու, որ արդեն Աղեքսանդր Մակեդոնացու կենդանության ժամանակ արմենական երկրները ենթարկվել էին մակեդոնական իշխանության և կառավարվում էին նրա կուսակալների ձեռքով։ Գիտնականներից ոմանք էլ, ինչպես, օրինակ, Բաբելոնը և նրան հետևելով նաև ուրիշները, ենթադրում են, որ Միթրինեսը կուսակալ էր նշանակվել միայն Փոքր Հայքի[4]։

Այս ենթադրությունները պարզապես չհիմնավորված կռահումներ են, որ չեն կարող հաստատուն համարվել։ Ավելի հավանական է, հարկավ, գերմանական գիտնական Բելոխի կարծիքը[5], որը մատնացույց է անում, որ Միթրինեսին չէր հաջողվել, ըստ երևույթին, տիրել Հայաստանին, որովհետև 317 թվին (մեր թվ. ա.) իբրև բուն Հայաստանի կառավարիչ հիշատակ-

---

[1] Հունարեն ձեռագրին ունի Հյուսպիրատիս (ἐν τῇ Ὑσπιράτιδι), որին Մարկվարտը համապատասխան է համարում Հերոդոտոսի Σάσπειρες-ը (III, 94) և Քսենոփոնի Ἑσπερῖται-ը (Anab. VII, 8, 25). տե՛ս Eranschahr, Berlin, 1901, էջ 159։

[2] *Strabo*, XI, 14, 9.

[3] Տե՛ս *Arrian.*, III, 16, 5 և *Cartius Rufus*, V, 1, 44—«Արմենիան տրվել էր Միթրենին (Mithreni), Սարդեսի դավաճանին». համեմատե նաև *Diodori*, Bibliotheca historica, XVII, 64, 6։

[4] Տե՛ս *M. Ernest Babelon*, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, 1890, էջ CXCI։

[5] *K. J. Beloch*, Griechische Geschichte, III Band, 2 Abteilung, Strassburg, 1904, էջ 245։

վում է աղբյուրների մեջ Օրանտես-Երվանդը, որը, ինչպես տեսանք, արմենական զորքի առաջնորդն էր Գավգամելայի ճակատամարտում։

Կուրտիուս Ռուֆուսի մոտ (VI, 3, 3) մեջ է բերված Աղեքսանդր Մակեդոնացու Պարթևստանում արտասանած ճառը, որի մեջ Մերձավոր Արևելքի հյուսիսային շրջանները՝ Կապպադովկիան, Պափլագոնիան և Արմենիան՝ մատնացույց են արված որպես նվաճված երկրներ։ Սակայն այս վկայությունը ևս, որը հակասում է հնագույն աղբյուրների արժանահավատ ցուցումներին՝ իրավացի կերպով համարվում է անվստահելի։

Աղեքսանդր Մակեդոնացու մահից հետո (323 թ. մեր թվ. առաջ) նրա նվաճած երկրները, ինչպես հայտնի է, իրենց մեջ բաժանեցին նրա զորավարները։ Այդ բաժանումը տեղի էր ունեցել մի քանի անգամ՝ 323 թվին Բաբելոնում, 321 թվին Տրիպարադիսում և 315 թվին Պերսեպոլիսում։ Բաժանման ցուցակները մեզ հայտնի են։ Սակայն ուշագրավ է, որ բաժանման ենթարկված երկրների շարքում ցուցակներից և ոչ մեկում չէ հիշատակված Արմենիան՝ ո՛չ Մեծ Հայքը, ո՛չ էլ Փոքր Հայքը։

Որ Հայաստանը, իրոք, չէր դառել մակեդոնական կամ սելևկյան սատրապական նահանգ, այլ կառավարվում էր գրեթե միշտ բնիկ իշխանների ձեռքով (իշխանական պարսկական տոհմերը, հավանորեն, ձուլվել էին արդեն արմենականների հետ)՝ այդ պարզ կերպով մատնանշված է Յուստինոսի մոտ՝ Միհրդատ Եվպատորին վերագրված ճառի մեջ։

> «Որ նա ինքը,—ասել էր իր ճառի մեջ Միհրդատը,— այնպիսի երկրների թագավոր է, որոնք ոչ միայն հավասար են Հռոմեական պետությանը, այլև կարող են դեմ-հանդիման կանգնել նույնպես և Մակեդոնականին։ Իր հպատակ ժողովուրդներից և ոչ մեկը չէ կրել օտար իշխանություն. նրանք միշտ հնազանդվել են տեղական իրենց միայն թագավորներին։ Եթե ուզում են՝ թող քննության առնեն Կապպադովկիան կամ Պափլագոնիան, Պոնտոսը կամ Բյութանիան, նմանապես և Մեծ Հայքը կամ Փոքր Հայքը. այդ ժողովուրդներից և ոչ մեկին ձեռք չէին տվել ո՛չ ինքը Աղեքսանդրը, որ նվաճել էր ամբողջ Ասիան, ո՛չ էլ որևէ մեկը նրա հաջորդներից կամ հետնորդներից»[1]։

---

[1] Տե՛ս *Justini*, Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, XXXVIII, 7։



7—318

*Մակեդոնական-պարսկական երկրների առաջին բաժանման ժամանակ, որ տեղի էր ունեցել Բաբելոնում 32 թվին՝ զորավարների ժողովում որոշում էր ընդունվել նվաճել Հայաստանի հարևան Կապպադովկիան,—ուր այդ ժամանակ իր իշխանությունն էր հաստատել պարսկական սատրապ Արիարաթը,—նաև Պափլագոնիան ու Սև ծովի մոտակա շրջանները մինչև Տրապիզոն և այդ երկրները տալ իբրև առանձին սատրապություն Աղեքսանդր Մակեդոնացու քարտուղար Եվմենեսին[1]։ Համաձայն այդ որոշման ինքը մակեդոնական զորքերի հրամանատար Պերդիկկասը, որը Բաբելոնի ժողովում ընտրվել էր պետության խնամակալ՝ եկավ նվաճելու Կապպադովկիան։ Արիարաթը ծանր պարտություն կրեց ու մահվան դատապարտվեց (322 թ. մեր թվ. առաջ) և Կապպադովկիայում հաստատվեց իբրև սատրապ Եվմենեսը։*

*Շատ պարզ է, որ Եվմենեսի նորանվաճ այս սատրապությունը, որի սահմանը հասնելու էր մինչև Տրապիզոն, վտանգավոր հարևան էր դառնում Փոքր Հայքի համար, որը գտնվում էր անմիջապես հարավային Մեծ Կապպադովկիայի և ծովեզրյա Պոնտական Կապպադովկիայի միջև։ Կապպադովկիան նվաճելուց հետո Պերդիկկասի զորագլուխները աշխատելու էին, բնականաբար, տիրել և Փոքր Հայքին։ Եվ, իրապես, արդեն 322 թվին ուղարկված է եղել Փոքր Հայք զորապետ Նեոպտոլեմոսը, որը պետք է նվաճեր այդ երկիրը։*

*Սկզբնաղբյուրների որոշ ակնարկներից դժվար չէ կռահել, որ Փոքր Հայքը ոչ թե առանձին սատրապություն էր, ինչպես այդ սովորաբար ենթադրվում է պատմագիտական նորագույն երկերում, այլ նա արևելյան մասն էր Եվմենեսին տրված Կապպադովկյան սատրապության, և Նեոպտոլեմոսին էին հանձնարարել գրավել այդ շրջանը։*

*Ինչպես վկայում է Պլուտարքոսը, Նեոպտոլեմոսը, որը չափից դուրս հպարտ էր ու կամակոր՝ խիստ գրգռել էր Փոքր Հայքի բնակչությունը և առաջացրել էր այնտեղ խառնակություններ ու ապստամբություն։ Այնուհետև Եվմենեսի միայն միջամտությամբ, որը վարում էր մեղմ ու հաշտ քաղաքականություն, հաջողվել էր Փոքր Հայքը խաղաղացնել ու հնազանդեցնել։*

*«[Պերդիկկասը] Կիլիկիայից ուղարկեց Եվմենեսին,— պատմում է Պլուտարքոսը,—երևութապես նրա սեփական*

---

[1] *Տե՛ս Plut.*, Eumenes, III, 3։

սատրապությունը, բայց, իրապես, որպեսզի նա իր ձեռքում պահե սահմանակից Արմենիան, որը Նեոպտոլեմոսը հասցրել էր ապստամբական դրության։ Արդ՝ Եվմենեսը փորձում էր սրան [Նեոպտոլեմոսին], որը մեծամտությամբ ու սնոտի հպարտությամբ էր տառապում՝ զսպել բարեկամական հորդորներով»[1]։

Որ Փոքր Հայքն այնուհետև նորից հպատակվել էր մակեդոնացիներին՝ այդ պարզ երևում է դարձյալ Պլուտարքոսի վկայությունից։

«Երբ Կրատերը և Անտիպատրոսը,—ասում է Պլուտարքոսը[2],—հույներին հաղթելուց հետո անցել էին Ասիա, որպեսզի զրկեն Պերդիկկասին իշխանությունից, և երբ արդեն լուր էր ստացվել, որ նրանք մտադիր են ներխուժել Կապպադովկիա՝ Պերդիկկասը, որը ինքը ռազմերթի էր ելել Պտղեմայոսի դեմ՝ նշանակել էր Եվմենեսին բարձրագույն հրամանատար Արմենիայում և Կապպադովկիայում գտնվող զորքերի և այդ մասին նամակներ էր գրել Ալկետասին և Նեոպտոլեմոսին ու հրամայել, որ նրանք հնազանդվեն Եվմենեսին, որին իրավունք է տրված գործերը վարել ըստ իր բարեհայեցողության»։

Այս վկայության մեջ հիշատակված Արմենիան, անտարակույս, Փոքր Հայքն է, որ 321 թվի քաղաքացիական կռվի ժամանակ, ինչպես տեսնում ենք, գտնվել է մակեդոնական իշխանության տակ։

Նույն այս 321 թվին Եվմենեսը հաղթել էր Կրատերին և սպանել էր ճակատամարտում Նեոպտոլեմոսին, որն անցել էր դավաճանաբար վերջինիս կողմը։ Սակայն Եվմենեսի այս հաղթությունն այլևս ապարդյուն էր, որովհետև միևնույն թվին (321 թ. մեր թվ. ա.) եգիպտական վերոհիշյալ արշավանքի ժամանակ մակեդոնական զորքը սպանել էր Պերդիկկասին և պետության խնամակալության պաշտոնը հանձնվել էր այնուհետև Անտիպատրոսին։

Իր հաղթությունից հետո Եվմենեսը դեռ մի քանի տարի կարողացավ դիմադրություն ցույց տալ հակառակորդ խմբի զորավարներին և այդ ժամանակաշրջանում, հավանաբար, նա

---

1 Տե՛ս Plut., Eumenes, IV, 1—2։

2 Նույնը, V, 1։

պահել էր իր իշխանության տակ ո՛չ միայն Կապպադովկիան, այլև Փոքր Հայքը[1]։

Պետք է ասել, որ հայոց պատմության վերաբերյալ նորագույն երկերում պատմական անցքերն այս ժամանակաշրջանի խառնաշփոթված են ու սխալ են մեկնված, գլխավորապես, այն պատճառով, որ ի նկատի չէ առնված, որ Պլուտարքոսի վերոհիշյալ վկայությունները վերաբերում են ո՛չ թե բուն Հայաստանին, այլ Կապպադովկիային հարևան Փոքր Հայքին։ Այսրեփրատյան արմենական երկրները, բուն Հայաստանը, մակեդոնացիներից նվաճված չէ եղել և նրանք կառավարվել են տեղական իշխանների ձեռքով։

Եվ, իրավի, Դիոդորոսի և Պոլիենոսի մոտ[2] մոտավորապես 317 թվին (մեր. թվ. ա.) հիշատակված է իբրև բուն Արմենիայի սատրապ Օրոնտես-Երվանդը, որը եղել է Պարսկաստանի Պերսիս նահանգի սատրապ՝ մակեդոնացի Պեվկեստասի մոտ բարեկամը։ Իբրև Արմենիայի սատրապ՝ մի այլ Օրոնտաս*-Երվանդ, ինչպես տեսանք, հիշատակված էր 401/400 թվին (մեր թվ. ա.) Քսենոփոնի «Անաբասիս»-ում։ Նույն այս Օրոնտեսների կամ Երվանդների տոհմից է եղել, անշուշտ, այն Օրոնտեսը, որն արմենական զորքերի առաջնորդներից մեկն էր Գավգամելայի ճակատամարտում։ Ըստ երևույթին, հենց այս Օրոնտեսը շարունակել էր անընդհատաբար իշխել Մեծ Հայքում նաև 331 թվից հետո՝ մակեդոնացիների կռիվների խառն ու խռովահույզ ժամանակաշրջանում։

Երվանդյանների ժառանգական իշխանությունը, որ Հայաստանի մեծագույն մասում հաստատվել էր Աքեմենյան Պարսկաս-

---

[1] Պատմական նորագույն աշխատություններում հիշատակվում է հաճախ, որ իբրև Հայաստանի սատրապ Պերտիկկասը ուղարկած է եղել նաև Փրատափեռնեսին։ Առաջին անգամ այս տեղեկությունը, որքան ինձ հայտնի է, մեջ է բերել Չամչյանը («Պատմություն Հայոց», հատ. Ա., Վենետիկ, 1784, էջ 127), հիմք ընդունելով Յուստինոսի վկայությունը (գիրք III, գլ. 4)։ Հետևելով նրան նույնը կրկնել են նաև Գարագաշյանը («Քննական պատմություն», Ա., էջ 81), Բասմաջյանը («Իսկական պատմություն Հայոց», Պոլիս, 1914, էջ 141—142), Morgan-ը («Histoire du peuple arménien», էջ 62) և ուրիշները։ Այդ տեղեկությունը միանգամայն սխալ է։ Յուստինոսի մոտ (III, 4, 23) Փրատափեռնեսը հիշատակված է իբրև սատրապ ոչ թե Հայաստանի, այլ Հյուրկանիայի։

[2] Տե՛ս Diodoros, գք. XIX, գլ. 23, § 3 և Polyaenos, Strategematicon, IV, 8, 3։

* Քսենոփոնի մոտ՝ Օրոնտաս. մյուս հեղինակներն այդ անունը հիշատակում են Օրոնտես ձևով. խմբ.։

տանի տիրապետության ժամանակ և մնացել էր անխախտ նաև Ալեքսանդր Մակեդոնացու ու նրա հաջորդների շրջանում՝ հնարավոր էր դարձրել, ինչպես շատ ճիշտ նկատել է Դրոյզենը[1], երկու անկախ պետությունների—Կապպադովկիայի և Պոնտոսի հիմնումը Փոքր Ասիայում, որոնց քաղաքական ազդեցությունը շուտով զգալի էր դառնալու հելլենիստական Արևելքում։

Հատկապես Կապպադովկիայի ազատագրման մասին արմենական զորքերի օգնությամբ հետաքրքիր տեղեկություն է հաղորդում Դիոդորոս Սիկիլիացին, որ ավելորդ չենք համարում մեջ բերել ամբողջությամբ։

«Եվ այդ ժամանակները,—պատմում է Դիոդորոսը,— Ալեքսանդր Մակեդոնացին հաղթում է պարսիկներին և հետո մեռնում է։ Եվ Պերդիկկասը, որն այդ ժամանակ պետության առաջնորդն էր՝ Կապպադովկիայի զորապետ ուղարկում է Եվմենեսին։ Երբ Արիարաթն այստեղ հաղթվեց և ճակատամարտում ընկավ՝ Կապպադովկիան՝ թե ինքը և թե սահմանակից երկիրները՝ անցան մակեդոնական իշխանության տակ։ Իսկ Արիարաթը, նախկին թագավորի որդին, հուսահատության հասնելով այս անցքերի պատճառով՝ փախչում է քչերի հետ Արմենիա։ Մի քանի ժամանակից հետո, երբ Եվմենեսը, Պերդիկկասը և նրանց համախոհները վախճանվել էին, իսկ Անտիգոնոսն ու Սելևկոսն այլ գործերով էին զբաղված՝ նա [Արիարաթը], վերցնելով արմենների թագավոր Արդոատեսից զորք՝ սպանեց մակեդոնացիների զորապետ Ամյունտասին, մակեդոնացիներին անհապաղ դուրս վտարեց երկրից և տեր դառավ իր հայրենի իշխանության»[2]։

Դիոդորոսի այս վկայության մեջ հիշատակված «արմենների թագավոր Արդոատես»-ը համարվելու է, ամենայն հավանականությամբ, ոչ թե Փոքր Հայքի թագավոր, ինչպես այդ ենթադրել են Ռեյնաքը[3] և ուրիշները, այլ Մեծ Հայքի։ Սանտալճյանը շատ ճիշտ մատնացույց է արել, որ Արդոատեսը, որը չէր վախեցել հզոր մակեդոնացիներից՝ պետք է եղած լիներ հեռավոր ու մեծ երկրի թագավոր և պետք է ունեցած լիներ բավական մեծ

---

[1] Տե՛ս J. G. Droysen. Histoire de l'Hellénisme, III, Paris, էջ 80։

[2] Տե՛ս Diodori, Bibl. hist., գք. XXXI, գլ. 19, § 4—5։

[3] Տե՛ս Reinach, Mithridate Eupator, Paris, 1890, էջ 31, ծան. 6։

զորք[1]։ Կապպադովկիայի հարևան Փոքր Հայքը, որը, ինչպես տեսանք, ինքը ևս Արիարաթ Ա-ի սպանությունից հետո ենթարկվեց մակեդոնացիների իշխանության՝ չէր կարող, իհարկե, ապահով ապաստարան ծառայել Արիարաթ Բ-ին։

Արմենների թագավոր Արդոատես ('Αρδοάτης) անունը, որ համարվում է աղճատված՝ Ռեյնաքը[2] և հայագետ բանասերների մեծագույն մասը կարդում են Արտավազդ= ('Αρτaουάσδης)։ Ավելի հավանական է, իմ կարծիքով, Մարկվարտի ենթադրությունը, որը 'Αρδοάτης աղճատված անունը առաջարկում է ուղղել և կարդալ 'Αροάνδης ('Ορόντης=«Երուանդ[3]»)։

Հիմնվելով մեջբերված Դիոդորոսի վկայության վրա և նրա մեջ հիշված Ամյունտասին համարելով Անտիգոնոսի զորապետ՝ Ռեյնաքը ենթադրել է, որ Արիարաթ Բ-ը արմենական զորքերի օգնությամբ տիրել էր Կապպադովկիային Սելևկյանների տիրապետության առաջին տարիներում, հավանորեն, 301/300 թվերին (մեր թվ. ա.)։ Նույն այդ ժամանակ, նրա կարծիքով, Պոնտական Կապպադովկիայում ապստամբել էր Միհրդատ Ա-ը և հիմք էր դրել նմանապես Պոնտական թագավորության[4]։

Այս բացատրությունը, հատկապես, Կապպադովկիայի ազատագրման և Արիարաթ Բ-ի թագավորության ժամանակի մասին՝ գերմանական պատմագետ Բելոխը համարում է վիճելի և անհավանական։ Դիոդորոսի վկայության մանրազնին քննությամբ Բելոխից դեռ առաջ Մարկվարտը հանգել էր այն եզրակացության[5], որ Դիոդորոսի մոտ կամ, ավելի ճիշտ, նրա օգտագործած սկզբնաղբյուրների մեջ՝ Կապպադովկիայի թագավորական տան ճյուղագրությունը դիտավորյալ կերպով աղավաղված է։ Բելոխի կարծիքով, Արիարաթ Բ-ը, որը չէր կարող լինել Արիարաթ Ա-ի որդին, Կապպադովկիայի թագավորությունը

---

[1] *J. Sandalgian*, Histoire documentaire de l'Arménie, II, Rome, 1917, էջ 409։

[2] Տե՛ս Mithridate Eupator, էջ 31, ծան. 6։

[3] Տե՛ս *Markwart*, Untersuchungen zur Geschichte von Eran, Heft I, Göttingen, 1896, էջ 27, ծան. 123։ Համեմատե նաև *Droysen*, Histoire de l'Hellénisme, II, էջ 134։

[4] Տե՛ս *Reinach*, Mithridate Eupator, էջ 30—31։

[5] *Markwart*, Untersuchungen zur Geschichte von Eran, Heft I, էջ 5—28։

*հիմնած պիտի լիներ Արդոատես թագավորից ստացած զորքերի օգնությամբ մոտավորապես 270 կամ 260 թվին (մեր թվ. ա.)*[1]։

*Ի նկատի ունենալով, որ Փոքր Հայքը գտնվում է Կապպադովկիայի ու Պոնտոսի միջև՝ կարելի է վստահորեն հետևցնել, որ տեղական թագավորությունների հաստատումից հետո այս երկու երկրներում՝ նպաստավոր պայմաններ էին ստեղծվել ինքնաբերաբար նաև Փոքր Հայքի քաղաքական ազատագրման և հետագա ինքնուրույն զարգացման համար։*

---

1 *Տե՛ս J. Beloch,* Griechische Geschichte, Dritter Band, Erste Abteilung, *էջ 693, և* Zweite Abteilung, *էջ 166—168։*

ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

# ՄԵԾ ՀԱՅՔԸ, ԾՈՓՔԸ ԵՎ ՓՈՔՐ ՀԱՅՔԸ ՍԵԼԵՎԿՅԱՆՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿ

1. Սելևկոս Նիկատորի տիրապետության հաստատումը Միջագետքում և Ասորիքում.—նրա մեղմ ու զիջող քաղաքականությունը:—2. Մեծ Հայքի և Ծոփքի ենթարկումը Սելևկոսի գերիշխանության.—այս գերիշխանության անվանական բնույթը:—3. Այրարատյան Արմենիան սելևկյան ժամանակաշրջանում.—Մեծ Հայքը և Ծոփքը:—4. Օրոնտես—Երվանդ թագավորի հիշատակությունը Արմավիրի հունարեն արձանագրության մեջ.—Արմավիրը՝ կենտրոն Երվանդյան թագավորության:—5. Ատրոպատեսը և Ատրպատականի իշխանությունը.—Աղվանքի որոշ շրջանները և, հատկապես, Ուտիքը՝ իբրև մաս այս իշխանության:—6. Ատրպատականը Արտաբազանեսի ժամանակ (մոտավորապես 220 թ. մեր թվ. առաջ).—Այրարատը՝ որպես մաս Արտաբազանեսի իշխանության (ըստ Պոլիբիոսի).—Պոլիբիոսի վկայության անհավանականությունը:—7. Մեմնոնի և Պոլիենոսի վկայությունները արմենական երկրների թագավորների մասին:—8. Անտիոքոս Գ-ի ռազմական արշավանքը Արշամաշատ քաղաքի թագավոր Քսերքսեսի դեմ.—Արշամ և Քսերքսես.—Արտաշես և Զարեհ:—9. Մեծ Հայքի, Փոքր Հայքի և Ծոփքի ներքին ինքնուրույնությունը.—հելլենիզմի ազդեցությունը.—Ծոփքի առևտրական նպաստավոր դրությունը:—10. Արշամաշատ և Կարկաթիոկերտ քաղաքները.—նրանց տեղադրությունը.—առևտրի ու դրամական շրջանառության զարգացումը.—սոցիալական շերտավորման ուժեղացումը:

*Սելևկյան թագավորության հիմնադիրը, Սելևկոս զորավարը, մակեդոնական-պարսկական մեծ պետության երկրորդ բաժանման ժամանակ, որ տեղի էր ունեցել Տրիպարադիզում 321 թվին, կարգվել էր Բաբելոնիայի սատրապ։ Իր այս սատրապության մեջ նա վերջնականապես հաստատվել էր միայն 312 թվին և այս թիվը սկզբնական տարին է համարվում Սելևկյանների իշխանության ու նաև սելևկյան հատուկ տոմարի։*

*Բայց այս թվից հետո ևս ներքին կռիվները մակեդոնական զորավարների մեջ շարունակվեցին գրեթե առանց ընդհատում-*

ների մինչև չորրորդ դարի վերջը (մեր թվ. ա.)։ Միայն Իպսոսի 301 թվի վճռական ճակատամարտը և միահեծան իշխանության ձգտող Անտիգոնոսի մահը վերջ դրին Առաջավոր Ասիայում մակեդոնական զորավարների անվերջ պատերազմներին։

Նոր համաձայնությամբ Սելևկոս Նիկատորը (312—281 մեր թվ. ա.), որը արդեն 305/4 թվին իրեն հայտարարել էր թագավոր՝ ստացավ Անտիգոնոսին պատկանող Ասորիքը և Միջագետքը։ Այնուհետև Սելևկյանները հետզհետե հիմնադիր եղան մի մեծ աշխարհակալության, որը տարածվում էր Հնդկաստանից մինչև Հելլեսպոնտոս։ Նոր այս աշխարհակալությունը, ինչպես վկայում են սկզբնաղբյուրները, Սելևկոս Նիկատորը կարողացել էր հաստատուն դարձնել, գլխավորապես, շնորհիվ իր մեղմ ու զիջող քաղաքականության։ Աղբյուրների վկայություններից մեզ հայտնի է, որ Արևելքում մեծապես հարգում էին այս Սելևկոսին ու Մեծ Հայքի սատրապ Օրոնտես-Երվանդի բարեկամ վերոհիշյալ Պևկեստասին, որոնք խոհեմ հետևողներ էին Աղեքսանդր Մակեդոնացու քաղաքականության և չէին անարգում ու արհամարհում հպատակված ժողովուրդների կրոնը, լեզուն ու կուլտուրական առանձնահատկությունները։

Արմենական երկրների մասին Սելևկյանների ժամանակ մեր ունեցած տեղեկությունները, ինչպես և նախորդ շրջանի համար, դարձյալ կցկտուր են ու պատահական։

Ապպիանոսի կարևոր մի վկայությունից հայտնի է մեզ, որ Արմենիան, ամենայն հավանականությամբ, Մեծ Հայքը և Ծոփքը՝ ենթարկված են եղել Սելևկոս Նիկատորի գերագույն իշխանությանը։

«Ճակատամարտում Անտիգոնիոսի ընկնելուց հետո,— ասում է Ապպիանոսը,— այն թագավորները, որոնք Սելևկոսի հետ միասին հաղթել էին նրան՝ Անտիգոնոսի երկիրը բաժանեցին իրենց մեջ։ Եվ որոշվեց այդ ժամանակ, որ Սելևկոսը տեր լինի Ասորիքին Եփրատ գետից դեպի ծով և միջերկրական Փռյուգիային։ Աչալուրջ կերպով հսկելով շարունակ մերձակա ժողովուրդներին՝ Սելևկոսը, որը հնարավորություն ուներ բռնություն գործ դնել և վստահ էր, որ կկարողանա նրանց իր կողմը գրավել՝ տիրել էր Միջագետքին, Արմենիային, Կապպադովկիային, որն անվանվում էր Սելևկյան, Պարսկաստանին, Պարթևստանին, Բակտրիային, Արաբական երկրներին, Տաբարստանին, Սոգդիանեին,

Արախոսիային, Վրկանին և բոլոր այլ հարակից ժողովուրդներին մինչև Ինդոս գետը, որ նվաճել էր Աղեքսանդրոսը, այնպես որ Աղեքսանդրոսից հետո նրան էր, հատկապես, բաժին ընկել մեծագույն մասը Ասիայի»[1]։

Նույնը վկայում է նաև Ստրաբոնը և մատնացույց անում, որ «Արմենիային տիրել էին պարսիկները և մակեդոնացիները, իսկ նրանցից հետո Սելևկյանները, որ նվաճել էին Ասորիքը և Մեդիան»[2]։

Այս վկայությունները, ինչպես ասացինք, վերաբերում են, ամենայն հավանականությամբ, ո՛չ թե Փոքր Հայքին, այլ Մեծ Հայքին և Ծոփքին։ Մեջ բերված Ապպիանոսի հենց վկայությունից երևում է, որ Սելևկոս Նիկատորին հաջողվել էր գրավել արևելյան Փոքր Ասիայում միմիայն հարավային Կապպադովկիայի մի մասը, որն Ապպիանոսն անվանում է Սելևկյան Կապպադովկիա։ Ինձ թվում է, որ ավելի քան հավանական կարելի է համարել, որ Պոնտոսի և Կապպադովկիայի ազատագրվելուց հետո Փոքր Հայքը ևս կարողացել էր երրորդ դարում (մեր թվ. առաջ) կազմակերպվել սրանց նման որպես անկախ թագավորություն։

Պետք է ասել, որ Սելևկյանների իշխանությունը չէր կարողացել հիմնավորապես հաստատվել նաև արմենական այսրեփրատյան երկրներում։ Նրանց գերիշխանությունն այս լեռնային ու դժվարամատչելի երկրում, ընդհանրապես, ավելի անվանական էր, քան իրական։ Ճանաչելով Սելևկյան թագավորներին իբրև գերագույն պետ՝ Մեծ Հայքը, ըստ երևույթին, նաև Ծոփքը՝ պահպանել էին իրենց ներքին ինքնուրույնությունը և կառավարվում էին բնիկ իշխանների ձեռքով, որոնք սկզբնաղբյուրների մեջ անվանվում են երբեմն թագավորներ։ Ըստ երևույթին, սրանք վճարում էին Սելևկյաններին որոշ տուրք և պատերազմի ժամանակ օգնում էին նրանց իրենց զորքով։ Օգտվելով սակայն Սելևկյանների ներքին երկպառակություններից՝ արմենական կառավարիչները ձգտում էին հաճախ անկախ լինել և աշխատում էին խուսափել վասսալական այդ պարտավորություններից։

Մեծ Հայք և Ծոփք ասելով՝ չպետք է, իհարկե, հասկանալ Հայկական լեռնաշխարհի ամբողջ տարածությունը։ Պատմական Հայաստանի աշխարհագրական կազմը եղել է, հարկավ, խիստ

---

[1] Տե՛ս *Appiani*. Syriaca, 55։

[2] Տե՛ս *Strabo*, XI, 14, 15 (531)։

տարբեր պատմական զանազան դարաշրջաններում։ Հայերի հնդեվրոպական նախահայրերը, ինչպես տեսանք, գաղթել էին Հայաստան Կապպադովկիայի ու Փոքր Հայքի կողմից։ Եփրատ գետն անցնելուց հետո նրանց հարավային ճյուղը հաստատվել էր Արածանի գետի հովիտներում և այդտեղից տարածվել դեպի հյուսիս-արևելք և հարավ-արևելք։ Քսենոփոնի ժամանակ արմենական նոր գաղթավայրերն իրենց տարածությամբ դեռևս փոքր շրջաններ էին և արմենները շրջապատված էին ամեն կողմից զանազան բնիկ ցեղերով։ Գերմանացի հայագետ Հյուբշմանը, հիմնվելով, գլխավորապես, Ստրաբոնի վկայությունների վրա՝ ենթադրում է, որ մակեդոնական-սելևկյան շրջանում անգամ, մինչև երկրորդ դար մեր թվականությունից առաջ, այսրեփրատյան բուն Արմենիան պարունակում էր իր մեջ իր հետագա 15 նահանգներից հազիվ չորսը՝ «Չորրորդ Հայքը, Աղձնիքը, Տուրուբերանը և Այրարատը»[1]։

Հյուբշմանի այս ենթադրությունը ըստ իս մոտավորապես ճիշտ է, բայց կարոտ է որոշ ուղղման։ Արմենները, ինչպես վերև ասացինք, դեռևս հնագույն ժամանակներում գրաված են եղել, հավանորեն, նաև մի քանի շրջաններ Վանա լճի հարավում և հարավ-արևելքում։ Իսկ Այրարատ նահանգը նրանք գրավել էին այդ ժամանակ ոչ ամբողջությամբ։

Լինելով իր տարածությամբ համեմատաբար փոքր մի երկիր, հայերի ապագա մեծ հայրենիքի հազիվ մեկ քառորդը՝ բուն այս արմենական երկիրը Սելևկյանների ժամանակ, որքան մեզ հայտնի է սկզբնաղբյուրներից, բաժանված է եղել երկու ինքնիշխան ու քաղաքականապես անջատ մասերի՝ Մեծ Հայք և Ծոփք։ Վերջինս գտնվում էր Եփրատ գետի ձախ ափին և պարունակում էր իր մեջ վերին Տիգրիսի և ստորին Արածանիի վրա գտնվող երկրամասերը։

Սելևկյան շրջանի Հայաստանի պատմությունն ուսումնասիրելիս՝ պետք է միշտ աչքի առաջ ունենալ նաև քաղաքական այս բաժանումը։ Երրորդ դարից սկսած (մեր թվ. առաջ) աղբյուրների վկայությունները վերաբերում են, ուրեմն, բացի Փոքր Հայքից ու Մեծ Հայքից նաև Ծոփքին։

Այս երեք երկրների մասին Սելևկյանների տիրապետության

---

[1] Տե՛ս Հ. Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, թարգ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1907, էջ 16։

ժամանակ, ինչպես ասացինք, աղբյուրների մեջ կան միայն աղքատիկ ու պատահական տեղեկություններ։

Խիստ կարևոր են առանձնապես Մեծ Հայքի հնագույն պատմության համար հունարեն արձանագրությունները, որ 1911 և 1927 թվերին գտնված էին Արմավիրում[1]։ Սակայն, դժբախտաբար, այդ արձանագրությունները դեռևս հրատարակված չեն։

Ինձ հայտնի է այդ արձանագրություններից միայն մեկը՝ Միթրաս թագավորի նամակը Օրոնտես-Երվանդ թագավորին[2], որը ունի, անտարակույս, պատմական բացառիկ մեծ կարևորություն։ Սելևկյան շրջանի այս արձանագրությունը, որի թվականը վերջնականապես դեռ որոշված չէ՝ ինքը հենց, անկախ իր բովանդակությունից, մի պարզ ապացույց է, որ Սելևկյանների ժամանակ հելլենիզմի ազդեցությունը թափանցել էր մինչև իսկ Մեծ Հայքի հեռավոր այս շրջանը։ Ուշադրության արժանի է այն, որ Օրոնտես-Երվանդը, հավանորեն, Մեծ Հայքի տիրակալը՝ արձանագրության մեջ անվանված է թագավոր։ Կարելի է, բացի այդ, կռահել, որ արմենները, Երվանդյանների առաջնորդությամբ, որոնք, հավանորեն, մերվել էին արդեն նրանց հետ, դեռևս երրորդ դարում մեր թվականությունից առաջ գրավել էին Արարատյան դաշտը և Արմավիրը դառել էր այստեղ Երվանդյան թագավորության աթոռանիստ կենտրոնը։ Ըստ երևույթին, հենց այս թագավորությունն է այն հին Արարատյան թագավորությունը, որի մասին աղոտ և խառնաշփոթված հիշողություններ պահպանված են Խորենացու պատմության մեջ[3]։ Սելևկյան շրջանի արմենական այս երկիրը պարզապես այն կորիզն է, որից հետզհետե աճեց ու զարգացավ հետագայում անկախ ու հզոր Մեծ Հայաստանը։

Ընդունելով, որ Այրարատում դեռ երրորդ դարում (մեր թվ. առաջ) թագավորում էր Օրոնտիդների կամ Երվանդյանների իշխանական տոհմը, ինձ թվում է, դժվար կլինի համաձայնել, որ իբր թե երրորդ դարի երկրորդ կիսում Մեծ Հայքի այս շրջանը և Արմավիրը գտնվել են Ատրպատականի թագավոր Արտա-

---

1 Տե՛ս *С. Тер-Аветисян*, Археологическое обследование городища и крепости древний Армавир, Научный сборник Армфана, Ереван, 1941, էջ 61—62։

2 Տե՛ս «Նյութեր Հին Հայաստանի պատմության», Երևան, 1935, էջ 145—150 (Ս. Տեր-Հակոբյան, Արմավիրի երկրորդ նորագյուտ արձանագրությունը)։

3 Տե՛ս հրատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913, էջ 66—69 (1, ԻԲ)։

բազանեսի իշխանության տակ, ինչպես այդ ենթադրվում է պատմագիտական գրեթե բոլոր երկերում[1]։

Այս ենթադրության վրա, որ ընդհանուր հավանության է արժանացել՝ հարկավոր է կանգ առնել հանգամանորեն։

Ինչպես հայտնի է, Աղեքսանդր Մակեդոնացին դեռ իր կենդանության ժամանակ Մեծ Հայքի հարևան Հյուսիսային Մեդիան տվել էր պարսիկ իշխան Ատրոպատեսին (328 թվին մեր թվ. առաջ), որը Պերտիկկաս զորավարի աներն էր։ Այնուհետև Մեդիայի այդ մասը, որն այս Ատրոպատեսի անունով կոչվեց Ատրոպատյան Մեդիա, Ատրոպատենե կամ Ատրպատական, իբրև անկախ պետություն մնաց նրա հաջորդների իշխանության տակ։

Ինչպես վկայում է Արրիանը (III, 8, 4)՝

«Մեդացիներին առաջնորդում էր [Գավգամելայի կռվում] Ատրոպատեսը, և մեդացիների հետ մարտակարգով շարված են եղել կադուսիները, աղվանները և շակաշենցիները (Σακεσίνα:)[2]»:

Արրիանի այս վկայությունից երևում է, որ Հին Աղվանքը կամ նրա որոշ մասը և, մասնավորապես, նաև Ուտիքը, որի մեջ էր Շակաշենը՝ ըստ երևույթին, գտնվել են Ատրոպատեսի իշխանության տակ և, հավանորեն, միացված են եղել Ատրպատականին։

Ենթադրում են, որ Ատրպատականն ավելի ևս ընդարձակված է եղել մոտավորապես 220 թվին Արտաբազանեսի իշխանության ժամանակ, որն իբր թե նվաճած է եղել Ատրապատականի հարևան երկրամասերը մինչև Սև ծովի կողմերը Փասիս գետից վերև, այսինքն՝ մինչև Կողքիս։ Հասկանալով Փասիս գետի տակ Արաքս գետը՝ կարծում են, բնականաբար, որ Արտաբազանեսը տիրած է եղել նաև Արարատյան դաշտին ու միջին և վերին Արաքսի հովիտներին։

Այս ենթադրությունները հիմնված են Պոլիբիոսի վկայությունների վրա։ Ինչպես պատմում է Պոլիբիոսը[4], Սելևկյան թագավոր Անտիոքոս Գ-ը, Մեդիայի կուսակալ Մոլոնի ապստամբու-

---

[1] Տե՛ս Markwart, Eranschahr, Berlin, 1901, էջ 108. Халатьянц, Очерк истории Армении, М., 1910, էջ 128. Sandalgian, Histoire documentaire de l'Arménie, II, էջ 414 և ուրիշները։

[2] Համեմատե նաև Arrian, III, 11, 4։

[3] Տե՛ս Markwart, Eranschahr, էջ 108։

[4] Polyb., V, 49—55։

թյունը ճնշելուց հետո, 220 թվին ռազմի էր ելել նաև Արտաբազանեսի դեմ, որը աջակցել էր Մոլոնին։ Սակայն Ատրպատականի այս իշխանը խուսափել էր պատերազմից և ընդունել էր Անտիոքոսի առաջադրած պայմանները։

Նկարագրելով Անտիոքոս Գ-ի այս արշավանքը՝ Պոլիբիոսը հարևանցի կերպով տեղեկություն է տալիս Ատրպատականի աշխարհագրական դիրքի մասին և հենց այդ վկայության վրա է հիմնված վերոհիշյալ ենթադրությունը Արտաբազանեսի մեծ նվաճումների մասին։

«[Անտիոքոս Գ-ի] զորքերը,—ասում է Պոլիբիոսը[1],—անցան Զագրոս լեռները և ներս խուժեցին Արտաբազանեսի երկիրը, որը սահմանակից է Մեդիային և բաժանվում է սրանից միայն միջակա լեռներով։ Նրա որոշ մասերը, որոնք գտնվում են Փասիսից վերև, իշխում են Պոնտոսի վրա և երկիրը հասնում է մինչև Վրկանի ծովը»։

Ահա այս վկայության վրա հիմնվելով, որի մեջ մատնանշված է, որ Փասիսից վերև բնակվող պոնտական ժողովուրդները սահմանակից են եղել Արտաբազանեսի երկրին՝ գերմանացի գիտնական Գուտշմիդը[2], ինչպես և Մարկվարտն ու ուրիշները, եզրակացրել են, որ Արտաբազանեսը նվաճած է եղել Այրարատը և նրա արևմտակողմում գտնվող շրջանները։

Կարևոր ու արժանահավատ համարելով Պոլիբիոսի վկայությունը՝ պատմագետները նկատի չեն առել ըստ իս, որ Սելևկյան շրջանի հունա-հռոմեական հին հեղինակները սխալ ու խառնաշփոթ գաղափար են ունեցել Անդրկովկասի աշխարհագրական քարտեզի մասին։ Հատկապես Պոլիբիոսի մոտ, որը երկրորդ դարի հեղինակ է (մեր թվ. առաջ), այդ սխալ պատկերացումը որոշակի երևում է նաև նրա պատմության հետևյալ հատվածներից։

1. Պոլիբիոս, V, 44՝

«Իր արևմտյան մասերով Մեդիան հարում է այսպես կոչվող Ատրպատակյաններին, իսկ այս վերջինները հեռու չեն ապրում այն ժողովուրդներից, որոնք սահմանամերձ են Եվքսինյան Պոնտոսին [=Սև ծովին]։ Մեդիայի դեպի հյուսիս նայող մասերը, որ շրջապատում են ելյումայները, անարիակները, ու նաև կադուսիները և մատիենները՝ գըտ-

[1] Նույնը, V, 55։

[2] Տե՛ս *A. von Gutschmid*, Geschichte Irans, Tübingen, 1888, էջ 36։

նըվում են Պոնտոսի այն մասերի վերևում, որոնք սահմանակից են Մայոտիսին [=արդի Ազովյան ծովին]»։

2. Պոլիբիոս, X, 27՝

«Այս վերջին քաղաքը [Եկբատանան] գտնվում է Մեդիայի հյուսիսային մասում և իշխում է Ասիայի երկրների վրա, որոնք հարում են Մայոտիսին և Եվքսինյան Պոնտոսին»։

Ինչպես տեսնում ենք, Պոլիբիոսի այս վկայությունները և, մանավորապես, նրա վերև մեջ բերված հաղորդագրությունն Ատրպատականի տեղադրության մասին՝ արդյունք են ակներև թյուրիմացության և չեն կարող հիմք ծառայել աշխարհագրական կամ պատմական հետևությունների։

Հին Այրարատը և Արմավիրը, ամենայն հավանականությամբ, գտնվել են երրորդ դարի երկրորդ կիսում (մեր թվ. առաջ) ո՛չ թե Ատրպատականի իշխան Արտաբազանեսի, այլ Երվանդյանների իշխանության տակ։

Բացի Երվանդյաններից, որոնք Սելևկյանների ժամանակ Մեծ Հայքի անկախ կամ կիսանկախ իշխաններն էին՝ հույն հեղինակները միջանկյալ կերպով հիշում են նաև Փոքր Հայքի և Ծոփքի տեղական իշխաններին, որոնց նրանք նույնպես անվանում են թագավորներ։

Հերակլեացի պատմագիր Մեմնոնն իր հայրենի քաղաքի մասին պատմության մեջ հաղորդում է[1], որ Բիթանիայի Նիկոմեդես թագավորի որդին, Զիաելասը, մոտավորապես 260 թվին փախել էր Արմենիայի թագավորի մոտ, որի անունը չէ հիշված։ Սանտալճյանը՝ միանգամայն իրավացի կարծում է[2], որ «Արմենիայի թագավոր»-ը, հավանորեն, թագավոր էր Փոքր Հայքի, որը համեմատաբար մոտ էր գտնվում Բիթանիային։ Զիաելասը, օգնություն ստանալով դրսից, գուցե և արմեններից, կարողացել էր ստանալ Բիթանիայի թագավորական գահը (250—228 մեր թվ. առաջ)։

Երկրորդ դարի (մեր թվ. հետո) հույն հեղինակ Պոլիենոսը, որը հատուկ գիրք է գրել նշանավոր զորավարների մեծագործությունների մասին՝ իր այդ երկում հաղորդում է, որ Սելևկյան Անտիոքոս Հիերաքսը, Սելևկոս Կալլինիկոս թագավորի եղ-

---

[1] Տե՛ս *Memnonis*, Historiae Heracleae Ponti, ed. C. Orellius, Lipsiae, 1816, էջ 33։

[2] Տե՛ս *Sandalgian*, Histoire documentaire de l'Arménie, II, էջ 436։

*բայրը, որը ապստամբել էր սրա դեմ՝ մոտավորապես 230 թվին (մեր թվ. առաջ) մտել էր Միջագետքից Արմենիա և պատսպարվել Արսաբեսի մոտ ('Αρσάβη), որի հետ բարեկամ էր*[1]*։ Պոլիենոսի մոտ նկարագրված են կռիվները, որ տեղի էին ունեցել Հայաստանի այս մասում, հավանորեն, Ծոփքում՝ Սելևկոսի զորավարների ու Անտիոքոսի միջև։ Պոլիենոսի հիշատակած Արսաբեսը, ինչպես ենթադրում են պատմագետները, կարող է լինել Ծոփքի Արշամ թագավորը, Արշամաշատ քաղաքի հիմնադիրը, որից մնացել են դրամներ «թագավորի Արշամայ»* (Βασιλέως 'Αρσάμου) *վերնագրով*[2]*։*

*Բացի Պոլիենոսի հաղորդած վերոհիշյալ տեղեկությունից՝ Ծոփքի մասին կարևոր ու հետաքրքիր է նաև Պոլիբիոսի հետևյալ ընդարձակ մի վկայությունը, որի մեջ նկարագրված է Սելևկյան Անտիոքոսի ռազմական արշավանքը Արշամաշատ քաղաքի Քսերքսեսի դեմ։*

> *«Քսերքսեսի թագավորության ժամանակ Արշամաշատ (բնագրում՝* 'Αρμόσατο *փխ.* 'Αρσαμόσατα) *քաղաքում,—պատմում է Պոլիբիոսը,—որը գտնվում էր այսպես կոչվող Գեղեցիկ դաշտում Եփրատի ու Տիգրիսի միջև՝ Անտիոքոս թագավորը մտադրվել էր պաշարել ու առնել այդ քաղաքը և բանակել էր նրա մոտ։ Տեսնելով թագավորի պատրաստությունները՝ Քսերքսեսը սկզբում ուզեց փրկվել ու դիմեց փախուստի, սակայն հետո, վախենալով որ մայրաքաղաքը թշնամու ձեռն ընկնելուց հետո կարող է կորցնել իր թագավորության նաև մնացած մասը՝ նա զղջաց, ուղարկեց դեսպաններ Անտիոքոսի մոտ և հայտնեց, որ ցանկանում է բանակցության մեջ մտնել նրա հետ։ Անտիոքոսի մոտիկ բարեկամները խորհուրդ չէին տալիս նրան բաց թողնել ձեռքից երիտասարդին և համոզում էին, որ նա քաղաքն առնե և իշխանությունը հանձնե Միհրդատին, որը նրա հարազատ քրոջ որդին էր։ Բայց թագավորը չհետևեց բարեկամների խորհուրդներին, կանչեց երիտասարդին իր մոտ, հաշտվեց նրա հետ և մինչև իսկ նրան զիջեց տուրքի մեծագույն մասը, որ մերժել էր իրեն վճարել Քսերքսեսի հայրը։ Այնուհետև նա վերցրեց Քսերքսեսից 300 տաղանդ, 1000 ձի և նույնքան*

---

[1] *Տե՛ս Polyaeni,* Strategematicon libri octo, IV, *17*։

[2] *Տե՛ս M. Ernest Babelon,* Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, *1890, էջ* CXCIII։

ջորի իրենց լծասարքով, վերադարձրեց նրան ամբողջ իշխանությունը և ամուսնացրեց նրան իր Անտիոքիս քրոջ հետ։ Այսպիսով Անտիոքոսն իր արքայական վեհանձնությամբ, որ հայտաբերել էր ներկա դեպքում՝ ձեռք բերեց երկրի բոլոր բնակիչների բարեկամությունն ու երախտիքը»[1]։

Ընդունելով որ Քսերքսեսի դեմ ռազմի ելնող Սելևկյան այս թագավորը Անտիոքոս Գ-ն էր (222—186 մեր թվ. առաջ), ինչպես այդ վկայում է բյուզանդական ժամանակաշրջանի մատենագիր Հովհաննես Անտիոքացին[2], և ենթադրելով որ այդ արշավանքը տեղի էր ունեցել 212 թվին (մեր թվ. առաջ)՝ պատմագետներից շատերը, օրինակ, Բելոխը, Սանդալճյանը և ուրիշները՝ հավանական են համարում, որ Արշամաշատ քաղաքի թագավոր Քսերքսեսը կարող է լինել վերոհիշյալ Արշամ թագավորի որդին, որի մոտ 230 թվի մոտերքը ապաստարան էր գտել Անտիոքոս Հիերաքսը[3]։

Հիմնվելով Պոլիբիոսի նույն այս վկայության վրա՝ Բելոխը ենթադրում է նաև, որ Արշամը, Քսերքսեսի հայրը, օգտվելով, հավանորեն, ներքին պատերազմից երկու եղբայրների՝ Սելևկոս Բ-ի և Անտիոքոս Հիերաքսի միջև, իր երկիրը, ըստ երևույթին, հայտարարած է եղել անկախ պետություն։

Քսերքսեսի մասին կարևոր մի տեղեկություն, բացի Պոլիբիոսից տալիս է նաև Հովհաննես Անտիոքացին։ Սա Քսերքսեսին անվանում է «արմենների բռնակալ» և վկայում է նմանապես (fr. 53), ար կարճ ժամանակից հետո Սելևկյան նույն Անտիոքոս Գ-ի սադրանքով, որը, ինչպես տեսանք, վեհանձնաբար հաշտություն էր կնքել երիտասարդ թագավորի հետ՝ սպանել էր Քսերքսեսին նրա կին Անտիոքիսը[4]։

---

1 Տե՛ս *polyb*, VIII, 25։

2 Տե՛ս *Joh.* Ant., fr. 53, *Müller*, Fragm. hist graec.. IV, էջ 557.

3 Տե՛ս *Beloch*, Griechische Geschichte, III, 2, էջ 295. *Sandalgian*, Histoire documentaire de l'Arménie, II.

4 Պետք է ասել, որ Քսերքսեսի մասին այս հետևությունները բաբելոնը համարում է վիճելի։ Նա, դեռ 1890 թվին մատնացույց էր արել, որ Քսերքսեսի դեմ պատերազմող Սելևկյան թագավորը, հավանորեն, Անտիոքոս Դ Եպիփանեսն էր (175—164 մեր թվ. ա.) և ո՛չ Անտիոքոս Գ-ը։ Բաբելոնի կարծիքով, Քսերքսեսը թագավոր էր Արշամաշատի, իսկ Ծոփքի սատրապ ու հետո թագավոր էր նրա կամ գուցե նրա հոր ժամանակ Զարիադրիսը (տե՛ս Les rois de Syrie, d' Arménie et de Commagène, էջ CXCIV—CXCVII): Բաբելոնի այս կարծիքը պատմագետները համարում են անհավանական։

Գերմանական պատմագետ Էդուարդ Մեյերը կարծում է, որ այս սպանությունից հետո Անտիոքոս Գ-ը Արմենիան բաժանել էր երկու մասի և արևելյան մասի վրա սատրապ էր կարգել Արտաշեսին, իսկ արևմտյան մասի վրա՝ Զարեհին[1]։ Բայց շուտով Անտիոքոս Մեծի Մագնեսիայի մոտ կրած պարտությունը (190 թ. մեր թվ. առաջ) անկախության ընդհանուր շարժման ազդանշան եղավ ո՛չ միայն Փոքր Ասիայում, այլև Հայկական լեռնաշխարհում։ Այդ պարտությունից հետո, ինչպես կտեսնենք, Արտաշեսը և Զարեհը ինքնիշխան տիրեցին իրենց երկրներին իբրև անկախ թագավորներ։

Սկզբնաղբյուրների վերոհիշյալ վկայություններից երևում է, որ արմենական երկրները—Փոքր Հայքը, Մեծ Հայքը և Ծոփքը—Սելևկյանների ժամանակ պահպանել էին իրենց ներքին ինքնուրույնությունը դեռ երրորդ դարում (նախքան մեր թվ.)։ Նրանք չէին կազմում Սելևկյան պետության երկրամասը, չէին բնակեցրած հունական գաղթականներով և չէին դառել, բնականաբար, գաղութացման շրջան։ Սակայն ինքնըստինքյան հասկանալի է, որ տնտեսական ու կուլտուրական մեծ հեղաշրջումն Առաջավոր Ասիայում անխուսափելի կերպով խոր հետքեր էր թողնելու նաև այս երկիրների վրա։

Տեղական կուլտուրան այստեղ, որն ուներ հաբեթական-արմենական արմատներ և կրել էր նաև իրանական կուլտուրայի ազդեցությունը՝ արդեն այս հնագույն շրջանում սկսել էր ենթարկվել հելլենիզմի ազդեցությանը, որն ավելի ու ավելի զորեղացավ հետագա դարերում։

Հելլենական ազդեցությունը մեծ էր այստեղ, ամենից առաջ, տեղական իշխանավորների և բնակչության բարձր խավերի վրա։ Փոքր Հայքի և Ծոփքի գահակալները հելլենացած էին իրենց կրթությամբ, գլխավորապես, շնորհիվ Սելևկյանների հետ ունեցած խնամիական կապերի։ Այս ժամանակաշրջանի արմենական երկրների դրամները, որոնց վրայի արձանագրությունները հունարեն են, նմանապես և Արմավիրի նորագյուտ հունարեն արձանագրությունները՝ պարզ կերպով ցույց են տալիս, որ այստեղ ևս հունարենն ամենուրեք սկսել էր գործածվել որպես պաշտոնական լեզու։

---

[1] Տե՛ս *Eduard Meyer*, Blüte und Niedergang des Hellenismus in Asen, Berlin, 1925, էջ 50—51։ Համեմատե նաև *Markwart*, Die Genealoie der Bagratiden, Caucasica, Fasc. 6, 2, Teil, Leipzig, 1930, էջ 28։

Հատկապես, Փոքր Հայքը և Ծոփքը, որոնք գտնվում էին Հայաստանի արևմտյան ու հարավ-արևմտյան շրջանում և իրենց աշխարհագրական տեղադրությամբ հեռու չէին հելլենիստական քաղաքներից ու գաղթավայրերից, բնականաբար, ավելի մեծ շփում ունեցան հելլենիստական քաղաքակրթության հետ և ավելի մեծ չափով ենթարկվեցին նրա ազդեցությանը, քան Մեծ Հայքը։

Մասնավորապես Ծոփքը, որ հարավից սահմանակից էր Սելևկյան Միջագետքին և գտնվում էր այդ շրջանի միջով անցնող Մծբին—Եդեսա—Անտիոք առևտրական համաշխարհային ճանապարհի մոտ՝ ուներ ամենանպաստավոր պայմանները նաև տնտեսական զարգացման համար։ Ինչպես հաղորդում է Հերոդոտոսը, Ծոփքի և Բաբելոնիայի միջև առևտրական երթևեկությունը տեղի էր ունենում Եփրատ գետի վրայով դեռ նրա ժամանակ[1]։ Այս առևտուրը, որը հին ժամանակ կենտրոնացված էր, գլխավորապես, սեմական ժողովուրդների ձեռքում՝ շարունակվում էր, անշուշտ, և Սելևկյանների ժամանակ։

Ծոփքի միջով, ինչպես մանրամասն մատնացույց եմ արել Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին ռուսերեն իմ աշխատության մեջ[2], անցնում էր մի զգալի մասը պարսկական հին «Արքայական ճանապարհ»-ի և այդ ճանապարհի վրա, Եփրատ գետի ձախ ափին, գտնվում էր նշանավոր Տոմիսա ամրությունը, որը կայան էր կարավանների, որոնք գնում էին Բաբելոնիա կամ Փոքր Ասիա։

Ծոփքի առևտրական նպաստավոր այս դրությամբ պետք է, անշուշտ, բացատրել, որ Հին Հայաստանի առաջին քաղաքները հիմնվել են Ծոփքում և ո՛չ Մեծ կամ Փոքր Հայքում։ Հունա-հռոմեական հին հեղինակների մոտ հիշատակված են Արշամաշատ և Կարկաթիոկերտ քաղաքները, որոնք կառուցվել էին այստեղ Սելևկյան շրջանում և աթոռանիստ կենտրոններ էին տեղական թագավորների։

Արշամաշատ քաղաքի հիմնումը, ինչպես վերև տեսանք, վերագրում են Արշամ թագավորին, որը 230 թվի մոտերքը (մեր թվ. առաջ) օգնություն էր ցույց տվել Անտիոքոս Հիերաքսին ընդդեմ Սելևկոս Կալլինիկոսի։ Այս քաղաքը, ինչպես

---

1 Herod., I, 194։

2 Տե՛ս „О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен“, Ереван, 1930, էջ 14—16 և 27։

վկայում է Պոլիբիոսը[1], գտնվում էր «այսպես կոչվող Գեղեցիկ դաշտում Եփրատի ու Տիգրիսի միջև»։ Պլինիուսը նրա տեղը մատնացույց է անում Եփրատ-Արածանիի մոտ (Armosata Euphrati proximum)[2]։ Արշամաշատի ավերակների տեղը ամերիկացի աշխարհագիր Հոնտինգտոնը որոշել է այժմյան Խարաբա ու Նաչարան գյուղերի միջև[3]։

Ծոփքի մյուս Կարկաթիոկերտ քաղաքը հիշատակված է Ստրաբոնի և Պլինիուսի մոտ։ Ստրաբոնը հաղորդում է, որ Ծոփքի թագավորանիստ քաղաքն էր Կարկաթիոկերտը[4], իսկ Պլինիուսը վկայում է, որ այդ քաղաքը գտնվում էր Տիգրիս գետի մոտերքը[5]։ Կարկաթիոկերտի տեղը դեռ հաստատուն կերպով որոշված չէ։

Ստրաբոնի վկայության մեջ Καρκαθιόκερτα ընթերցվածը Մարկվարտը համարում է աղավաղված և առաջարկում է ուղղել 'Αρκαθιόκερτα' Արկաթիակերտ, ենթադրելով, որ այս քաղաքի հիմնադիրն էր, հավանորեն, Ծոփքի Զարիադրիս թագավորի որդին՝ Արկաթիասը։ Արկաթիակերտի տեղը Մարկվարտը ենթադրում է Անգեղ բերդի ավերակների վայրում, այժմյան էկիլի մոտ[6], որը գտնվում է Տիգրիսի աղբյուրագետի Արղանասուի վրա[7]։

Գտնվելով Փոքր Ասիայի ու հյուսիսային Միջագետքի առևտրական ճանապարհների մոտ՝ Հայաստանի հնագույն այս քաղաքները, ըստ երևույթին, հելլենիստական տիպի քաղաքներ էին և կենտրոններ էին առևտրի ու արհեստների։ Դժվար չէ, ուրեմն, կռահել, որ եթե Քսենոփոնի ժամանակաշրջանը բնորոշվում է Հայաստանում արտադրողական ուժերի համեմատաբար ցածր մակարդակով, Սելևկյանների ժամանակ սկիզբ էր դրվել, գլխավորապես, հարավ-արևմտյան Հայաստանում արտադրողական ուժերի զգալի աճման շնորհիվ վերոհիշյալ քաղաքների առաջացման։ Տնտեսական առաջադիմության պարզ նշաններ են, հարկավ, այստեղ կտրված դրամները, որոնք նպաստելու էին,

---

1 *Polyb.*, VIII, 25։
2 *Plin.*, Nat. Hist., VI, 10 (հրատ. Littré-ի)։
3 Տե՛ս *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, էջ 240—241։
4 *Strabo*, XI, 14, 2 (527)։
5 *Plin.*, Nat. Hist., VI. 10 (հրատ. Littré-ի)։
6 Տե՛ս *Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, էջ 34—38։
7 Տե՛ս Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, թարգմ. Պիլեզիկճեանի Վիեննա, 1907, էջ 157։

անշուշտ, փոխանակության ու դրամական շրջանառության զարգացման։

Հելլենիստական տիպի քաղաքների հիմնադրումը Ծոփքում, ինչպես մատնանշված է իմ նախորդ աշխատություններից մեկում[1], կարևոր մի փաստ է, որ ցույց է տալիս սոցիալական շերտավորման ուժեղացումը արմենական այս երկրում։ Առևտրի ու դրամական շրջանառության զարգացման շնորհիվ հետզհետե նշանակություն էր ստանում, բնականաբար, դրամական կապիտալը։ Այս նոր ուժը, եթե անգամ նրա դերը երկրորդական ու մակերևութային համարենք Հին Հայաստանի էկոնոմիկայի բնական տնտեսական հիմքերի նկատմամբ, անխուսափելի կերպով պետք է որոշ չափով ազդեր սոցիալական հարաբերությունների վրա և արագացներ տոհմային հասարակության քայքայումը, որ սկսվել էր արդեն նախընթաց շրջանում։

Հելլենիստական շրջանի տնտեսական հեղաշրջումը Առաջավոր Ասիայում, ինչպես տեսնում ենք, արդեն երրորդ դարում մեր թվականությունից առաջ սկսել էր իր ազդեցությունը գործել նաև Հին Հայաստանի տնտեսական զարգացման վրա։

---

[1] Տե՛ս «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», Երևան, 1934, էջ 250—251։

## Գ Լ Ո Ւ Խ   Ի Ն Ն Ե Ր Ո Ր Դ

# ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ԵՎ ԶԱՐԵՀՅԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

1. Սելևկյան պետության թուլացումը:—2. Պարթևական թագավորության հիմնումը և Հռոմի աշխարհակալական ծավալումը:—Անտիոքոս Մեծի պարտությունը Մագնեսիայի մոտ (190 թ. մեր թվ. ա.):—3. Արտաշեսյան և Զարեհյան թագավորությունների հիմնումը:—4. Արտաշեսի և Զարեհի նվաճումները ըստ Ստրաբոնի վկայության.—այսրեփրատյան ընդարձակված Հայաստանն ըստ Հյուբշմանի ենթադրության.—հայերենը իբրև այս ամբողջ երկրում գերիշխող լեզու:—5. Փոքր Հայքի հզորացումը և ընդարձակումը:—6. Արմենների երեք անջատ թագավորությունները և նրանց անմիաբանությունը.—միասնական պետության ստեղծման խոչընդոտները:—7. Արտաշատ քաղաքի հիմնումը.—նրա տեղադրությունն ու ամրությունները.—քաղաքավայրի հաջող ընտրությունը:—8. Արտաշես Ա-ի մասնակցությունը Փոքր Ասիայի հինգ թագավորների դաշինքին.—Պոլիբիոսի վկայությունն այդ մասին:—9. Անտիոքոս Եպիփանեսի արշավանքը Հայաստան և Արտաշես Ա-ի դաշնադրությունը Սելևկյանների սատրապ Տիմարքոսի հետ:—10. Ժողովրդական վեպի վկայությունները Արտաշես Ա-ի մասին.—Արտաշատի հիմնումն ըստ Խորենացու. —Արտաշես Ա-ի պատերազմն Օրոնտես-Երվանդի դեմ.—Ստրաբոնի վկայությունն այս Օրոնտես-Երվանդի մասին:—11. Երվանդաշատ քաղաքի հիմնումն ըստ Խորենացու վկայության.—Խալաթյանցի սխալ կարծիքն այս վկայության մասին:—12. Հիշողություններ Արտաշես Ա-ի պետական և կուլտուրական գործունեության մասին.—նրա հրամանով կանգնեցված սահմանաքարերն արամեատառ արձանագրություններով:—13. Արտաշես Ա-ի որդիները՝ Արտավազդ, Տիրան և Զարեհ.—Զարեհի մասին Քարթլիս-Ցխովրեբայի վկայությունը.—Զարիշատ և Զարեհավան քաղաքների հիմնումը:—14. Պարթևների զորեղացումը և նրանց պատերազմը Արտավազդ Ա-ի դեմ.—հայերի պարտությունը և Տիգրանի պատանդ տարվելը.—Արտաշես Ա-ի հաջորդներն ըստ օտար և հայ աղբյուրների:

*Երրորդ դարի ընթացքում (մեր թվ. առաջ) Սելևկյան պետությունը հետզհետե թուլանում էր շնորհիվ մշտական պատերազմների և ներքին երկպառակությունների ու ապստամբու-*

*թյունների։ Նրանից շարունակ անջատվում էին նոր և նոր շըր-ջաններ։*

*Մոտավորապես 305 թվին Սելևկյանները կորցրին նախ և առաջ իրենց հնդկական գավառները։ Այնուհետև մոտ 255 թվին Սելևկյան Անտիոքոս Բ թագավորի դեմ ապստամբեց Բակտրիայի և Սոգդիանեի նրա կուսակալը՝ Դիոդոտոսը, որը հիմնեց այնտեղ իր սեփական թագավորությունը։ Դեռ ավելի առաջ, ինչպես վերև տեսանք, կարողացել էին պահպանել իրենց անկախությունը կամ ինքնուրույնությունը Կապպադովկիան, Պոնտոսը, Հայաստանը և Ատրպատականը։*

*Այնուհետև երրորդ ու երկրորդ դարերում (մեր թվ. առաջ) Սելևկյանների դեմ հանդես եկան նրանց նոր հզոր ախոյանները՝ Պարթև Արշակունիները և Հռոմը։ Այս երկու մեծ պետությունները ժառանգելու էին հետզհետե նրանց ամբողջ թագավորությունը։*

*Պարթևական թագավորության հիմնադիրն է համարվում Արշակ Ա-ը, ծագումով պարթևներին ազգակից ապարն կամ պարն թափառական ցեղից։ Մոտավորապես 250 թվին (մեր թվ. առաջ) սա ապստամբել էր իր ցեղակիցների հետ Սելևկյանների դեմ և սպանել էր նրանց սատրապին։ 249/248 թիվը Արշակունի թագավորության հիմնադրման պաշտոնական տարեթիվն է։*

*Արշակ Ա-ից հետո նրա եղբայրը և հաջորդը, Տրդատը կամ Արշակ Բ-ը, հաղթելով Սելևկոս Բ Կալլինիկոսին (248—210 մեր թվ. ա.)՝ վերջնականապես հաստատվեց Պարթևստանում և նըվաճեց շուտով նաև հարևան Վրկանը, որի կենտրոնն էր Զադրակարտա քաղաքը՝ այժմյան Աստրապատը։*

*Հենց նույն այս երրորդ դարում, երբ պարթևները տեր էին դառնում Սելևկյանների արևելյան երկրներին՝ արևմուտքում հելլենական մանր պետությունների և ապա Սելևկյան թագավորության դեմ հանդես եկավ Հռոմը։ Վերջինս մտել էր Հունաստան և գրավել էր այնտեղ էպիդամնոսը և Կորկյուրան դեռ ևս 229/8 թվին մեր թվականությունից առաջ։ Սակայն նրա անվկանդ ծավալումը Միջերկրական ծովի արևելյան երկրներում արագ կերպով շարունակվեց փյունիկյան երկրորդ պատերազմից հետո (218—201 մեր թվ. ա.)։*

*Անտիոքոս Մեծի Մագնեսիայի մոտ կրած վճռական ու ծանր պարտությունը 190 թվին հռոմայեցիներին հնարավորություն տվեց ամրացնելու իրենց ազդեցությունը Փոքր Ասիայի մանր*

պետությունների վրա։ Ինչպես Հունաստանում, նույնպես և այստեղ՝ Հռոմը հրապարակ եկավ սկզբում՝ իբրև ազատարար ու հովանավոր մանր պետությունների ու ճնշված ժողովուրդների։ Սակայն, իրապես, նրա քաղաքականության նպատակն էր գրգռել ու թշնամացնել իրար դեմ բարեկամ այդ պետությունները և, ուժասպառ անելով բոլորին՝ հաստատել ամենուրեք իր տիրապետությունը։

Ստրաբոնի վկայությամբ՝ Անտիոքոս Մեծի (223—187 մեր թվ. առաջ) Արտաքսիաս և Զարիադրիս ստրատեգները կամ զորավարները, որոնք Արմենիայի կառավարիչներն էին և իշխում էին այնտեղ նրա հանձնարարությամբ, օգտվելով Անտիոքոս Գ-ի Մագնեսիայի մոտ հռոմայեցիներից կրած պարտությունից՝ անցան հաղթող հռոմայեցիների կողմը և հայտարարեցին իրենց անկախ թագավորներ (189 մեր թվ. առաջ)։

Այսպիսով, երկրորդ դարի առաջին կիսում արմենական երկրները դարձյալ մնացին բաժանված անջատ մասերի, որոնք ունեին իրենց առանձին թագավորները։ Այս թագավորություններից ամենազորեղն ու ամենաընդարձակը, ինչպես երևում է Պոլիբիոսի ուշագրավ մի վկայությունից, Արտաշեսի թագավորությունն էր՝ Մեծ Հայքը։ Արտաշեսին Պոլիբիոսն անվանում է «Արմենիայի մեծագույն մասի» կառավարիչ[1]։ Նույնը հաստատում է նաև Ստրաբոնը հետևյալ իր վկայության մեջ։

«Պատմում են,—ասում է Ստրաբոնը,—որ Արմենիան եղել է առաջ փոքր և մեծացել է Արտաքսիասի (Արտաշեսի) և Զարիադրիսի (Զարեհի) ձեռքով, որոնք նախապես Անտիոքոս Մեծի զորավարներն (στρατηγοί) էին և նրա անկումից հետո թագավորեցին՝ մեկը Սոփքի, Ակիսենեսի, Օդոմանտիսի և մի քանի այլ գավառների վրա, իսկ մյուսը՝ Արտաշատի շուրջը գտնվող երկրի վրա։ Սրանք ընդարձակեցին իրենց երկրների սահմանները և գրավեցին շրջակա ժողովուրդներից հետևյալ շրջանները. մեդացիներից՝ Կասպիանեն, Փավնիտիսը և Բասորոպեդան, իբերներից՝ Պարիադրեսի լեռնալանջերը, Խորզենեն և Գոգարենեն, որ գտնվում է Կուր գետի մյուս կողմում, խալյուբներից և մոսսինոյկներից՝ Կարենիտիսը և Դերքսենեն, որոնք սահմանակից են Փոքր Հայքին կամ նրա մասերն են, կատաոններից՝ Ակիլիսենեն և Անտիտավրոսի կողմերը գտնվող երկիրը և ասորի-

[1] Տե՛ս Polyb., XXV, 2, 12.

ներից՝ Տամորիտոսը. այնպես որ բոլորը միալեզու եղան»[1]։

Մեջբերված այս վկայություններից երևում է, որ Արտաշեսը գրավել էր Կասպյան երկիրը կամ Փայտակարանը (=Κασπιανή), Վասպուրականը (=Βασοροπέδα), Փավնիտիսը (՞)[2], Պարխադրեսի լեռնալանջերը, այսինքն՝ Տայքը, Խորձյանը (=Χορζηνή), Գուգարքը (=Γωγαρηνή), Կարնո գավառը (=Καρηνῖτις), Դերջանը (Δερξηνή) և Տմորիքը (Ταμωρῖτις)[3], իսկ Զարեհը՝ Եկեղյաց գավառը (Ἀκιλισηνή) և Անտիտավրոսի կողմերը գտնվող երկիրը։

Ստրաբոնի հիշատակած Χοδζηνή երկիրը, որը գրավված էր իբերներից՝ աշխարհագրական ու պատմական նորագույն երկերում, ինչպես և իմ նախորդ աշխատություններում, համապատասխան է համարված այժմյան Կղարջքին։ Ենթադրել են, որ Χορζηνή ընթերցվածը աղճատված է և պետք է ուղղել Χαλαρζηνή կամ Καλαρζηνή, որը հիշատակված է Պտոլեմեոսի աշխարհագրության մեջ (հրատ. Կ. Մյուլլերի, Փարիզ, 1901, էջ 937)։ Այդ ենթադրությունը, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ վերջին հոդվածներից մեկում, ճիշտ չէ։ Χορζηνή-ն պարզապես հին Խորձյան գավառն է, որը գտնվել է այժմյան Արդահանի կողմում[4]։

Ստրաբոնի հաղորդած տեղեկությունները հնարավորություն են տալիս մեզ որոշելու պատմական Հայաստանի ընդարձակությունը երկրորդ դարի սկզբներում մեր թվականությունից առաջ։ Նահանգների հնագույն ժամանակների անունները գործածելով՝ Հյուբշմանը ենթադրում է, որ Արտաշեսի և Զարեհի ժամանակ այսրեփրատյան ընդարձակված Հայաստանը, հավանորեն, իր մեջ բովանդակում էր Փայտակարանը, Սյունիքը, Վասպուրա-

---

[1] Տե՛ս Strabo. XI, 14, 5 (528).

[2] Հյուբշմանը «Փավնիտիս»-ը (Φαυνῖτις) առաջարկում է ուղղել Σουνῖτις և նույնացնել Սյունիքի հետ, իսկ Βασοροπέδα-ի նույնությունը Վասպուրականի հետ համարում է անընդունելի. տե՛ս «Հին Հայոց տեղւոյ անունները», էջ 17—18։

[3] Ստրաբոնի հունարեն բնագրում գրված է Ταμωνῖτιν փխ. Ταμωνῖτιν Տոմաշեկի և Մարկվարտի կարծիքով, այս երկիրը ո՛չ թե «Տարոնն» է, ինչպես ենթադրել է Հ. Կիպպերտը, այլ Տմորիքն է, տե՛ս Monatsberichte der K. Akad. d. Wiss. zu Berlin, 1873, էջ 173, Տոմաշեկ, Սասուն և Տիգրիսի ադբերաց սահմանները, Վիեննա, 1894, էջ 11—12. Markwart, Eranschahr, էջ 170, ծան։

[4] Տե՛ս իմ հոդվածը „Маршруты Понтийского похода Помпея и путь отступления Митридата в Колхиду“, „Вестник древней истории“, 3—4, М., 1940, էջ 98—100։

կանը, Այրարատը, Գուգարքը, Տայքը, Բարձր Հայքը, Տուրուբերանը, Չորրորդ Հայքը, Աղձնիքը, Մոկքը, Կորճայքի մեծ մասը և թերևս նաև Ուտին ու Արցախը, այսինքն՝ հետնագույն Հայաստանի 15 նահանգներից 13-ը[1]։

Մինչև Արտաշեսյան և Զարեհյան թագավորությունների հիմնումը հայ ժողովրդի նախկին ավելի քան չորսհարյուր տարվա պատմությունը, ինչպես տեսնում ենք, կարելի է համարել Հայաստանի ներքին աճման ու ընդարձակման շրջան։ Արածանիի ու Տիգրիս գետի հովիտներում հաստատվելուց հետո՝ հնդեվրոպական արմենները պետք է իրենց ամբողջ ուժն ու եռանդը լարեին ու մաքառեին տեղական բնիկ ժողովուրդների հետ։ Աճելով ու տարածվելով, քայլ առ քայլ նվաճելով նախկին Ուրարտուի ըմբոստ ու ռազմիկ ցեղերը՝ նրանք միայն մոտ չորսհարյուր տարվա համառ պայքարից հետո կարողացել էին հետզհետե տեր դառնալ պատմական Հայաստանին վերոհիշյալ լայնատարած սահմաններում։

Վերև մեջբերված վկայության մեջ Ստրաբոնը հաղորդում է նաև, որ ընդարձակված Արմենիայում նրա ժամանակ բոլորը համալեզու էին, այսինքն՝ խոսում էին հայերեն։ Ստրաբոնի այս վկայությունը կարելի է ընդունել որոշ, իհարկե, վերապահությամբ։ Ինչպես հայտնի է, Հայաստանի զանազան շրջաններում նույնիսկ Սասանյանների ժամանակ և անգամ նրանց տիրապետությունից հետո կային օտարալեզու ցեղեր։ Ուրեմն՝ Ստրաբոնի վկայությունը պետք է, ըստ երևույթին, բացատրել այն իմաստով, որ նրա ժամանակ տարածված և գերիշխող լեզուն եղել է Հայաստանում հայերենը։ Կարելի է նաև ենթադրել, որ Արտաշեսն ու Զարեհը Հայաստանին քաղաքականապես միացրել էին այն ծայրագավառները, որոնց մեջ նախորդ դարերի ընթացքում արմենական գաղթականությունն արդեն որոշ դիրք էր գրավել և տեղական ժողովուրդները ենթարկել էր որոշ չափով հայերեն լեզվի ազդեցությանը։

Արտաշեսի և Զարեհի թագավորության ժամանակ արմենները, հավանաբեն, ո՛չ միայն տարածվել ու հաստատվել էին Հայկական լեռնաշխարհի բազմաթիվ շրջաններում, այլև զգալի չափով արդեն հայացել էին այդ երկրները։ Հնդեվրոպական արմենների միաձուլումը տեղական ժողովուրդների հետ և հայ

---

1 Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 22—23։

ժողովրդի էթնիկական կազմավորումը, ինչպես տեսնում ենք, մոտ է եղել իր ավարտման արդեն Արտաշեսյան թագավորության հիմնադրման ժամանակ։

Ընդարձակվել էր նույն այս երկրորդ դարում մեր թվականությունից առաջ բացի Մեծ Հայքից ու Ծոփքից նաև Փոքր Հայքը, որը նվաճել էր արևմտյան Պարիադրեսի և հյուսիս-արևելյան Պոնտոսի ծովափնյա շրջանները և հասցրել էր իր սահմանները մինչև Սև ծովը։

«Փոքր Հայքը,—ասում է Ստրաբոնը,—բավական պտղաբեր երկիր է։ Այստեղ ևս, ինչպես Ծոփքում, միշտ կառավարում էին երկիրը սեփական իշխանները, որոնք կամ բարեկամ ու դաշնակից էին մյուս արմեններին և կամ իրենց գործերը վարում էին առանձին ու անկախ։ Փոքր Հայքն իրեն հպատակեցրել էր խալդայներին և տիբարեններին, այնպես որ նրա իշխանությունը տարածվում էր մինչև Տրապիզոն և Փառնակիա»[1]։

Հայաստանում և Կապպադովկիայի հյուսիս-արևելքում կազմվել էին, ինչպես տեսնում ենք, փոխանակ միահար ու միաձույլ մեծ պետության՝ երեք անկախ արմենական թագավորություններ։ Այս երեք հզոր թագավորությունների առաջացումը քաղաքական տեսակետից կազմում է հայ ժողովրդի պատմական անցյալում մի նոր դարագլուխ։

Այս երեք թագավորություններից ամենաուժեղը և տարածությամբ էլ ամենամեծը Արտաշեսի թագավորությունն էր՝ Մեծ Հայաստանը։ Դառնալով իր ընդարձակված նոր սահմանների մեջ մեծ ու անկախ պետություն՝ Մեծ Հայաստանը, ինչպես կտեսնենք, այնքան զորեղացավ, որ պատմության բեմ դուրս եկավ որպես մրցակից Առաջավոր Ասիայի ամենահզոր պետություններին։

Սակայն հայախոս երկրների պետական կազմավորումն ու քաղաքական հզորացումն ուներ մի շատ թույլ կողմ։ Նրանք հենց սկզբից չկազմակերպվեցին իբրև պետական միահար մի ամբողջություն, այլ բաժանվեցին արևմտյան, հարավ-արևմտյան և հյուսիս-արևելյան ինքնիշխան մասերի, որոնք հաճախ իրար դեմ կռիվներ էին մղում։ Այս երեք թագավորություններից յուրաքանչյուրն ուներ իր սեփական կենտրոն-մայրաքաղաքը, իր տեղական

---

[1] Տե՛ս Strabo, XII, 3, 28 (555).

ավանդությունները և իր տնտեսական ու քաղաքական առանձին շահերը։ Եվ միանգամայն հասկանալի է, իհարկե, որ արմենների ցրվածությունն ու այս բաժանումը արգելք էին հանդիսանում նրանց ընդհանուր ու համերաշխ գործակցության։

Արմենական երկրների միացման կարևորությունը, հավանորեն, գիտակցվել է առավելապես նրանց քաղաքական վերելքի այս շրջանում։ Հայտնի է, որ Արտաշես Ա-ը, որը, ինչպես տեսանք, անչափ ընդարձակել էր Մեծ Հայքը՝ ուզեցել էր նվաճել հարևան Ծոփքը։ Սակայն Մեծ Հայքի զորեղացումը և արմենական երկրների միացումը ցանկալի ու հանդուրժելի չէին Կապպադովկիայի ու Պոնտոսի համար։ Փոքր Հայքն ու Ծոփքը, որոնց անկախությունը Արտաշեսյան հզոր թագավորության կողմից վտանգ էր սպառնում՝ սերտ կերպով հարեցին այս պետություններին և ապավինեցին նրանց օգնության։

Դիոդորոս Սիկիլիացին վկայում է[1], որ Արտաշեսին չհաջողվեց իր թագավորությանը միացնել Ծոփքը շնորհիվ Կապպադովկիայի Արիարաթ Ե թագավորի միջամտության։ Այս վերջինի օգնությամբ ստացավ իր հայրենի թագավորությունը Զարեհի որդին, Մերուժանը, որն Արտաշեսի հարձակման ժամանակ փախել էր Կապպադովկիա։

Արտաշեսյան Մեծ Հայաստանի մասին մատենագրական աղբյուրները տալիս են, դժբախտաբար, միայն պատահական ու կցկտուր տեղեկություններ։ Այդ տեղեկություններից առանձնապես կարևոր են Ստրաբոնի և Պլուտարքոսի վկայությունները Արտաշատ մայրաքաղաքի մասին, որը հիմնել էր Արտաշես Ա-ը, հավանորեն, 166 թվին մեր թվականությունից առաջ[2]։

«Հայաստանի քաղաքներն են,—ասում է Ստրաբոնը,— Արտաքսատան (որն անվանում են նաև Արտաքսասատա և որը հիմնել էր Աննիբալն Արտաշեսի համար) և Արքսատան։ Երկու քաղաքն էլ գտնվում են Արաքսի վրա՝ Արքսատան Ատրպատականի սահմանների մոտ, իսկ Արտաքսատան՝ Արաքսյան դաշտի մոտ։ Այս վերջինը գեղեցիկ է շինված և երկրի թագավորանիստ քաղաքն է։ Նա գտնվում է գետածոցում, որը նման է թերակղզու, և նրա շուրջը, բացի պարա-

[1] Տե՛ս *Diod.*, fr. XXXI 22 և *Polyb.*, XXXI, 15 (a).

[2] Տե՛ս *Fabricius*, Theophanes von Mitylene und Q. Dellius als Quellen der Geographie des Strabons, Strassburg, 1888, էջ 32 և 131։

նոցի մասից, գետի առջև ձգվում է պարիսպը, իսկ պարանոցը փակված է խրամով և պատվարով»[1]։

Որ Արտաշատը շինված է Աննիբալի խորհրդով և նրա ցուցմունքներով՝ այդ մանրամասն հաղորդում է Պլուտարքոսը հետևյալ իր վկայության մեջ։

«Պատմում են,—ասում է Պլուտարքոսը,— որ երբ Անտիոքոսը պարտություն կրեց հռոմայեցիներից՝ կարթագենացի Աննիբալը եկավ Արտաշես Արմենի մոտ և հրահանգիչ ու խորհրդատու դառավ բազմաթիվ օգտավետ գործերում։ Նկատելով, բացի այդ, այս երկրում չօգտագործված ու անտես արված հարմարավետ ու խիստ հաճելի մի վայր՝ նա այդ տեղում ուրվագծեց քաղաքի հատակագիծը։ Աննիբալը տարավ Արտաշեսին, ցույց տվեց հատակագիծը և համոզեց հիմնել այդ տեղում քաղաք։ Թագավորն ուրախությամբ համաձայնեց և խնդրեց, որ նա իր վրա վերցնե այդ գործի ղեկավարությունը։ Այսպիսով կառուցվեց մեծ ու խիստ գեղեցիկ քաղաք, որն անվանվեց թագավորի անունով և հայտարարվեց Հայաստանի մայրաքաղաք»[2]։

Պատմագետներից շատերը կասկածելի են համարում թե Արտաշատի հիմնումն Աննիբալի խորհրդով և թե Աննիբալի փախուստը Հայաստան։ Սակայն, այնուամենայնիվ, վերոհիշյալ վկայությունները խիստ կարևոր են, որովհետև նրանք պարզ ու որոշ հաստատում են, որ Արտաշատը հիմնված է եղել երկրորդ դարում Արտաշես Ա-ի ժամանակ։

Առանձնապես հետաքրքիր են և կարևոր Արտաշատի տեղագրության ու ամրությունների մասին Ստրաբոնի հաղորդած տեղեկությունները։ Ուշագրավ է նաև այն, որ Մեծ Հայաստանի այս մայրաքաղաքը, ինչպես երևում է Պլուտարքոսի վկայությունից, արևմտյան երկրներում համարել են «մեծ ու խիստ գեղեցիկ քաղաք»։

Արտաշատի հիմնումն Արարատյան դաշտում կարելի է համարել Արտաշես Ա-ի կարևորագույն գործերից մեկը։ Այս դաշտն այնուհետև դառավ Հայաստանի քաղաքական ու կուլտուրական միավորման կենտրոնը։

Քաղաքավայրի ընտրությունը հաջող էր կատարված թե ռազմական և թե տնտեսական տեսակետներից։ Գտնվելով Հայկական

---

[1] *Strabo*, XI, 14, 6 (528)։
[2] *Plut.*, Lucullus, XXXI, 5։

լեռնաշխարհի կենտրոնում՝ Արարատյան դաշտն ավելի էր պաշտպանված արշավող թշնամիներից, քան լեռնաշխարհի սահմաններում գտնվող շրջանները։ Բացի այդ, նրա միջով էր անցնում տարանցիկ ճանապարհը, որը գալիս էր Միջին Ասիայի ու Չինաստանի կողմերից և Արտաշատի մոտով գնում էր դեպի Սև ծովի նավահանգիստները։

Ինչպես տեսնում ենք, Արտաշեսյան դինաստիայի հիմնադիրը եռանդուն կազմակերպողն էր պատմական Մեծ Հայաստանի, և ընդարձակված այս պետությունն արդեն նրա ժամանակ համարյա ամփոփվել էր իր բնական սահմանների մեջ և տարածվում էր Հյուսիսային Միջագետքից մինչև Կուր գետը և Ատրպատականից մինչև Ծոփքը և Փոքր Հայքը։

Այս մեծ թագավորությունը, որը դառել էր Առաջավոր Ասիայի ուժեղ պետություններից մեկը՝ այժմ հաշվի էր առնվում և որոշ դեր էր կատարում միջպետական հարաբերություններում։ Պոլիբիոսը, որն իր պատմության մեջ մանրամասն հիշատակել է Փառնակ Պոնտացու և Փոքր Հայքի Միհրդատ սատրապի 180 թվի կռիվն ընդդեմ Պերգամոնի, Կապպադովկիայի և Բիթանիայի թագավորների՝ մեջ է բերում սրանց ստորագրած խաղաղության դաշինքը և վկայում է, որ այդ դաշնադրությանը մասնակից է եղել «Արմենիայի մեծագույն մասի կառավարիչ Արտաշեսը»[1]։

Պատերազմը սկսել էին միացյալ ուժերով Փառնակը և Միհրդատը, որպեսզի գրավեն իրենց հարևանների, գլխավորապես, Կապպադովկիայի և Պափլագոնիայի երկրամասերը։ Սակայն շուտով նրանց դեմ ռազմերթի ելան Կապպադովկիայի և Պերգամոնի թագավորները, Արիարաթ Դ-ը և Եվմենես Բ-ը, և պատերազմը Հռոմի միջամտության պատճառով իսկույն դադարեցվեց և կնքվեց դաշինք (179 մեր թվ. առաջ)։

Պոլիբիոսի վկայությունն այդ դաշինքի մասին, որին մասնակից էին Փոքր Հայքը և Մեծ Հայքը, հարկ եմ համարում բերել ընդարձակ բովանդակությամբ։

> «Հանկարծակիի եկած,—պատմում է Պոլիբիոսը[2],— թշնամիների դաժան հարձակման պատճառով՝ Փառնակը պատրաստ էր ընդունել հաշտության յուրաքանչյուր պայման, ինչ որ նրան առաջարկեին հակառակորդները. դրա

[1] Տե՛ս Polyb., XXV, 2, 12։

[2] Նույնը, XXV, 2, 1—12։

*համար նա ուղարկեց դեսպաններ Եվմենեսի և Արիարաթի մոտ։ Արդ՝ որովհետև Եվմենեսը և Արիարաթն ընդունել էին նրա դեսպաններին և իրենք էլ իսկույն ուղարկել էին Փառնակի մոտ իրենց դեսպաններին, ուստի և՝ դեսպանությունների հաճախակի փոխանակումից հետո՝ հաշտություն կնքվեց հետևյալ պայմաններով.—Թո՛ղ մշտնջենապես խաղաղություն լինի, մի կողմից՝ Եվմենեսի, Պրուսիասի և Արիարաթի, մյուս կողմից՝ Փառնակի և Միհրդատի միջև։ Փառնակը և ո՛չ մի պատրվակով չպիտի ռազմերթի ելնե Գալատիայի դեմ և նրա բոլոր նախկին պայմանագրերը գալատների հետ համարվելու են անվավեր։ Նա պետք է նաև դատարկե Պափլագոնիան, իսկ բնակիչներին, որ այնտեղից գաղթեցրել է՝ պետք է ետ ուղարկե. նրանց հետ միասին պետք է վերադարձնե զենքերը, նետողական մեքենաները և այլ ռազմական գործիքները, որ նա վերցրել է։ Նա պարտավոր է նույնպես Արիարաթին վերադարձնել նրանից վերցված բոլոր տեղերը և նրանց վրա գտնվող կառուցվածքները, նաև պատանդներին. նմանապես և Տիոս քաղաքը, որը գտնվում է Պոնտոսի մոտ՝ այն քաղաքը, որը փոքր-ինչ հետո Եվմենեսը զիջեց Պրուսիասին, կատարելով նրա խնդիրքը, և Պրուսիասը դրա համար մեծապես նրան երախտապարտ էր։ Որոշված էր նմանապես, որ Փառնակը պետք է վերադարձներ առանց փրկանքի բոլոր ռազմագերիներին և բոլոր փախստականներին։ Բացի այդ, այն գանձերից ու փողից, որ վերցրել էր Մորզիայից [Պափլագոնիայի թագավորից] և Արիարաթից՝ նա պետք է այս թագավորներին վճարեր 900 տաղանդ, և 300 տաղանդ էլ Եվմենեսին ի հատուցումն պատերազմական ծախքերի։ Որոշված էր նույնպես, որ Արմենիայի սատրապ Միհրդատը[1], որը հակառակ Եվմենեսի հետ կնքած դաշինքի պատերազմի էր ելել Արիարաթի դեմ՝ պետք է վճարեր սրան 300 տաղանդ։ Պայմանագրին մասնակից էին արվել Ասիայի իշխաններից՝ Արտաշեսը, որը Արմենիայի մեծագույն մասի կառավարիչն էր, և Ակուսելոխը»։*

[1] *Պոլիբիոսի մոտ Փոքր Հայքի այս Միհրդատը, ինչպես տեսնում ենք, անվանված է սատրապ, այսինքն՝ կուսակալ։ Այս վկայությունից կարելի է թերևս հետևցնել, որ Միհրդատը 180 թվի պատերազմի ժամանակ չէ եղել անկախ թագավոր, այլ հպատակված է եղել, հավանորեն, Պոնտոսի կամ գուցե մի այլ հարևան թագավորի գերագույն իշխանությանը։*

Արտաշեսյան անկախ Մեծ Հայաստանի զորեղացումը վըրտանգավոր համարեց Սելևկյան թագավորությունը, որ արմենական այս երկրի նախկին սյուզերենն էր։ Ինչպես վկայում են Դիոդորոս Սիկիլիացին և Ապպիանոսը[1], մոտավորապես 165 թվին (մեր թվ. առաջ) Հայաստան էր արշավել Անտիոքոս Դ Եպիփանեսը (175—164 մեր թվ. ա.)։ Սակայն Արտաշեսը, թեև պարտություն էր կրել, կարողացել էր շուտով վերականգնել իր հին իրավունքները։

Դիոդորոս Սիկիլիացու մի այլ վկայությունից[2] հայտնի է դարձյալ, որ Սելևկյանների սատրապ Տիմարքոսը, որն ապըստամբել էր և հայտարարել իրեն Մեծ Մեդիայի թագավոր (161 մեր թվ. առաջ)՝ դաշն էր կնքել Արտաշես Ա-ի հետ և սրա օգնությամբ ընդարձակել էր իր թագավորության սահմանները մինչև Սելևկիա և Զեգմա։ Այս վկայությունից, ինչպես տեսնում ենք, պարզ երևում է, որ Արտաշես Ա-ը թագավորել էր Մեծ Հայաստանում ամենաքիչը մինչև 160 թիվը մեր թվականությունից առաջ։

Աղբյուրների աղքատիկ ու պատահական այս տեղեկությունները չեն տալիս, իհարկե, պարզ ու լրիվ պատկեր այն մեծ շրջադարձի, որ տեղի էր ունեցել Արտաշես Ա-ի ժամանակ։ Սակայն վերոհիշյալ կցկտուր հիշատակություններն անգամ ցույց են տալիս, որ Արտաշեսյան անկախ ու հզոր Հայաստանի կազմակերպումը սկիզբն էր Հին Հայաստանի պատմության նոր դարաշրջանի։

Միանգամայն բնական է ու հասկանալի, որ Արտաշեսյան այս շրջանի պատմական մեծ անցքերը նյութ էին դառել վիպական հին երգերի ու ավանդությունների, որոնցից օգտվել էր Մովսես Խորենացին։

Արտաշես Ա-ին է վերաբերում, անշուշտ, Խորենացու վկայությունն Արտաշատ քաղաքի շինության մասին, որ հայտնի է եղել Խորենացուն, ինչպես ինքն է վկայում, «ի վիպասանացն, որ պատմին ի Գողթան»[3]։

> «Արտաշեսը,—պատմում է Խորենացին,—գնում է այն տեղը, որտեղ Երասխը և Մեծամորը իրար էին խառնվում,

[1] Տե՛ս *Müller*, Fragm. histor. graec., II, էջ X և *Appianos*, Syr., 45 և 46.

[2] *Müller*, F. H. G., II, էջ XII.

[3] Տե՛ս II, գլ. 49։

և, հավանելով բլրին՝ շինում է քաղաք և իր անունով կոչում է Արտաշատ։ Նրան օգնում է և Երասխը անտառների փայտով․ ուստի և նա առանց դժվարության ու արագ շինում է քաղաքը և կանգնեցնում է նրա մեջ մեհեան»։

[«Երթեալ Արտաշիսի ի տեղին, ուր խառնին Երասխ և Մեծամօր, և հաճեալ ընդ բլուրն՝ շինէ քաղաք յիւր անուն անուանեալ Արտաշատ։ Ձեռնտու լինի նմա և Երասխ փայտիւք մայրեաց. վասն որոյ անաշխատ և երագ շինեալ՝ կանգնէ ի նմա մեհեան»][1]։

Ինչպես հայտնի է, ինքը Խորենացին վիպասանքի այս Արտաշեսին, որը, անտարակույս, Արտաշատի հիմնադիր Արտաշես Ա-ն է՝ շփոթել է իր ենթադրած Արտաշես Բ-ի հետ, որին նա համաձայն իր սխալ ժամանակագրության ժամանակակից է համարում հռոմեական Դոմետիանոս (81—96 մեր թվ. հ.), Ներվաս, Տրայանոս և Ադրիանոս (117—138 մեր թվ. հ.) կայսրների։ Բայց, իրապես, Խորենացու օգտագործած Արտաշեսյան վեպի կենտրոնը կազմում է, ինչպես մանրամասն ցույց է տրըված Աբեղյանի «Հայ ժողովրդական առասպելները» ուսումնասիրության մեջ[2], վերոհիշյալ Արտաշես Ա թագավորը, թեև նրա մեջ որոշ տարրեր ընդունվել են նաև հետագա մյուս Արտաշեսներից, Տրդատ Ա-ից և պատմական այլ նշանավոր դեպքերից։

Հատկապես նաև հին Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին իմ աշխատության մեջ ցույց էր տրված[3], որ Խորենացու անցքերի ու պատերազմների մասին, որոնք տեղի էին ունեցել Հայաստանում ո՛չ թե Հրադամիզդի (ըստ Խորենացու՝ Երվանդի) և Տրդատ Ա-ի (ըստ Խորենացու՝ Արտաշես Բ-ի) ժամանակ, ինչպես ենթադրել են Գարագաշյանը և Աբեղյանը[4], այլ Օրոնտես-Երվանդի և Արտաշես Ա-ի ժամանակաշրջանում։ Այդ կարևոր տեղեկությունները ևս Խորենացուն հայտնի են եղել, հավանորեն, վիպասանքից կամ հին զրույցներից։

---

1 Տե՛ս «Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913, էջ 176—177 (II, 49)։

2 Տե՛ս «Հայ ժողովրդական առասպելները», Վաղարշապատ, 1901, էջ 315—325։

3 Տե՛ս „О торговле и городах Армении". էջ 97։

4 Տե՛ս Գարագաշյան, Քննական պատմութիւն, մասն Դ. էջ 275—282. Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 286—289։

Զրույցների և երգերի մեջ, ըստ երևույթին, պատմվում էին Արտաշեսի այն պատերազմները, որոնց միջոցով նա վերջ էր դրել Երվանդյանների իշխանությանը և նվաճել էր Արարատյան դաշտը ու նրանց աթոռանիստ կենտրոն Երվանդաշատը։

Ստրաբոնի կարևոր մի վկայությունից մեզ հայտնի է, որ Երվանդյաններից վերջին իշխողն է եղել Օրոնտես-Երվանդը, որից հետո հաստատվել էին Անտիոքոս Մեծի Արտաքսիաս և Զարիադրիս ստրատեգներ-կուսակալները։ Խորենացին մեզ միջոց է տալիս կռահելու, որ Երվանդյանների դինաստիայի փոխանակումն Արտաշեսյան նոր դինաստիայով տեղի է ունեցել համառ կռիվներից հետո։

Ստրաբոնի վկայությունը Օրոնտես-Երվանդի (᾿Ορόντης) մասին, որին հաջորդել էր Արտաշես Ա-ը՝ անհրաժեշտ եմ համարում մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։

> «[Արմենիայի մասին] հին ավանդությունը,—ասում է Ստրաբոնը,—այդ է, իսկ ավելի նորը, սկսած պարսկական տիրապետությունից և հաջորդաբար մինչև մեր ժամանակները՝ հարկ է պատմել համառոտակի մինչև այժմ։ Արմենիային նախ տիրեցին պարսիկները և մակեդոնացիները, հետո Սելևկյանները, որ նվաճել էին Ասորիքը և Մեդիան։ Վերջին իշխողն էր Օրոնտեսը՝ շառավիղը Հյուդարնեսի, որը մեկն էր յոթը պարսիկներից։ Այնուհետև երկիրը բաժանեցին երկու մասի Արտաքսիասը և Զարիադրիսը, որոնք ստրատեգներն էին Անտիոքոս Մեծի, որը պատերազմել էր հռոմայեցիների դեմ։ Սրանք իշխում էին նախ թագավորի հանձնարարությամբ, բայց սրա պարտությունից հետո, հարելով հռոմայեցիներին՝ իշխեցին իրենք առանձին և հայտարարվեցին թագավորներ»[1]։

Ահա այս Երվանդն է ըստ իս հիշատակված Խորենացու Պատմության մեջ (գիրք II, գլ. Լէ—ԽԸ)։ Բայց մեր պատմահայրը, օգտվելով, հավանորեն, բացի վիպասանքից նաև այլ մեզ անհայտ աղբյուրներից՝ Երվանդի ու Արտաշեսի ընդարձակ պատմությունը հերյուրել է և շարադրել, բնականաբար, ըստ իր ըմբռնման ու ժամանակագրության, շփոթելով Օրոնտես-Երվանդին Եդեսիայի Աբգար է թագավորի որդու՝ Արբանդեսի (᾿Αρβάνδης) հետ[2], որը ժամանակակից էր Տրայանոս կայսեր (98—117 մեր թվ. հ.)։

---

[1] *Strabo*, XI. 14, 15 (531)։

[2] Տե՛ս *Халатьянц*, Армянский эпос, М., 1896, էջ 219 և 226։

*Հիմնվելով այս նոր լուսաբանության վրա՝ նախորդ իմ աշխատություններից մեկում ես հավանական էի համարել[1], որ Խորենացու մոտ պահպանված են կարևոր հիշողություններ ո՛չ միայն Արտաշես Ա-ի հիմնած Արտաշատ քաղաքի, այլև Երվանդյանների հիմնած Երվանդաշատ քաղաքի մասին։*

*«Սրա [Երվանդի] ժամանակ,—պատմում է Խորենացին,—արքունիքը Արմավիր կոչված բլրից տեղափոխվում է, որովհետև Երասխ գետը հեռացել էր և, ձմեռն երկարելիս, երբ հյուսիսային ցուրտ քամիներ էին փչում՝ վտակը բոլորովին սառչում էր և չէր կարելի բավական ջուր ունենալ թագավորանիստ տեղի համար։ Նեղվելով սրանից, նաև ավելի ամուր տեղ փնտրելով՝ Երվանդը տեղափոխում է արքունիքը դեպի արևմուտք, ապառաժոտ մի բլրի վրա, որի շուրջը պտտում էր Երասխը, իսկ դեմից հոսում էր Ախուրյան գետը։ Նա պարսպապատում է բլուրը, իսկ պարսպից ներս շատ տեղերում կտրում է քարերը մինչև բլուրի հատակը գետին հավասար, որպեսզի գետի ջրերը հոսեն փորված տեղերը և խմելու ջուր հայթայթեն»։*

*[«Յաւուրս սորա փոխին արքունիքն յԱրմաւիրն անուանեալ բլրոյ. քանզի էր հեռացեալ գետն Երասխ, և ի յերկարել ձմերայնոյն, և ի դառնահոտ չփմանէ հիւսիսոյ պաղացեալ ձուլեալ վտակն՝ ոչ ւստեք արբուցումն բաւական թագաւորականին գտանէր տեղւոյ։ Ընդ որ նեղեալ Երուանդայ, նա և ամրագունի ևս տեղւոյ ելեալ ի խնդիր՝ փոխէ զարքունիսն յարևմուտս կոյս, ի քարակտուր մի բլուր, զորով պատ առեալ Երասխայ՝ ընդդէմ Ախուրեանն հոսի գետ։ Պարսպէ զբլուրն, և ի ներքսագոյն քան զպարիսպն ընդ բազում տեղիս կտրեալ զքարինսն մինչև ի յատակս բլրոյն հաւասար գետոյն, մինչև դիմել ջուրց գետոյն ի փորուածն, յըմպելեաց՝ պատրաստութիւն...»]*[2]։

*Խալաթյանցը կարծում է, որ մեջբերված այս ամբողջ վկայությունը սարքել է ինքը Խորենացին*[3]*։ Այդ կարծիքը, իհարկե, ընդունելի չէ։ Վերև մենք տեսանք, որ դեռևս երրորդ դարում մեր թվականությունից առաջ Երվանդյաններն իշխում էին Այրա-*

---

[1] *Տե՛ս* „О торговле и городах Армении„, *էջ 96—98։*

[2] Մովսիսի Խորենացւոյ *Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 165 (II, ԼԹ)։*

[3] *Տե՛ս Халатьянц,* Армянский эпос, *էջ 215—218։*

բառում, և Արմավիրն այնտեղ նրանց աթոռանիստ կենտրոնն էր։ Ավելի քան հավանական է, ուրեմն, որ երրորդ դարի վերջում Երվանդի արքունիքը կարող էր լինել, ինչպես հաղորդում է Խորենացին, Արմավիրում։ Իսկ որ Երվանդաշատի հիմնադիրը պետք է լիներ, իրապես, Երվանդը՝ այդ պարզ երևում է այս քաղաքի Երվանդաշատ անունից։

Այսպիսով՝ անտես առնելով Խորենացու վերոհիշյալ վկայությունների մեջ ժամանակագրական նրա սխալ կռահումները՝ կարող ենք ենթադրել, որ Երվանդաշատը, հավանորեն, հիմնել էր երրորդ դարի վերջում կամ երկրորդ դարի սկզբում մեր թվականությունից առաջ Արտաշես Ա-ի նախորդը, Օրոնտես-Երվանդը[1], որի մասին պատմական ստույգ տեղեկություններ պահպանվել են Ստրաբոնի և Խորենացու մոտ, և կամ գուցե սրան նախորդող Երվանդներից մեկը։

Խորենացու պատմության մեջ, ինչպես նորերս պարզվեց, պահված են պատմական կարևոր հիշողություններ նաև Արտաշես Ա-ի պետական և կուլտուրական գործունեության մասին։

Արտաշեսյան թագավորության հիմնադրին են վերաբերում, ինչպես վերջերս ցույց տվեց Լենինգրադի Էրմիտաժի գիտական աշխատակից պրոֆ. Ա. Բորիսովը՝ Սևանի լճի մոտ գտնված երկու արամեատառ արձանագրությունները[2], որոնց վրա կարդացված են Արտաշես թագավորի և նրա հոր՝ Զարեհի անունները։ Ակադ. Օրբելու կարծիքով, այդ քառանիստ աշտարակաձև արձանագրված քարերը հաստատում են Խորենացու հաղորդած տեղեկությունը քառակուսի սահմանաքարերի մասին, որոնք կրում էին Արտաշեսի անունը[3]։

> «Բոլոր իր առաքինի արարքներից և ուղղադատ գործերից հետո,—վկայում է Խորենացին,—Արտաշեսը հրամայում է գյուղերի և ագարակների սահմանները որոշել, որովհետև նա բազմամարդացրել էր Հայոց աշխարհը, դրսից

---

[1] Ինչպես հայտնի է, Խորենացին նույն այս Երվանդին է վերագրում նաև Երվանդակերտի շինությունը (II, ԽԲ) և Ծննդոց կոչված անտառի տնկումը (II, ԽԱ)։ Կարող են ըստ իս ստույգ և պատմական լինել Խորենացու և այս տեղեկությունները։

[2] Համեմատե «Նյութեր Հին Հայաստանի պատմության», Երևան, 1935, էջ 207—214։

[3] Տե՛ս Օրբելու հոդվածը „Расшифровка древних надписей., Известия, օրաթերթ., 31 հունվ. 1941 թ.։

բերելով շատ ժողովուրդներ, որոնց բնակեցրել էր լեռներում, հովիտներում ու դաշտերում։ Եվ սահմանների համար նա հաստատում է նշաններ այսպես. հրամայում է տաշել քառակուսի քարերը, փորել մեջերը փոսեր պնակի նմանությամբ և թաղել գետնի մեջ, իսկ նրանց վրա կանգնեցնել քառակուսի աշտարակներ՝ գետնից քիչ բարձր։ Սրա վրա նախանձելով՝ հրամայում է Սասանի որդի Արտաշիրը նույնը անել և Պարսից աշխարհում ու իր անունով կոչել, որպեսզի Արտաշեսի անունն այլևս չհիշվի։ Բայց ասում են, որ Արտաշեսի ժամանակ Հայոց աշխարհում անմշակ հող չկար, ո՛չ լեռնային և ո՛չ դաշտային, որովհետև երկիրը դառել էր շէն»։

[«Յետ ամենայն առաքինութեանց և գործոց ուղղութեանց Արտաշիսի, հրամայէ զսահմանս գիւղից և ագարակաց որոշել. քանզի բազմամարդացոյց զաշխարհս Հայոց, եկամուտս բազումս ածելով ազգս, և բնակեցուցանելով ի լերինս և ի հովիտս և ի դաշտս։ Եւ նշանս սահմանացն հաստատեաց այսպէս. հրաման տալով քարինս կոփել չորեքկուսիս, և պնակաձև փոսել զմէջսն, ծածկելով յերկրի. և չորեքկուսիս ի վերայ յարուցանել ամբարտակս, սակաւ ինչ բարձրագոյն յերկրէ։ Ընդ որ նախանձեալ Արտաշրի որդւոյ Սասանայ՝ զնոյն նման հրամայէ առնել և ի Պարսից աշխարհին և յիւր անունն անուանել, զի մի՛ ևս յիշեսցի անունն Արտաշիսի։

Բայց ասի, ի ժամանակս Արտաշիսի ոչ գտանել երկիր անգործ յաշխարհիս Հայոց, ո՛չ լեռնային և ոչ դաշտային, յաղագս շինութեան երկրիս»][1]։

Խորենացու այս վկայությունն Արտաշեսի հրամանով կանգնեցված սահմանաքարերի մասին, որոնց վրայի արձանագրությունները, ինչպես պարզվում է այժմ, գրված են եղել հին արամերեն գրերով՝ բացառիկ կերպով կարևոր է ու հետաքրքիր։ Արձանագրված արամեատառ այդ քարերը, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Ա. Բորիսովը, պարզ ցույց են տալիս, որ մինչև հայկական գրերի գյուտը հինգերորդ դարում (մեր թվ. հետո) դեռևս Արտաշես Ա-ի ժամանակ Հայաստանում գործածվել են հին արամեական տառեր։

---

[1] Տե՛ս Խորենացի, Տփղիս, 1913, էջ 186 (II, ԾԶ)։

Խորենացին, ինչպես տեսնում ենք, իր հաղորդած տեղեկությունները Արտաշես Ա-ի մասին քաղել է, մեծ մասամբ, կարևոր ու արժանահավատ աղբյուրներից։ Ուստի և կարող ենք, ըստ էության, հավանական համարել նաև նրա այն վկայությունը (II, ԾԹ), որի մեջ մատնացույց է արված, որ հայերը, որոնք «մեծամեծ արվեստից և գիտությանց ունայնացեալք» էին՝ սկսել էին կուլտուրապես ավելի արագ զարգանալ շնորհիվ Արտաշես Ա-ի պետական վերանորոգչական գործունեության։

Մեր այս ընդարձակ քննությունից հետևում է, որ Արտաշես Ա-ը, որը հավաքել, միավորել ու կուլտուրապես բարեկարգել էր Մեծ Հայաստանը՝ Առաջավոր Ասիայի խոշորագույն պատմական դեմքերից մեկն է։

Արտաշես Ա-ից հետո օտար աղբյուրների մեջ մենք գրեթե տեղեկություններ չունենք Մեծ Հայաստանի և արմենական մյուս թագավորությունների մասին մինչև Տիգրան Բ-ը (95—55 մեր թվ. առաջ)։ Միմիայն Արտաշես Ա-ի որդիների մասին պատմական աղոտ հիշողություններ պահված են Խորենացու պատմության մեջ։

Արտաշես Ա-ը, ինչպես վկայում է Խորենացին, ունեցել է հինգ որդի՝ Վրույր, Մաժան, Արտավազդ, Տիրան և Զարեհ։ Սրանցից վերջին երեքը, իմ կարծիքով, հաստատապես կարող են համարվել Արտաշես Ա-ի որդիներ։

Զարեհը, որը կրում է արամեատառ արձանագրության մեջ հիշված Արտաշես Ա-ի հոր՝ իր պապի անունը, հիշատակված է ո՛չ միայն Խորենացու պատմության, այլև վրաց ժամանակագրության՝ Քարթլիս-Ցխովրեբայի մեջ։

1. Մովսես Խորենացի, II, գլ. ԾԳ, էջ 184 (Տփղիս, 1913)՝

«Եվ Զարեհը խրոխտ մարդ էր, երեսների որսի մեջ անվեհեր, բայց պատերազմների մեջ վախկոտ և տատանվող։ Մի ոմն Քարձամ, վրաց թագավորը, փորձով գիտենալով այդ՝ ապստամբեցնում է իր երկիրը և, բռնելով Զարեհին՝ բանտարկում է Կովկասում։ Բայց Արտավազդը և Տիրանը Սմբատի հետ միասին, պատերազմելով նրա դեմ՝ ետ են դարձնում իրենց եղբորը խիստ տղմոտ տեղից»։

[«Եվ Զարեհ էր այր սէգ և յորս երէոց նահատակ, իսկ առ պատերազմունս վատ և տաղտուկ. զորոյ զփորձ առեալ Քարձամայ ուրումն արքայի Վրաց՝ ապստամբեցուցանէ զերկիրն, և կալեալ զԶարեհ, ի բանտի դնէ ի Կաւկաս։ Ընդ

որում պատերազմեալ Արտաւազդայ և Տիրանայ հանդերձ Սմբատաւ՝ դարձուցանեն զեղբայրն ի մեծէ կարակմէ»]։

2. Քարթլիս-Ցխովրեբա, տե՛ս Լ. Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Ա, Երևան, 1934, էջ 158—160՝

«Ապա հայոց թագավոր Արտաշեսն (Արտաշանն) իր ամբողջ զորքով և նրա սպարապետ Սմբատ Բյուրատյանը շարժվեցին դեպի Քարթլի։ Իսկ վրացիներն ամրացրին բերդերն ու քաղաքները և, բերելով զորք Օսեթից, լցրին բերդերն ու քաղաքները։ Եկան հայերն ու նստեցին Մցխեթում, և կռվում էին հինգ ամիս և ամենայն օր տեղի ուներ կտրիճների ընդհարում։ Ապա վրացիներն ու օսերը, նեղ տեղն ընկնելով՝ խնդրեցին հաշտություն, սրյուն և հատուցումն չփնտռելով։ Հայոց թագավորն ունկնդիր եղավ նրանց աղերսին, և դրվեց ուխտ և երդումն. և հայոց թագավորը, սրբրկացնելով վրացիներին ու օսերին՝ գնաց։

Անցավ մի քանի տարի և հայերից ավերված Քարթլին վերաշինվեց։ Այդ ժամանակ հայերը զբաղված էին, քանի որ պատերազմ սկսեցին պարսիկների և հույների հետ։ Ապա վրացիները և օսերը բարեպատեհ ժամանակ գտան և սկսեցին ճնշել հայերին, քանի որ հայոց ամբողջ զորքը և թագավորի երկու որդին Սմբատի հետ միասին պատերազմում էին [ընդդեմ] պարսից։ Իսկ երբ վրացիներն ու օսերը սաստկացրին պայքարը հայերի հետ, այլև նրանց տառապանքը՝ այն ժամանակ Արտաշես թագավորը զորք ժողովեց [նրանցից], որոնք տանն էին մնացել և, տալով իր Զարեհ որդուն՝ ուղարկեց ընդդեմ վրաց։ Իսկ վրացիներն ու օսերը, ժողովվելով՝ դիմեցին Ջավախքի կողմը, հաղթեցին և փախուստի մատնեցին հայոց թագավորի որդի Զարեհին և խորտակեցին նրա ամբողջ զորքը, որին հետամուտ եղան մինչև Հայքի (Սոմխեթի) սահմանները. և բանտարկեցին թագավորազն Զարեհին լճի ափին, որ Ցել է կոչվում և տո բերին։ Իսկ օսերն ուզում էին Զարեհին սպանել իրենց թագավորների արյան փոխարեն, սակայն վրացիները կենդանի թողին, որպեսզի իրենց սահմաններն [ետ] առնեն, և կալանավորեցին Դարիալանի բերդում։ Հայերը չկարողացան նրան փնտրել, քանի որ զբաղված էին Պարսից [պատերազմով]։

Ապա երրորդ տարին եկավ Սմբատ Բյուրատյանը, և թագավորի որդիները, Արտավազդն ու Տիգրանը, հայկական ամբողջ զորքով։ Ապա Վրաց (Քարթլիի) թագավորները հրամայեցին իրենց ամբողջ երկրներին փախչել դեպի բերդերն ու քաղաքները, և լեռնաստանցիները (մթիուլները) ամրացրին բերդերն ու քաղաքները։ Իսկ հայերը եկան և կանգ առան Թռեղքում։ Հանդես եկան նրանց մեջ դեսպանները և հաշտվեցին։ Վրացիները վերադարձրին թագավորի որդուն, որը կալանավորված էր, և օգնություն խոստացան այսպես ասելով. «Եթե երևան գա որևէ թշնամի և պատերազմի ձեզ հետ, մենք երկուքյան թագավորներս անձամբ և մեր զորքով ձեզ հետ կլինենք և կօգնենք, իսկ եթե որևէ մեկի դեմ պատերազմեք՝ մենք տասը հազար սպառազեններով կօգնենք ձեզ։ Եվ վրացական այս քաղաքում կկտրենք դրամ Արտաշես թագավորի պատկերով»։ Այս պատճառով հայերը վերադարձրին Վրաց (Քարթլիի) սահմանները՝ Ծունդա քաղաքը և Դեմոթի բերդը, Ջավախքն ու Արդահանը։ Եվ այնուհետև համերաշխ էին հայերը և վրացիները և օսերը, և երեք [ժողովուրդն] էլ միասին կռվում էին թշնամու դեմ»[1]։

Մարկվարտը ենթադրաբար այս վկայությունների մեջ հիշատակված Զարեհին է վերագրում Զարիշատ քաղաքի և Զարեհավանի շինությունը։ Բայց նա, մեջ բերելով Խորենացու վերոհիշյալ վկայությունը՝ կարծում է սխալմամբ, որ նրա մեջ հիշատակված Զարեհը կամ Տիգրան Բ-ի մեծ որդին է, որը Վալերիուս Մաքսիմուսի մոտ (IX, 11) անվանված է Sariaster, և կամ ժամանակակից է Տրդատ Ա-ին[2]։ Ավելի հավանական է ըստ իս, որ Զարիշատը և Զարեհավանը ևս, ինչպես և Արշամաշատը, Կարկաթիոկերտը, Երվանդաշատը և Արտաշատը՝ կարող են հիմնված լինել Առաջավոր Ասիայի տնտեսական մեծ հեղաշրջման ժամանակ III—II դարերում մեր թվականությունից առաջ, և նրանց հիմնադիրը, ըստ երևույթին, Արտավազդի և Տիրանի եղբայր Զարեհն էր՝ Արտաշես Ա-ի որդին։

---

[1] Համեմատե նաև «Համառօտ պատմութիւն վրաց ընծայեալ Ջուանշէրի պատմիչի», Վենետիկ, 1884, էջ 33—34 (Գլ. Ե)։ Քարթլիս-Ցխովրեբայի վկայությունները, որ կարոտ են դեռ լուրջ քննության, թվում է, որ Զարեհին վերաբերող մասում կարող են լինել արժանահավատ։

[2] Տե՛ս Markwart, Die Genealogie der Bagratiden, Caucasica, Fasc. 6, 2 Teil, Leibzig, 1930, էջ 21—23։

Արտաշես Ա-ի հաջորդների ժամանակ խիստ զորեղացավ Պարթևական թագավորությունը։ Պարթևները, օգտվելով Սելևկյանների ներքին երկպառակություններից՝ Միհրդատ Ա-ի թագավորության ընթացքում (171—138 մեր թվ. առաջ) նվաճեցին սրանց երկրները Հնդկական Կովկասից մինչև հյուսիսային Միջագետքը և Եփրատ գետը։ Նրանց աշխարհակալական ծավալումը շարունակվեց նաև Միհրդատ Բ-ի ժամանակ (123—88 մեր թվ. առաջ)։

Յուստինոսի կարևոր մի վկայությունից հայտնի է, որ Պարթևական մեծ պետությունը, որը նվաճել էր հետզհետե Հայաստանի սահմանակից երկրները՝ պատերազմ էր մղել նաև Հայոց Արտավազդ թագավորի դեմ։ Այս Արտավազդը, հավանորեն, այն Արտավազդն է, որը հայկական վեպի մեջ հիշատակված է իբրև որդի և հաջորդ Արտաշես Ա-ի[1]։

Վերև մատնանշված վկայության մեջ Յուստինոսը հաղորդում է, որ

«Արտավանին հաջորդեց նրա որդին՝ Միհրդատը, որն իր գործերի համար կոչվեց Մեծ։ ...Սա մեծ քաջությամբ վարեց հարևանների հետ բազմաթիվ պատերազմներ և Պարթևական թագավորությանը միացրեց շատ ժողովուրդներ։ Նույնպես և սկյութացիների հետ նա մի քանի անգամ հաջողությամբ պատերազմեց և վրեժխնդիր եղավ նախորդների վիրավորանքների համար։ Վերջը կռվեց արմենների թագավոր Արտավազդի հետ»[2]։

Ո՛չ միայն այս, այլև մատենագրական և ուրիշ վկայություններից հայտնի է, որ հենց Միհրդատ Բ Մեծի ժամանակ (123—88 մեր թվ. առաջ) պարթևները կարողացել էին վերջնականապես նվաճել Միջագետքի երկրները և Ատրպատականը։ Կարելի է, ուրեմն, վստահորեն ենթադրել, որ նրա արշավանքն Արտավազդի դեմ տեղի էր ունեցել Հայաստանի հարևան երկրների նվաճումից հետո, ըստ երևույթին, Ատրպատականի կողմից և, ինչպես ենթադրել է Մարկվարտը, դաշնակից ու վասալ Ատրպատականի թագավորի մասնակցությամբ[3]։

Հայ-պարթևական այս պատերազմի ժամանակ, թեև պարթևներին չէր հաջողվել նվաճել Հայաստանը, սակայն, հավանո-

---

[1] Տե՛ս Խորենացի, I գլ. Լ և II, գլ. Ծ—ԾԳ, Ծե, ԿԱ և ԿԲ։
[2] Տե՛ս *Just*., Ebit. XLII, 2, 3—6։
[3] Տե՛ս *Markwart*, Eranschahr, էջ 109։

*րեն, նրանք պարտության էին մատնել հայերին և, ինչպես վկայում են Յուստինոսը և Ստրաբոնը, պատանդ էին վերցրել Տիգրան Բ-ին*[1]։

*Որ Հայաստանը նվաճված չէ եղել Միհրդատ Մեծի արշավանքի ժամանակ՝ այդ երևում է դարձյալ Ստրաբոնի հետևյալ վկայությունից։*

*«Պարթևները,—ասում է Ստրաբոնը,—տիրեցին մեդացիների և բաբելոնացիների երկրներին, բայց ո՛չ Արմենիային։ Թեև հարձակումներ հաճախ տեղի ունեցան, սակայն երկիրն ուժով չնվաճվեց։ Ընդհակառակը, Տիգրանը զորեղ կերպով դիմադրեց ու հաղթեց նրանց, ինչպես մենք ասացինք Արմենիայի մասում»*[2]։

*Պատանդ վերցված Տիգրանի մասին կարևոր են Ապպիանոսի և Ստրաբոնի վկայությունները։ Ապպիանոսի ասելով՝ Տիգրան Բ-ը որդին էր ո՛չ թե Արտավազդի, այլ Տիգրանի*[3]։ *Իսկ Ստրաբոնը, խոսելով Արտաշեսի և Զարեհի մասին՝ վկայում է, որ Տիգրան Բ-ը Արտաշես Ա-ի սերնդից էր*[4]։

*Պատմական ու բանասիրական նորագույն երկերում Արտաշես Ա-ի հաջորդների և Արտավազդի ու Տիգրան Բ-ի ազգակցության մասին հայտնվել են հակասական կարծիքներ։ Այդ կարծիքներից հավանական է ըստ իս Ռեյնաքի ենթադրությունը, որը Տիգրան Բ-ին համարում է համաձայն Ապպիանոսի վկայության Տիգրան Ա-ի որդին, իսկ Արտավազդին՝ եղբայր այս վերջինի*[5]։

*Պատմագետների ու բանասերների ուշադրությունից վրիպել է, որ Ապպիանոսի հաղորդած տեղեկությունը հաստատվում է Խորենացու պատմության ուշադիր քննությամբ*[6]։ *Խորենացու մոտ, ինչպես վերև ասացինք, Արտաշեսյան տոհմի առաջին թագավորների մասին պահպանվել են ուշագրավ պատմական հիշողություններ, որոնք հայտնի են եղել նրան վիպասանքից կամ հին զրույցներից։ Հենվելով այդ զրույցների վրա՝ Խորենա-*

---

1 *Տե՛ս Justin*, XXXVIII, 3, 1 *և* Strado, XI. *14, 15 (532)*։
2 *Տե՛ս Strapo*, XVI, *1, 19 (745)*.
3 *Տե՛ս App.*, Syr., *48*։
4 *Տե՛ս Strapo* XI, *14, 15 (532)*։
5 *Reinach*, Mithridate Eupator, *էջ 104 և Markwart*, Eranschahr, *էջ 173*։
6 *Խորենացու վկայություններից հիշտ հետևություն է արել Սանտալճյանը, տե՛ս* Histoire documentaire de l'Armenie, II, *էջ 441*:

ցին վկայում է, որ Արտաշեսի որդին ու հաջորդը, Արտավազդը, զավակ չէ ունեցել և որ Արտավազդից հետո Հայաստանում թագավորել է նրա եղբայրը, Տիրանը[1]։ Պատմահոր հաղորդած կարևոր այս տեղեկությունները, ինչպես տեսնում ենք, համապատասխանում են Ապպիանոսի վերոհիշյալ վկայության։

Կարող ենք ըստ իս, համաձայն այդ տեղեկությունների, հավանական համարել, որ Արտաշես Ա-ին հաջորդել էր նրա որդին, Արտավազդ Ա-ը, և ապա սրա եղբայրը՝ Տիգրան Ա-ը, որից հետո թագավորել էր այս վերջինի որդին՝ Տիգրան Բ-ը։

---

1 Տե՛ս Խորենացի, II, գլ. ԿԱ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՏԻԳՐԱՆ Բ-Ը ԵՎ ՀԱՅ ՊՈՆՏԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԸ

**1. Պատանդ Տիգրանի վերադարձը և գահակալությունը։—2. Ծոփքի միացումը Մեծ Հայաստանին։—3. Փոքր Հայքի միացումը Պոնտոսին։—4. Քաղաքական կացությունը Փոքր Ասիայում.— Հռոմը, Պոնտոսը և Կապպադովկիան առաջին դարի սկզբներում (մեր թվ. առաջ).—5. Կապպադովկիայի հարցը։—6. Տիգրանի և Միհրդատի դաշինքը։—7. Հայերի հարձակումները Կապպադովկիայի վրա.—Արիոբարզան Ա և Նիկոմեդես Գ —Յուստինոսի կասկածելի վկայությունը.— Եվրոպական պատմագետների անհամաձայն լուսաբանությունը այս ժամանակաշրջանի անցքերին։—8. Փոքր Հայքի մասնակցությունը Միհրդատյան առաջին պատերազմին.—Դարդանոսի բանավոր դաշինքը։—9. Հիշողություններ Միհրդատյան առաջին պատերազմի մասին Խորենացու երկերում։—10. Եղլադայից Հայաստան բերված հունական կուռքերը։**

*Մեծ Հայաստանի մասին, ինչպես ասացինք, մենք ունենք մանրամասն տեղեկություններ Տիգրան Բ-ից սկսած։*

*Տիգրան Բ-ը, որը պատանդ էր պարթևների մոտ՝ գահ էր բարձրացել 95 թվին (մեր թվ. առաջ)։ Գահակալության այս թվականը հայտնի է մեզ Պլուտարքոսի վկայությունից։ 70 թվին, երբ Ապպիոս Կլավդիոսը եկել էր նրա մոտ իբրև դեսպան՝ նա, ինչպես վկայում է Պլուտարքոսը[1], արդեն 25 տարի թագավորել էր։ Պատանդությունից ազատվելու և իր հայրենի թագավորությունը ստանալու համար նա, ինչպես վկայում է Ստրաբոնը[2], պարթևներին փրկանք էր տվել յոթանասուն հովիտներ, որոնք Մարկվարտի կարծիքով[3], այն շրջաններն էին, որ Ատրպատականի կողմերում գրավել էր Արտաշես Ա-ը։*

---

[1] Տե՛ս *Plut.*, Lucullus, 21, 7։

[2] *Strapo, XI*, 14, 15 (532)։

[3] Eranschahr, էջ 109։

Երբ Տիգրանն ազատվեց ու վերադարձավ իր հայրենի երկիրը՝ նա արքայական իր թագը կապեց, ինչպես վկայում է Ապպիանոսը[1], Հայաստանի այն վայրում, ուր ինքը հիմնել էր հետո Տիգրանակերտ քաղաքը։ Այս վկայությունից երևում է, որ հին Աղձնիքը, որի մեջ այժմյան Ֆարկինում որոշված է վերջերս հին Տիգրանակերտ քաղաքի տեղը՝ գտնվել է ո՛չ թե Ծոփքում, այլ Արտաշեսյան թագավորության մեջ՝ Մեծ Հայքում[2]։

Գահ բարձրանալուց հետո Տիգրան Բ-ի առաջին գործը եղավ հարևան Ծոփքի միացումն իր թագավորությանը։ Կապպադովկիան, որը հազիվ էր հռոմեացիների օգնությամբ պահպանում իր անվանական անկախությունը՝ անկարող եղավ պաշտպանել իր հին դաշնակցին ու բարեկամին։ Տիգրան Բ-ը հարձակվեց Ծոփքի վերջին թագավոր Արտանեսի վրա (94 մեր թվ. առաջ) և նրա երկիրը կցեց Մեծ Հայաստանին։

«Արտաշեսի սերնդից էր,—ասում է Ստրաբոնը,— Տիգրանը. նա իշխում էր այսպես կոչված բուն Արմենիայում, որը սահմանակից էր Մեդիային, Աղվանքին, Իբերիային մինչև Կողքիս և Սև ծովի մոտ գտնվող Կապպադովկիային։ Իսկ Զարեհի սերնդից էր Ծոփաց երկրի Արտանեսը, որն իշխում էր Արմենիայի հարավային և, գլխավորապես, արևմտյան մասերում։ Տիգրանը սրան հաղթեց և դառավ ինքը տեր բոլոր այդ երկրներին»[3]։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, Տիգրան Բ-ի իշխանության տակ միացան Մեծ Հայքը, Ծոփքը, որոնք Սելևկյանների ժամանակ առանձին ու ինքնիշխան երկրներ էին։ Արմենական երրորդ թագավորությունը, Փոքր Հայքը, որը Հայկական լեռնաշխարհի բնական սահմաններից դուրս էր գտնվում՝ Ծոփքի նվաճումից առաջ, դեռ երկրորդ դարի վերջերում, նվաճել ու միացրել էր իր թագավորությանը Միհրդատ Պոնտացին (111—63 մեր թվ. առ.)։

«Երբ զորեղացավ,—վկայում է Ստրաբոնը,—Միհրդատ Եվպատորը՝ նա տիրեց Կողքիսին և այն բոլոր երկրներին [Փոքր Հայքին, Խաղտիքին և Տիբարեններին], որ նրան հանձնել էր Անտիպատրոսը, Սիսիդի որդին»[4]։

---

[1] *App.* Mithrid., 6։
[2] *Markwart,* Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, էջ 169։
[3] Տե՛ս *Strabo*, XI, 14, 15 (532)։
[4] Տե՛ս *Strabo*, XII, 3, 28 (555)։

Ծոփքի միացումից հետո Տիգրան Բ-ի հզոր ու ընդարձակ թագավորությունը սահմանակից էր դառնում արևմուտքում բացի Պոնտոսից նաև Կապպադովկիային։ Հարավում և արևելքում Մեծ Հայաստանին հարևան ու սահմանակից էին պարթևների գերիշխանության տակ գտնվող մանր պետությունները՝ Օսրոենը, Կորդուքը, Ադիաբենը և Ատրպատականը, իսկ հյուսիսում՝ Աղվանքը և Իբերիան։

Տիգրան Բ-ի գահակալությունից դեռ առաջ Հռոմը, Հունաստանն ու Մակեդոնիան նվաճելուց հետո՝ 133 թվին ոտք էր դրել Փոքր Ասիա որպես նվաճող և հաստատել էր իր իշխանությունը, Պերգամոնում, որը դառնալով հռոմեական նահանգ՝ անվանվում էր այնուհետև «պրովինցիա Ասիա»։

Հռոմի այս մուտքն Ասիա սկիզբն էր այն մեծ ավերածության ու աղետի, որն իր հետևանքներով ահավոր ու կործանարար եղավ հելլենիստական Արևելքի տնտեսական ու կուլտուրական հետագա զարգացման համար։

Ինչպես վերև տեսանք, Հելլենական աշխարհակալները ևս նվաճել էին Արևելքը շահագործման նպատակով, սակայն նրանք, ինչպես ասացինք, հիմնելով այստեղ հարյուրավոր քաղաքներ ու գաղութներ և ստեղծելով բարեհաջող պայմաններ առևտրի, արհեստների և արդյունագործության աճման ու զարգացման համար՝ մեծապես նպաստել էին նաև առաջադիմության։ Մինչդեռ հռոմեական հանրապետության տիրապետությունն առաջին դարում (մեր թվ. առ.) աղետալի մի դարաշրջան եղավ արևելյան երկրների տնտեսական ու կուլտուրական հետադիմության, անհաշիվ հարստությունների և անթիվ ստրուկների փոխադրման Արևելքից Արևմուտք, և, ընդհանրապես, տեղական հելլենիստական պետությունների ու քաղաքների կողոպտման ու կործանման։

Դառնալով տեր ու տնօրեն պրովինցիա Ասիայի՝ Հռոմը, որի հլու ու հնազանդ դաշնակիցները դառան գալատները և Բիթանիայի ու Կապպադովկիայի թագավորությունները՝ ձգտում էր իր տիրապետությունը տարածել դեպի Արևելք։ Եվ շուտով սկսվեց Արևելքում Հռոմի ու Պոնտոսի երկարատև ու համառ պայքարը, որին մասնակից եղավ նաև Մեծ Հայաստանը։

Պոնտական թագավորությունը գտնվում էր Սև ծովի հարավային կողմում՝ Բիթանիայի, Գալատիայի, Կապպադովկիայի և Փոքր Հայքի միջև։ Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ այս երկիրը, որի մեջ ապրում էին սեմական, արիա-

կան և բնիկ փոքրասիական ցեղեր, մեծ չափով ենթարկվել էր իրանական կենցաղի ու կուլտուրայի ազդեցության։ Նրա ծովափնյա շրջաններում՝ Սինոպում, Ամիսոսում, Տրապիզոնում և մյուս քաղաքներում՝ հաստատվել էին դեռ Աքեմենյանների տիրապետությունից առաջ հունական գաղութներ, որոնք զորեղ նեցուկներ էին հելլենական քաղաքակրթության ու լեզվի տարածման։ Պարսկական ազնվականությունը, որը գրավել էր այստեղ հողեր ու կալվածներ, կազմում էր զգալի մասը իշխող դասի։ Պարսկական ազնվական ամենաբարձր տոհմից էր նաև Միհրդատ Ա-ը, որը, ինչպես տեսանք, հիմնադիր է համարվում Պոնտական թագավորության։

Այս թագավորությունն իր հզորության ու փառքի գագաթնակետին հասավ առաջին դարի սկզբներում (մեր թվ. առաջ) Միհրդատ Եվպատորի թագավորության ընթացքում (111—63 թ.), որին անվանում են նաև Միհրդատ Մեծ։ Պոնտոսի այս հզոր թագավորը կարճ ժամանակում նվաճել էր Կողքիսը մինչև Դիոսկուրիա և այժմյան Սուրամը, նաև այժմյան հարավային Ռուսաստանում՝ Տավրիկյան Խերսոնեսն ու նրա հարևան սկյութական երկրները, և Պոնտոսի հարավ-արևելքում, ինչպես ասացինք, Փոքր Հայքը, որը նվաճումից առաջ առանձին թագավորություն էր։ Այս մեծ նվաճումներից հետո Պոնտոսը մեծագույն պետությունն էր դառել Փոքր Ասիայում և ամենահզոր հակառակորդը Հռոմի։

Պոնտոսի և Փոքր Հայքի հարավում գտնվում էր Կապպադովկիան, որը սահմանակից էր հայկական հին Ծոփքին և տարածվում էր հարավում մինչև Կիլիկիա, արևմուտքում՝ մինչև Լիկաոնիա և հյուսիս-արևմուտքում՝ մինչև Գալատիա։ Այստեղ ևս, ինչպես վերև տեսանք, Սելևկյան տիրապետության սկզբնական շրջանում կազմակերպվել էր առանձին թագավորություն, որի հիմնադիրն էր Արիարաթ Բ-ը։ Կապպադովկիայում ևս, ինչպես և Պոնտոսում, իշխող դասակարգը բաղկացած էր, մեծ մասամբ, կալվածատեր պարսիկ ազնվականներից, և երկիրն Աքեմենյան տիրապետության ժամանակ ենթարկվել էր իրանական պետականության և իրանական կուլտուրայի ազդեցության։ Սակայն նաև այստեղ հելլենականությունը հաստատվել էր քաղաքներում, և նրա ազդեցությունը զորեղ էր, գլխավորապես, ժողովրդի բարձր խավերում։

Պոնտոսը, որն Աքեմենյանների ժամանակ միացած էր այս

քում Կապպադովկիայի հետ, ուներ այս վերջինի հետ կուլտուրական ու կրոնական և մասամբ նաև ցեղային որոշ կապեր։ Պոնտոսի համար հարևան Կապպադովկիան ուներ, բացի այդ, ստրատեգիական մեծ նշանակություն, որովհետև սրա հյուսիսարևելյան ընդարձակ սահմանները տարածվում էին մինչև Փոքր Հայքը և գրեթե մինչև Պոնտոսի թիկունքը։ Հասկանալի է, ուրեմն, որ Միհրդատ Եվպատորը, որն անչափ ընդարձակել էր իր թագավորության սահմանները՝ աշխատելու էր ցեղակից ու կրոնակից այս երկիրը միացնել իր մեծ թագավորությանը։

Կապպադովկիայի փաստական նվաճումը Միհրդատը հաջողեցրել էր 99 թվին (մեր թվ. առաջ) և թագավոր դրել այստեղ իր ութնամյա որդուն՝ Արիարաթ Թ-ին։ Սակայն շուտով, 95 թվին, հռոմեական ծերակույտի կարգադրությամբ պոնտական զորքերը հարկադրված եղան մաքրել այդ երկիրը, և Կապպադովկիայի թագավոր ընտրվեց Արիոբարզան Ա Հռոմեասերը։

Հռոմեացիների հենց այս բարեկամի թագավորության ժամանակ Տիգրան Բ-ը գրավել էր 94 թվին Ծոփքը, որը, ինչպես տեսցինք, սահմանակից էր Կապպադովկիային և հին դաշնակիցն էր ու բարեկամը Արիարաթների թագավորության։ Իբրև նախկին պաշտպանն ու հովանավորը Ծոփաց Զարեհյան թագավորության՝ Կապպադովկիան, այժմ, բնականաբար, վտանգավոր հարևան էր համարվելու Մեծ Հայաստանի։ Հասկանալի է նույնպես, որ Արիոբարզան Ա-ը, հռոմեական քաղաքականության հլու և հնազանդ սպասավորը, խոչընդոտ էր դառնում և պոնտական քաղաքականության վերոհիշյալ ձգտումների իրագործման, որոնցից չէր կարող հրաժարվել Միհրդատ Եվպատորը։

Ինչպես տեսնում ենք, առաջին դարի սկզբներին Կապպադովկիան ընդհանուր թշնամի էին համարելու և Տիգրանը և Միհրդատը, և միանգամայն բնական է, որ նրանք աշխատեցին միանալ իրար հետ ընդդեմ հարևան այդ թագավորության։ Բացի այդ, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Ռեյնաքը, սրանց բարեկամությունն ունեցել է, հավանորեն, նաև տնտեսական դրդապատճառներ։ Ռեյնաքի կարծիքով՝[1] պոնտական թագավորների և հատկապես Միհրդատ Եվպատորի բարեկամական քաղաքականությունը Հայաստանի, Ատրպատականի և Վրաստանի հանդեպ բացատրվում է պոնտական մեծ առևտրի շահերով։

[1] Տե՛ս *Reinach*, Mithridate Eupator, էջ 78 և 234։

Այս երկրների բարեկամությունը խոշոր նշանակություն ուներ Պոնտոսի համար, որովհետև նրա մեծ նավահանգիստները հավաքատեղեր էին և հանգուցակետեր համաշխարհային մեծ առևտրի և միջազգային տարանցիկ ճանապարհների, որոնք գալիս էին Հեռավոր Արևելքից ու Միջին Ասիայից և Եկբատանայի ու Արտաշատի վրայով գնում էին, գլխավորապես, պոնտական Ամիսոս և Սինոպ քաղաքները։

Բարեկամական այս հարաբերությունները, որ գոյություն ունեին Պոնտոսի և Մեծ Հայաստանի միջև, Տիգրան Բ-ի ժամանակ դառել էին ավելի սերտ ու մտերիմ։ Աչքի առաջ ունենալով իրենց երկրների կենսական շահերը՝ Տիգրան Բ-ը և Միհրդատ Եվպատորը 95 կամ 94 թվին կնքեցին հատուկ դաշնադրություն, որի նպատակն էր Տիգրան Բ-ի ռազմական աջակցությունը Միհրդատին ընդդեմ հարևան Կապպադովկիայի։ Կնքված դաշինքի համաձայն, որն ամրապնդել էին Տիգրանի ամուսնությամբ Միհրդատի աղջկա՝ Կլեոպատրայի հետ՝ երկու թագավորները պայմանավորվել էին, որ նվաճված քաղաքներն ու շրջանները պատկանելու են Միհրդատին, իսկ գերիներն ու շարժական գույքը՝ Տիգրանին։

93 թվին (մեր թվ. առաջ), Ծոփքի միացումից անմիջապես հետո, Տիգրան Բ-ը Միհրդատի հորդորմամբ հարձակվեց Կապպադովկիայի վրա, գրավեց ամբողջ երկիրը, և Արիոբարզան Ա-ը փախավ Հռոմ։ Վերջինիս փոխարեն, նույն 93 թվին, վերահաստատվեց այստեղ իբրև թագավոր Միհրդատի փոքրահասակ որդին՝ Արիարաթը, որի խնամակալն էր Գորդիոսը։

Շուտով հռոմեական ծերակույտի հրամանով, ինչպես հայտնի է Պլուտարքոսից[1], Կապպադովկիա եկավ Կիլիկիայի փոխպրետորը՝ Սուլլան։ Սա պարտության մատնեց Գորդիոսի և Տիգրանի զորքերը և նորից հաստատեց Կապպադովկիայի գահի վրա դաշնակից Արիոբարզան Ա-ին։ Երբ Սուլլան գտնվում էր Եփրատ գետի մոտ՝ նրա մոտ եկել էր այնտեղ (92 մեր թվ. առ.) պարթևների թագավոր Միհրդատ Բ-ի դեսպանը, Օրոբազոսը, որը, ինչպես հաղորդում են աղբյուրները[2], բարեկամական բանակցություններ էր վարել Սուլլայի հետ և առաջարկել էր, որ Եփրատ գետը լինի սահման երկու պետությունների միջև։

91 թվին՝ Սուլլայի հեռանալուց անմիջապես հետո՝ Միթրաասը և Բագոասը, որոնք, ըստ երևույթին, Տիգրան Բ-ի զո-

---

[1] Տե՛ս Sulla, 5։

[2] *Plut.*, Sulla, 5, *Appianus*, Mithrid., 57 և *Florus* 70։

րավարներն էին՝ նորից հարձակվեցին ու գրավեցին Կապադով-կիան։ Արիոբարզանն այս անգամ ևս փախավ Հռոմ, և նրա գահը նորից տրվեց Միհրդատի Արիարաթ որդուն[1]։

Նույն 91 թվին, Նիկոմեդես Բ-ի մահից հետո, երկպառակություններ էին ծագել նաև Բիթանիայում։ Հռոմն այստեղ թագավոր էր հաստատել Նիկոմեդոս Բ-ի մեծ որդուն՝ Նիկոմեդես Գ-ին։ Սակայն նրա կրտսեր որդին, Սոկրատեսը, ապավինելով Միհրդատ Եվպատորին և ստանալով նրանից պոնտական զորքեր՝ կարողացավ ինքը գրավել Բիթանիան, իհարկե, առանց Հռոմի համաձայնության։

Երկու հալածված թագավորները՝ Արիոբարզան Ա-ը և Նիկոմեդես Գ-ը, եկան Հռոմ և օգնություն խնդրեցին հռոմայեցիներից։ Հռոմեական ծերակույտն այս անգամ ուղարկեց Արևելք Մանիոս Ակվիլիոսին և Մանլիոս Մալթինոսին, որոնք 89 թվին, առանց կռվի ու որևէ հակառակության, վերահաստատեցին նրանց իրենց թագավորություններում։

Եվրոպական պատմագետները, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ «Տիգրան Բ-ը և Հռոմը» աշխատության մեջ[2], հավատ են ընծայել Յուստինոսի խառնաշփոթ ու կասկածելի վկայությանը[3] և Տիգրան Բ-ի մասնակցությանը 93—84 թվերի անցքերին տվել են միանգամայն վիճելի ու անհավաստի լուսաբանություն։ Բավականաչափ հիմնավորված չէ ըստ իս նախ և առաջ ընդհանրացած այն կարծիքը, որ իբր թե Տիգրանը հլու և անխոս մի գործիք է եղել Միհրդատ Եվպատորի քաղաքական նպատակների իրագործման։ Տիգրանի մասնակցությունը 93 թվի Կապադովկիայի նվաճմանը, ինչպես վերև ասացինք, բացատրվում է պարզապես նրանով, որ Ծոփքի միացումից հետո այդ երկիրը վտանգավոր հարևան էր դառել Մեծ Հայաստանի արևմտյան սահմանում։ Դժվար չէ նաև կռահել, որ 91 թվի արշավանքը նույնպես կարևոր նշանակություն ուներ Հայաստանի համար, որովհետև պարթևների բարեկամական բանակցություններին Սուլլայի հետ (92 թվ.) մասնակցել էր, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը[4], նաև Կապպադովկիայի թագավոր Արիոբարզան Ա Հռոմեասերը։ Իսկ պարթևների, Հռոմի և Կապպա-

---

[1] *Appianus*, Mithrid., 10։

[2] Տե՛ս էջ 31—36 (տե՛ս նաև սույն հատորում, էջ 431—446 խմբ.)։

[3] Տե՛ս *Just.*, XXXVIII, 3, 1—5։

[4] Sylla, 5։

դովկիայի բարեկամական համաձայնությունը չէր կարող, իհարկե, ցանկալի լինել Տիգրան Բ-ին։ Եվ հասկանալի է, որ նա, հանձնելով Կապպադովկիայի թագավորությունն Արիարաթին և Գորդիոսին՝ ապահովում էր իր թիկունքն արևմուտքում և ամրացնում էր իր քաղաքական դիրքերը հայ-պարթևական կռիվների համար։

Մի մեծ թյուրիմացություն է, բացի այդ, Մոմզենի, Մորգանի և ուրիշների կարծիքը[1], որ իբր թե Տիգրան Բ-ի և Միհրդատ Եվպատորի դաշնադրությունը վերաբերել է ո՛չ միայն Կապպադովկիայի, այլև հռոմեական-պոնտական 88—84 թվերի մեծ պատերազմին, որ նախապատրաստում էին վաղօրոք Միհրդատը և Տիգրանը։ Իրապես, իննսնական թվականների վերջերում (մեր թվ․առաջ) ո՛չ Միհրդատը և ո՛չ էլ Տիգրանը չէին մտածում պատերազմել հռոմեացիների դեմ։ Միանգամայն անհավանական է, անշուշտ, որ հայ-պարթևական կռիվներից առաջ Տիգրան Բ-ը համաձայնած լիներ անմիտ ու արկածախնդրական մեծ պատերազմ սկսելու ընդդեմ հզոր Հռոմի։ Վերոհիշյալ դաշինքով նա պարտավորություններ էր հանձն առել ո՛չ թե հռոմեական-պոնտական պատերազմի, այլ միմիայն Կապպադովկիայի նկատմամբ։

Ենթադրելով որ հայ-պոնտական դաշինքը կնքված է եղել ընդդեմ Հռոմի՝ եվրոպական պատմագետներից ոմանք, օրինակ, Շպիգելը և Մոմզենը՝ Միհրդատյան առաջին պատերազմին (88—84 մեր թվ. ա.) սխալմամբ մասնակից են դարձրել նաև Տիգրանյան Մեծ Հայաստանը[2]։ Մոմզենը նմանապես ենթադրում է, որ իբր թե պատերազմից առաջ Միհրդատը ստացել էր Տիգրանից օժանդակ զորաբանակ[3]։

Այս ենթադրությունը ևս, ինչպես մատնացույց է արել իր հոդվածներից մեկում Ռեյնաքը՝ ճիշտ չէ։

Արմենների զորագունդը, որը մասնակցել էր այս պատերազմին և բաղկացած էր 10.000 հոգուց՝ հիշատակված է, իրոք, Ապպիանոսի մոտ[4]։

Վերջինս բացի Միհրդատի բուն զորքից՝ առանձնապես մատնանշում է նաև Փոքր Հայքի օգնական 10.000 հեծելազորը

---

[1] Տե՛ս *Моммсен,* Римская история. Т. II, М., 1887, էջ 286. *J. Morgan,* Histoire du peudle arménien, Paris. 1919, էջ 70։

[2] Տե՛ս *F. Spiegel* Eranische Alterthumskunde, Leipzig, 1878 Bd. III էջ 92 և *Моммсен,* Римская история, т. II, М., 1887, էջ 286 և 287։

[3] Տե՛ս Revue des études grecques, II, էջ 384։

[4] *App.,* Mithrid., 17։

(σο μμαχικά)։ Այս այրուձին, ինչպես հայտնի է աղբյուրների վկայություններից՝ մասնակցել էր Միհրդատի որդու՝ Արիարաթի և, հավանորեն, Նեմանես կամ Նայմանես արմեն զորավարի առաջնորդությամբ հաղթական երկու մեծ կռիվներին Ամնիաս գետի և Պրոտոպաքիոնի մոտ։ Բայց այս զորքը ո՛չ թե Տիգրանի ուղարկած օժանդակ զորաբանակն էր, այլ հեծելազունդն էր Փոքր Հայքի, որն այդ ժամանակ, հավանորեն, միացված էր Արիարաթի Կապպադովկիայի թագավորությանը[1]։

88 թվին Միհրդատը ամենակարճ ժամանակում նվաճեց ամբողջ գրեթե Փոքր Ասիան։ Կեղեքված փոքրասիական բնակչությունն ընդունում էր նրան գրկաբաց և պատվում էր նրան՝ իբրև ազատարարի։ Նրան համարում էին Աղեքսանդր Մակեդոնացու նման հելլենական-ասիական մի նոր աշխարհակալության հիմնադիր։

88 թվի վերջում պոնտական զորքերը, Միհրդատի որդու՝ Արիարաթի առաջնորդությամբ, անցան Եվրոպա և գրավեցին Թրակիան ու Մակեդոնիայի մի մասը։ Այս Արիարաթի հետ, որը Կապպադովկիայի և, ըստ երևույթին, նաև Փոքր Հայքի թագավորն էր՝ այստեղ ևս կռիվներին մասնակցել էր արմենական վերոհիշյալ հեծելազորը։

Միհրդատյան առաջին պատերազմը, ինչպես հայտնի է, վերջացավ Սուլլայի հաղթական հակահարձակումներից հետո և 84 թվին համաձայն Դարդանոսում ընդունված բանավոր դաշինքի պայմաններին Միհրդատը հրաժարվեց իր բոլոր նվաճումներից և պարտավորվեց վճարել Սուլլային 2000 տաղանդ ռազմատուգանք և հանձնել նրան 70 կամ 80 ռազմանավ։

Վերոհիշյալ պատմագետները, ենթադրած լինելով որ Տիգրան Բ-ը մասնակցած է եղել այս պատերազմին՝ անհասկանալի են համարում և տարօրինակ, որ Դարդանոսի դաշնադրության մեջ չէ հիշատակված Մեծ Հայաստանը։ Նրանց այս դիտողությունը դարձյալ թյուրիմացության արդյունք է։ Տիգրանը, ինչպես վերև տեսանք, չէր մասնակցել և պարտավորություններ չէր ստանձնել մասնակցելու այս պատերազմին, ուստի և միանգամայն հասկանալի է, որ հռոմայեցիները հիմք չունեին մասնակից դարձնելու նրան Դարդանոսի դաշնադրությանը։

Ուշագրավ է ու հետաքրքիր, որ այս պատերազմի մասին աղոտ հիշողություններ պահպանված են Խորենացու պատմու-

---

[1] Տե՛ս *Reinach*, Mithridate Eupator, էջ 122, ծան. 1։

*թյան և աշխարհագրության մեջ։ Կարևոր այդ վկայությունները հարկ եմ համարում մեջ բերել ընդարձակ բովանդակությամբ։*

1. *Խորենացի, II, գլ. ԺԲ, էջ 123 (Տփղիս, 1913)՝*

*«Բայց Արտաշեսը, նվաճելով երկու ծովերի միջև եղած ցամաքը՝ լցնում է օվկիանոսը նավերի բազմությամբ, կամենալով իրեն ծառայեցնել բոլոր Արևմուտքը։ Եվ որովհետև Հռոմում մեծ խռովություն ու շփոթություն կար՝ ոչ ոք նրան ուժեղ դիմադրություն ցույց չտվեց։ Բայց ես չեմ կարող ճիշտ ասել, թե ինչ պատճառով անհագին աղմուկ ու շփոթություն էր ծագել, և զորքերի բազմությունը իրար սկսել էին կոտորել։ Իսկ Արտաշեսը փախչելիս մեռնում է, ինչպես ասում են՝ իր զորքերից, թագավորելով քսան և հինգ տարի։*

*Եվ նա Եղլադայում, վերցնելով Դիոսի, Արտեմիդեի, Աթենասի, Հեփեստոսի և Ափրոդիտեի արձանները՝ ուղարկում է Հայաստան. և բերողները դեռ մեր երկրի ներսերը չհասած՝ լսում են Արտաշեսի մահվան բոթը և արձանները փախցնում տանում են Անի ամրոցը։ Իսկ քուրմերը, արձանների հետևից գնալով՝ մնում են նրանց մոտ»։*

*[«Բայց Արտաշիսի նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցունց՝ լնու զՈվկիանոս բազմութեամբ նաւաց, ծառայեցուցանել կամելով զբոլոր արևմուտս։ Քանզի մեծ յոյզք խռովութեանց եղեալ ի Հռովմ՝ ոչ ոք ընդդիմանայ նմա հզօրապէս։ Այլ ո՛չ գիտեմ ասել յո՛րպիսի աղմանէ, անհագին խմն աղմուկ լեալ շփոթից և բազմութեան զօրացն զմիմեանս կոտորեալ. իսկ Արտաշէս փախուցեալ մեռանի, որպէս ասեն՝ յիւրոց զօրացն, թագաւորեալ ամս քսան և հինգ։*

*Բայց և յԵղլադայ առեալ պատկերս զԴիոսի, զԱրտեմիդեայ, զԱթենայ, զՀեփեստու, զԱփրոդիտեայ՝ տայ բերել ի Հայս. որք ոչ ժամանեալ միջամուխ լինել յաշխարհս՝ լսեն զբօթ մահուանն Արտաշիսի. և փախուցեալ ընկենուն զպատկերսն յամրոցն յԱնի. և քուրմք գնացին զհետ լինելով, դադարեն առ նոսա»]։*

2. *Խորենացի, II, գլ. ԺԳ, էջ 124՝*

*«Եւ նախքան Ասիա հասնելը՝ Ատտիկեի դղյակում նա [Արտաշեսը] հուշակվեց»։*

*[«և յառաջ քան յԱսիայ հասանելն՝ յԱտտիկէ դղեկին քարոզեցաւ»]։*

3. Խորենացի, «Աշխարհացոյց», հրտր. Սուքրյանի, Վենետիկ, 1881, էջ 17՝

«Եվբեան մեծ կղզի է, և Ատալանտը փոքրիկ կղզյակ է մեջտեղում. սրա մասին ասում են, որ Հայոց արքա Արտաշեսի զորքերն էին գտել, որպեսզի չուշանան պարեն հայթայթող նավերը, քանի դեռ պաշարված էր դղյակը՝ Զարմանալին. որովհետև ջրերն այնտեղ առանց պատճառի այս ու այն կողմն էին հոսում, և ասում են, որ Արտաշեսը այնտեղ է մեռել»։

[«Եւբիու մեծ կղզի, և Ատալանդ փոքրիկ կղզեակ է մէջն. զոր ասեն գտեալ զօրացն Արտաշեսի Հայոց արքայի, զի մի՛ նաւք ուճկացն յամիցեն, մինչև պաշարեալն էր զդղեակըն Զարմանալի, զի ջուրք յանպատճառս այսր անդր հոսէին. և ասեն անդ մեռեալ Արտաշեսի»]։

Այս վկայությունների մեջ Զարմանալի դղյակը, ինչպես ուղիղ նկատել է Մարկվարտը՝[1] Աթենքն է, որը պաշարել էր Սուլլան, իսկ Եվբեա մեծ կղզին գրավել էին, իրապես, Միհրդատի զորքերը։ Միանգամայն ճիշտ է նմանապես, որ 88 թվին՝ Թրակիայի, Մակեդոնիայի և Ելլադայի նվաճման ժամանակ՝ Հռոմը չկարողացավ «հզորապէս ընդդիմանալ» պոնտական զորքերին ներքին մեծ խռովությունների պատճառով։

Սակայն Խորենացին, որին ծանոթ չեն եղել Միհրդատյան պատերազմներին վերաբերող հռոմեական և հունական աղբյուրները՝ չէ կարողացել, բնականաբար, տալ պատմական այս շրջանի ճշգրիտ պատմությունը և, շփոթելով դեպքերը, ենթադրել է ինքը, որ վերոհիշյալ անցքերը կարող էին տեղի ունեցած լինել Կրեսոս թագավորի և Արտաշես Աշխարհակալի ժամանակ։

Վերև մեջբերված առաջին հատվածի վերջում ուշագրավ է Խորենացու վկայությունը, որ Ելլադայից Հայաստան էին բերվել Դիոսի, Արտեմիդեի, Աթենասի, Հեփեստոսի և Ափրոդիտեի արձանները։ Այդ արձանների մասին ֆրանսիական գիտնական Ա. Կարիերը կարծիք էր հայտնել, որ «հունական կուռքերի Հայաստան մուծվելը ո՛չ թե իրական որևէ մի դեպքի է համապատաս-

[1] Eranschahr, Berlin, 1901, էջ 4։

[2] Տե՛ս «Հեթանոս Հայաստանի ուխտ մեհեաններն Ագաթանգեղոսի և Մ. Խորենացւոյ համեմատ», թարգմ. Հ. Վ. Տաշյանի, Վիեննա, 1899, էջ 39։

խանում, այլ արդյունք է Խորենացու խորհրդածող երևակայության»[2]։

Կարիերի այս պնդումը, ինձ թվում է, ավելի քան վիճելի է։ Ագաթանգեղոսի և Խորենացու վկայություններից մեզ հայտնի է, որ Դիոսի, Արտեմիդեի, Աթենասի և Հեփեստոսի արձանները գտնվում էին Անի-Կամախում, Երեզում, Թիլում և Բագարիճում, որոնք Միհրդատյան պատերազմի ժամանակ դեռ չէին կցվել Հայաստանին և պատկանում էին Միհրդատի պոնտական թագավորությանը[1]։ Միանգամայն հնարավոր է ըստ իս, որ այդ արձանները կարող էին բերված լինել, ինչպես վկայում է Խորենացին, Հունաստանից Միհրդատյան առաջին պատերազմի ժամանակ, որի մասին Խորենացու մոտ պահպանվել են նաև վերոհիշյալ պատմական հիշողությունները։

---

[1] Տե՛ս *Markwart*, Die Genealogie der Bagratiden, Caucasica, Fasc. 6, T 2 eil, էջ 63։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՇԽԱՐՀԱԿԱԼ ՄԵԾ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ

1. Պատերազմ պարթևների դեմ։—2. Յոթանասուն հովիտների և Աղբակի ու Աղիաբենի գրավումը.—Աղիաբենի արմենական բնակչությունը։—3. Տիգրանի արշավանքը դեպի Եկբատանա.—Աղիաբենի, Կորդուքի և Ատրպատականի թագավորները՝ վասալներ Տիգրան Բ-ի.—Միգդոնիայի և Օսրոյենի ենթարկումը Տիգրանի իշխանության.—թափառական արաբների գաղթեցումը Օսրոյեն.—Հայ-պարթևական կռիվների մոտավոր թվականները։—4. Ասորիքը, Դաշտային Կիլիկիայի և Կոմագենի նվաճումը։—5. Սելևկյան Ասորիքը՝ հայկական կուսակալություն Բագարատի իշխանության տակ.—կռիվները Փյունիկիայում։—6. Նոր հարձակում Կապպադովկիայի վրա.—հելլենիստական քաղաքների բնակչության գաղթեցումը Հայաստան։—7. Պտղոմայից քաղաքի նվաճումը։—8. Տիգրանի ընդարձակված պետության սահմանները։—9. Հռոմի չեզոքության պատճառները։—10. Տիգրանի պետության ներքին կազմակերպությունը.—վասալական թագավորությունների պարտավորությունները.—կալվածատեր հայ ազնվականությունը։—11. Տիգրան Բ-ի հաջողությունները—հետևանք հայ ժողովրդի անման ու երկրի տնտեսական զարգացման։—12. Հայաստանի շրջանները կամ «ստրատեգիաները».—չորս բդեշխները։—13. Հայաստանի հասարակակարգը Տիգրան Բ-ի ժամանակաշրջանում։

*Իննսնական թվականների վերջերում (մեր թվ. առաջ), ինչպես վերև տեսանք, Տիգրան Բ-ը դաշն էր կնքել և բարեկամություն հաստատել Միհրդատ Եվպատորի հետ և ապահովել էր իր թիկունքն արևմուտքում։*

*Այս դաշնադրությունից և Կապպադովկիայի 93 և 91 թվականների արշավանքներից հետո Տիգրանն օգտվեց ներքին խառնակություններից, որոնք ծագել էին Միհրդատ Բ-ի մահից հետո (90 կամ 88 թվ. մեր թվ. առաջ) Պարթևական թագավորության մեջ, և սկսեց իր հաղթական կռիվներն ընդդեմ թշնամի ու մրցակից պարթև Արշակունիների[1]։ Այս կռիվների, ինչպես և Տիգրանի*

---

*[1] Կուրտ էգհարդը կարծում է, որ Տիգրան Բ-ի կռիվները պարթևների դեմ և Միջագետքի ու պարթևական մանր վասալ պետությունների միացումը Հայաս-*

հետագա մեծ նվաճումների՝ ճշգրիտ թվականները և նրանց ժամանակագրական հաջորդականությունը պատմագիտական ու բանասիրական երկերում հաճախ խառնաշփոթված և սխալ են որոշված։

Պատերազմ սկսելով պարթևների դեմ՝ Տիգրանը, նախ և առաջ, ետ վերցրեց այն յոթանասուն հովիտները, որ նա իբրև փրկանք տվել էր Միհրդատ Բ Մեծին պատանդությունից ազատվելու համար։ Մարկվարտի կարծիքով, այս հովիտներն այն շրջաններն էին, որ գրավել էր Արտաշես Ա-ը Ատրպատականի կողմերում[1]։ Ստրաբոնի ուշագրավ մի վկայությունից երևում է, որ Տիգրանը նվաճել էր այժմ բացի յոթանասուն հովիտներից նաև Մեծ Աղբակ գավառը, այսինքն՝ այժմյան Բաշքալեի շուրջը գտնվող երկիրը, որը հետո ատրպատականցիները ետ առան հայերից 33 թվին (մեր թվ. առաջ)[2]։ Ստրաբոնի համապատասխան վկայության մեջ Συμβάκη աղավաղված ընթերցվածը Մարկվարտն առաջարկում է ուղղել և կարդալ 'Αλβάκη:

«Ատրպատյան Մեդիայի հզոր հարևաններն են,—ասում է Ստրաբոնը[3],—արմենները և պարթևները, որոնք հաճախ հափշտակում էին նրա երկրամասերը։ Սակայն սա դիմադրում էր և ետ էր առնում խլվածը. հենց այդպես նա ետ էր վերցրել հռոմեական իշխանութեան տակ գտնվող արմեններից Աղբակը [Συμβάκην փխ. 'Αλβάκην] և բարեկամութիւն էր հաստատել ինքը Կեսարի հետ»։

Հավանորեն, Աղբակի գրավումից հետո էր տեղի ունեցել Տիգրանի արշավանքը Ադիաբեն, ուր նա ավերածություն էր ենթարկել Նինուեի և Արբելայի շրջանները[4]։ Հետաքրքիր է ու ուշագրավ, որ մինչև իսկ այս հեռավոր երկրում, ինչպես վկայում է Ստրաբոնը, բնակություն էին հաստատել արմենները, որոնք կազմում էին այստեղ բնակչության մի ստվար մասը։

---

տանին տեղի էին ունեցել 92 թվից առաջ (տե՛ս *K. Eckhardt*, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. IX, 4, էջ 403)։ **Այս կարծիքը, իհարկե,** ճիշտ չէ։ Մենք տեսանք վերև, որ 92 թվին Միհրդատ Բ-ի դեսպան Օրոբազոսը Եփրատ գետի ափերի մոտ բանակցություն էր վարել Սուլլայի հետ, և նրանք համաձայնել էին, որ Եփրատ գետը լինի սահման Հռոմի և Պարթևական թագավորության միջև։

1 Տե՛ս Eranschahr, էջ 109։

2 Տե՛ս նույնը, էջ 109։

3 Տե՛ս *Strabo*, XI, 13, 2 (523)։

4 Տե՛ս նույնը, 14, 15 (532)։

«Ադիաբենի մեծագույն մասը,— ասում է Ստրաբոնը,— դաշտային է։ Լինելով Բաբելոնիայի մասը՝ սա ունի իր սեփական կառավարիչը. բայց երբեմն միացված է եղել և Արմենիային։ Մեդացիները, արմենները և երրորդ՝ բաբելոնացիները, որոնք ամենամեծ թիվը կազմող ժողովուրդներն էին միշտ այստեղ՝ սկզբից հենց այնքան էին իրար հակառակ, որ հարմար դեպքում հարձակվում էին միմյանց վրա ու նորից հաշտվում»[1]։

Մենք վերև մատնացույց էինք արել, որ արմենական գաղթականության մի մասը դեռևս հնագույն ժամանակներում բնակվել էր Կալաքենի լեռնային շրջանում, որը գտնվում էր Ադիաբենի հյուսիսակողմում։ Արմենների արևելյան այս հատվածը, որ, մեծ մասամբ, աչքաթող է արված պատմական երկերում, ինչպես տեսնում ենք, խիստ աճել էր այստեղ և հետագա դարերում կարևոր դեր էր կատարում Ադիաբենի քաղաքական կյանքում։

Ադիաբենը և Ատրպատականը նվաճելուց և իր իշխանությանը ենթարկելուց հետո՝ Տիգրանը հարավ-արևելքում կարողացավ հասնել մինչև պարթև Արշակունիների ամառային նստավայր Եկբատանա մայրաքաղաքը և այրեց այստեղ նրանց Ադրաբանան ամրոցը, որը Եկբատանայից գտնվում էր մոտ 10 կիլոմետր հեռավորության վրա[2]։

Պարթևների պարտությունն ունեցավ, բնականաբար, այն հետևանքը, որ Հայաստանի բոլոր հարևան պետությունները, որոնք մինչև այդ վասալներն էին պարթև Արշակունիների՝ հարկադրված եղան ընդունել Տիգրանի գերիշխանությունը։ Հայաստանի սահմանակից երկրների՝ Ադիաբենի, Կորդուքի, Ատրպատականի թագավորները ենթարկվեցին այնուհետև Տիգրանի իշխանության և, ըստ երևույթին, պարտավոր էին նրան վճարել հարկ և օգնել զորքով պատերազմի ժամանակ։ Կասսիոս Դիոնը վկայում է նույնպես, որ Ատրպատականի Միհրդատ թագավորն ամուսնացել էր Տիգրանի աղջկա հետ[3]։

Հաղթված և պարտված պարթևները ո՛չ միայն հաշտվեցին այս բոլորի հետ, այլ նաև ստիպված եղան Տիգրանին տալ ամ-

---

1 *Strabo*, XVI, *1, 19 (745)*։

2. *Տե՛ս Isidorus Charac., Müller*, Geogr. graeci min., *1885*, I, § 6, p. *250*։

3 *Տե՛ս Cas. Dio*, XXXVI, *14*։

բողջ Միջագետքը և նրա մեջ գտնվող Միգդոնիան և Օսրոյենը։ Միևնույն ժամանակ, ինչպես դժվար չէ հետևցնել Յուստինոսի մի վկայությունից՝[1] նրանք կնքեցին նրա հետ դաշնակցության հատուկ պայմանագիր և հրաժարվեցին «թագավորների թագավոր» տիտղոսից, որը կրելու էր այնուհետև Տիգրան Բ-ը։

Տեր դառնալով Հայաստանի հարավային սահմանների մոտ գտնվող Միջագետքին՝ Տիգրանը փոխադրեց հարավային Միջագետքից և բնակեցրեց Օսրոյեն-Եդեսայի շրջաններում արաբական թափառական ցեղեր։ Սրանց նա հանձնարարեց, ինչպես վկայում են Պլուտարքոսը և Պլինիոսը[2], տրանզիտային առևտրական ճանապարհների վերահսկողությունը։ Տիգրանի համար նրանք մաքս էին գանձելու, գլխավորապես, Եփրատ գետի անցքի մոտ, որը գտնվում էր Զևգմայի արևմտակողմում։ Օսրոյենի հարևան Միգդոնիան, որի մեջ ստրատեգիական մեծ կարևորություն ուներ Մծբինը՝ Տիգրանը կազմակերպել էր, ըստ երևույթին, իբրև առանձին իշխանություն, որի վերակացությունը նա հանձնել էր իր Գուրաս եղբորը։

Ինչպես երևում է աղբյուրների ուշադիր քննությունից, հայ-պարթևական կռիվները և Տիգրանի վերոհիշյալ նվաճումները տեղի էին ունեցել, մեծ մասամբ, Միհրդատյան առաջին պատերազմի տարիներում, մոտավորապես, 89—85 թվականներին։ Սխալ է, անտարակույս, Աստուրյանի ենթադրությունը, որը պարթևական երկրների նվաճումը դնում է Ասորիքի միացումից և 84 թվից հետո[3]։ Գուտշմիդը շատ ուղիղ մատնանշել է, որ Ասորիքը, որը սահմանակից չէր Հայաստանին՝ կարելի էր գրավել նախապես պարթևներին հաղթելուց և Միջագետքը նվաճելուց հետո[4]։

Հայ-պարթևական կռիվներից հետո, մոտավորապես 84 կամ 83 թվին (մեր թվ. առաջ), Տիգրան Բ-ը կարողացավ նաև տիրել ամբողջ վերին Ասորիքին, բացի Անտիոքի մոտ գտնվող Սելևկիա քաղաքից։ Ասորիքի գրավման մասին առանձնապես ուշագրավ է Յուստինոսի հետևյալ վկայությունը։

«Երբ եղբայրների,—ասում է Յուստինոսը,—փոխադարձ

---

[1] *Just*, XL. 3։

[2] Տե՛ս *Plut.*, Lucul., 21 և *Plin.*, VI, 28, 142։

[3] Տե՛ս «Քաղաքական վերաբերությիւններ ընդմէջ Հայաստանի և Հռովմեայ», Վենետիկ, 1912, էջ 39։

[4] *A. Gutschmid*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne, Petersb., 1887, էջ 20, ծան. 4։

առեղումի և ծնողների թշնամությունների պատճառով, որ շարունակում էին նաև որդիները՝ Ասորիքի և՛ թագավորները և՛ թագավորությունը ուժասպառ եղան համառ կռիվներում, ժողովուրդն ապավինեց դրսի օգնության և սկսեց փնտրել իր համար օտարերկրյա թագավորներ։ Արդ՝ ժողովրդի մի մասը կարծում էր, որ պետք է հրավիրել Միհրդատ Պոնտացուն, մի մասն էլ՝ Եգիպտոսից Պտղեմայոսին, իսկ ոմանք առարկում էին, որ Միհրդատը խճճվել է հռոմեական պատերազմի մեջ և որ Պտղեմայոսը միշտ թշնամի է եղել Ասորիքին. բոլորը սակայն համաձայնության եկան Հայաստանի Տիգրան թագավորի նկատմամբ, որն ուներ իր սեփական ուժերը և միաժամանակ պարթևների դաշնակիցն էր և Միհրդատի փեսան էր»[1]։

Ասորիքի և Փյունիկիայի մասին կարևոր է նաև Ստրաբոնի վկայությունը, որը հակառակ Յուստինոսի տեղեկության մատնանշում է, որ այս երկրները Տիգրանը գրավել էր ո՛չ թե խաղաղ կերպով, այլ զենքի ուժով։

«Իսկ նրա [Տիգրանի] բախտը,—ասում է Ստրաբոնը,—եղել է փոփոխական, սկզբում նա պարթևների մոտ պատանդ էր. հետո նրան հաջողվեց վերադառնալ հայրենիք, տալով նրանց յոթանասուն հովիտ Հայաստանում։ Նա այնուհետև զորացավ և ո՛չ միայն ետ վերցրեց այդ հովիտները, այլև ավերեց նրանց երկիրը Նինուեի և Արբելայի շուրջը։ Նա հպատակեցրեց իրեն Ատրպատականը և Կորդուքը և սրանց հետ միասին նաև Միջագետքի մնացած մասը։ Բացի այդ, անցնելով Եփրատ գետը՝ նա նվաճեց բռնությամբ Ասորիքը և Փյունիկիան»[2]։

Ինչպես տեսնում ենք, Ստրաբոնի հաղորդած այս տեղեկությունը հակասում է Յուստինոսի վկայությանը, որը պարզ ու որոշ ասում է, որ Տիգրանն Ասորիքին տիրել էր բնակիչների հոժարակամ առաջարկությամբ։ Այս հակասության մասին միանգամայն հավանական կարելի է համարել Ասատուրյանի բացատրությունը։ Նրա կարծիքով՝ վերոհիշյալ երկու վկայությունն էլ կարող են ուղիղ լինել, որովհետև Տիգրանը՝ հրավիրված լինելով որոշ կուսակցության կողմից՝ պետք է իրեն հպատակեցրած լիներ զենքով մյուս կուսակցությունը[3]։

[1] *Just.*, XL, *1, 1—3.*

[2] *Strabo*, XI, *14, 15 (532).*

[3] *Տե՛ս* Ասատուրյան, *Քաղաքական վերաբերություններ, էջ 34, ծան. 3։*

Հավանորեն, Տիգրանի կողմնակիցներն են եղել Անտիոք քաղաքը և միջազգային տարանցիկ առևտրի հետ կապված վաճառականները։ Ասորիքի միացումը Հայաստանին նրանց համար կարևոր տնտեսական նշանակություն ուներ, որովհետև, Միջագետքի նվաճումից հետո, Ջևգմայի վրայով անցնող համաշխարհային գլխավոր ճանապարհը գտնվում էր Տիգրանի ձեռքում։

Հյուսիսային Ասորիքը գրավելուց հետո՝ Տիգրանն այնուհետև նվաճեց նաև արևելյան Դաշտային Կիլիկիան (Cilicia Pedias), որը Սելևկյան պետության հյուսիս-արևմտյան մասն էր, և, բացի այդ, նույնպես և Կոմագենի փոքր թագավորությունը, որը գտնվում էր Դաշտային Կիլիկիայի արևելակողմում։

Այսպիսով նա իր պետության արևմտյան սահմանում անմիջական հարևանը դառավ հռոմայեցիների, որոնք 102 թվին (մեր թվ. առաջ) գրավել էին արևմտյան Լեռնային Կիլիկիան (Cilicia Tracheia)։

Անտիոքը, որը Սելևկյանների մայրաքաղաքն էր և ուներ մոտ կես միլիոն բնակչություն՝ դառավ հարավում Տիգրանի գլխավոր գահանիստ քաղաքը և այստեղ նրա անունով ու պատկերով տպվում էին այն գեղեցիկ դրամները, որոնք մեծ քանակությամբ պահպանվում են այժմ թանգարաններում։ Իսկ Սելևկյան Ասորիքը նա դարձրեց առանձին կուսակալություն և այնտեղ կառավարիչ նշանակեց, ինչպես վկայում է Ապպիանոսը[1], իր Բագարատ(Μαγαδάτης = Βαγαδάης) զորավարին։ Մարկվարտի կարծիքով՝ հայկական ավանդությունը, որը պահպանված է Մար Աբասի մոտ՝ Բագրատունիների նախարարական տոհմի նախահայր է համարում հենց այս Բագարատին[2]։

Սուլլայի և Միհրդատի դաշնադրության հետևյալ տարին, ուրեմն՝ արդեն 83 թվականին, ասորական տարեգրերը, ինչպես մատնանշում է Մոմզենը[3], Տիգրանին համարում են տեր իրենց ամբողջ երկրի և Կիլիկիան ու Ասորիքը հիշատակում են՝ որպես հայկական սատրապության Բագարատի իշխանության տակ։

Ասորիքում հաստատված հայկական տիրապետության մասին հետաքրքիր է Ռեյնաքի հետևյալ դիտողությունը[4]։

---

[1] Syr. 48։

[2] Տե՛ս Eranschahr, էջ 174։

[3] Տե՛ս Римская история, т. III, перевод *А. Веселовского*, М., 1887; էջ 40.

[4] Mithridate Eupator, էջ 312։

«Ասորիքը,—ասում է նա,—ազատ շունչ քաշեց, և թեպետ ենթարկվեց նվաստացուցիչ օտար իշխանության, սակայն տասնչորս տարվա ընթացքում[1] նա ունեցավ խաղաղություն, ապահովություն և բարեկեցություն»։

Աղբյուրների պատահական ու կցկտուր տեղեկություններից երևում է, որ Ասորիքին 84/83 թվերին տիրելուց հետո Տիգրան Բ-ը երկար ժամանակ կռիվներ էր վարել արևելյան Փոքր Ասիայում և Փյունիկիայում, գլխավորապես, ամուր ու անառիկ քաղաքների դեմ։ Փյունիկիայում և հարավային Ասորիքում դիմադրությունը կազմակերպել էր նրա դեմ Սելևկյան Կլեոպատրա կամ Սելենե թագուհին։ Եվ ավելի քան հավանական է, որ Ասորիքի այս մասերը և Փյունիկիայի ծովափնյա քաղաքները նա գրավել էր հետզհետե համառ ու երկարատև կռիվներից հետո։

Սուլլայի մահից հետո (78 թ.) և Միհրդատյան երրորդ պատերազմից առաջ (74—71 մեր թվ. առաջ) Տիգրանը նորից էր արշավել Կապպադովկիա, ըստ երևույթին, դարձյալ իր աներոջ՝ Միհրդատի սադրանքով։ Այս անգամ Կապպադովկիան, ինչպես մատնանշում է Ապպիանոսը[2], ընկել էր իբր ցանցի մեջ՝ նա այժմ շրջապատված էր հայկական նոր գրավված երկրներով ո՛չ միայն Ծոփքի, այլև Կոմագենի ու Դաշտային Կիլիկիայի կողմերից։ Տիգրանին հաջողվեց գրավել այս արշավանքի ժամանակ Կապպադովկիայի Մաժաք մայրաքաղաքը և բազմաթիվ նաև այլ հելլենիստական քաղաքներ, որոնց բնակիչներին՝ մոտ 300.000 հոգի՝ նա փոխադրեց իր նորակառույց Տիգրանակերտ քաղաքը[3]։

Անհավանական պետք է համարել սակայն Մոմզենի կարծիքը, որ իբր թե, դեռևս այս արշավանքից առաջ՝ Տիգրանը միացրել էր Ծոփքին Մելիտենե քաղաքը և ամբողջ այդ շրջանը[4]։ Այս ենթադրությունը, որն ընդունելի են համարել նաև Խալաթյանցը[5] և ուրիշները, չէ կարող ճիշտ լինել, որովհետև Սալլուս-

---

[1] 83—69 թթ., տե՛ս App., Syr., 48։ Համաձայն Յուստինոսի (XL, 1, 4)՝ Տիգրանի տիրապետությունը տևել է Ասորիքում 17 տարի։ Նիզեն կարծում է, որ Յուստինոսի տված XVII թիվը կարող է լինել վրիպակ (XVII փխ. XIII-ի), տե՛ս *Низе*, Очерк римской истории и источниковедения, СПб. 1910, էջ 288 Ռեյնաքի կարծիքով՝ հայկական տիրապետությունը Յուստինոսը ցույց է տվել մինչև Տիգրանի վերջնական պարտությունը 66 թվին, տե՛ս Mithridate Eupator, էջ 312, ծան. 6։

[2] Տե՛ս *App.*, Mithr., 67։

[3] Տե՛ս նույնը, 67. համեմատե նաև Strabo, XII, 2, 9 (539)։

[4] Տե՛ս „Римская история“, III, М., 1887, էջ 39։

[5] Տե՛ս Очерк истории Армении, М., 1910, էջ 160։

տիոսի և Տակիտոսի վկայություններից հայտնի է, որ 69 թվի Լուկուլլոսի արշավանքի ժամանակ Եփրատ գետի արևմտակողմը և Մելիտենե քաղաքը գտնվում էին ո՛չ թե Տիգրանի, այլ Կապպադովկիայի թագավորության սահմաններում[1]։

Բացի Կապպադովկիական քաղաքների բնակչությունից Տիգրանակերտ ու Հայաստան էին բերվել նաև Դաշտային Կիլիկիայի քաղաքների և, մասնավորապես, ծովափնյա Սոլի քաղաքի բնակիչները[2]։

Տիգրան Բ-ի կռիվները Փյունիկիայում և, հատկապես Պտղոմայիդ քաղաքի նվաճումը հիշատակված են Հովսեպոս Փլավիոսի մոտ։ Պտղոմայիդի նվաճումը տեղի էր ունեցել ո՛չ թե 74 թվին, ինչպես մատնացույց է արել Մոմզենը[3], այլ Լուկուլլոսի Հայաստան արշավելուց առաջ՝ 70 թվին (մեր թվ. առ.)[4]։

Հովսեպոսի համապատասխան վկայությունը մեջ եմ բերում ամբողջությամբ։

«Այդ ժամանակ լուր ստացվեց,—ասում է Հովսեպոսը,— որ Հայոց Տիգրան թագավորը 300.000 զորքով ներս է մտել Ասորիք և գալու է նաև Հրեաստան։ Տեղեկանալով այս մասին՝ սարսափահար եղան, բնականաբար, Հրեաստանի թագուհին և ժողովուրդը։ Նրանք ուղարկեցին Տիգրանի մոտ, որը պաշարել էր Պտղոմայիդը, դեսպաններ բազմաքանակ ու արժանավայել ընծաներով։ Իսկ Սելենե թագուհին, որի անունն էր նաև Կլեոպատրա և որն իշխում էր Ասորիքում՝ գրգռում էր բնակիչներին, որ դիմադրեն Տիգրանին։ Դեսպանները եկան նրա մոտ և աղաչեցին, որ բարի ու ողորմած լինի դեպի իրենց թագուհին և ժողովուրդը։ Եվ այդ ժամանակվանից Տիգրանը հոգատար վերաբերմունք ունեցավ նրանց նկատմամբ և քաջալերեց նրանց ու հուսադրեց։ Երբ Տիգրանն արդեն վերցրել էր Պտղոմայիդը՝ նրան հայտնեցին, որ Լուկուլլոսը հետապնդելով Միհրդատին՝ չէ կարողացել նրան բռնել, և վերջինս փախել է Իբերիա։ Նրան նմանապես ազդարարեցին, որ Լուկուլլոսը պաշարել է և ավերում է Հայաստանը։ Երբ Տիգրանն այս իմացավ՝ վերադարձավ իր բուն երկիրը»[5]։

---

1 Տե՛ս *Sal.*, IV. frg., 59 և *Tac.*, Annales, XV, 27։

2 *Plut.*, Pomp. XXXVIII, 4. համեմատե նաև *Cas. Dio.* XXXVI, 37։

3 „Римская история" III, էջ 40։

4 *Plut.*, Lucul., XXI, 2։

5 Տե՛ս «Հնախոսություն», XIII, 16, 4. համեմատե նաև «Հրեական պատերազմ», I, 5, 3։

Ինչպես վկայում է նաև Ստրաբոնը, Ասորիքում և Փյունիկիայում տեղի ունեցած այս կռիվների ժամանակ Տիգրանը գերի էր վերցրել Սելենե-Կլեոպատրա թագուհուն։ Վերջինս բանտարկվեց Զեգմայի դիմաց գտնվող Սելևկիա բերդում և գլխատվեց Տիգրանի հրամանով Լուկուլլոսի 69 թվի արշավանքից առաջ[1]։

Իր քսանհինգ տարվա թագավորության ընթացքում (95—70 մեր թվ. առ.) Տիգրան Բ-ը, ինչպես տեսնում ենք, կարողացել էր անչափ ընդարձակել իր երկիրը, որն այժմ տարածվում էր Կասպից ծովից և Կուր գետից մինչև Միջերկրական ծովն ու Եգիպտոսի սահմանները և Մեծ Մեդիայից մինչև հռոմեական Լեռնային Կիլիկիան ու Կապպադովկիան։ Թեև Հովսեպոսի վկայությունից երևում է, որ Տիգրանը Պաղեստինի վրա չէր հարձակվել, սակայն այդ երկիրը ևս, ըստ երևույթին, որոշ չափով ընդունել էր նրա գերիշխանությունը։ Ուշագրավ է այս տեսակետից Ապպիանոսի հաղորդած տեղեկությունը[2], որի համաձայն Տիգրանի գերիշխանությանը ենթարկված է եղել ամբողջ Ասորիքը մինչև Եգիպտոսի սահմանները։

Գրաված լինելով Դաշտային Կիլիկիան ու Կոմագենը՝ Տիգրանն արդեն ոտք էր դրել Փոքր Ասիա և հարևան էր դառել, ինչպես ասացինք, հռոմեական Լեռնային Կիլիկիային։ Կապպադովկիան, որը հռոմայեցիների դաշնակիցն էր՝ շրջապատված էր այժմ Պոնտոսի, Ծոփքի, Կոմագենի և Դաշտային Կիլիկիայի կողմերից ու գրեթե անպաշտպան էր ստրատեգիական աննպաստ իր դրության պատճառով։

Տիգրանի նվաճումները Միջերկրական ծովի ափերին և, մանավանդ, Հռոմի Դաշնակից Կապպադովկիայի վերոհիշյալ ավերածությունը, վարկաբեկում էին, բնականաբար, հռոմեական հանրապետության հեղինակությունն արևելյան երկրներում։ Սակայն չնայած դրան՝ Հռոմը չեզոքություն պահպանեց և չըպաշտպանեց մինչև իսկ իր դաշնակից Կապպադովկիային։

Հռոմի չեզոքությունը միանգամայն հասկանալի է, որովհետև Տիգրանի նվաճումները տեղի էին ունեցել կամ Միհրդատյան պատերազմների ժամանակ և կամ Սուլլայի արյունահեղ դիկտատուրայի ընթացքում, երբ Հռոմը թույլ էր ու անզոր ներքին երկպառակությունների պատճառով։ Ինքը՝ Տիգրանը, չուներ, իհարկե, որևէ պատճառ պատերազմելու հռոմայեցիների դեմ,

[1] *Strabo*, XVI, 2, 3 (749)։

[2] Տե՛ս Syr., 48—49։

քանի որ սրանք չէին միջամտում և չէին խանգարում Հայաստանի աշխարհակալ ընդարձակումը։

Ահա այս բարենպաստ պայմաններն էին պատճառը, որ 95—70 թվերին Հայաստանը հետզհետե կարողացավ դառնալ հզոր ու մեծ պետություն։

Տիգրան Բ-ի թագավորության ժամանակ Հայկական լեռնաշխարհի քաղաքականապես միացած արմենական երկրները, ինչպես տեսնում ենք, հասել էին իրենց քաղաքական հզորության ու փառքի գագաթնակետին։

Սակայն Տիգրան Բ-ի իշխանության տակ գտնվող մեծ ու լայնարձակ աշխարհակալությունը, որը խայտաբղետ մի խառնուրդ էր ցեղերի ու լեզուների և տարբեր մշակույթների՝ չէ կարող, իհարկե, համարվել միահաղ կայուն ու ամուր մի պետություն։ Տիգրանի գերիշխանության տակ միացել էին թե տոհմացեղային նահապետական շրջաններ, թե կիսաֆեոդալական երկրներ և թե հելլենիստական քաղաքներ, որոնք ունեին իրենց հատուկ կազմակերպությունը։

Հայաստանի հարևան թագավորությունները, որոնք ճանաչել էին «թագավորների թագավոր» Տիգրանի գերիշխանությունը, ըստ երևույթին, պարտավոր էին նրան տալ որոշ հարկ, իսկ պատերազմի ժամանակ օգնելու էին նրան իրենց զորքով։ Վասսալական այս թագավորությունները, ինչպես և բուն Հայաստանի իշխանական ինքնավար երկրները, պահպանում էին նախկին իրենց հատուկ կարգերը և իրենց ուրույն կազմակերպությունը։

Տիգրանի այս հայկական մեծ պետության մեջ առաջնակարգ դեր էր կատարում, անտարակույս, կալվածատեր հայ ազնվականությունը, որը նրա գլխավոր հենարանն էր ինչպես վերոհիշյալ հաղթական կռիվներում, նույնպես և պետական ու կառավարչական գործերում։ Եվ իրավի, մենք տեսանք վերև, որ Մծբինի վերակացությունը նա հանձնել էր իր Գուրաս եղբորը, իսկ Անտիոքում կառավարիչ էր նշանակել Բագրատ հայ իշխանին։

Հենց Հայաստանի տիրող կալվածատիրական ու զինվորական ազնվականության զորեղացմամբ և, գլխավորապես, Հայաստանի քաղաքական ու տնտեսական անարգել ու առաջընթաց զարգացմամբ՝ բացատրվում են, հավանորեն, Տիգրան Բ-ի գլխապտույտ հաջողությունները և նրա աշխարհակալման ձգտումները։

«Տիգրան Մեծի հաջողությունները,—ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել է Գր. Խալաթյանցը,—պետք է վերա-

գրել տնտեսական այն կուտակված մեծ ուժերին, որ հավաքվել էին Հայաստանում դարերի ընթացքում—պարսիկների խաղաղ տիրապետության շրջանում, Սելևկյանների ժամանակ և ավելի ուշ»[1]։

«Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին»[2] ռուսերեն իմ աշխատության մեջ մանրամասն նույնպես ցույց էր տրված, որ հայ ժողովրդի աճման ու տնտեսական զարգացման տեսակետից Հայաստանը խիստ աննպաստ պայմանների մեջ էր գտնվում Պոմպեյոսի հաղթությունից հետո (66 թվ. մեր թվ. առաջ), երբ նա դառել էր բուֆեր պետություն Արևմուտքի և Արևելքի մրցող մեծ պետությունների միջև։ Մինչ այդ, Աքեմենյանների խաղաղ տիրապետության, ինչպես և Սելևկյանների ու Տիգրան Բ-ի նախորդների ժամանակ, Հայաստանում քաղաքական պայմանները միանգամայն բարեհաջող են եղել, թե ժողովրդի աճման և թե երկրի տնտեսական զորեղացման համար։

Կարելի է, իմ կարծիքով, վստահորեն ենթադրել, որ հայ ժողովրդի թիվն ավելի մեծ է եղել Արտաշեսյան թագավորության և Տիգրան Բ-ի ժամանակ, քան հետագա դարերում։ Եվ, մասնավորապես, Ստրաբոնի վկայությունից ևս մենք գիտենք[3], որ նրա ժամանակ արմենները ո՛չ միայն գրաված են եղել ամբողջ Հայկական լեռնաշխարհը, այլ մեծ թիվ են կազմել նաև Ադիաբենում և հյուսիսային Միջագետքում։

Հայաստանի բնակչության այս աճումը ևս, ինչպես և տնտեսական ու քաղաքական նրա խաղաղ զարգացումը նախորդ դարերում՝ մեծապես նպաստել էր, անշուշտ, նրա աշխարհակալական ընդարձակմանը Տիգրանի ժամանակ։

Նախորդ մեր աշխատություններից մեկում մենք, բացի այդ, հավանական էինք համարել, որ արդէն Արտաշես Ա-ի ժամանակաշրջանում Հին Հայաստանն ունեցել է ֆեոդալական կազմակերպությանը հատուկ սաղմերը և առանձին հիմքերը[4]։ Պլինիոսի կարևոր մի վկայությունից հայտնի է, որ Հայաստանը բաժանված էր նրա ժամանակ (23—79 մեր թվ. հ.) 120 շրջանների, որ նա անվանում է ստրատեգիաներ, այսինքն՝ «զորավարություններ»[5]։

---

[1] Տե՛ս „Очерк истории Армении“, М., *1910*, էջ *161*։

[2] „ О торговле и городах Армении“, էջ *50—53*։

[3] Տե՛ս *Strabo*, XVI, *1, 19* և *26* (*745, 747*).

[4] Տե՛ս «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», Երևան, 1934, էջ 248—251։

[5] *Plin.*, Nat. Hist VI, *10, 2*.

Մեծագույն մասն այս շրջանների, որոնք գոյություն ունեին, հավանորեն, արդեն Տիգրան Բ-ի ժամանակ՝ համարվելու են, ինչպես այդ մատնանշել է Ադոնցը[1], առանձին շրջաններ, որոնց մեջ, հավանորեն, տնտեսապես և քաղաքականապես գերակշռող դեր էր կատարում կալվածատեր ազնվականությունը։

Բացի Պլինիոսի վկայությունից, ուշագրավ է նաև Պլուտարքոսի հաղորդած տեղեկությունը չորս թագավորների մասին, որոնք սպասարկում էին Տիգրանին։

«Շատ թագավորներ,— ասում է Պլուտարքոսը,— սպասավորում են Տիգրանին, բայց նրանցից չորսը միշտ նրա հետ էին լինում՝ որպես ուղեկիցներ և թիկնապահներ. և երբ նա գնում էր ձիով՝ նրանք՝ կարճ խիտոններ հագած՝ վազում էին առջևից. իսկ երբ նստած էր լինում և պաշտոնական գործերով էր զբաղվում՝ նրանք կանգնած էին լինում նրա շուրջը՝ իրար ձեռքից բռնած»[2]։

Հիմնվելով Պլուտարքոսի այս հաղորդագրության վրա, որը չափազանցված մի ծաղրանկար է արևելյան հատուկ հանդիսակարգերի՝ Մարկվարտը կարծում է[3], որ վերոհիշյալ չորս թագավորները, հավանորեն, Հայաստանի չորս բդեշխներն են, որոնց ծագումը հավանական է ենթադրել Տիգրան Բ-ի ժամանակ։ Ադոնցը նմանապես հավանական է համարում, որ ֆեոդալական Հայաստանի չորս բդեշխությունները, որոնց մասին մանրամասն տեղեկություններ ունեն Ագաթանգեղոսը, Փավստոսը և Մովսես Խորենացին[4], նախկին փոքր ու ինքնուրույն թագավորությունների միապետներ են, որոնք Տիգրան Բ-ի ժամանակ ճանաչել էին հայ թագավորների քաղաքական իշխանությունը[5]։

Ինչպես հայտնի է, հայկական ֆեոդալիզմի ուսումնասիրությունը վերաբերող բոլոր երկերում ենթադրվել է, որ Հին Հայաստանում տոհմային կարգերի կազմալուծման հետ զուգընթաց աստիճանաբար զարգացել էր սոցիալական շերտավորումը, զարգացել էին հետզհետե ֆեոդալական հարաբերությունները և կազմակերպվել էին Հայաստանի նախարարությունները։

Սակայն վերջին ժամանակներս լույս տեսան ռուսերեն լեզվով գրված դասագրքեր, որոնց մեջ մատնանշված է, որ Տիգ-

---

1 „Армения в эпоху Юстиниана", СПб. 1908, էջ 392։

2 *Plut.*, Lucullus, XXI, 6.

3 Franschahr, 171—173։

4 Տե՛ս իմ աշխատությունը «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 34—38։

5 Տե՛ս „Армения в эпоху Юстиниана", էջ 283 և 410—411։

րան Բ-ի պետությունն ունեցել է ստրկատիրական հասարակակարգի հիմնական հատկանիշները և որ այստեղ ևս, ինչպես և Հռոմում ու Հունաստանում, արտադրության հիմքը կազմել է ստրկական աշխատանքը։ Այս նոր տեսությունը մանրամասն քննված է իմ վերջին հոդվածներից մեկում «Հասարակակարգի խնդիրը նախարշակունյան Հայաստանում», որը լույս է տեսնելու Մոսկվայում։

Ընդունելով որ Տիգրան Բ-ի ժամանակ Հայաստանի տնտեսությունը խարսխված է եղել, գլխավորապես, ստրկական աշխատանքի շահագործման վրա՝ նոր կոնցեպցիայի կողմնակիցները մատնացույց են անում, որ Հայաստանում այս ժամանակաշրջանում գոյություն են ունեցել բազմաթիվ ագարակներ-լատիֆունդիաներ, ստրկատիրական դաստակերտ կոչվող կալվածներ, ստրկատիրական տաճարական տնտեսություններ և հելլենիստական տիպի ստրկատիրական քաղաքներ։ Այս պնդումները, ինչպես ցույց է տրված վերոհիշյալ իմ հոդվածում, հիմնված են ո՛չ թե սկզբնաղբյուրների հաստատուն տեղեկությունների, այլ «ագարակ», «դաստակերտ» և «հիերոդուլ» ἱερόδουλος տերմինների սխալ մեկնաբանության վրա և կամ ընդհանուր չհիմնավորված նկատառումների վրա, որոնք չեն կարող համարվել համոզիչ ու ընդունելի։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ Արտաշեսյան դարաշրջանի հայ թագավորները, ինչպես և խոշոր հայ կալվածատերերը, պետք է ունեցած լինեն և՛ ագարակներ և՛ դաստակերտ-կալվածներ, սակայն այդ տնտեսությունները, ինչպես դժվար չէ կռահել սկզբնաղբյուրների ցուցումներից, դուրս չէին ներգրավված լայն առևտրի մեջ։ Նրանց մեջ արտադրված գյուղատնտեսական մթերքները ո՛չ միայն այս, այլև Արշակունյաց շրջանում՝ սպառվում էին, գլխավորապես, հենց իրենց կալվածների մեջ։ Այդ մթերքները չէին վաճառվում մասսայորեն արտաքին շուկաներում և նրանցով առանձնապես չէին կարող շահագրգռված լինել հելլենիստական պետությունները կամ Հռոմը Հայաստանի հեռավորության և տրանսպորտի մեծ դժվարությունների պատճառով։ Ուրեմն, այս նկատառումով ևս ագարակների և դաստակերտների նույնացումը լատիֆունդիաների հետ բոլորովին անհավատալի է, որովհետև ստրկական աշխատանքի վրա հիմնված լատիֆունդիական տիպի տնտեսությունները, ինչպես հայտնի է, ունեին գյուղատնտեսական խոշոր ձեռնարկությունների բնույթ և աշխատում էին լայն շուկայի համար։

Սարկությունը, որը համատարած ու ընդհանուր մի երևույթ էր հին աշխարհում՝ գոյություն ուներ, իհարկե, և Տիգրանյան Հայաստանում։ Սակայն ստրուկները չեն եղել այստեղ արտադրության հիմքը։ Հայաստանում, ինչպես և ընդհանրապես Արևելքում զարգացած է եղել, գլխավորապես, տնային ստրկությունը։ Իսկ արտադրության մեջ գերակշռող դեր էին կատարում ոչ թե լատիֆունդիական խոշոր կալվածատիրությունը և մասսայական ստրկությունը, այլ, գլխավորապես, համայնական հողատիրությունը և գյուղատնտեսությունը, որը որոշ չափով կարող էր ճորտացված լինել կալվածատեր իշխանավորների զորեղացման պատճառով։

Ինչպես շատ ճիշտ դիտել է ակադ. Գրեկովը[1], նախարշակունյան Հայաստանի հասարակային զարգացումը, հավանորեն, որոշ նմանություն է ունեցել համապատասխան զարգացման հետ միջնադարյան ժողովուրդների՝ սկյութների, սլավոնների և գերմանացիների։

Որ այս ենթադրությունն ավելի քան հավանական է՝ այդ ինչպես մանրամասն մատնացույց է արված իմ վերոհիշյալ հոդվածում՝ երևում է հունա-հռոմեական հեղինակների ուշագրավ ցուցումներից։ Տիգրանյան Հայաստանի հասարակությունը, ինչպես վկայում են այդ հեղինակները՝ բաղկացած էր երկու հիմնական սոցիալական շերտից՝ հասարակ ժողովրդից (pleds) և ազնվական ավագանուց, որը Տակիտոսի մոտ անվանված է nobiles, proceres, proceres gentium, primores և primores gentium։ Այս ժամանակաշրջանում նախկին տոհմապետները և ցեղապետները, ինչպես ենթադրում է Ադոնցը[2], դառել էին արդեն իշխանավորներ։ Տակիտոսի մոտ առանձնապես հիշատակված են Հայաստանի մեգիստանները (megistanes)՝ մեծամեծները, որոնք ունեցել են խոշոր կալվածներ և ապրել են ամրոցներում, որ գտնվել են ամենուրեք ինչպես դաշտային տեղերում, նույնպես և բարձունքների վրա։ Խաղաղ ժամանակ հայկական ավագանին, ինչպես և ազնվականությունը սլավոնների ու հին գերմանացիների մոտ որսի էր գնում կամ անցկացնում էր ժամանակը՝ անձնատուր լինելով գինարբուքի և կերուխումի։

---

[1] Տե՛ս Учительская газета, 29 октября 1940 г..

[2] Տե՛ս „Армения в эпоху Юстиниана", էջ 435,

*Հունա-հռոմեական աղբյուրներում, ինչպես տեսնում ենք, միջանկյալ կերպով պատահում են միայն այնպիսի վկայություններ, որոնք ընդգծում են ո՛չ թե Տիգրանյան Հայաստանի ստրկատիրական հասարակարգ լինելը, այլ նրա ներքին կյանքի այն կողմերը, որ առանձնահատուկ են եղել միջնադարյան բարբարոսական կոչվող պետություններին։*

*Աղբյուրների ուշադիր քննությունից, ինձ թվում է, դժվար չէ հետևցնել, որ Քսենոփոնյան շրջանի տոհմային հասարակությունից զարգացել էր Հայաստանում, ինչպես միանգամայն ճիշտ եզրակացրել է Ադոնցը*[1]*, ո՛չ թե ստրկատիրական, այլ ֆեոդալական կամ ճորտական հասարակարգը։*

*Տիգրանյան Հայաստանում, հավանորեն, կազմավորվել էին արդեն ֆեոդալական-նախարարական կազմակերպությանը հատուկ սաղմերը և առանձին հիմքերը, ուստի և փոխանցման այս շրջանը ես հնարավոր էի համարել իմ աշխատություններում բնորոշել իբրև նախնական ֆեոդալիզմի շրջան*[2]*։*

---

[1] *Տե՛ս* „Армения в эпоху Юстиниана“, *էջ 371—427*։

[2] *Տե՛ս «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում», էջ 304, Տիգրան Բ և Հռոմը, էջ 57 [տե՛ս նաև սույն հատորում, էջ 456, խմբ.]*։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ՀԵԼԼԵՆԻԶՄԻ ԶՈՐԵՂԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ ՔԱՂԱՔԻ ՀԻՄՆՈՒՄԸ

1. Տիգրան Բ-ի հելլենիզմի տարածման հատուկ քաղաքականությունը։—2. Հելլենական մշակույթը Կապպադովկիայում և Պոնտոսում։—3. Հելլենիզմի և իրանիզմի կուլտուրական մերձեցումը։—4. Վերանորոգչական շարժումը Ծոփքում։—5. Հելլենիստական քաղաքային կուլտուրայի տարածումը Հայաստանում Տիգրան Բ-ի ժամանակ և բռնի գաղթեցումը հելլենիստական քաղաքների բնակչության։—6. Տիգրանակերտ քաղաքի հիմնումը.—սրա տիպը և առևտրական—արդյունագործական բնույթը.—Տիգրանակերտի տեղադրության խնդիրը.—Նրա բնակչությունը.—Տիգրանակերտը որպես կենտրոն հելլենիստական գիտության, արվեստի ու գրականության։—7. Հելլենիզմի ազդեցությունը Հայաստանում.—կրոնների մերձեցումը.—նոր հոսանքն ընդդեմ տիրող իրանիզմի.—Տիգրանի վերանորոգչական մեծ դերը։—8. Մեծն Տիգրանի պատմությունը ժողովրդական ավանդության և Խորենացու Պատմության մեջ։

*Աղբյուրների թռուցիկ ու պատահական տեղեկությունները, դժբախտաբար, հնարավորություն չեն տալիս մեզ հանգամանորեն քննության առնելու Հայաստանի ներքին կյանքը նախարշակունյան այս շրջանում։ Մեզ հայտնի է միայն, որ Տիգրան Բ-ի վերանորոգչական գլխավոր գործերն են եղել Տիգրանակերտի հիմնումը և հելլենիզմի ու հելլենիստական քաղաքային կուլտուրայի տարածման ու զարգացման նրա հատուկ քաղաքականությունը։ Տիգրան Բ-ը հասկացել էր, ըստ երևույթին, որ նահապետական հայ կենցաղի տնտեսական ու կուլտուրական առաջադիմությանը կարող էր մեծապես նպաստել հելլենիստական տիպի քաղաքը, որը կենտրոն էր արհեստների, արդյունագործության ու առևտրի զարգացման։*

*Պետք է ասել, որ հելլենասիրությունը այդ ժամանակ ընդհանուր երևույթ էր նաև Հայաստանի հարևան երկրներում։ Դեռևս*

երկրորդ դարում Կապպադովկիայի Արիարաթ Ե թագավորը (163—130 մեր թվ. առաջ), որը երկար ժամանակ ճանապարհորդել էր Իտալիայում և Հայաստանում՝ հրավիրել էր Կապպադովկիա հույն արվեստագետներ ու գրողներ և իր երկրի Մաժաք ու Տիանա գլխավոր կենտրոնավայրերը դարձրել էր հելլենիստական տիպի ինքնավար քաղաքներ, որոնցից Մաժաքն ընդունել էր ու գործադրում էր, ինչպես վկայում է Ստրաբոնը[1], խարոնդասի օրենքները։

Հելլենական մշակույթը և հելլենիստական քաղաքների հատուկ վարչակարգը ավելի մեծ չափերով տարածվում էին Պոնտոսում, գլխավորապես, Միհրդատ Եվպատորի ժամանակ, որին եվրոպական պատմագետները հնարավոր են համարել համեմատել Պետրոս Մեծի հետ։

Այստեղ Պոնտոսում արդեն հնագույն ժամանակներում հելլենական քաղաքակրթության ու լեզվի տարածման գլխավոր նեցուկներն էին հունական ծովափնյա քաղաքները՝ Ամաստրիսը, Սինոպը, Ամիսոսը, Տրապիզոնը և հունական մյուս ավելի փոքր գաղութները։ Միհրդատ Եվպատորի ժամանակ այս քաղաքները խիստ մեծացել էին և դառել միջազգային մեծ առևտրի նավահանգստային հարուստ կենտրոններ։

Հռոմեական նվաճումից առաջ, ասում է Ռեյնաքը[2], նրանք ոչ միայն իրենք էին հասել բարեկեցության ու կուլտուրական զարգացման բարձր աստիճանի, այլև, աջակցելով Պոնտոսի և Մեծ Կապպադովկիայի տնտեսական առաջադիմությանը՝ սկսել էին հելլենիզմի կենդանարար ազդեցությունը տարածել և այդ երկրներում։

Շնորհիվ Միհրդատի առատաձեռն ու հոգատար աջակցության, պոնտական բոլոր քաղաքներում կառուցվել էին հոյակապ ու գեղեցիկ նոր շենքեր, մինչև իսկ ամբողջ թաղամասեր, և բուռն թափով զարգանում էին ամեն տեղ հելլենական գեղարվեստն ու գիտությունը, որոնք վայելում էին թագավորի հատուկ հոգատարությունը։ Միհրդատ Եվպատորը պարզապես հետզհետե կերպարանափոխում էր իր երկիրը և տարածում ամենուրեք հունական քաղաքակրթությունը։ Նրա ժամանակ ո՛չ միայն հին Ամասիա մայրաքաղաքը, այլ նույնիսկ որոշ ավանագյուղեր դառել էին արդեն հելլենիստական քաղաքներ։ Հելլենական մշակույթի

---

[1] Տե՛ս Strabo, XII, 2, 9, (539).

[2] Mithridate Eupator, էջ 242։

տարածման ու զորեղացման պարզ ցուցանիշներ են պոնտական Կոմանա, Կաբիրա, Գազիուրա, Պիմոլիսա և Տալավրա գյուղաքաղաքները, որոնք պղնձադրամներ էին կտրում հունարեն լեզվով և առասպելական հունական պատկերներով։

Ինչպես և Աղեքսանդր Մեծը, ըստ երևույթին, Միհրդատը ևս իրեն նպատակ էր դրել հաշտեցնել իրար հետ և միաձուլել արևելյան իրանական մշակույթը, որի ազդեցությանը մեծ չափերով ենթարկվել էր Պոնտոսը, արևմտյան հելլենական մշակույթի հետ, և սկսել էր արդեն վերակառուցել իր երկրի տնտեսական ու կուլտուրական կյանքն այդ նոր հիմքերի վրա։

Թե որքան զորեղ է եղել իրանիզմի և հելլենիզմի կուլտուրական մերձեցումը՝ այդ ցույց են տալիս, նախ և առաջ, այդ երկու մշակույթների կրոնական հաշտեցումը և պոնտական տեղական աստվածների նույնացումը Արտեմիդեի և Զևս Ստրատիոսի հետ։ Այդ մերձեցման մի պարզ ապացույց է նաև այն, որ Կոմանայում, որը պոնտական ամենահռչակավոր սրբատեղերից մեկն էր՝ Միհրդատի ժամանակ քրմապետ էր նշանակվել Դորիլաոսը, որը հույն էր։

Որ զուգընթաց կուլտուրական ու կրոնական այս մերձեցման տեղի էր ունենում նաև ցեղային զանազան խմբակցությունների մերձեցումը հույների հետ՝ այդ ևս պարզ երևում է պոնտական Ամասիայում ծնված խոշորագույն աշխարհագրագետ Ստրաբոնի կենսագրությունից (մոտավ. 64 մեր թվ. առ.—19 մեր թվ. հ.)։ Սա իր նախնիքների շարքում բացի հույներից հիշում է պարսիկ Մոափերնեսին և պափլագոնացի Տիբիոսին[1]։

Միհրդատ Եվպատորի թագավորության մեջ, ինչպես տեսնում ենք, իրագործվում էր Աղեքսանդր Մակեդոնացու սկսած այն մեծ գործը, որի նպատակն էր ըստ Դիոդորոսի Ասիայի ու Եվրոպայի «միաբան համերաշխությունը և տոհմակցական բարեկամությունը»[2]։

Հելլենիստական քաղաքային կուլտուրայի զարգացման և իր երկրի տնտեսական բարեկարգման ու բարգավաճման այդ նույն քաղաքականությունը վարել է նաև Տիգրան Բ-ը Մեծ Հայաստանում։

Վերանորոգչական այս շարժումը, ինչպես մանրամասն մատնացույց էի արել «Հին Հայաստանի առևտրի ու քաղաքների մա-

[1] Տե՛ս Str., XI 2, 18 (499) և XII, 3, 33 (557)։
[2] Տե՛ս Diod., XVIII, 4, 4։

սին» ռուսերեն իմ աշխատության մեջ'[1] սկսվել էր դեռևս Տիգրանից առաջ, գլխավորապես, Ծոփքում, որն անմիջապես հարևանն էր Սելևկյանների թագավորության։

Ծոփքի զարգացմանը մեծ չափով զարկ էր տվել տնտեսական ու կուլտուրական մեծ հեղաշրջումն Ասորիքում և Միջագետքում։ Եվ Ծոփքում էին հիմնվել, ինչպես հայտնի է, Հին Հայաստանի հելլենիստական տիպի առաջին քաղաքները՝ Արշամաշատը և Կարկաթիոկերտը։

Հելլենիզմի ազդեցությունը Ծոփքի և Մեդիայի կողմերից որոշ չափով թափանցած պիտի լիներ, բնականաբար, նաև Մեծ Հայքի հյուսիսային շրջանները։ Այդ ազդեցության պարզ ապացույց են Արմավիրում գտնված Սելևկյան շրջանի հունարեն արձանագրությունները։ Այստեղ ևս Արարատյան դաշտում Արտաշես Ա-ը հիմնել էր, ինչպես տեսանք, Արտաշատ քաղաքը։

Սակայն ավելի լայն չափերով և ավելի վճռական կերպով հելլենիզմի ու հելլենիստական քաղաքային կուլտուրայի տարածումը տեղի ունեցավ Մեծ Հայաստանում Տիգրան Բ-ի ժամանակ։

Վերանորոգչական այս գործը ավելի դժվար էր, իհարկե, իրականացնել Հայաստանում, քան Պոնտոսում, որն ուներ արդեն հելլենական բազմաթիվ քաղաքներ։ Քաղաքների ու քաղաքային կուլտուրայի զարգացման համար անհրաժեշտ էր կուլտուրական հարևան երկրներից Հայաստան փոխադրել ամբողջ քաղաքներ։ Իսկ այդ հնարավոր էր միմիայն բռնի միջոցներով։ Ուստի և Տիգրանը հարկադրված եղավ գաղթեցնել դրսից Հայաստան առևտրականներ, արհեստավորներ և այլ որակյալ աշխատավոր ստրականներ, որոնք հիմք էին դառնալու նրա երկրում հելլենիստական քաղաքային կենցաղի և նեցուկ էին ծառանալու Հայաստանի տնտեսական ու կուլտուրական զարգացման։

Ինչպես վերև տեսանք, հատկապես այդ նպատակով նա բռնի կերպով բնակեցրել էր Հայաստանում Կապպադովկիայի, Կիլիկիայի և, հավանորեն, նաև Ասորիքի, Կորդուքի և Ադիաբենի[2] հելլենիստական այն քաղաքների բնակչությունը, որ նա գրավել էր իր արշավանքների ժամանակ։

Բացի վերև մատնանշված տեղեկություններից՝ այդ գաղթականության մասին կարևոր են ու հետաքրքիր նաև Ստրաբոնի հետևյալ վկայությունները։

---

[1] Տե՛ս „О торговле и городах Армении", էջ 25—31։

[2] Տե՛ս *Plut.*, Lucul., XXVI, 2.

1. Ստրաբոն, XI, 14, 15 (532)՝

«Երբ Տիգրանը զորեղացավ մինչ այդ աստիճան՝ նա հիմնեց մի քաղաք..., որն անվանեց Տիգրանակերտ, և բերեց այդտեղ իր ավերած 12 հելլենական քաղաքների բնակչությունը»։

2. Նույնը, XII, 2, 9 (539)՝

«Վատ վարվեց Տիգրան Արմենը մաժաքցիների հետ, երբ նա արշավել էր Կապպադովկիա։ Նա ամբողջ բնակչությունը քշեց տարավ Միջագետք և նրանց բնակեցրեց մեծ մասամբ Տիգրանակերտում։ Սակայն հետագայում, Տիգրանակերտի նվաճումից հետո, ով որ կարող էր՝ վերադարձավ հայրենիք»։

Նույն գաղթականության մասին, որը բերված է եղել ո՛չ միայն Տիգրանակերտ, այլև Արտաշատ և ուրիշ կենտրոնավայրեր՝ ունեն ուշագրավ վկայություններ նաև Փավստոսը և Մովսես Խորենացին[1], որոնց հաղորդած տեղեկությունները մեջ են բերված և քննված են իմ «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» աշխատության մեջ[2]։

Տիգրան Բ-ի աշխարհակալական պետության քաղաքական ու կուլտուրական կենտրոնն էր լինելու նրա հիմնած Տիգրանակերտ քաղաքը։

Ո՛չ Հայաստանի Արտաշատ մայրաքաղաքը, ո՛չ էլ Սելևկյանների Անտիոք քաղաքը, որոնք գտնվում էին նրա մեծ պետության ծայրամասերում, չէին կարող ծառայել այդ նպատակին։ Բացի այդ, ընտրելով Անտիոքն իբրև աթոռանիստ կենտրոն՝ նա կկորցներ իր կապը Հայաստանի հետ, որը գլխավոր նեցուկն էր ու հիմքը նրա ռազմական հաջողությունների։

Տիգրանակերտ քաղաքի մասին բավականաչափ տեղեկություններ տալիս են հռոմեական ու հունական մատենագիրները, որոնք նկարագրել են Լուկուլլոսի արշավանքը Հայաստան և Տիգրանակերտի պաշարումն ու առումը։

Համաձայն Ապպիանոսի վկայության՝[3] Տիգրանակերտ քաղաքը շրջապատված էր 50 կանգուն բարձրությամբ պարիսպներով, որոնք այնքան լայն էին, որ նրանց մեջ շինել էին ձիերի համար ախոռներ և պահեստանոցներ։

---

[1] Տե՛ս Փավստոս, IV, գլ. ԻԴ և ԾԵ, Խորենացի, II, գլ. ԺՁ, ԺԹ, ԿԵ, III գլ. ԼԵ։

[2] Տե՛ս էջ 216—219։

[3] Տե՛ս App., Mithr., 84.

*Քաղաքի ներսում գտնվում էր ամուր ու անմատչելի միջնաբերդը։ Իսկ պարիսպներից դուրս Տիգրանը շինել էր տվել իր փառահեղ պալատը, որի շուրջը գտնվում էին պարտեզներ, զբոսարաններ, որսատեղեր և ձկնավազաններ։ Բացի այդ, այս տեղերի մոտ կառուցել էին նաև ամուր ամրոց։*

*Բռնի կերպով Տիգրանակերտ էին գաղթեցրել ո՛չ միայն վերոհիշյալ հելլենիստական քաղաքների բնակիչներին, այլև հայ ազնվականներին ու մեծամեծներին, որոնց գույքը ընդդիմության դեպքում ենթարկվում էին բռնագրավման։ Պլուտարքոսի վկայությամբ՝*[1] *թե այս ազնվականությունը և թե քաղաքի հասարակ ժողովուրդն աշխատում էին հաճոյանալ թագավորին և աջակցում էին քաղաքի կառուցման և ընդարձակման։*

*Մոմզենը*[2] *և հայագետ բանասերներից շատերը, որոնք օգտվել են նրա պատմությունից, հին Տիգրանակերտը համեմատել են Նինվեի և Բաբելոնի հետ։ Լեման-Հաուպտը նույնպես կարծում է, որ Տիգրանի հիմնած այս քաղաքն ըստ իր տիպարի ու հատակագծի նման է եղել ասորեստանյան քաղաքներին*[3]*։ Այս զուգադրումը, ինչպես ցույց ենք տվել «Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին» ռուսերեն մեր աշխատության մեջ*[4]*, ճիշտ չէ։ Բաբելոնը և Նինվեն ո՛չ ըստ իրենց տիպի և ո՛չ էլ ըստ իրենց հատակագծի չեն կարող, ի՛հարկե, նման ու համապատասխան համարվել այն քաղաքներին, որոնք հիմնվում էին հելլենիստական պետություններում։*

*Ինչպես հայտնի է մատենագրական աղբյուրների նկարագրություններից՝ Բաբելոնում և Նինվեում անծայրածիր տարածության վրա և առանձին թաղամասերի միջև սփռված էին վարելահողեր, մարգագետիններ, այգիներ և մրգատու անտառակներ։ Այդ քաղաքների բնակիչների գլխավոր պարապմունքն էր ո՛չ այնքան առևտուրը և արհեստները, որքան գյուղական տնտեսությունը։ «Նինուէ,—վկայում է Հովնան մարգարեն,—էր քաղաք մեծ Աստուծոյ՝ իբրև գնացս երից աւուրցս ճանապարհի» (Գ, 2)։ Իսկ Բաբելոնի շրջապատը հավասար էր համաձայն Հերոդոտոսի վկայության*[5] *480 ստադիոնի (= մոտ 85 կիլոմ.)։*

---

[1] Տե՛ս *Plut.*, Lucul , XXVI, 3.

[2] Տե՛ս „Римская история“, III, М., 1885, էջ 41.

[3] Տե՛ս Armenien einst und jetzt, Berlin, 1910, էջ 396—399։

[4] Տե՛ս „О торговле и городах Армении“, էջ 56։

[5] *Herod.*, I, 178։

Պարզ է ուրեմն, որ Տիգրանակերտը, որը 69 թվին շրջապատել ու պաշարել էին Լուկուլլոսի համեմատաբար փոքրաթիվ զորքերը, չէ կարող բաղդատվել ու նույնացվել վերոհիշյալ քաղաքների հետ, այլ նա ըստ իր հատակագծի և առևտրական-արդյունագործական բնույթի նման ու համապատասխան կարող էր լինել հելլենիստական տիպի քաղաքներին։

Տիգրանակերտի տեղադրության մասին պատմագիտական երկերում հայտնված են հակասական կարծիքներ։ Նույն անհաշտելի տարաձայնությունները հատուկ են նաև մատենագրական հին աղբյուրներին[1]։ Այս խնդիրը, որ համարվում էր վիճելի, այժմ կարելի է համարել վերջնականապես լուծված։ Հին Տիգրանակերտը գտնվել է, ինչպես մանրամասն պարզել են գերմանական գիտնականներ Լեման-Հաուպտը և Բելքը, Տիգրիս գետի հյուսիսակողմում և այժմյան Ֆարկին քաղաքի տեղում[2]։ Եվ հետաքրքիր է, որ նույն այս կարծիքը նրանցից առաջ հայտնել էր նաև գերմանական ֆելդմարշալ Մոլտքեն, ըստ երևույթին, որոշ ռազմագիտական նկատառումներով[3]։

Որ հին Տիգրանակերտի տեղը եղած պիտի լիներ, իրոք, այժմյան Ֆարկինում՝ այդ հաստատում են նաև իմ նոր դիտողությունները Պևտինգերյան քարտեզի կայարանների տեղադրության մասին, որոնք գտնվում էին Տիգրանակերտի հյուսիսակողմում։ Ինչպես մատնանշված է «Հայաստանի գլխավոր ճանապարհները» իմ աշխատության մեջ[4], հռոմեական քարտեզի Cyldiza կայարանը այժմյան Կիլդիզն է, որը գտնվում էր Տիգրանակերտից Արտաշատ տանող ճանապարհագծում և ճիշտ և ճիշտ 50 հռոմեական մղոն կամ մոտ 75 կիլոմետր հեռավորության վրա Ֆարկին—Տիգրանակերտից, ինչպես այդ ցույց է տրված Պևտինգերյան քարտեզում։

Տիգրանակերտ քաղաքի համար տեղի այդ ընտրությունը կարելի է համարել հաջող ու նպատակահարմար ո՛չ միայն քաղաքական, այլ նաև ստրատեգիական տնտեսական տեսակետ-

---

[1] Սկզբնաղբյուրների տարաձայնությունները մանրամասն մատնանշված են իմ «Տիգրան Բ-ը և Հռոմը» աշխատության մեջ, էջ 64—66 [տե՛ս նաև սույն հատորում, էջ 463—464 խմբ.]։

[2] Տե՛ս *Lehmann-Haupt*, Armenien einst und jetzt, I, էջ 381—429 և 501—523։

[3] Տե՛ս *Moltke H.*, Briefe über Zustände und Begebenheiten in der Türkei 1835—1839, Berlin, էջ 287։

[4] «Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 90—92։

ներից։ Եվ, իրավի, այժմյան Ֆարկինն ընկնում է Տիգրանի հիմնած աշխարհակալության ճիշտ մեջտեղում և, գտնվելով Տավրոսյան լեռների հարավային ստորոտներում՝ բավականաչափ պաշտպանված է և պատսպարված։ Նաև առևտրական հաղորդակցությունների տեսակետից Տիգրանակերտի տեղադրությունը խիստ հարմար էր, որովհետև նա գտնվում էր Աքեմենյան Պարսկաստանի արքունական մեծ ճանապարհի մոտ և զանազան ուղղություններով կապված էր առևտրական խոշոր կենտրոնների հետ։

Նորագույն մի քանի աշխատություններում մատնանշվում է, որ վերոհիշյալ հելլենիստական քաղաքների բնակիչները, որոնց մեծագույն մասը, ինչպես տեսանք, Տիգրան Բ-ը բռնի կերպով գաղթեցրել էր Տիգրանակերտ՝ օգտագործվել էին այստեղ իբրև արքունի ստրուկներ[1]։

Այդ պնդումը, ինչպես ցույց է տրված իմ «Հասարակակարգի խնդիրը Նախարշակունյան Հայաստանում» հոդվածում՝ հակասում էր այդ գաղթականությանը վերաբերող տեղեկություններին, որ հաղորդում են մեզ հունա-հռոմեական մատենագիրները։ Հայկական աղբյուրներից ևս մեզ հայտնի է, որ քաղաքներում տեղավորված այս գաղթականները, որոնց մեծագույն մասը հրեաներ և ասորիներ էին՝ մեծ դեր էին կատարում հին Հայաստանում՝ որպես առևտրականներ ու որակյալ արհեստավորներ։ Եվ միանգամայն պարզ է, որ սրանք հաստատվել էին Հայաստանի քաղաքներում ո՛չ իբրև արքունի ստրուկներ, այլ իբրև քաղաքացիներ, որոնք, հավանորեն, այստեղ ևս, ինչպես և Պոնտոսում, Կապպադովկիայում ու Պարթևական թագավորության մեջ՝ ստացել էին հատուկ իրավունքներ ու արտոնություններ։

Նոր հիմնած Տիգրանակերտ քաղաքը, ըստ երևույթին, կենտրոն էր դառնալու ո՛չ միայն միջազգային առևտրի, արհեստների ու արդյունագործության, այլև հելլենիստական գիտության, արվեստի ու գրականության։ Հայաստան էր հրավիրված, ինչպես վկայում է Պլուտարքոսը[2], Աթենքից աքսորված նշանավոր հռետոր Ամփիկրատիսը, որը արհամարհանքով մերժել էր Սելևկյանների հրավերը և ապրում էր Տիգրանի արքունիքում։

Մետրոդորոս Սկեպսացին[3], որը հայտնի գրող էր և փիլիսոփա և որին Պլինիոսն անվանում է ատող հռոմայեցիների

---

[1] *Համեմատե* Խ. Սամվելյան, *Ստրկությունը Հին Հայաստանում, Տեղեկագիր պատմության և գրականության ինստիտուտի, գիրք II, Երևան, 1937, էջ 95։*

[2] *Plut*, Lucul., X II, 7.

[3] **Տե՛ս** *Plut.*, Lucul., XXII., **3—6.** *Strab.*, XIII, **1, 55 (609)**։

(misoromaeus)[1], քաղաքական ականավոր գործիչ էր նախ Պոնտոսում և ապա Հայաստանում։ Մետրոդորոսը, ինչպես հայտնի է, գրած է եղել Տիգրան Բ-ի ընդարձակ պատմությունը, որից, դժբախտաբար, որևէ հետք չէ մնացել։ Տիգրանակերտում, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը[2], կառուցված է եղել հատուկ թատրոն, որի համար զանազան տեղերից հրավիրված են եղել հույն դերասաններ։ Պլուտարքոսի ուշագրավ մի վկայությունից հայտնի է, բացի այդ, որ Տիգրանի որդին՝ Արտավազդ, գրած է եղել հունարեն լեզվով ողբերգություններ, ճառեր և պատմական երկեր, որոնցից մի քանիսը ծանոթ են եղել հռոմայեցիներին մինչև իսկ Պլուտարքոսի ժամանակ[3]։

Հատուկ ուշադրության արժանի է նաև այն, որ Հայաստանում ես, ինչպես և Պոնտոսում ու հելլենիստական այլ երկրներում, հելլենիզմի ազդեցությամբ տեղի էր ունեցել կրոնների մերձեցում, և հայ հեթանոսական աստվածները միաձուլվել էին հունականների հետ։ Արամազդը համապատասխան էր համարվել Զևսին, Միհրը՝ Հեփեստոսին, Անահիտը՝ Արտեմիդեին, Նանեան՝ Աթենասին, Աստղիկը՝ Աֆրոդիտեին, Տիրը Ապոլոնին և Վահագնը Հերակլեսին։ Կրոնական այս ազդեցությունն այնքան զորեղ էր, որ Տիգրան Բ-ի ժամանակ, ինչպես վերև տեսանք, հայկական մեհյաններում էին զետեղել Հունաստանից և Փոքր Ասիայից բերված հունական աստվածների արձանները։

Բոլոր այս փաստական տեղեկություններից, որ վերաբերում են Տիգրան Բ-ի վերանորոգչական գործունեությանը՝ կարելի է հետևցնել, որ ո՛չ միայն Կապպադովկիայում և Պոնտոսում, այլև սրանց հարևան Հայաստանում հակադիր հոսանք էր սկսվել ընդդեմ տիրող իրանիզմի և հիմք էր դրվել հին կենցաղի հելլենականացման։

Նույն այս փաստերը ցույց են տալիս, որ դժվար է համաձայնել Մոմզենի հետ, որը, ինչպես հայ հռոմեական, նույնպես և Միհրդատյան կռիվները, բնորոշում է իբրև հետադիմական մի շարժում արևմտյան ժողովուրդների դեմ։ Առավել ևս սխալ է, անշուշտ, նրա պնդումը, որ իբր թե Միհրդատը եղել է ասիական այդ ռեակցիայի առաջնորդն ընդդեմ հելլենիզմի[4]։

---

[1] *Plin.*, Nat. Hist., XXXIV, *16, 2.*

[2] *Plut.*, Lucul., XXIX, *4.*

[3] *Plut*,, Crassus, XXXI,*1.*

[4] *Տե՛ս* „Римская история", II, M., *1887, էջ 273—275.*

Ավելի ճիշտ պետք է համարել ֆրանսիական գիտնական Մորգանի դիտողությունը։

«...Բոլոր այն պետություններից,—ասում է Մորգանը[1],—որոնք ստեղծվել էին Աղեքսանդրի նվաճումներից հետո, մնացել էին միմիայն փլատակներ ու միմիայն թագավորիկներ, որոնք անկարող էին զորավիգ լինել հելլենական փառքին։ Պոնտոսի և Հայաստանի երկու մեծ թագավորները վերջիններն էին, որոնք կկարողանային վերանորոգել իրենց պետություններում Հելլադայի գեղեցիկ քաղաքակրթությունը»։

Տիգրան Բ-ի թագավորության ժամանակը բացառիկ մի շրջան էր Հին Հայաստանի քաղաքական հզորացման և կուլտուրական ու տնտեսական ներքին զարգացման։ Ուստի և հասկանալի է, որ վերոհիշյալ պատմական անցքերը նյութ էին դառել անգիր բանահյուսության, պատմվել ու երգվել էին Հին Հայաստանում, և նրանց հիշողությունները պահպանվել էին երկար դարերի ընթացքում։

Տիգրան Բ-ի մասին նույնիսկ Խորենացու ժամանակ գոյություն են ունեցել ավանդություններ և բանաստեղծական առանձին մի գրվածք («Ջորս հագներգությունք»)[2], որի հեղինակն օգտըված է եղել, հավանորեն, պատմական հին երգերից և ավանդություններից։ Բայց Խորենացին այս աղբյուրների մեջ հիշատակված Տիգրանին, որը, անտարակույս, Արտաշեսյան տոհմի Տիգրան Բ-ն է, համաձայն իր սխալ ժամանակագրության համարել է դաշնակից պարսից Կյուրոս թագավորի։

Ինչպես ցույց են տվել Գելցերը և Աբեղյանը[3], Տիգրանի մասին այն ընդարձակ հիշողությունները, որ բերված են Խորենացու Պատմության առաջին գրքի ԻԴ—ԼԱ գլուխներում, մեծ մասամբ, պատմական են և համապատասխանում են օտար աղբյուրների հաղորդած տեղեկություններին։

Եվ իրավի, ո՛չ միայն Մարաց տերության նվաճումը, այլև ներքև մեջ բերված վկայությունները վերաբերում են պարզապես Տիգրան Բ-ին կամ Մեծին։

1. Խորենացի, I, գլ. ԻԴ՝

«Բայց անցնենք այսուհետև պատմելու ինչ որ կա Տիգ-

---

[1] Տե՛ս J. Morgan, Histoire du peuple armenien, Paris, 1919, էջ 80։

[2] Տե՛ս Խորենացի, I գլ. ԻԱ և ԻԴ։

[3] Պրոֆ. Հ. Գելցեր, Համառօտ պատմութիւն Հայոց, թարգմ. Հ. Գր. Վ. Գալեմքյարյանի, Վիեննա, 1897, էջ 8—9 և Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները, Վաղարշապատ, 1901, էջ 448—474։

քանի ու նրա գործերի մասին։ Որովհետև սա մեր բոլոր թագավորներից ամենահզորն էր և ամենախոհեմը, և սրանցից, ինչպես և բոլորից՝ ավելի քաջը։ Նա... տապալեց մարաց իշխանությունը և, նվաճելով հույներին՝ ոչ քիչ ժամանակ իրեն հնազանդեցրեց։ Եվ նա, ընդարձակելով իր բնակության սահմանները՝ հասցրեց մինչև բնակության մեր վերջին հին ծայրերը։ Բոլոր իր ժամանակակիցներին նա նախանձելի եղավ, իսկ հետագաներիս ցանկալի են թե ինքը և թե իր ժամանակը»։

[«Բայց անցցուք այսուհետև որ ինչ յաղագս Տիգրանայ և որ ի նմանէ գործք։ Քանզի սա ամենեցունց թագաւորացն մերոց հարստագոյն և խոհեմագոյն, և արանցն այնոցիկ և ամենեցուն քաջ։ Որ և... զՄարացն ի բաց բառնալով զիշխանութիւնն, և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրեաւ նուաճեալ հնազանդէր։ Եւ զսահմանս մերոյ բնակութեանս ընդարձակեալ՝ ի հինսն մեր հասուցանէր յեզերս ծայրից բնակութեան, և ամենեցունց որ առ իւրովքն էին ժամանակօք՝ նախանձելի, և զկնեացս ըղձալի ինքն և ժամանակ իւր»][1]։

2. Խորենացի, I, գլ. ԻԴ՝

«Տղամարդկանց գլուխը կանգնելով և ցույց տալով քաջություն՝ նա մեր ազգը բարձրացրեց և մեզ, որ լծի տակ էինք՝ դարձրեց շատերի վրա լուծ դնողներ ու հարկապահանջներ։ Նա բազմացրեց արագ կերպով կուտակումները ոսկու, արծաթի և պատվական քարերի, նաև զանազան գույնի ու գործվածքի զգեստների՝ հավասարապես տղամարդկանց ու կանանց համար։ Դրանով տգեղները գեղեցիկների նման սքանչելի էին երևում և գեղեցիկները դառնում էին այն ժամանակի հասկացողությամբ, ընդհանրապես, դյուցազուններ։ Հետևակ մարտիկները ձիերի վրա բարձրացան, պարսավորները դառան առհասարակ հաչող աղեղնավորներ, և շերտավորները զինվեցին սրերով ու նիզակներով, իսկ մերկերը ծածկվեցին վահաններով և երկաթե զգեստներով։ Եվ երբ նրանք մի տեղ գային՝ բավական էին նրանց միայն տեսքը և նրանց պահպանակների ու զենքերի փայլմունքը և շողյունը թշնամիներին փախցնելու համար»։

---

[1] Տե՛ս հրատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս, 1913, էջ 71։



12—318

[«Արանց կացեալ գլուխ և արուԹիւն ցուցեալ՝ զազգս մեր բարձրացոյց, և զընդ լծով կացեալսն՝ լծադիրս և հարկապահանջս կացոյց բազմաց. մԹերս ոսկւոյ և արծաԹոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէս պէս գունից և անկուածոց, արանց միանգամայն և կանանց՝ հասարակաց բազմացոյց. որովք տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք, և գեղաւորքն ըստ ժամանակին առ հասարակ դիւցազնացեալք։ Հետևակամարտքն ի վերայ ուսոց ձիոց բերեալք, և պարսաւորքն առ հասարակ դիպաղեղունք, և շերտաւորքն ի սուսեր և ի տէգ նիզակի վառեալք. մերկքն վահանօք և զգեստուք երկաԹեօք պարածածկեալք։ Որոց ի մի վայր հաւելոց բաւական էր տեսիլն միայն, և որ ի նոցայն պահպանակաց և զինուց փայլմունք և շողիւնք՝ զԹշնամիսն արտահալածել։ Խաղաղուխեան և շինուԹեան բերող, իւղով և մեղու զամենայն հասակ պարարեալ»][1]։

3. Նույնը, I, գլ. Լ՝

«Պատմվում է և այս, Թե այս գործերը կատարելուց հետո՝ [Տիգրանը] իր քույր Տիգրանուհուն մեծ բազմուԹյամբ ու Թագավորավայել կերպով ուղարկում է Հայաստան՝ այն ավանը, որ շինել էր ինքն իր անունով, այսինքն՝ Տիգրանակերտ»։

[Պատմի և այս, Թէ զկնի այսպիսի իրաց կատարման՝ յուղարկէ Թագաւորապէս զքոյր իւր Տիգրանուհի մեծաւ ամբոխիւ ի Հայս, յաւանն՝ զոր շինեաց յիւր անուն Տիգրան, որ է Տիգրանակերտ...][2]։

4. Նույնը, III, ԻԸ՝

«Եվ հիմքը փորելով՝ քանդեցին տապալեցին [Տիգրանակերտի պարիսպը], որի պատերը պինդ ու հարմար շինել էր Հայկազնյան Տիգրանը»։

[«Եւ նգախարխար արարեալ զայն [զպարիսպն Տիգրանակերտի], որ ի հայկազնոյն Տիգրանայ հոծեալ և յարմարեալ որմունքն, քակեալ ընկեցին»][3]։

5. Նույնը, I, գլ. ԼԱ՝

«Ինչպես ինձ պատմողիս հաճելի է հավաստի կերպով պատմել իմ պատմուԹյան մեջ, իրոք բուն և առաջին Տիգրանի ու նրա գործերի մասին այն, ինչ որ Երվանդյան Տիգրանի

---

[1] Տփղիս, 1913, էջ 72։

[2] Նույնը, էջ 82—83։

[3] Նույնը, էջ 290։

մասին պատմվում է, նույնպես և քեզ ընթերցողիդ հաճելի պետք է լինեն ինչպես այդ մարդն ու նրա գործերը, նույնպես և այն, որ նրա մասին պատմվում է։ Ուստի և ես սիրում եմ ըստ քաջության այսպես կոչել—Հայկ, Արամ, Տիգրան. որովհետև ըստ իր քաջերի սերունդները քաջեր են, իսկ ընդմեջ եղողներին ով ինչպես ուզում է՝ թող կոչի։ Բայց դյուցազնության մտքով և մեր ասածը ճշմարիտ է։ Ոչ մի Արամազդ չկա, իսկ նրանց համար, որոնք կամենում են, որ Արամազդ լինի՝ մինչև իսկ չորս այլևայլ Արամազդ կոչվողներ կան, որոնցից մեկն է միայն Կունդ Արամազդը։ Այսպես և շատերն են կոչվում Տիգրան, սակայն սա մեկ և միակն է Հայկազուններից... որ ճափշտակեց Մարաց ու Պարսից իշխանությունը»։

[Հաւաստի պատմել զբուն և զառաջին Տիգրան և որ ինչ ի նմանէ գործք՝ սիրելի, որպէս ինձ պատմողիս ի մէջ իմոց բանից որ ինչ յաղագս Երուանդեանս Տիգրանայ բանք՝ եղիցի և քեզ ընթերցողիդ, որպէս այրն և գործք, այսպէս և զնմանէ բանք։ Վասն որոյ սիրեմ կոչել այսպէս ըստ քաջութեան—Հայկ, Արամ, Տիգրան. քանզի ըստ քաջացն ազգք քաջք. իսկ միջոցքն՝ որպէս դէպ ումեք թուիցի կոչել։ Բայց ըստ դիւցազնութեանն կարծեաց՝ ճշմարիտ է և ասելս մեր։ Ոչ Արամազդ ոք, այլ ի կամեցողսն լսին լինել Արամազդ չորից ևս այլոց անուանեցելոց ոմանց Արամազդ. յորոց մի է և Կունդ ոմն Արամազդ։ Այսպէս և բազումք անուանեալք Տիգրան, մի է և միայնակ սա ի Հայկազանցս որ... զիշխանութիւնն Մարաց և Պարսից յինքն յափշտակեաց»][1]։

Այս վկայություններից առաջինում ճշտությամբ արտահայտված ու պահված է Տիգրան Բ-ի կարճատև տիրապետությունը Սելևկյան թագավորության հողերի վրա[2]։ Երկրորդ վկայության մեջ, որն առանձնապես կարևոր է ու հետաքրքիր, մատնացույց է արված հայկական զորաբանակի վերակազմությունը և նկարագրված են նաև Հայաստանի լիառատ ու բարեկեցիկ վիճակը և այն մեծ հարստությունները, որ կային երկրում Տիգրանի ժամանակ։ Երրորդ և չորրորդ վկայությունները ևս միանգամայն ստույգ են և պատմական և վերաբերում են Տիգրանակերտի շինությանը՝ Աղձնիքում։ Իսկ հինգերորդ վկայության մեջ

---

[1] Տփղիս, 1913, էջ 85։

[2] Տե՛ս Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 454։

*հիշատակված է նույնպես, որ Տիգրան Բ-ը նվաճել էր Մարաց և Պարսից (այսինքն՝ պարթևների) տերությունը։*

*Վերոհիշյալ երկրորդ վկայության մեջ, ինչպես մատնանշել էինք նախորդ մեր աշխատություններից մեկում*[1], *«իւղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ» արտահայտությունը հռետորական մի չափազանցություն է, որը ճիշտ կարող է լինել, գլխավորապես, իշխող դասերի նկատմամբ։ Միանգամայն սակայն հնարավոր է և հավանական, որ հարստացած ու փարթամացած այս դասերի զորեղացման և սրանց իշխանության ու արտոնությունների ընդարձակման հետ միասին կարող էր ծանրացած լինել իրավական դրությունը շինական դասի։*

*Որ Խորենացու մոտ պատմական են ու արժանահավատ նաև վերոհիշյալ հիշողությունները Հայաստանում կիտված դրամական ու այլ հարստությունների մասին՝ այս հաստատում են, ինչպես կտեսնենք ներքև, Պլուտարքոսի վկայությունները հսկայական այն գումարների մասին, որ տարել էին Հայաստանից Լուկուլլոսը և Պոմպեյոսը։*

---

[1] *Տե՛ս* „О торговле и городах Армении“, *էջ 65—66։*

# ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

## ՄԻՀՐԴԱՏԻ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ՈՒ ՓԱԽՈՒՍՏԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՎ ՆՈՐ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՊԱՏՐԱՍՏՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԵՐԻ ԴԵՄ

1. Միհրդատյան երրորդ պատերազմը.—Տիգրանի չեզոքությունը.—Միհրդատի դաշինքը Սերտորիուսի հետ.—պատերազմի պատճառը:—2. Միհրդատի պարտությունը Բիթանիայում.—օգնության մերժումը և Տիգրանի չեզոքությունը:—3. Միհրդատի պարտությունը Կաբիրայի մոտ և փախուստը Հայաստան:—4. Լուկուլլոսի պահանջը իրեն հանձնելու Միհրդատին և Տիգրանի մերժումը.—Պլուտարքոսի սխալ տեղեկությունը պատերազմի հայտարարման մասին Տիգրանին.—Ապպիոսի դավադրական գործունեությունը Հայաստանում:—5. Պատերազմի ավարտումը և Պոնտոսի քաղաքների ավերումն ու կողոպտումը:—6. Հայկական պատերազմի նախապատրաստումը.—Հռոմեական Ասիայի տնտեսական դրության թեթևացումը թիկունքի ապահովման նպատակով:—7. Լուկուլլոսի գաղտուկ ու գողաբարո հարձակման դիտավորությունը:—8. Ելուզակ Լուկուլլոս—Վայկունի մասին չար հիշատակը Հայաստանում:

Միհրդատյան առաջին պատերազմից հետո Սուլլայի և Միհրդատի միջև կայացել էր միայն բանավոր համաձայնություն և Դարդանոսում կնքված դաշնադրությունն (84 մեր թվ. առ.) ուներ ավելի շատ ժամանակավոր զինադադարի բնույթ, քան հաստատուն ու տևական խաղաղության։

Թե ո՛րքան անկայուն էր բանավոր այս հաշտությունը՝ այդ նկատվեց դաշնադրությունից արդեն մեկ տարի հետո։

83 թվին Հռոմեական Ասիայի կառավարիչ Մուրենան, անտես առնելով Դարդանոսի դաշինքը՝ ինքնագլուխ կերպով, առանց Հռոմեական ժողովրդի ու ծերակույտի հավանության, վերսկսեց պատերազմը Միհրդատի դեմ։ Միհրդատյան այս երկրորդ պատերազմը, որը տևեց մոտ երեք տարի (83—81 մեր թվ. առ.), դադարեցվեց Սուլլայի հրամանով միայն այն ժամանակ, երբ Հռոմեա-

կան պարտված զորքերը հարկադրված էին ետ նահանջել Պոնտոսից։

Այս երկրորդ պատերազմից հետո՝ Միհրդատը, որն անկեղծ կերպով կողմնակից էր խաղաղության՝ ուղարկեց Հռոմ հատուկ դեսպանություններ (79 և 78 թթ.) և խնդրեց, որ Դարդանոսի դաշնադրությունը ձևակերպվի գրավոր կերպով և վավերացվի հռոմեական ծերակույտի կողմից։ Եվ երբ նրա այս դիմումները մնացին անհետևանք՝ նա համոզվեց, որ կռիվն անխուսափելի կերպով վերսկսվելու է հակառակ իր ցանկության։

Եթե Միհրդատյան երկրորդ պատերազմը բռնկվեց այս բանակցություններից հինգ տարի հետո՝ դրա պատճառն այն էր, որ Սուլլայի մահից հետո (78 մեր թվ. առ.) Հռոմում կառավարության դեմ ոտքի էր կանգնել դեմոկրատական կուսակցությունը և Իսպանիայում վտանգավոր ընթացք էին ընդունել վտարանդի դեմոկրատների կռիվները Սերտորիուսի հանճարեղ ղեկավարությամբ։

Պատմագիտության մեջ տիրող կարծիքը, որ Տիգրանն այս երկրորդ պատերազմում ևս լքել էր Միհրդատին և խախտել իր կնքած դաշինքը՝ չէ հաստատվում սկզբնաղբյուրների ուշադիր ու քննական ուսումնասիրությամբ։ Հայ-պոնտական դաշինքը չէ վերաբերել, ինչպես վերև տեսանք, հռոմեա-պոնտական պատերազմներին։ Միհրդատի դաշնակիցը եղել է երրորդ պատերազմում ոչ թե Տիգրանը, որի նոր հիմնած մեծ պետությունն ապահոված չէր պարթևական հարձակումների վտանգից, այլ հռոմեական հեղափոխական դեմոկրատիայի առաջնորդ Սերտորիուսը, որը հավաքել ու կազմակերպել էր Իսպանիայում Հռոմի պահպանողական կառավարության դեմ հզոր մի զորաբանակ։ Միհրդատը շատ լավ հասկանում էր, որ վիթխարի ու զորեղ Հռոմը գրեթե անպարտելի է։ Նա որոշել էր չկռվել այժմ երկու հռոմեական կուսակցությունների հետ միաժամանակ, ինչպես նա այդ արել էր առաջին պատերազմի ընթացքում։ Նրա գլխավոր հույսն այժմ այն էր, որ նա կկարողանա փրկել մոտալուտ վտանգից իր երկիրը, դաշնակցելով ու համաձայնության գալով դեմոկրատական կուսակցության հետ ընդդեմ իշխող կառավարության։

Դաշինքը Սերտորիուսի հետ կնքվել էր հետևյալ պայմաններով՝ պրովինցիա Ասիան մնալու էր հռոմայեցիների իշխանության ներքո, իսկ Բիթանիան, Պափլագոնիան և Կապպադովկիան, որոնք մշտական կռվախնձոր էին Հռոմի և Պոնտոսի միջև և որոնք Պոն-

տոսի համար ունեին կենսական նշանակություն՝ ստանալու էր Միհրդատը։

Միհրդատյան երրորդ պատերազմի պատճառ էր ծառայել Բիթանիայի միացումը Հռոմին, որով խախտվում էր Դարդանոսի դաշնագրությամբ հաստատված քաղաքական հավասարակշռությունը։ Հռոմը, հաստատելով իր տիրապետությունը Բիթանիայում՝ ո՛չ միայն դառնում էր Պոնտոսի անմիջական հարևանը, այլև տեր ու տնօրենն էր դառնում սևծովյան նեղուցների։ Այնուհետև նա, երբ ուզենար՝ կարող էր փակել նեղուցները և քայքայել Պոնտոսի ու Բոսֆորի առևտրական մեծ քաղաքների տընտեսական բարեկեցությունը։

Պատերազմը սկսվեց 73 թվի գարնանը։ Պոնտական զորքերի դեմ, որոնք առաջ էին շարժվել դեպի Կապպադովկիա և դեպի Բիթանիա՝ հռոմեական ծերակույտն ուղարկեց Կոտտային ու Լուկուլլոսին։ Պատերազմի սկզբում Կոտտայի զորքը և հռոմեական նավատորմիղը ծանր պարտություն կրեցին Քաղկեդոն քաղաքի մոտ և Բոսֆորի նեղուցում։ Սակայն շուտով Կիզիկոս քաղաքի մոտ բախտը դավաճանեց Միհրդատին և նա ծանր պարտություն կրեց ու հազիվհազ կարողացավ նահանջել իր երկիրը։ Կռվի բեմը դառավ այնուհետև Պոնտոսը, որը ենթարկվեց ավերածության և անխնա կողոպտման Լուկուլլոսի զորքերի կողմից։

Միհրդատը սկսեց իր երկրում հավաքել նոր զորքեր և, ամրանալով իր երկրի լեռնային շրջաններում՝ աշխատեց նախապատրաստել նոր դիմադրություն։ Միևնույն ժամանակ նա օգնություն խնդրեց իր որդուց՝ Մաքարեսից, որը Բոսփորի փոխարքան էր, նաև պարթևներից, սկյութներից ու Տիգրան Բ-ից։

Սակայն նրա նոր նախաձեռնությանը պոնտական զորքերի ծանր անհաջողություններից հետո այլևս ոչ ոք հավատ չէր ընծայում։ Թշնամու կողմն էին անցնում այժմ շատերը մինչև իսկ Պոնտոսի մեծամեծներից։ Նրան դավաճանում էին նույնիսկ սեփական իր դեսպանները։

Միհրդատի հարազատ որդին՝ Մաքարեսը ո՛չ միայն չօգնեց հորը, այլ ինքը հարմար առիթ էր սպասում և հռոմայեցիների հետ ուզում էր կնքել անջատ հաշտություն։

Տիգրանի մոտ ուղարկված դեսպանության մասին Պլուտարքոսը պատմում է հետևյալը։

«Մետրոդորոսը Միհրդատի կողմից,—ասում է Պլուտարքոսը,—ուղարկված էր Տիգրանի մոտ իբրև դեսպան

*խնդրելու օգնություն հռոմայեցիների դեմ։ Սրան հարցրել էր Տիգրանը՝ «իսկ դու ինքդ, ո՛վ Մետրոդորոս, ի՞նչ խորհուրդ կտաս այս մասին»։ Եվ նա՝ կամ Տիգրանին օգտակար լինելու համար և կամ չցանկանալով որ Միհրդատը փրկվի՝ ասում է՝—«իբրև դեսպան խորհուրդ եմ տալիս, իսկ իբրև խորհրդատու՝ խորհուրդ չեմ տալիս»[1]։*

*Միհրդատի դիմումի մասին Տիգրանին ուշագրավ մի վկայություն ունի նաև Մեմնոնը, որն ըստ իս ավելի արժանահավատ է, քան Պլուտարքոսի վկայությունը։*

*«Միհրդատը... ուղարկեց,—վկայում է Մեմնոնը,—դեսպաններ Սկյութացոց թագավորների, Պարթևաց թագավորի և յուր փեսայի՝ Տիգրան Արմենի մոտ։ Սակայն առաջիններից նա ստացավ մերժում, իսկ Տիգրանը, որին շարունակ անհանգստացնում էր ու աղերսալից խնդրում Միհրդատի դուստրը՝ վերջ ի վերջո խոստացավ օգնել»[2]։*

*Տիգրանի այս խոստումը մնացել էր, ըստ երևույթին, իբրև սոսկ խոստում։ Սկզբնաղբյուրների մեջ նրա իրական օգնության ու աջակցության մասին ո՛չ միայն չկա որևէ տեղեկություններ, այլ ընդհակառակը՝ կան ակնարկներ նրա չեզոքության մասին, որ նրանք համարում են աններելի մի սխալ։*

*Պատմագիտական նորագույն երկերում ևս Տիգրանի չեզոքությունը համարում են քաղաքական մեծ սխալ, որովհետև այժմ վճռվում էր ո՛չ միայն Պոնտոսի, այլև Հայաստանի և Առաջավոր Ասիայի բախտն ու ապագան։*

*Այս գնահատությունը, իհարկե, ուղիղ է, սակայն Տիգրանին դատապարտողները պետք է ի նկատի ունենան միևնույն ժամանակ նրա դժվար կացությունը։ Հանդես գալով հռոմայեցիների դեմ՝ նա հարկադրված պիտի լիներ պատերազմելու ո՛չ միայն սրանց, այլ նաև իր ոխերիմ թշնամիների՝ պարթևների հետ։ Գուտշմիդը կարծում է նույնիսկ, որ Տիգրանի վերջին կռիվը պարթևների դեմ շարունակվում էր նաև յոթնասնական թվականների սկզբներին՝ երբ Միհրդատի դեսպանները եկել էին օգնություն խնդրելու նրանից[3]։ Չպետք է նաև մոռանալ, որ հռոմեական նենգ ու ճարպիկ դիվանագիտությունն աշխատել էր իր հերթին, ինչպես դժվար չէ կռահել Պլուտարքոսի վկայություն-*

---

[1] Տե՛ս *Plut.*, Lucul., XXII, 4.

[2] Տե՛ս գլ. Lipsiae, 1816, էջ 64։

[3] Տե՛ս *Gutschmid*, Geschichte, Irans, Tüdingen, 188, էջ 82—83։

ներից[1], տպավորություն ստեղծել իր խաղաղ տրամադրության մասին Տիգրանի հանդեպ։

71 թվի գարնանը կռիվը Միհրդատի դեմ վերսկսվեց Պոնտոսի կենտրոնական շրջանում Կաբիրայի մոտ (այժմ Նիկսար կամ Նէոկեսարիա, Կելկիդ-Լիկոս գետի ափին)։ Թեև Կաբիրայի մոտ սկզբում Միհրդատն ունեցավ որոշ հաջողություններ, սակայն շուտով նրան դավաճանեցին զորավարներից մի քանիսը, որոնց կաշառել էր Լուկուլլոսը։ 71 թվի ամառը պոնտական զորքերը ծանր պարտություն կրեցին Կաբիրայի մոտ, և Միհրդատը հազիվ կարողացավ փախչել փոքրաթիվ զորախմբով նախ Կոմանա և ապա այստեղից Տալավրայի վրայով, որի տեղադրությունը դեռևս բավարար կերպով լուսաբանված չէ, եկավ Հայաստան ու խնդրեց իր փեսայից տալ իրեն օգնություն և ապաստարան (71 թվի աշնանը)։

Հայաստանում նրան տրվեց, իրոք, ապաստարան. սակայն Տիգրանը, կամենալով չեզոքություն պահպանել՝ նրան չհրավիրեց իր մոտ արքունիք, այլ հրամայեց թագավորավայել պատիվներ մատուցանել աներոջը և պահել նրան իր պետության հեռավոր ու սահմանային երկրներից մեկում[2]։

Պատմագետներից ոմանք, հավատ ընծայելով Պլուտարքոսի անհավաստի տեղեկություններին՝ մեղադրում են Տիգրանին, որ նա չէ ուզեցել հանդիպել ու մխիթարել իր դժբախտ ազգականին և որ նա ուղարկել է Միհրդատին վատառողջ ու ճահճային մի վայր[3]։ Նրանք աչքաթող են արել, որ Պլուտարքոսի թե այս և թե այլ նման գունավորված տեղեկությունները, որոնք չեն համապատասխանում մյուս աղբյուրների վկայություններին՝ հնարովի հերյուրանքներ են և չունեն պատմական նշանակություն[4]։

Տիգրանի վարքագիծը պարտված ու իր մոտ փախած Միհրդատի հանդեպ ունեցել է, իրապես, քաղաքական դրդապատճառներ։ Տիգրանը, ինչպես Միհրդատյան երկրորդ պատերազմի ընթացքում, նույնպես և Միհրդատի վերջնական պարտությունից հետո, աշխատել էր պարզապես խույս տալ պատերազմից,

---

[1] Տե՛ս *Plut.*, Lucul., XIV 4—7.

[2] Տե՛ս *Memnon.* գլ. 46 և *App.*, Mithrid., 82.

[3] Տե՛ս *Plut.*, Lucul., XXI!, 1.

[4] Պլուտարքոսի անհավաստի վկայություններին հավատ են ընծայել Ռեյնաքը, Էքհարդը և ուրիշները տե՛ս *Reinach*, Mithridate Eupator, էջ 346 և *Eckhardt.* Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, XI, 4, էջ 402։

հույս ունենալով, որ չեզոքության պահպանմամբ նա կկարողանա պահպանել նաև խաղաղությունը Հռոմի հետ։

71—70 թվի ձմեռը Լուկուլլոսը անցկացրեց իր նոր նվաճած Կաբիրա քաղաքում՝ Հայաստան փախած Միհրդատի պալատում։ Կաբիրայի մոտ տեղի ունեցած մեծ կռվից հետո, 71 թվի վերջերին, նա ուղարկեց Տիգրանի մոտ իր կնոջ եղբորը՝ Ապպիոս Կլավդիոսին և պահանջեց, որ Տիգրանը հռոմայեցիների ձեռքը հանձնե պոնտական թագավորին։

Պլուտարքոսի անհավաստի վկայությունները այս դեսպանության մասին, որոնք առանց ստուգման մեջ են բերված գրեթե բոլոր պատմագիտական երկերում՝ մանրամասն քննված են իմ «Տիգրան Բ-ը և Հռոմը» աշխատության մեջ։

Պլուտարքոսի այդ վկայություններից անհավաստի է և հնարովի նրա հաղորդած հիմնական տեղեկությունը, որ իբր թե Ապպիոս Կլավդիոսը, մերժում ստանալով Տիգրանից՝ նրան հայտարարել էր պատերազմ։ Այդ չէ կարող ճիշտ լինել, որովհետև, ինչպես հայտնի է, հռոմեական ծերակույտը չէր լիազորել Լուկուլլոսին պատերազմ հայտարարել Տիգրանին։ Միանգամայն անհավանական է, բացի այդ, որ 71 թվի վերջերին Լուկուլլոսը պատերազմ հայտարարած լիներ Տիգրանին, որովհետև նա դեռևս չէր նվաճել պոնտական խոշոր քաղաքները և չէր ապահովել իր թիկունքը։ Եվ վերջապես, կարո՞ղ էր միթե Լուկուլլոսն այնքան անհեռատես ու անզգույշ լինել, որ հայկական իր արշավանքը սկսելուց մոտ մեկ ու կես տարի առաջ պատերազմ հայտարարեր Տիգրանին, ժամանակ տալով նրան ու հնարավորություն նախապատրաստելու ռազմական իր ուժերը պատերազմի համար։

Պլուտարքոսի հիշյալ վկայության սխալ լինելն այնքան ակներև է, որ նրա այդ տեղեկությունն անտես է արվածականավոր պատմագետների երկերում, օրինակ՝ Մոմզենի, Ռեյնաքի և ուրիշների ուսումնասիրություններում։

Ապպիոս Կլավդիոսի ընդունելության մասին Անտիոքում ավելի վստահելի են, անտարակույս, Մեմնոն Հերակլեացու հաղորդած տեղեկությունները, որովհետև սա, պատկանելով փոքրասիական հույն հեղինակների խմբին՝ Հռոմի հակառակորդների նկատմամբ չունի այն միտումնավորությունն ու աչառու վերաբերմունքը, որ հատուկ են հռոմեական պատմագիրներին։ Եվ ուշագրավ է, որ պատերազմի հայտարարության մասին

Մեմնոնը ոչինչ չգիտե։ Բայց նա հանգամանորեն մեջ է բերում Տիգրանի պատասխանն Ապպիոսին, որը միանգամայն հիմնավոր էր ու արդարացի և, հավանորեն, հենց այդ պատճառով չի հիշատակված Պլուտարքոսի ու հռոմեական պատմագիրների երկերում։ Մեմնոնի ասելով, Տիգրանը պատասխանել էր Ապպիոս Կլավդիոսին և հայտնել էր նաև նամակով Լուկուլլոսին, որ բոլոր մարդիկ իրեն կպախարակեն և որ իր ազգականության առջև նա ինքը խայտառակ կլինի՝ եթե հռոմայեցիների ձեռքը հանձնե իր կնոջ հորը[1]։

Ապպիոսը, որն, ըստ երևույթին, գաղտնի հրահանգ էր ունեցել գրգռելու ու ապստամբեցնելու Տիգրանի դեմ Ասորիքի հունական քաղաքները և Տիգրանին հպատակված օտար ժողովուրդները՝ հաջողությամբ էր կատարել Լուկուլլոսի հանձնարարությունները։ Նա հռոմայեցիների կողմն էր գրավել դժգոհ իշխաններից ոմանց, որոնց թվումն էր Կորդվաց Զարբիենոս թագավորը։ Իսկ Ասիայի մի քանի քաղաքներին, որոնք խոստացել էին ապստամբել Տիգրանի դեմ՝ նա խորհուրդ էր տվել սպասել մինչև Լուկուլլոսի գալը։

70 թվի գարնանը հռոմայեցիները երկար պաշարումից հետո կարողացան գրավել Հերակլեան և Սինոպը, իսկ 70 թվի աշնանը՝ նաև Ամիսոսը։ Այս քաղաքների անկումից հետո՝ Հռոմը տեր էր դառնում ամբողջ Պոնտոսի, և պատերազմը Միհրդատի հետ կարելի էր համարել վերջացած։

Նվաճված երկիրը, մանավանդ, նրա հելլենիստական հարուստ ու շքեղ քաղաքները մատնվեցին անխնա կողոպուտի։ Հռոմեական զորքերը հրդեհեցին ու խպառ ավերեցին փարթամ ու հոյակապ Հերակլեա քաղաքը և հռչակավոր ու գեղեցիկ Ամիսոսը, որը համարվում էր Պոնտոսի Աթենքը։ Եվ բնորոշ ու հատկանշական է, որ պատմագիտական մեծահռչակ մի քանի երկերի մեջ զորավար Լուկուլլոսը, հռոմայեցի ամենախոշոր ավարառուն և կողոպտիչը, որը քանդել ու հիմնովին կործանել էր հելլենիստական մեծ ու ճոխ կուլտուրան Պոնտոսում՝ համարվում ու անվանվում է պաշտպան հելլենական քաղաքակրթության և «հելլենիզմի ջերմ երկրպագուն»[2]։

Քաղաքները նվաճելուց հետո՝ Լուկուլլոսը նույն այս 70 թվին վերադարձել էր Պոնտոսից պրովինցիա Ասիա։ Եւ խիստ ուշա-

---

[1] Տե՛ս Memnon, գլ. XLV։

[2] Տե՛ս օրինակ, Ферреро, Величие и падение Рима, I, перевод *А. Захарова*, М., 1915, էջ 161 և 184։

գրավ է ու հետաքրքիր, որ նա Հայաստան արշավելուց առաջ անհրաժեշտ էր համարել թեթևացնել հռոմեական Ասիայի տնտեսական հուսահատական դրությունը։

Այս նահանգն առաջին Միհրդատյան պատերազմից հետո (88—84 մեր թվ. առ.) վճարելու էր ի պատիժ իր անհավատարմության, բացի հինգ տարվա հարկերից, նաև քսան հազար տաղանդ ռազմատուգանք։ Նա այժմ կատարելապես սնանկացել ու արյունաքամ էր եղել, վճարելով հսկայական իր պարտքի վաշխառուական տոկոսները։ Հռոմեական ֆինանսիստները, որոնք դրամական փոխառություն էին տվել աղքատացած այս երկրին՝ իրենց ստանալիք տոկոսների դիմաց բռնագրավում էին այստեղ տները, վարելահողերը, այգիները, հասարակային շենքերը, հափշտակում ու Իտալիա էին տանում արվեստի իրերը, արձանները, պատկերները, տնակահույքը, ոսկեղենն ու արծաթեղենը և վերցնում էին, բացի այդ, նաև պարտապանների երեխաներին կամ հենց իրենց պարտապաններին ու որպես ստրուկ ուղարկում նույնպես Իտալիա։ Չնայած սակայն ամբողջ այս նահանգի կատարյալ սնանկացման՝ նրա սկզբնական քսան հազար տաղանդ պարտքը 84 թվից հետո ո՛չ միայն չէր պակասել, այլ դառել էր 70 թվին քառասուն հազար տաղանդ (=մոտ 168 միլիոն մարկ կամ 84 միլիոն ոսկի ռուբլի)։

Վճարել այս հսկայական գումարը և նրա վրա բարդվող տոկոսները հռոմեական Ասիայի ուժերից վեր էր և այլևս հնարավոր չէր։ Հարստահարվող բնակչությունը չափից դուրս գրգռված էր հռոմայեցիների և, բնականաբար, նաև հռոմեական իշխանության դեմ։ Լուկուլլոսն անհրաժեշտ համարեց հանդարտեցնել բնակչության այդ դժգոհությունը և աշխատեց թեթևացնել նրա տնտեսական դրությունը, որ դառել էր արդեն անտանելի։ Մասնավոր պարտքերի համար նա արգելեց վերցնել 12%-ից ավելի, արգելեց նմանապես ավելագրել չվճարված տոկոսների վրա նոր տոկոսներ և կարգադրեց, որ պահանջվող տոկոսների գումարը չլինի ավելի քան սկզբնական պարտքի գումարը[1]։ Եթե պարտապանները չէին վճարում իրենց պարտքերը՝ պարտատերերն իրավունք ունեին վերցնելու նրանց եկամուտի միայն մեկ քառորդ մասը[2]։

---

[1] Տե՛ս *Plut.*, Lucul., XX. 3։

[2] Նույնը, XX, 3։

Որ իր բարենորոգումները և հռոմեական Փոքր Ասիայի խաղաղացումը Լուկուլլոսը կարևոր ու անհրաժեշտ էր համարել Հայաստան արշավելուց առաջ՝ այդ ուշագրավ մի փաստ է, որն ուշադրության չէ առնվել պատմագիտական երկերում։ Շատ պարզ է, որ նա, որոշած լինելով պատերազմել Տիգրանի դեմ՝ պետք է ապահովեր իր թիկունքը արևմուտքում, որոշ զիջումներ անելով հռոմեական Փոքր Ասիայի հուսահատված ու հուզված բնակչությանը։

Պատմագիտական երկերում բնավ չէ լուսաբանված նաև Լուկուլլոսի Հայաստան արշավելու նենգ ու խորամանկ ծրագիրը, որն առանց դժվարության քողազերծվում ու մերկացվում է սկզբնաղբյուրների քննությամբ։

Տիգրանի դեմ իր արշավանքը Լուկուլլոսը կազմակերպում էր բոլորովին թաքուն կերպով։ Նա աշխատել էր ըստ իս քնեցնել Տիգրանի աչալրջությունը և ծրագրել էր հանկարծ ու անսպասելի հարձակվել ու ջախջախել նրան, նախքան նա հավաքած ու նախապատրաստած կլիներ իր ցրված զորամասերը։

Միանգամայն բնական է ու հասկանալի, որ Լուկուլլոսի այդ հարձակումն առանց պատերազմի հայտարարության, որով ոտնահարվում էին միջազգային օրինականության կարգերը, չեն ուզում բացահայտ կերպով խոստովանել հռոմեական աղբյուրները և, մասնավորապես, Պլուտարքոսը, որը գրել էր Լուկուլլոսի ո՛չ թե անաչառ պատմությունը, այլ ներբողյանը։ Սակայն պարզ ակնարկներ կան այդ մասին Ապպիանոսի մոտ, որն իր պատմության այս մասում օգտվել էր, հավանորեն, ոչ թե հռոմեական, այլ փոքրասիական չեզոք հույն աղբյուրից։

Ապպիանոսի համապատասխան վկայությունից, որ ամբողջությամբ մեջ ենք բերում, երևում է, որ Լուկուլլոսը՝ վերադառնալով 70 թվին[1] հռոմեական Փոքր Ասիա՝ նախ աշխատել էր տպավորություն գործել, որ իբր թե պատերազմը վերջացել է, և ապա շարժվել էր հանկարծ ու արագ երթերով դեպի Հայաստան։

«Արդ՝ հենց այսպես,—պատմում է Ապպիանոսը,—Լուկուլլոսն ավերեց Սինոպը և Ամիսոսը։ Նա բարեկամու-

[1] Լուկուլլոսի վերադարձը Փոքր Ասիա պետք է ենթադրել ո՛չ թե Սինոպ ու Ամիսոս քաղաքների առումից առաջ 71 թվին, ինչպես պլուտարքոսի հաղորդագրության համաձայն կարծում են Ռեյնաքը, Մոմզենը և ուրիշները, (տե՛ս Mithridate Eupator, էջ 152 և „Римская история“, III, էջ 52), այլ այդ քաղաքների առումից հետո 70 թվին, ինչպես վկայում է Ապպիանոսը։

թյուն հաստատեց Միհրդատի որդու՝ Մաքարեսի հետ, որը Բոսֆորի թագավորն էր և ուղարկել էր իրեն ոսկե պսակ։ Ապա նա Տիգրանից պահանջեց Միհրդատին։ Իսկ ինքը, վերադառնալով Ասիա, որը դեռ վճարում էր Սուլլայի սահմանած տուգանքները, որոշեց որ վճարեն եկամուտի մեկ քառորդը, և հարկ դրեց նաև տների ու ստրուկների վրա։ Այնուհետև նա իր հաղթության առթիվ զոհաբերության հանդիսատոներ կատարեց, որպես թե պատերազմը հաջող կերպով ավարտված է։ Եվ զոհաբերություններից հետո նա ռազմի ելավ Տիգրանի դեմ, որը չէր տվել իր ձեռքը Միհրդատին»[1]։

Որ Լուկուլլոսն արշավել էր Հայաստան ծածկաբար ու հանկարծ՝ այդ ինչպես կտեսնենք, ակնարկում են նաև Սալլուստիուսը և Մեմնոնը։ Եվ ինձ թվում է, որ իր գաղտուկ ու գողաբարո հենց հարձակման պատճառով Լուկուլլոսը, որի անունն աղճատված ձևով պահվել է հայ ժողովրդական ավանդության մեջ՝[2] խիստ վատ հիշատակ է թողել Հայաստանում և հիշվում է Վայկուն անունով իբրև «ելուզակ», այսինքն՝ իբրև ավազակ, որը վրդովել էր հայ երկրի խաղաղությունը և հարկադրել էր Տիգրանին վերադառնալ Պտղոմայիդ քաղաքից Հայաստան։

Լուկուլլոս-Վայկունի մասին այդ հին ավանդությունը հիշատակված է Խորենացու Պատմության հետևյալ հատվածում։

Խորենացի, II, գլ. ԺԴ՝

«Եվ այնուհետև նա [Տիգրանը] դիմում է Պաղեստինացոց աշխարհը վրեժ առնելու Պտղոմայիդում Կլեոպատրայից՝ նրա Դիոնիս որդու գործած հանցանքի համար իր հոր դեմ։ Նա շատ գերիներ առնելով և հրեաներից՝ պաշարում է Պտղոմայիդ քաղաքը։ Իսկ հրեաների Աղեքսանդրիա թագուհին, նույնը և Մեսաղինա, որը կինն էր Հուդա Մակաբեի Շմավոն եղբոր որդի Հովհաննեսի որդի Աղեքսանդրի և որն այդ ժամանակ կառավարում էր հրեական թագավորությունը՝ շատ նվերներ տալով Տիգրանին՝ այնտեղից ետ դարձրեց։ Որովհետև Տիգրանը նաև լուր է ստացել, որ Վայ-

---

[1] *App.* Mithrid., 83 և 84։

[2] Գրիգոր Խալաթյանցի ենթադրությունը (տե՛ս Армянские Аршакиды, М., 1903, էջ 64 և 375), որ իբր թե Խորենացին կամայական կերպով Լուկուլլոսին դարձրել է «Վայկուն ելուզակ»՝ հավանական չէ։ Խորենացու այդ վկայությունը հիմնված է ըստ իս ժողովրդական ավանդության վրա։

կուն անունով ինչ-որ մի ավազակ վրդովում է Հայոց երկի-րը, գրաված լինելով Ամուր լեռը, որը մինչև այժմ այդ ավազակի անունով կոչվում է Վայկունիք»։

[«Եւ նոյն հետայն դիմէ [Տիգրան] յաշխարհն Պաղես-տինացւոց՝ վրէժս պահանջել ի Պտղոմայիդ Կղէոպատրայ յաղագս Դիոնիսի որդւոյ նորա առ հայր իւր յանցանաց։ Առեալ գերի բազում և ի Հրէից՝ նստի շուրջ զՊտղոմայիդ քաղաքաւ։ Իսկ դշխոյն Հրէից Աղեքսանդրիայ, որ և Մեսա-ղինայ, որ էր լեալ կին Աղեքսանդրի, որդւոյ Յոհաննու, որդւոյ Շմաւոնի, եղբօր Յուդայ Մակաբէի, որ զայնու ժա-մանակաւ ունէր զթագաւորութիւնն Հրէից, ինչս բազումս տալով՝ դարձոյց զնա անտի։ Քանզի էր լուեալ և համբաւ, թէ Վայկուն ումն անուն յեղուզակ խռովէր զերկիրն Հայոց, զլեառն Ամուր կալեալ, որ մինչև ցայժմ յանուն յեղուզակին կոչին Վայկունիք»][1]։

Որ Լուկուլլոսն արշավել էր Հայաստան հանկարծակի ու առանց պատերազմ հայտարարելու՝ այդ կարելի է համարել, ինչպես կտեսնենք նաև ներքև, անվիճելի։

---

[1] Տփղիս, 1913, էջ 128—129։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ԼՈՒԿՈՒԼԼՈՍԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՎ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ԱՌՈՒՄԸ

1. Տիգրանի անհոգությունը.—Լուկուլլոսի հանկարծակի հարձակումը.—արշավող զորքի ճանապարհի ուղղությամբ:—2. Խուճապը Տիգրանակերտում և Տիգրանի նահանջը.— Մեհրուժանի հերոսական դիմադրությունը և մահը:—3. Տիգրանակերտի համառ դիմադրությունը.—հայկական հեծելազորի ներխուժումը պաշարված քաղաքը և Տիգրանի կանանոցի ու գանձերի ազատումը:—4. Տիգրանի ու Միհրդատի տեսակցությունը և խորհրդակցությունը:—5. Տիգրանի վերադարձը.—Միհրդատի դեսպանների խորհուրդը.—Տիգրանի որոշումը:—6. Տիգրանակերտի ճակատամարտը.—ճակատամարտի տեղը.—հռոմեական և հայկական զորքերի թիվը:—7. Ճակատամարտի մասին տարբեր ավանդությունները.—Պլուտարքոսի վկայության անհավաստիությունը.—Ապպիանոսի տարաձայն հաղորդագրությունը—Սալլուստիուսի վկայությունը:—8. Տիգրանի զորքի կորուստները:—9. Տիգրանակերտի ճակատամարտի ծանր հետևանքները.—Տիգրանակերտի առումը.— Տիգրանի մեծ պետության քայքայումը:

Լուկուլլոսի ծրագրած պատերազմը Տիգրանի դեմ նախապատրաստվում էր, ինչպես ասացինք, թաքուն կերպով ու դավադրաբար։

Տիգրանը չէր սպասում և ամենևին չէր նախազգում իր երկրին սպառնացող մեծ վտանգը։ Նա գիտեր, ըստ երևույթին, որ հռոմեական ծերակույտը չէր լիազորել Լուկուլլոսին նոր պատերազմ սկսելու Հայաստանում։ Նրան նաև հայտնի էր, հավանորեն, որ հռոմեական ծերակույտը, վտանգավոր համարելով պատերազմը հզոր Հայաստանի դեմ՝ չէր համաձայնել միջամտել Ասորիքի գործերին և գահ բարձրացնել Սելևկյան օրինավոր ժառանգներին։ Ծերակույտի խաղաղասեր այդ հակումները ինչպես և պատերազմի վերջացման առթիվ Լուկուլլոսի Եփեսոսում կազմակերպած հանդեսները՝ պիտի վստահություն ներշնչած լինեին

Տիգրանին, որ պատերազմի վտանգը հռոմայեցիների հետ կարելի է համարել կանխված։ Ուստի և նա ո՛չ միայն չէր նախապատրաստվում պատերազմի, այլ, ընդհակառակը, անհոգ ու հանգիստ զբաղված էր Տիգրանակերտ քաղաքի շինարարության ավարտման աշխատանքներով։

69 թվի գարնանը Լուկուլլոսն իր անձնական նախաձեռնությամբ ու պատասխանատվությամբ սկսեց հայկական արշավանքը։

Ինչպես հաղորդում է Սալլուստիուսը[1], ամենաարագ երթերով նա անցավ Կապպադովկիայի միջով և շտապեց դեպի Եփրատ գետը, որը բաժանում էր Հայաստանին կցված հին Ծոփքը Արիոբարզանի թագավորությունից։ Այստեղ Մելիտենի մոտ[2] Կապպադովկիայի թագավորը ծածկաբար պատրաստել էր տվել ձմեռվա ընթացքում լաստանավեր, որոնցով Լուկուլլոսը հեշտությամբ անցավ Եփրատ գետը և դուրս եկավ Ծոփք։ Որ Լուկուլլոսը Եփրատ գետն անցել էր թաքուն ու անակնկալ կերպով՝ այդ բացի Սալլուստիուսից վկայում է նաև Մեմնոնը[3]։

Մեջբերված այս տեղեկությունները, որոնք պատմական են և միանգամայն արժանահավատ՝ լռության են տրված Պլուտարքոսի կողմից, որը պարզապես աշխատել է սքողել այս արշավանքի գաղտագողի ու ելուզակային բնույթը։ Այս տեղեկությունների փոխարեն, որոնք հայտնի են եղել իրեն Սալլուստիուսի պատմական երկից՝ Պլուտարքոսը տալիս է հրաշքներով լի հեքիաթական մի պատմություն։ Նրա պատմելով, երբ Լուկուլլոսը հասավ Եփրատի ափը՝ հորդացած գետը, խոնարհվելով նրա առջև, ցամաքեց ու ճանապարհ տվեց հռոմեական զորքին։

Եփրատ գետն անցնելուց հետո հռոմեական զորքն առաջ շարժվեց և դարձյալ արագացրած երթով գնաց Ծոփքի միջով դեպի Տիգրիս գետը, նպատակ ունենալով հանկարծակիի բերելու Տիգրանին և անակնկալ կերպով հարձակվելու Տիգրանակերտ քաղաքի վրա։ Ծոփքի բնակչությունը ո՛չ միայն ցույց չէր տվել որևէ դիմադրություն, այլ, ըստ երևույթին, ինքը հոժարակամ հնազանդվել էր Լուկուլլոսին և, հայթայթելով հռոմեական բանակին անհրաժեշտ պարեն՝ մեծապես հեշտացրել էր նրա առաջխաղացումը դեպի Տիգրանակերտ։

---

1 Տե՛ս fr. IV, 11, (Leibzig, 1856).

2 Համեմատե Tacitus, Annales, 26—27։

3 Memnon, 56.

Արշավող զորքի ճանապարհի ուղղությունը Եփրատ գետից մինչև Տիգրիս գետը պատմագիտական երկերում որոշված է միանգամայն բավարար ճշտությամբ։ Լուկուլլոսի երթուղու այս մասը ենթադրում են այժմյան Խարբերդի դաշտի միջով ու Արղանայի վրայով դեպի Տիգրիս գետն Ամիդ-Դիարբեքիրի մոտ. ուրեմն՝ այն հին ճանապարհագծով, որն Աքեմենյան Պարսկաստանի «արքայական ճանապարհի» մի մասն էր[1] և համապատասխանում էր Պևտինգերյան քարտեզում նկարագրված Melitene ad Tygrem ուղեգծին։

Տիգրիս գետից մինչև Տիգրանակերտ (այժմյան Ֆարկինը), ուր շտապում էր հասնել հռոմեական զորքը, ընդամենը միայն մոտ 150 կիլոմետր էր։ Լուկուլլոսի նենգ ու խորամանկ ծրագիրը իրականանում էր, ինչպես տեսնում ենք, ամենամեծ հաջողությամբ։ Թշնամին կիպ մոտեցել էր Տիգրանակերտին և ահավոր վտանգը կախված էր արդեն Հայաստանի գլխին, իսկ Տիգրանը դեռ ոչինչ այդ մասին չգիտեր և ո՛չ զորք էր հավաքել և ո՛չ էլ կարող էր որևէ կերպ սպառնացող այդ վտանգը կանխել։

Հռոմեական զորքի անակնկալ ներխուժման լուրը Տիգրանակերտում թվաց միանգամայն անհավատալի։ Ապպիանոսի վկայությամբ՝ Տիգրանն այդ լուրը տարածողին համարել էր գրգռիչ ու խռովարար և հրամայել էր կախաղան հանել[2]։

Լրաբերի հաղորդած տեղեկության հաստատումն առաջ բերեց Տիգրանակերտում շփոթություն ու իրարանցում։ Տիգրանը, որը պատերազմի պատրաստություններ դեռ չէր տեսել՝ ստիպված եղավ մասնակի կերպով քաղաքը դատարկել և հեռանալ ապահով մի տեղ։ Որպեսզի կարողանա ժամանակ շահել՝ նա իր զորավարներից մեկին, Մեհրուժանին, տվեց մի փոքր զորամաս[3], ընդամենը՝ երկու հազար հեծելազոր՝ և հրամայեց, որ նա, ինչ գնով էլ որ լինի, կանգնեցնի գոնե ժամանակավորապես թշնամու շարժումը դեպի Տիգրանակերտ։

Մեհրուժանի զորամասի հռոմեական զորքի դեմ ուղարկման մասին միանգամայն վստահելի ու արժանահավատ տեղեկություն է հաղորդում դարձյալ Ապպիանոսը, որն, ինչպես վերև ասացինք, իր պատմության այս մասում օգտվել էր փոքրասիական չեզոք աղբյուրից։

---

1 Տե՛ս իմ աշխատությունը „О торговле и городах Армении", էջ 14—15։

1 App., Mithriq., 84.

3 Նույնը, 84։




Լուկուլոսի ճանապարհը Ծոփքի վրայով դեպի Տիգրանակերտ

գծ. 4

«Երբ Տիգրանը այնուհետև,—վկայում է Ապպիանոսը[1],—հաստատ իմացավ [Լուկուլլոսի ներխուժման մասին], նա ուղարկեց Մեհրուժանին երկու հազար հեծելազորով, որպեսզի նա ուշացնե Լուկուլլոսի գրոհը»։

Պլուտարքոսը տալիս է նաև տեղեկություն Մեհրուժանի հերոսական մահվան մասին հանդուգն ու անհավասար կռվում։ Սակայն թեև նրա այս վկայությունների հիմքը պատմական է, բայց որոշ մանրամասնություններ հնարովի ու անհեթեթ հերյուրանքներ են, որոնց միջոցով նա աշխատում է ըստ իր սովորության անվանարկել Տիգրանին։ Ակներև մի անհեթեթություն է, անշուշտ, Պլուտարքոսի հաղորդած սարքովի տեղեկությունը, որ իբր թե Մեհրուժանի փոքրաթիվ զորքին հրաման էր տրված կենդանի բռնել Լուկուլլոսին և ոչնչացնել հռոմեական ահագին զորաբանակը։

Լուկուլլոսի սրընթաց շարժումը դեպի Տիգրանակերտ առաջացրել էր այստեղ, ինչպես ասացինք, խուճապ ու շփոթ։ Տիգրանի փախուստը քաղաքից կատարվել էր այնքան արագ ու հապճեպ, որ նա չէր կարողացել հետը վերցնել իր կանանոցն ու գանձերը։

Նահանջելով Տավրոսյան լեռներով[2], հավանորեն, այժմյան Ներջիկի և Շենիկի վրայով դեպի իր թագավորության կենտրոնական ու հյուսիսային շրջանները՝ Տիգրանակերտի պաշտպանությունը Տիգրանը հանձնարարել էր Մանկայոս զորավարին։ Սա պետք է դիմադրեր ու պահեր քաղաքը, մինչև որ ինքը զանազան կողմերից կհավաքեր իր զորքերը և կգար նրան օգնության։

Տիգրանակերտի բերդապահ զորքը բաղկացած էր, գլխավորապես, հույներից և կիլիկեցիներից։ Ըստ երևույթին, այս զորքը կազմված էր Տիգրանակերտի քաղաքացիական իրավունքներ ստացած նորաբնակներից, որոնց այստեղ էր գաղթեցրել Տիգրանը Կիլիկիայից և Կապպադովկիայից։

Հռոմեացիների բոլոր ջանքերը գրավելու քաղաքը գրոհով և պատերազմական մեքենաների օգնությամբ մնացին ապարդյուն ու անհետևանք։ Մանկայոսի առաջնորդությամբ բերդապահ զորքը համառ ու տոկուն կերպով դիմադրում էր հռոմայեցիներին, թափելով նրանց գլխին նետերի տարափ։ Իսկ պաշարման մեքենաների վրա պաշարվածները վերևից ածում էին այրվող նավթ, որը ոչնչացնում էր մեքենաները։

Այսպիսով ամիսներ շարունակ Տիգրանակերտը մնաց կան-

---

[1] Նույնը, 84։

[2] *Plut.*, Lucul, XXV, 7.

գուն ու անպարտելի մինչև Տիգրանի վերադարձը նոր կազմված զորաբանակով։

Ուշագրավ է ու հետաքրքիր, որ Պլուտարքոսը ավելորդ է համարել մատնանշել հռոմեական զորքի սկզբնական այս անհաջողությունը։ Նա ոչինչ չի հաղորդում նաև հայկական հեծելազորի հաջող ու հաղթական այն գրոհի մասին, որ հանգամանորեն հիշատակված է եղել փոքրասիական չեզոք աղբյուրներում, որոնցից լայնորեն օգտվել էին Մեմնոնը և Ապպիանոսը։

Այս արժանահավատ աղբյուրներից հայտնի է[1], որ Տիգրանակերտի պաշարման սկզբներում Տիգրանն այստեղ ուղարկել էր մի ընտիր հեծելազունդ, որին հանձնարարել էր պաշարված քաղաքից ազատել իր կանանոցն ու մեծագին գանձերը։ Սրանք գալով այնտեղ և, կտրելով նետաձգությամբ հռոմեական ճամբարից դուրս գալու ճանապարհը՝ դուրս բերին քաղաքից գիշերով Տիգրանի կանանոցն ու թանկագին ամենաարժեքավոր իրերը։

Մեմնոնը և Ապպիանոսը, հենվելով պարզապես փոքրասիական չեզոք աղբյուրների վրա՝ հաղորդում են նաև, որ Տիգրանակերտից հեռանալուց հետո 69 թվի գարնանը և կամ ամառը, Տիգրանը հրավիրել էր իր մոտ Միհրդատին։ Չնայած սակայն այս միանգամայն արժանահավատ վկայությանը՝ բոլոր պատմագետները գերադասություն են տվել Պլուտարքոսի տեղեկություններին, որը հաղորդում է, որ իբր թե Միհրդատի և Տիգրանի հանդիպումը տեղի էր ունեցել դեռ Լուկուլլոսի արշավանքից առաջ և իբր թե նրանք, խորհրդակցելով իրար հետ՝ որոշել էին Կիլիկիայի և Լիկաոնիայի վրայով ներխուժել հռոմեական Փոքր Ասիա[2]։

Պատմագետները ուշադրության չեն առել, որ Պլուտարքոսը և կամ նրա սկզբնաղբյուրը դիտավորյալ կերպով խարդախել են պատմական իրական եղելությունը, որպեսզի թաքցնեն Լուկուլլոսի արշավանքի նենգ ու անիրավ բնույթը և ցույց տան, որ Տիգրանն ու Միհրդատը, դեռ Լուկուլլոսի արշավանքը չսկսած՝ իրար հետ գաղտնի բանակցություններ էին վարել և իրենք հենց նախապատրաստել էին ու սկիզբ դրել պատերազմական գործողությունների։

Որ Տիգրանի ու Միհրդատի տեսակցության մասին մեր նոր բացատրությունը միանգամայն ստույգ է՝ այդ պարզ ցույց է

---

[1] Տե՛ս Memnon, 56 և App., Mithrid., 85.

[2] Տե՛ս Plut., Lucul., XXIII, 6.

տալիս նաև ներքև մեջ բերված Մեմնոնի մի այլ կարևոր ցուցումը, որը բավարարաչափ քննված ու օգտագործված չէ եղել պատմագիտական նախորդ երկերում։

> «Միհրդատը,—պատմում է Մեմնոնը,—մնալով մեկ տարի ու ութն ամիս Հայաստանի կողմերում՝ դեռևս չէր ներկայացել և չէր տեսնվել Տիգրանի հետ։ Եվ երբ Տիգրանը խնդրեց, որ Միհրդատն իրեն տեսության գա՝ նա նրան ընդունեց շքով և արժանի համարեց թագավորավայել պատիվների։ Մոտ երեք օր նա գաղտնի խորհրդակցություն ունեցավ Միհրդատի հետ և ապա բարեկամաբար նրան պարգևեց փարթամ զգեստներ, տվեց տասը հազար հեծելազոր և ուղարկեց Պոնտոս»[1]։

Մեմնոնի այս վկայության համաձայն Տիգրանի տեսակցությունը Միհրդատի հետ տեղի էր ունեցել վերջինիս Հայաստան գալուց քսան ամիս հետո։ Արդ՝ վերև մենք տեսանք, որ Միհրդատը Հայաստան եկել էր 71 թվի աշնանը[2], ուրեմն նրա տեսակցությունը Տիգրանի հետ, համաձայն Մեմնոնի այդ վկայության, պետք է տեղի ունեցած լիներ ոչ թե պատերազմից առաջ, այլ պատերազմը սկսվելուց հետո՝ 69 թվի գարնան վերջերին կամ ամառվա ամիսներին։

Որ Տիգրանը միայն այժմ, մոտ երկու տարուց հետո միայն, թագավորական շքով ընդունեց Միհրդատին՝ այդ միանգամայն հասկանալի է, որովհետև Լուկուլլոսի անսպասելի արշավանքից և պատերազմը սկսվելուց հետո Տիգրանի զգուշավոր ու զուսպ դիրքը Հռոմի հանդեպ, ինչպես և նրա չեզոքությունը, որով նա մտածում էր պատերազմից խուսափել՝ կորցնում էին այլևս իրենց իմաստը։ Եվ բնական է, որ նա միայն այժմ, հասկացած լինելով իր քաղաքական սխալը՝ կարիք ուներ Միհրդատի օգնության և գործակցության։

Տիգրանակերտ քաղաքը, որը պաշարված էր 69 թվի գարնանը՝ համառորեն դիմադրեց հռոմեացիներին, սպասելով որ իրեն օգնության կգա Տիգրանի նոր կազմակերպված բանակը։ Իսկ այդ ժամանակ Տիգրանը հետզհետե իր զորքերը հավաքեց զանազան շրջաններից, նաև իրեն ստորագրված վասալական թագավորություններից և իշխանություններից։ Նրան օգնության եկան, ինչպես հաղորդում է Պլուտարքոսը[3], Ատրպատականի ու

---

[1] *Memnon*, 55.

[2] Համեմատե նաև *Reinach*, Mithridate Eubator, էջ 348։

[3] *Plut.*, XXVI, 6.

Ադիաբենի թագավորները, նաև զորամասեր Աղվանքից, Վրաստանից, Արաբիայից և ուրիշ երկրներից։

69 թվի աշնանը Տիգրանը և նրա զորաբանակը ճանապարհ ընկան և Տավրոսյան լեռներով իջան Հարավ՝ ազատելու պաշարված Տիգրանակերտը։ Տիգրանի այս ճանապարհը էքհարդը ենթադրում է Մշո դաշտից դեպի այժմյան Ներչիկ և այնտեղից դեպի ձախ շեղելով՝ Բատման-սուի ձախ կողմով մինչև Ֆարկին-սուի և Բատման-սուի գետախառնուրդը[1]։

Հենց նույն այս ժամանակ Տիգրանի մոտ եկան, ինչպես վկայում են Մեմնոնը և Պլուտարքոսը, Միհրդատի ուղարկած պատգամավորությունը և նրա հմուտ ու փորձված զորավար Տաքսիլեսը։ Սրանք նախազգուշացրին Տիգրանին, որ նա խուսափե վճռական պատերազմից, որովհետև հռոմեական մշտական ու մարզված զորքը գրեթե անպարտելի է։ Նրանք խորհուրդ տվին, որ նա արգելե, ըստ կարելույն, հռոմեական զորքի պարենավորումը և նրանց մատնե սովածության։ Սակայն Տիգրանին դժվար էր հետևել այդ խորհուրդներին, որովհետև նա, ըստ երևույթին, չէր ուզում և չէր կարող, երկարացնելով պատերազմը՝ զոհ բերել Տիգրանակերտ քաղաքը, որը կարիք ուներ շտապ ու անհապաղ օգնության։

Հելլենիստական այս նոր քաղաքի կառուցման վրա, որ կուլտուրական մեծ ու հոյակապ մի գործ էր՝ ծախսված էին ու գործադրված հսկայական միջոցներ ու աշխատանք։ Այս քաղաքը, համաձայն Տիգրանի ծրագրի, լինելու էր նրա պետության լուսատու կենտրոնը և հետզհետե հեղաշրջելու և նորոգելու էր նրա հայրենի երկրի հետամնաց նահապետական կյանքը։

Տիգրանակերտը, ինչպես տեսանք, նպաստելու էր նաև առևտրի ու արդյունագործության զարգացմանը Հայաստանում և օժանդակելու էր նույնպես հելլենիստական քաղաքակրթության և հելլենական արվեստի ու գիտության տարածմանը։ Պարզ է, ուրեմն, ու հասկանալի, թե ինչո՛ւ Տիգրանը չհետևեց Միհրդատի ու նրա զորավարի խորհրդին և, օգնության շտապելով Տիգրանակերտին՝ ուզեց դադարեցնել նրա պաշարումը։

Ուշագրավ է, որ Լուկուլլոսն ինքը ևս, ինչպես վկայում է Պլուտարքոսը[2], պաշարելով Տիգրանակերտը՝ հասկացել ու նախատեսել էր, որ Տիգրանը չէ կարող այդ հանդուրժել և անպայ-

[1] Տե՛ս Eckhardt, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. X Heft 1, էջ 94։

[2] Plut., Lucul., XXVI, 4.

ման գալու է և ճակատամարտ է տալու իր նոր մայրաքաղաքը փրկելու համար։

69 թվի հոկտեմբեր ամսի սկզբներին Տիգրանի զորաբանակը մոտեցավ Տիգրանակերտին, և ընդհարումը հռոմայեցիների հետ դարավ անխուսափելի։

Տիգրանակերտի ճակատամարտը տեղի էր ունեցել, ինչպես երևում է սկզբնաղբյուրների վկայություններից՝ Նիկեփորիոն (Ֆարկին-սու) գետի մոտ, որից մոտավորապես 750 մետր հեռավորության վրա գտնվում էր մի ցած բլրակ։

Հիմնվելով աղբյուրների և, գլխավորապես, Պլուտարքոսի նկարագրության ու ցուցումների վրա՝ ճակատամարտի տեղը գերմանական գիտնական Բելքը որոշել է Ֆարկին քաղաքի հարավարևելյան շրջանում, այժմյան Ֆարկին-սուի և Բատման-սուի միավորման մոտ գտնվող ձորադաշտում։

Հռոմեական զորքի թիվը Տիգրանակերտի կռվում հռոմեական աղբյուրները ցույց են տալիս, ընդամենը՝ մոտ 15000։ Իսկ Տիգրանի զորքի թիվը Պլուտարքոսը և Ապպիանոսը հաշվում են մոտ 300.000։ Հենվելով այդ թվական տվյալների վրա՝ Մոմզենը, և նրան հետևելով նաև ուրիշ պատմագետներ՝ Տիգրանի զորքի թիվը համարել են հռոմեական զորքի թվից քսան անգամ ավելի[1]։

Սակայն պատմագիտական ավելի նոր ուսումնասիրություններում, օրինակ, Ռեյնաքի, Ֆեռեռոյի, Էքհարդի երկերում՝ Պլուտարքոսի վկայությունը, հատկապես, Տիգրանի զորքերի թվի մասին՝ համարվում է ակներև մի չափազանցություն[2] և գերադասություն է տրվում փոքրասիական չեզոք հեղինակների, Մեմնոնի և Փլեգոն Տրալլացու վկայություններին, ըստ որոնց հայ բանակի զորաթիվը ցույց է տրված 70.000 կամ 80.000[3]։ Որ այս վերջին թվերը նախընտրելի են, այդ, իհարկե, անտարակուսելի է, որովհետև, ինչպես հայտնի է, հռոմեական զորավարներն իրենց պաշտոնական զեկուցագրերում թշնամու բանակի մասին տալիս էին միշտ չափազանցված ու սուտ տեղեկություններ։

Հռոմեական զորքի թվի նկատմամբ բոլոր պատմագետները համամիտ են և Տիգրանակերտի կռվին մասնակցողների ընդհանուր թիվը ենթադրում են 14.000—15.000։ Սակայն, ինչպես շատ

---

[1] Համեմատե Моммсен, Римская история, III, էջ 57. Нач, История римской республики, М., 1908 և ուրիշները։

[2] Տե՛ս Reinach, Mithridate Eupator, էջ 360։ Ферреро. Величие и падение Рима, I, էջ 182, Eckhardt, Klio, Bd. X, 1, էջ 96—100։

[3] Memnon, 57 և Phlegon, fr. 12, Müller, Fr. Hist. gr., III, 606:




Տիգրանակերտի ճակատամարտն ըստ Պլուտարքոսի՝ գծ. 5

ճիշտ նկատել է Ասատուրյանը[1], պատմաբաններն աչքաթող են արել, որ հռոմեական աղբյուրները մատնանշել են միմիայն հռոմեական զորքի թիվը, բայց չեն հիշատակել Հռոմի դաշնակիցների փոքրասիական զորքերը։ Իսկ որ այդ օգնական զորքերը գործոն մասնակցություն էին ունեցել հայկական կռիվներին՝ այդ երևում է հենց իրենց իսկ հռոմեական կամ նաև այլ աղբյուրներից։

Օգնական այդ զորքերը, որոնցից որոշակի հիշատակված են գալատացիները, թրակացիները և բյութանացիները՝ կազմում էին, ըստ երևույթին, Լուկուլլոսի զորաբանակի նշանավոր մասը։ Ուստի և մենք սխալված չենք լինի, եթե Լուկուլլոսի ամբողջ զորքի թիվն ընդունենք Տիգրանակերտի ճակատամարտում ո՛չ թե մոտ 15.000, այլ ավելի քան 30.000։

Այսպիսով հռոմեական ու հայկական բանակների վերոհիշյալ մեկ առ քսան հարաբերությունը, ինչպես տեսնում ենք, ակներև մի սխալ է։ Ընդունելով, որ օգնական դաշնակից զորամասերի թիվը պակաս չէր լինի հռոմեական զորքի թվից՝ դժվար չէ համոզվել, որ Տիգրանի զորքը կարող էր Լուկուլլոսի զորքից ավելի լինել ո՛չ թե քսան, այլ առ առավելն երկու անգամ։

Տիգրանակերտի ճակատամարտը տեղի ունեցավ, ինչպես հայտնի է, 69 թվի հոկտեմբերի 6-ին։ Այդ մեծ ճակատամարտի մասին մեր ձեռքը հասել են երկու տարբեր հաղորդագրություններ, որոնք հիմնված են երկու տարաձայն ավանդությունների վրա՝ հռոմեական և փոքրասիական։ Հռոմեական ավանդությունը պահպանված է, գլխավորապես, Պլուտարքոսի մոտ, որն օգտվել էր Սալլուստիուսի և Տիտոս Լիվիուսի պատմական երկերից, իսկ փոքրասիականը՝ Ապպիանոսի մոտ, որը Լուկուլլոսի արշավանքներին վերաբերող տեղեկությունները քաղել էր, գլխավորապես, փոքրասիական հելլենական որևէ աղբյուրից, թերևս, ինչպես ենթադրում է Ռեյնաքը[2], Նիկողայոս Դամասկացու Պատմությունից։

Պլուտարքոսի մոտ ճակատամարտի մանրամասն նկարագրությունը համեմված է այնպիսի թատերական ու դրամատիկական միջադեպերով, որոնք ըստ իս հավանական ցուցանիշներ են համապատասխան այդ հատվածների անհավաստիության։ Նման կասկածելի դրվագներից է, իմ կարծիքով, ճակատամարտի նկարա-

---

[1] «Քաղաքական վերաբերությիւններ ընդմէջ Հայաստանի և Հռովմեայ», էջ 338—343։

[2] Տե՛ս Mithridate Eupator, էջ 443—449։

գրության հենց սկզբում տրված նրա հետևյալ տեղեկությունը։ Ճակատամարտն դեռ չսկսված, պատմում է Պլուտարքոսը[1], երբ Լուկուլլոսի զորքը բանակ էր գցում գետի մոտ՝ Տիգրանը, տեսնելով փոքրաթիվ այդ զորքը՝ հեգնանքով բացականչել էր,—«Եթե դրանք իբրև դեսպաններ են եկել՝ շատ են, իսկ եթե զինվորներ՝ քիչ են»։ Այս վկայությունը, իհարկե, չէ կարող ճիշտ լինել, որովհետև Պլուտարքոսի մատնանշած հռոմեական ու հայկական զորքերի վերոհիշյալ հարաբերությունը, ինչպես տեսանք, չափազանցված ու սխալ է։

Մյուս օրը լուսաբացին, պատմում է այնուհետև Պլուտարքոսը[2], գետն անցնելուց հետո՝ Լուկուլլոսը հրամայեց թրակական ու գալատական հեծելազորին, որ նա կողքից հարձակվի թշնամու զրահավոր հեծելազորի վրա, որը գտնվում էր աջ թևում։ Իսկ ինքը, իր հետ վերցնելով երկու վաշտ հետևազոր՝ մերկացրած սուրը ձեռքին գնաց թշնամիների դեմ ձեռնակռվի։ Բայց տեսնելով, որ Տիգրանի զորքերի թիկունքում գտնվում է մի բլուր, որը կարևոր դիրք է՝ շտապեց գրավել այդ բլուրը։ Այստեղից նա ինքը ևս իսկույն հարձակվեց զրահավոր հեծելազորի վրա ետևից։ Եվ ծանրաշարժ այս ձիավորները, չկարողանալով դիմանալ հռոմեացիների հարձակմանը թիկունքից ու աջ թևից՝ անկարգ կերպով մատնվեցին փախուստի և իրենց ձիերի հետ միասին ընկան խռնված ու խուճապի մատնված հետևակ զորքի վրա։ Այսպիսով Տիգրանի ամբողջ զորքը պարտություն կրեց առանց ճակատամարտ տալու։

Ապպիանոսի տված ճակատամարտի նկարագրությունը բոլորովին տարբեր է։ Համաձայն նրա հաղորդած տեղեկությունների[3] Լուկուլլոսը ճակատամարտի սկզբում հրամայել էր իր հեծելազորին նեղել թշնամուն ճակատի կողմից և, կեղծորեն ետ փախչելով՝ նրան հեռացնել ու ցրել։ Իսկ ինքը գաղտնաբար անցել էր իր հետևազորի հետ թշնամու թիկունքը և բարձրացել մոտակա բլուրը, որի ստորոտում գտնվում էր թշնամու զրաստագումակը։ Հարձակվելով այդտեղից զրաստագումակի վրա՝ նա փախուստի էր մատնել սրան և ձգել հետևազորի վրա, որը բոլորովին բարոյալքված ընկել էր իր հերթին հեծելազորի վրա։ Այսպիսով Տիգրանի ամբողջ զորքը պարտվել էր առանց մարտի բռնվելու։

---

[1] *Plut.*, Lucul., XXVIII, 4.

[2] *Նույնը, XXVII, 7—9 և XXVIII, 1—9։*

[3] *App.*, Mithrid., 85.




Տիգրանակերտի ճակատամարտը ըստ Ապպիանոսի    գծ. 6.

Պատմագիտական երկերում արժանահավատ է ընդունվում Պլուտարքոսի վկայությունը։ Մինչդեռ միանգամայն ըստ իս հավատալի է ու հնարավոր, որ Լուկուլլոսը կարող էր, իրապես, Տիգրանին խաբելու համար նրա դեմ ճակատի կողմից ուղարկած լինել միմիայն իր արագաշարժ հեծելազորը, իսկ ինքը, վերցնելով հռոմեական ամբողջ հետևազորը, դեռ ռազմադաշտ չհասած՝ կարող էր անցած լինել Թշնամու Թիկունքը և հարձակված լինել գրաստագումակի վրա, ինչպես այդ վկայում է Ապպիանոսը։ Եթե հռոմեական սկզբնաղբյուրները չեն հիշատակում Տիգրանի գրաստագումակը և Լուկուլլոսի ու հռոմեական ամբողջ հետևազորի հարձակումը գումակի վրա՝ այդ բացատրվում է, հավանորեն, նրանով, որ այդ գրոհը չէր կարող համարվել քաջարի ու առանձնապես պատվաբեր մի գործ։

Լուկուլլոսի հաղթության բացառիկ ու առանձնահատուկ բընույթը մատնանշված է նաև Սալլուստիուսի հատվածներից մեկում։ Միհրդատի Պարթևաց թագավորին գրած նամակում, որ մանրամասն մեջ է բերված նրա մոտ՝ Տիգրանակերտի ճակատամարտին են վերաբերում հետևյալ տողերը։

«Որովհետև տեղի նեղվածությունը,—ասված է Միհրդատին վերագրված այդ նամակում,—զորքի բազմությանն արգելք էր հանդիսանում ճակատամարտ տալու՝ Տիգրանի անխոհեմությունը նրանք [հռոմայեցիները] ցուցադրում են իբրև հաղթություն»[1]։

Տիգրանի զորքերի կորուստների մասին հռոմեական հեղինակների տեղեկությունները հիմնապես հակասում են դարձյալ փոքրասիական չեզոք աղբյուրների վկայություններին։ Այդ կորուստների մասին Պլուտարքոսը, հավանորեն, համաձայն Լուկուլլոսի պաշտոնական տեղեկագրի՝ տալիս է միանգամայն սուտ ու չափազանցված Թվեր։ Նրա ասելով՝ Տիգրանի հետևազորից կոտորվել էր ավելի քան 100.000 մարդ և հեծելազորից շատ քչերն էին ազատվել, իսկ հռոմայեցիներից վիրավորվել էին 100 մարդ և սպանվել 5 մարդ։ Ինչպես հայտնի է, նման սուտ Թվեր սովորական էին նաև Սուլլայի պաշտոնական զեկուցագրերում։ Քերոնեայի 67 Թվի ճակատամարտում պոնտական զորքերի կորուստը նա ևս ցույց էր տվել 60.000 մարդ, իսկ հռոմայեցիներինը՝ ընդամենը 14 մարդ։

Թե ի՛նչ արժեք ունեն հռոմեական զորավարների ինքնապարծ ու սուտ հաշվետվությունները՝ այդ շատ լավ գիտեն բոլոր

[1] Տե՛ս *Sallust.*, IV, fr. 69։

պատմագետները։ Ուստի և նրանք ևս հավատ չեն ընծայել վերոհիշյալ թվերին։

Ռեյնաքը և նրա հետևորդները՝ Գարագաշյանը և ուրիշները գերադասել են Օրոսիուսի տված տեղեկությունը[1], որի համաձայն սպանվածների թիվը հայ զորաբանակից ցույց է տրված ընդամենը 30.000 մարդ։ Սակայն այս տեղեկությունն ևս, որը հիմնված է դարձյալ հռոմեական աղբյուրների, հավանորեն, Տիտուս Լիվիուսի հաղորդագրության վրա՝ չէ ընդունում էքհարդը[2]։ Սրա կարծիքով, իրականին կարող է համապատասխան լինել ավելի շուտ Փլեգոն Տրալլացու վկայությունը, որի մոտ Տիգրանի զորքի ամբողջ կորուստը ցույց է տրված մոտավորապես 5000 մարդ[3]։ Այս փոքր թիվն ինձ ևս ավելի ստույգ ու գերադասելի է թվում, որովհետև Փլեգոնի տեղեկությունը ակներևաբար քաղված է փոքրասիական չեզոք աղբյուրից։ Մոմզենը[4] ևս վերոհիշյալ շինծու թվերը թխված ու հերյուրված է համարում Սուլլայի հատուկ ոճով։

Տիգրանի կրած պարտությունը Տիգրանակերտի մոտ, ինչպես մանրամասն մատնանշված է իմ «Տիգրան Բ-ը և Հռոմը» ուսումնասիրության մեջ՝ խիստ չափազանցված է թե հռոմեական աղբյուրներում և թե պատմագիտական նորագույն երկերում։ Այս ճակատամարտը, իրապես, ո՛չ թե իսկական արյունահեղ դիմամարտ էր, այլ խուճապ և փախուստ առանց կռվի։

Խիստ ծանր էին սակայն այս պարտության հետևանքները Տիգրանի նորաստեղծ պետության համար։ Պարտության գլխավոր հետևանքը եղավ Տիգրանակերտ քաղաքի կորուստը և հայկական մեծ պետության քայքայումը։

Հոկտեմբերի 6-ի ճակատամարտից հետո Լուկուլլոսը, ապահոված լինելով իր թիկունքը՝ կարող էր Տիգրանակերտի պաշարումն աներկյուղ ու համարձակ շարունակել։

Այս քաղաքը, որը Մանկայոսի առաջնորդությամբ մոտ հինգ ամիս արիաբար դիմադրել էր հռոմայեցիներին՝ այլևս չէր կարող որևէ օգնություն ակնկալել արքայական բանակից։ Չնայած դրան՝ նա անձնատուր չեղավ և համառորեն շարունակեց կռվել թշնամու դեմ։ Եվ եթե հռոմայեցիներին, այնուամենայնիվ, հա-

---

[1] Տե՛ս *Orosius,* Historia adversus paganos, VI, *3, 6,* նաև *Reinach,* Mithridate Eupator, էջ *362* և Գարագաշյան, Քննական պատմություն, Բ., էջ *145*։

[2] Տե՛ս Klio, Bd. X, *1.*

[3] Տե՛ս fr. *12, Müller,* Fr. Hist. Gr., III, էջ *606*։

[4] Տե՛ս „Римская история", էջ *57*։

չողվեց շուտով Տիգրանակերտը գրավել առանց արյունահեղ ընդհարումների ու մեծ կորուստների՝ դրա պատճառը, ինչպես միաձայն վկայում են հունա-հռոմեական աղբյուրները՝ հույն վարձկան զինվորների ապստամբությունն էր ու դավաճանությունը։ Հռոմայեցիները, մտնելով Տիգրանակերտ՝ անխնա կողոպտեցին քաղաքը։ Պլուտարքոսի պատմելով՝

«Լուկուլլոսն ինքը գրավել էր նրա մեջ գտնվող գանձերը, և քաղաքը, որը բացի այլ հարստություններից ուներ նաև ութը հազար տաղանդ դրամով, տվել էր կողոպտելու զինվորներին։ Բացի այդ, պատերազմական ավարից նա տվել էր նրանցից ամեն մեկին ութհարյուրական դրաքմե»[1]։

Այս մեծ գումարները ցույց են տալիս, որ Տիգրանակերտը, չնայած նոր էր հիմնված՝ ուներ իր մեջ անչափ մեծ հարստություններ։

Տիգրանակերտում, ինչպես վկայում է դարձյալ Պլուտարքոսը[2], իր նորակառույց թատրոնի բացման համար Տիգրանը հավաքած է եղել բազմաթիվ հույն դերասաններ։ Սրանք այժմ օգտագործվեցին Լուկուլլոսի հաղթությանը նվիրված հանդեսների և թատերախաղերի համար։

Տիգրանակերտի անկումով մահացու հարված ստացավ Տիգրանի ծրագրած ու սկսած այն առաջադիմական մեծ գործը, որի նպատակն էր զարգացնել հետամնաց Հայաստանում հելլենական քաղաքային կուլտուրան և հելլենիստական քաղաքակրթությունը։ Լուկուլլոսն իրենց հայրենի քաղաքներն ու երկրըներն ուղարկեց հույներին ու օտարականներին, որոնց, ինչպես վերև տեսանք, վերաբնակեցրել էր Տիգրանն իր նորակառույց մայրաքաղաքում։

Տիգրանի աշխարհակալ մեծ պետության համար Լուկուլլոսի հաղթությունը և Տիգրանակերտի առումն ունեցան քաղաքական խիստ ծանր հետևանքներ։ Տիգրանի նվաճած բոլոր երկրները, որոնք Տավրոսյան լեռնաշղթայից և Տիգրիս գետից դեպի հարավ էին գտնվում՝ Հյուսիսային Միջագետքը, Կորդուքը, Կոմագենը, Ասորիքը և Արևելյան Կիլիկիան՝ անջատվեցին Մեծ Հայաստանից

[1] *Plut.*, Lucul., XXIX, 3։ Ութ հազար տաղանդն արծաթ դրամով հավասար է մոտ 34 միլիոն գերմանական ոսկի մարկի, այսինքն՝ մոտ 17 միլիոն ոսկի ռուբլու, իսկ ութը հարյուր դրաքմեն կամ արծաթ դինարը հավասար է մոտ 560 ոսկի մարկի կամ 280 ոսկի ռուբլու, տես Fr. Hultsch, Griechische und römische Metrologie, Berlin, 1882, էջ 297—299 և 711։

[2] *Plut.*, Lucul., XXIX, 4.

և ընդունեցին Հռոմի գերիշխանությունը։ Միայն Միջագետքի մի մասը և Մծբին քաղաքը մնացին առժամանակ Տիգրանի եղբոր՝ Գուրասի իշխանության տակ։

Տիգրանակերտի անկումից հետո, 69/68 թվին, Լուկուլլոսը և նրա զորքը ձմեռեցին Կորդուքում։ Մենք վերև արդեն տեսանք, որ Կորդուքը դավաճանել էր Տիգրանին և գաղտնի կերպով համաձայնություն էր եկել Ապպիոս Կլավդիոսի հետ ու անցել հռոմայեցիների կողմը։ Տիգրանը, որ դեռ Լուկուլլոսի արշավանքից առաջ տեղեկություն էր ստացել Կորդվաց Զարբիենոս թագավորի դավաճանության մասին՝ հրամայել էր նրան սրի անցկացնել ընտանիքի հետ միասին։ Հռոմեական զորքը կարողացավ այժմ հայերին թշնամացած այս երկրում ո՛չ միայն հանգիստ ու աներկյուղ ձմեռել, այլև ստանալ պարենավորում և օգտվել այստեղ եղած հացի առատ պաշարներից։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# 68—67 ԹՎԵՐԻ ԿՌԻՎՆԵՐԸ ԵՎ ԼՈՒԿՈՒԼԼՈՍԻ ՆԱՀԱՆՋԸ

Տիգրանի և Միհրդատի նոր պատերազմի պատրաստությունները.—բանակցություններ պարթևների հետ.—պարթևների չեզոքությունը.—հայկական զորքի վերակազմությունը։—2. Սխալ կարծիքներն այս պատերազմի կրոնական կամ համազգային բնույթի մասին։—3. Լուկուլլոսի հարձակումը.—հայկական զորքի պատերազմելու նոր եղանակը։—4. Կռիվները Մշո դաշտում և Վանա լճի հյուսիսակողմում։—5. Հռոմեական զորքի ծանր դրությունը.—Արածանիի ճակատամարտը.—ճակատամարտի տեղը.— ճակատամարտի մասին Պլուտարքոսի և Դիոնի վկայությունները.—6. Լուկուլլոսի շարժումը դեպի Արտաշատ.—հռոմեական զորքի ապստամբությունը.—ապստամբության պատճառը.— նահանջը դեպի Միջագետք։—7. Մծբինի առումը։—8. Հարավային Հայաստանի և Արևելյան Պոնտոսի ազատագրումը։—9. Տրիարիուսի ծանր պարտությունը Զելայի մոտ.—Տիգրանի և Միհրդատի ներխուժումը Կապպադովկիա ու Բիթանիա։—10. Խուճապը հռոմեական Փոքր Ասիայում։—Պոմպեյոսը՝ բարձրագույն հրամանատար Ասիայում դիկտատուրական լիազորություններով։

*Տիգրանակերտի մոտ կրած պարտությունից հետո՝ Տիգրանը և նրա անձնապահ հեծելագունդը կարողացան դուրս գալ մարտադաշտից և պատսպարվեցին մոտակա մի ամրոցում։*

*Մեծ էին ու անսահման հուսահատությունը և լքումը հայկական արքունիքում։ Տիգրանի լայնածավալ պետությունը, որ նա մոտ քսանհինգ տարվա ընթացքում մեծ դժվարությամբ ի մի էր համախմբել՝ այժմ արդեն կիսով չափ քանդված էր։ Թագավորների թագավորի ու Հայաստանի դեմ շուտով ոտքի կարող էին ելնել բոլոր թշնամիները և, առաջին հերթին Պարթևական թագավորությունը, որը Տիգրանը հիմնապես քայքայել ու նվաստացրել էր։*

*Վհատության այս ծանր ժամին, ինչպես հաղորդում է Պլու-*



14—318

տարքուը[1], Միհրդատ Եվպատորը շտապեց գնալ նրա մոտ։ Միհրդատը Տիգրանին քաջալերեց և նրան հուսադրեց ապագայի նկատմամբ, և այնուհետև նրանք սկսեցին եռանդուն կերպով պատրաստվել նոր պատերազմի։ Համաձայն Մեմնոնի և Ապպիանոսի վկայությունների[2], Տիգրանն ուշադրության առավ Միհրդատի մեծ փորձառությունը, որ նա ձեռք էր բերել հռոմեական պատերազմներում, և նրան հանձնարարեց թե առաջիկա պատերազմի նախապատրաստումը և թե, ընդհանրապես, ռազմական գործերի ղեկավարությունը։

Արդ՝ Միհրդատը, որն այժմ Տիգրանի ամենամոտ խորհրդատուն էր՝ աշխատեց, ամենից առաջ, հաշտեցնել իր փեսային նրա ոխերիմ թշնամիների՝ պարթևների հետ։ 70/69 թվին վախճանվել էր պարթևների Սանատրուկ թագավորը և նրան հաջորդել էր Հրահատ Գ-ը (70/69—57 մեր թվ. առ.)։ Տիգրանը սրա մոտ ուղարկեց, Միհրդատի խորհրդով, դեսպաններ, համաձայնեց զիջել նրան բոլոր երկրները, որ ինքն առել էր պարթևներից՝ Միջագետքը, Ադիաբենը և «մեծ հովիտները»—հավանորեն, Ստրաբոնի հիշատակած «յոթանասուն հովիտները»[3],—և խնդրեց միանալ իր հետ ընդդեմ հռոմայեցիների[4]։ Դեսպանները զգուշացրին Հրահատին, որ եթե հռոմայեցիները Տիգրանին հաղթեն՝ նրանք այնուհետև պատերազմ կսկսեն նաև պարթևների դեմ[5]։

Այս բանակցությունների առնչությամբ Սալլուստիուսի մոտ բերված է Միհրդատի նամակը[6] Հրահատ Գ-ին, որը թեև, իհարկե, վավերական չէ, սակայն այնուամենայնիվ հետաքրքրական է, որովհետև արտացոլում է իր մեջ քաղաքական տիրող տրամադրությունները և հարաբերությունները։ Այդ նամակի մեջ Միհրդատը նկարագրում է հռոմայեցիների անզուսպ ու անկասելի առաջխաղացումը դեպի Արևելք, նրանց մեծ կռիվներն իր հետ, նվաճումների և ավազակային կողոպուտների նրանց անհագ ծարավը, որին անխուսափելիորեն զոհ էին դառնալու նաև պարթևները, և աշխատում է Հրահատին համոզել, որ նա իրեն ու Տիգրանի հետ միանա ընդդեմ ընդհանուր թշնամու։

Պատերազմող կողմերի համար պարթևների բռնելիք դիրքն

---

[1] *Plut.*, Lucul., XXIX, 1—2; *Memnon*, 58.
[2] *App.*, Mithrid., 87; *Memnon*, 58.
[3] *Strabo.*, XI, 14, 15 (532).
[4] *Memnon*, 58; *App.*, Mithrid., 87.
[5] *Dio Cass.*, XXXVI, 1, 1—2.
[6] Sall., IV, fr. 20, Leipzig, 1856.

ռներ, անշուշտ, մեծ կարևորություն։ Ուստի նաև Լուկուլլոսը, լուր ստանալով հայերի բանակցությունների մասին պարթևների հետ՝ ուղարկեց Հրահատ Գ-ի մոտ իր նոր դաշնակիցներին և աշխատեց նրան գրավել հռոմայեցիների կողմը։

Խորամանկ պարթևը չմերժեց Տիգրանի ու Միհրդատի առաջարկը, սակայն միևնույն ժամանակ Լուկուլլոսին պատասխան տվեց, որ նրա հետ պատրաստ է կնքել բարեկամական դաշինք։ Շուտով Լուկուլլոսը դաշնադրության կնքման համար Տիգրոն ուղարկեց իր Սեքստիլիուս տեղակալին։ Բայց այս վերջինը, որն ավելի զինվորական էր, քան դիվանագետ՝ կասկածներ առաջացրեց, որ եկել է իբրև լրտես և աշխատում է ծանոթանալ պարթևական երկրի ու նրա ռազմական ուժերի հետ։ Հրահատ Գ-ը, կորցնելով վստահությունը դեպի հռոմայեցիները՝ այլևս չուզեց միանալ ու օգնել հռոմայեցիներին և վճռեց չեզոքություն պահպանել[1]։ Նրա կարծիքով, եթե պատերազմը երկու կողմերի միջև տեղի ունենար հավասար ուժերով ու առանց իր մասնակցության՝ այդ նպաստավոր ու շահավետ կլիներ հենց իր անվտանգության համար։

Պարթևների թագավորի այս անակնկալ որոշումն ընդունվեց Հայաստանում մեծ գոհունակությամբ։ Տիգրանն այժմ կարող էր որոշ չափով հույս ունենալ, որ առաջիկա պատերազմի ընթացքում նրա թիկունքը չէր ենթարկվի հարձակման պարթևների կողմից։

69/68 թվի ամբողջ ձմեռը Տիգրանը և Միհրդատը շատ կերպով պատերազմի պատրաստություններ էին տեսնում։ Նրանք շրջում էին ամբողջ երկրում և հավաքում էին նոր զորք։ Նրանք պատրաստել էին տալիս զենքեր և ռազմապիտույքներ և մթերում էին հարմար ու ամուր տեղերում ցորենի ու պարենի պաշարներ։

Ապպիանոսի ասելով, սկզբում Միհրդատը հրամայել էր զինվորագրել բոլոր երիտասարդ հայերին, բայց հետո զինվորության համար նրանցից ընտրել էր ամենաուժեղներին։ Հռոմեական զորքի ձևով նա բաժանել էր նոր բանակը ջոկատների ու վաշտերի և հանձնարարել էր իր հետ եկած պոնտական զինվորականներին, որ այդ բանակը վարժեցնեն ու մարզեն հռոմեական լեգեոնների նմանությամբ[2]։ Նախկին պատերազմների փորձը հա-

---

[1] Տե՛ս *Cass. Dio.*, XXXVI, *3, 2—3.*

[2] Տե՛ս *App.*, Mith., *87, Phlegon*, Fragm. Hist. Gr., III, էջ 606։ Փլեգոնի մոտ հայկական բանակի ուսուցումն ըստ նմանության հռոմեական զորքի սխալմամբ մատնանշված է Տիգրանակերտի ճակատամարտից առաջ։

մոզել էր նրան, որ արևելյան զորքերի մեծ բազմությունը ո՛չ միայն անօգուտ է, այլև արգելք է հանդիսանում ռազմունակ զորամասերի մարտական գործունեություններին։

Տիգրանի նոր զորաբանակի մեջ բացի հայերից հիշատակված են[1] նմանապես դաշնակից իբերները, մարդերը և, հատկապես, նաև մեղացիները, որոնք կռվում էին Ատրպատականի Միհրդատ թագավորի առաջնորդությամբ, որը Հայոց թագավորի փեսան էր ու հավատարիմ վասալը։

68 թվի հռոմեական-հայկական պատերազմը, Մոմզենը, ինչպես նաև Ռեյնաքը, բնորոշել են իբրև ազգային և կրոնական պատերազմ միացյալ Արևելքի ընդդեմ Արևմուտքի[2]։

«Կաբինետային պատերազմը,— ասում է Մոմզենը,— դառնալու էր այժմ ազգային ասիական պատերազմ։ Ասիայի թագավորը և ժողովուրդները միանալու էին ընդդեմ ամենազոր ու հանդուգն արևմտյան նվաճողների...։ Այս պատերազմը դժվար չէր ներկայացնել իբրև ազգային կռիվ Արևելքի ընդդեմ Արևմուտքի, որովհետև պատերազմն ուներ հենց, իրապես, այդ բնույթը։ Կարելի էր հեշտությամբ նրան դարձնել նաև կրոնական և տարածել լուր, որ Լուկուլլոսի արշավանքի նպատակն է պարսկական Նանեայի կամ Անահիտի տաճարի գրավումը Ելիմայիսում կամ այժմյան Լուրիստանում։ Այդ տաճարն ամենից շատ մեծարված և հարուստ սրբավայրն էր Եփրատ գետի ամբողջ առափնյա շրջանում։ Ասիացիները խմբերով հավաքվում էին մոտից և հեռվից թագավորների դրոշների տակ, որոնք նրանց կանչել էին պաշտպանելու Արևելքը և նրա աստվածներին անաստված օտարերկրացիներից»։

Մոմզենի այս կարծիքը, որ ընդունելի է համարվել և մեջ է բերվում նաև բազմաթիվ այլ երկերում՝ միայն վերջերս քննության է առնված ու մերժված էքհարդի աշխատության մեջ[3]։ Էքհարդն իրավացի կերպով մատնանշում է, որ 68 թվին հայերը պատերազմում էին հռոմայեցիների դեմ, գլխավորապես, իրենց սեփական ուժերով և ունեին իրենց հետ համեմատաբար ավելի քիչ դաշնակիցներ, քան 69 թվին։ Արևելքի մեծագույն մասը, օրինակ՝ Կորդուքը, Ծոփքը, արաբները, պարթևները՝ կամ անցել

[1] *Plut.*, Lucul., XXXI, 9—11.

[2] Տե՛ս *Моммсен*, Римская история, III, էջ 58—60 և *Reinach*, Mithridate Eupator, էջ 365։

[3] Տե՛ս *Klio*, Bd. X, 2, էջ 195—197։

էին հռոմայեցիների կողմը, կամ մնացել էին չեզոք։ Բացի այդ, ասիացիների կրոնական միությունը ևս, ինչպես իրավամբ նշում է Էքհարդը, թեև կարող է հարմար ու տեղի լինել Իսլամի սրբազան պատերազմների նկատմամբ, սակայն բնավ ո՛չ հին ժամանակների համար, երբ ամեն մի գավառ ուներ իր սեփական կրոնական կենտրոնավայրը։

68 թվի գարնանը Լուկուլլոսը, տեսնելով որ Հայոց թագավորը ո՛չ նոր ճակատամարտ է տալիս, ո՛չ էլ խնդրում է նրանից հաշտություն՝ պատերազմը վերսկսեց ինքը, հույս ունենալով, որ՝ ներս խուժելով ու ավերելով Հայաստանի հյուսիսային շրջանները և կամ սպառնալով Արտաշատ մայրաքաղաքին՝ կհարկադրե հայերին տալ վճռական ճակատամարտ և կկնքե նրանց հետ վերջնական հաշտություն։

68 թվի գարնան վերջերին հռոմեական զորքը թողեց բարեկամ ու դաշնակից Կորդվաց երկիրը, ուր նա լիառատ ապրել ու հանգիստ ձմեռել էր, և ճանապարհ ընկավ Տիգրանակերտի մոտով և Տավրոսյան լեռներով դեպի Մշո դաշտը և Եփրատ-Արածանիի հովիտները։

Երբ 68 թվի ամառը Լուկուլլոսի զորքն իջավ Տավրոսյան լեռներով այժմյան Մշո դաշտը՝ այստեղ, ինչպես վկայում է Պլուտարքոսը[1], հացաբույսերի ցանքերը դեռևս կանաչ էին, մինչդեռ Կորդվաց երկրում, որտեղից հռոմեական զորքը մեկնել էր մի քանի շաբաթ առաջ՝ արդեն հնձի ժամանակ էր։ Հայկական բարձրավանդակի այս հատուկ երևույթը, որ Լուկուլլոսի համար անակնկալ մի նորություն էր, նրան մեծ անհանգստություն պատճառեց, որովհետև մեծապես դժվարանում էր նրա բանակի պարենավորման գործը։ Անսպասելի էր Լուկուլլոսի համար և խիստ հուսահատեցուցիչ նաև Միհրդատի ու Տիգրանի մարտավարության նոր եղանակը, որը գործադրվում էր այստեղ փորձված ու հնարամիտ Միհրդատի խորհրդով։

Մենք արդեն տեսանք վերև, որ Միհրդատը, որին հանձնարարված էր նոր հայկական զորքի նախապատրաստումը, ուշադրություն էր առել զորքի ո՛չ թե քանակը, այլ որակը։ Դաշնակից թագավորները այժմ ո՛չ միայն ուժեղացրել էին իրենց հետևազորը, այլև աշխատել էին միաժամանակ, որ իրենց ձիավոր զորքը թվով ու մարտունակությամբ գերազանց լինի հռոմեական հեծելազորից, որը, ինչպես հայտնի է, հռոմեական զորքի համեմատաբար թույլ և տկար մասն էր։ Միհրդատի

[1] Տե՛ս Plut., XXXI, 2. Համեմատե նաև Cass. Dio, XXXVI, 4, 2.

խորհրդով՝ այժմ հիմնովին փոխվել էր նաև հայկական զորքի պատերազմելու եղանակը։ Որոշված էր խույս տալ վճռական մեծ ճակատամարտից և վարել լեռնային պաշտպանողական և փոքր պատերազմ։ Երկու դաշնակիցները պարզապես ուզում էին հռոմեական զորքը քաշել երկրի ներսը, դժվարացնել նրա պարենավորումը և հետզհետե նրան ուժասպառ անել իրենց հզոր ու արագաշարժ հեծելազորի հանկարծակի հարձակումներով։

Ռազմական այս ծրագիրն իրագործելու համար դաշնակից թագավորները, ինչպես հաղորդում է Ապպիանոսը[1], բաժանել էին իրենց զորաբանակը երկու մասի։ Միհրդատը, որին հանձնված էր ամբողջ հետևազորը և հեծելազորի մի փոքր մասը՝ կրնկակոխ հետևում էր հռոմեական զորքին, սակայն՝ բանակ դնելով ու ամրանալով բլուրների վրա՝ նա համառորեն խուսափում էր վճռական ընդհարումից։ Իսկ Տիգրանը հեծելազորի մյուս մասով սրընթաց հարձակվում էր թշնամու վրա, խանգարում էր ու խափանում նրա պարենավորումը և հասցնում նրան զգալի կորուստներ։

Այսպիսով Լուկուլլոսը և նրա զորքը շարունակ գտնվում էին Միհրդատի և Տիգրանի բանակների արանքում, որոնցից որևէ մեկը նրանց սպառնում էր թիկունքից։

Ուշագրավ է, որ 68 թվի այս կռիվների մասին հռոմեական աղբյուրները, մեծ մասամբ, լուռ են և մունջ։ Միայն Պլուտարքոսը, որը Լուկուլլոսի փառաբանողն է ու գովերգուն, հիշատակել է իր հերոսի մի քանի աննշան հաջողությունները։

> «Տավրոսն անցնելուց հետո,—պատմում է Պլուտարքոսը,—Լուկուլլոսը վհատվեց, որովհետև տեսավ, որ արտերը դեռևս կանաչ են (այստեղ ուշանում են այդքան օդի սառնության պատճառով հնձելու ժամանակները)։ Սակայն, այնուամենայնիվ, նա ցած իջավ, երկու կամ երեք անգամ ետ մղեց հայերին, որոնք նորից համարձակվել էին նրա դեմ դուրս գալ, անարգել կերպով ավերեց գյուղերը և, գրավելով Տիգրանի համար պատրաստված ցորենը՝ հակադարձեց թշնամիներին այն ծանր դրությունը, որից ինքը վախենում էր»[2]։

Այս մանմակի հաջողությունները չունեին, ինչպես տեսնում ենք, ռազմական խոշոր նշանակություն, որովհետև նրանք բնավ

---

[1] Տե՛ս App., Mithr., 87.

[2] Plut., Lucul., XXXI, 2—3.

*չէին թուլացնում դաշնակիցների կենդանի ուժը։ Սակայն ինքը հռոմեական զորքը, որը հաճախ ենթակա էր Տիգրանի հեծելազորի հարձակումներին, կրում էր, ինչպես դժվար չէ հետևցնել աղբյուրների վկայություններից՝ զգալի կորուստներ։*

*Պլուտարքոսի և Դիոնի պատմելով՝*[1] *Լուկուլլոսն աշխատում էր ստիպել թշնամուն ճակատելու իրեն դեմ, որպեսզի նրա դիմադրական ուժը կարողանա խորտակել վճռական ճակատամարտում։ Թշնամու աչքի առջև նա ավերում էր այդ նպատակով նրա երկիրը։ Սակայն իզուր՝ թշնամին մնում էր անշարժ իր տեղում։ Նա պաշարեց այնուհետև Միհրդատի ճամբարը և սկսեց նրա շուրջը փորել խրամատներ։ Բայց իզուր էր նաև այս փորձը։ Միհրդատին անմիջապես օգնության հասավ Տիգրանը, սպառնալով հռոմայեցիներին թիկունքից, իսկ Միհրդատը, հավատարիմ մնալով իր ծրագրին՝ այս անգամ ևս տեղից չշարժվեց։*

*Լուկուլլոսի դժվարին ու ապարդյուն այս արշավանքը, որի ընթացքում նա ավելի ինքն էր կորուստներ կրել, քան թշնամին՝ տևել էր Վանա լճի հյուսիսային կողմերում առնվազն մոտ երկու ամիս։ Արդեն սկսվել էր աշունը և հռոմեական զորքի դրությունը, որն անսովոր էր Հայաստանի ցուրտ կլիմային՝ հետզհետե դառնում էր ավելի ու ավելի հուսահատական։ Եթե Լուկուլլոսն այժմ ետ նահանջեր, այդ համազոր կլիներ ամոթալի պարտության։ Եվ նա միայն այժմ, մոտ երկու ամիս ապարդյուն կորցնելուց հետո, ուղղվեց շտապ դեպի Արտաշատ, ուր գտնվում էին Տիգրանի օրինավոր կանայք և անչափահաս զավակները*[2]*։ Նա հույս ուներ, որ հին այդ մայրաքաղաքի նվաճմամբ կկարողանա վերականգնել իր զինվորական մեծ անունը և հեղինակությունը, որ սկսել էին արդեն նսեմանալ հռոմեական-հայկական այս նոր պատերազմում։ Նա միևնույն ժամանակ կարծում էր, որ Արտաշատին սպառնացող վտանգը Տիգրանին կստիպի իր հետ վճռական կռվի բռնվելու։*

*Եվ, իրավի, ինչպես որ Լուկուլլոսը մտածում էր՝ այնպես էլ եղավ։ Երբ Տիգրանը տեղեկություն ստացավ, որ Լուկուլլոսն արագացրած երթով գնում է դեպի Արտաշատ՝ նա հասավ չորրորդ օրը, ինչպես վկայում է Պլուտարքոսը*[3]*, հռոմեական զորքի ետևից և նրա առաջը կտրեց Արածանիի գետանցքի մոտ՝ գետի աջ ափին։ Լուկուլլոսը, որը դեռևս գետը չէր անցել՝ գտնվում էր հայկական զորքի դիմաց Արածանիի ձախ կողմում։*

---

[1] *Plut.*, Lucul., XXXI, 4 և *Cass. Dio*, XXXVI, 4, 2.

[2] *Plut.*, Lucul., XXXI, 4.

[3] *Plut.*, Lucul., XXXI, 7.




Լուկուլլոսի ճանապարհը դէպի Արտաշատ

գծ. 8.

Էքհարդն իր ընդարձակ ուսումնասիրության մեջ[1] աշխատել է ճշտել թե Արածանիի ճակատամարտի այս տեղը և թե, ընդհանրապես, այն ճանապարհը, որոնցով եկած պիտի լինեին այդտեղ Լուկուլլոսը և Տիգրանը։ Նա իրավացի կերպով չէ ընդունում Ռեյնաքի ենթադրությունը[2], ըստ որի վերոհիշյալ գետանցքի տեղը մատնանշված է այժմյան Մանազկերտի մոտ։ Արածանին անցնելով այդ տեղում, ինչպես միանգամայն ճիշտ դիտել է Էքհարդը, կարելի էր գնալ Բասեն և Հասանղալա, բայց ո՛չ Արտաշատ։ Ինքը Էքհարդը կարծում է, որ հռոմեական զորքը գնացել էր, հավանորեն, Մանազկերտի մոտով դեպի հյուսիս և հասել էր Արածանիի ձախակողմն այժմյան Ղարաքիլիսեի մոտ։

Սակայն ինձ ավելի հավանական է թվում, որ Լուկուլլոսի 68 թվի արշավանքի ճանապարհը պետք է ենթադրել Պևտինգերյան քարտեզում նշանակված Սումբ—Դիդեմ հին հաղորդակցության գծով, որը մանրամասն լուսաբանված է իմ «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» ուսումնասիրության մեջ[3]։ Այս նոր ենթադրությամբ Եփրատ—Արածանիի ճակատամարտի տեղը որոշվում է ո՛չ թե ճշտիվ այժմյան Ղարաքիլիսեի մոտ, այլ այս գյուղից մոտ 20—30 կիլոմետր դեպի արևելք՝ այժմյան Դիդեմի հյուսիսակողմում։

Արածանիի ճակատամարտի մասին միակ մեր աղբյուրներն են Պլուտարքոսի և Կասսիուս Դիոնի վկայությունները[4], որոնք հիմնապես իրար հակասում են։

Ինչպես պատմում է Պլուտարքոսը, Արածանիի կռվում Տիգրանի հեծելազորը չէր դիմացել հռոմեական հետևազորի հարձակման և մատնվել էր փախուստի։ Հետապնդումը շարունակվել էր երկար ժամանակ, և հռոմայեցիները ամբողջ գիշերը հալածել, կոտորել ու գերել էին թշնամուն[5]։ Իսկ Կասսիուս Դիոնը, ընդհակառակը, հաղորդում է, որ հարձակման ժամանակ հայկական այրուձին խիստ նեղն էր գցել հռոմեական հեծելազորը, բայց խուսափել էր կռվից հռոմեական հետևակների հետ։ Այրուձին ինքը որևէ վնաս չէր կրել, այլ ետ դառնալով՝ նետեր էր արձակել հետապնդողների վրա և շատերին սպանել էր ու վիրավորել։

[1] Klio, Bd. X, 2, էջ 221—226.

[2] Mithridate Eupator, էջ 368, ծան. 1։

[3] Տե՛ս էջ 203—114։

[4] Նույն այս ճակատամարտը համառոտակի հիշատակված է նաև Սալլուստիուսի Պատմության մի հատվածում, տե՛ս գիրք IV, fragm. 74։

[5] Տե՛ս Plut., Lucul., XXXI, 7—14։

«Իսկ վերքերը,—ասում է Կասսիուս Դիոնը,—ծանր էին և դժվար էին բուժվում, որովհետև նետերն ունեին երկու ծայր, որոնք այնպես էին իրար կցված, որ թե վերքի մեջ մնալով և թե դուրս հանվելով՝ արագ կերպով մահ էին պատճառում։ Դրա պատճառն այն էր, որ նետի ծայրերից մեկը, որը ոչ մի կերպ չէր կարելի դուրս հանել՝ մնում էր մարմնի մեջ»[1]։

Եվրոպական գիտնականներից շատերը, հավատ ընծայելով Պլուտարքոսի վերոհիշյալ վկայություններին՝ կարծում են, որ Արածանիի ճակատամարտում Լուկուլլոսը հաղթություն էր տարել, և Տիգրանը կրել էր ծանր պարտություն։ Սակայն, ինչպես դժվար չէ հետևցնել Կասսիուս Դիոնի արժանահավատ վկայությունից, Տիգրանը ո՛չ միայն պարտություն չէր կրել, այլ, ընդհակառակը, ինքն էր ծանր հարված հասցրել հակառակորդին։ Տիգրանի հեծելազորի փախուստը պարզապես կեղծ փախուստ էր, որի միջոցին նրա նետաձիգ արագաշարժ ձիավորները նոր ջարդ էին տալիս թշնամուն։ Կռվելու արևելյան այդ ձևը գործադրել էին, ինչպես հայտնի է, նաև պարթևները Կրասսոսի դեմ, որը կատարյալ պարտություն էր կրել 53 թվին։

Արածանիի գետն անցնելուց հետո Լուկուլլոսն առաջնորդեց իր զորքը դեպի Արտաշատ։ Սակայն մի քանի օրից հետո, ինչպես վկայում է Պլուտարքոսը, զորքը կտրականապես հրաժարվեց առաջ գնալ և պահանջեց ետ դառնալ։ Զորքի մեջ ծագած այս ապստամբությանը, որ հարկադրել էր Լուկուլլոսին ետ նահանջել Հայաստանից՝ Պլուտարքոսի և Կիկերոնի մոտ[2] տրված են տարբեր բացատրություններ։ Պլուտարքոսն ապստամբության պատճառ համարում է այն, որ սեպտեմբեր ամսին, աշնանային գիշերահավասարի ժամանակ, հանկարծակի ձյուն էր եկել և Հայաստանում սկսվել էին անժամանակ ցրտերը։ Իսկ Կիկերոնը, որի մոտ զորքի այս ապստամբությունը պարզ կերպով ակնարկված է, բացատրում է, որ հռոմեական զորքը մերժել էր առաջ գնալ, որովհետև նա շատ հեռացել էր երկրից և կարոտել էր հայրենիքին։

Ապպիանոսը և Կասսիուս Դիոնը տեղեկություններ են տալիս միմիայն Լուկուլլոսի նահանջի մասին, առանց հիշելու ապստամբության անպատվաբեր փաստը։ Ապպիանոսը նահանջի

---

[1] *Cass. Dio.*, XXXVI, 4—5.

[2] *Տե՛ս Plut.*, Lucul., XXXII. 1—5 և *Cicero*, De imperio Cn. Pompeii IX, 23—24.

պատճառ է համարում վրա հասնող ձմեռը, իսկ Դիոնը՝ վիրավորների մեծ թիվը և սննդամթերքների պակասությունը[1]։

Միանգամայն ճիշտ են ըստ իս էքհարդի դիտողությունները[2], որը հիմնական պատճառ զինվորական ապստամբության համարում է ո՛չ այնքան անժամանակ ցուրտը, որքան հռոմեական զորքի մեծ կորուստները, վիրավորների շատությունը և սննդամթերքների պակասությունը, ինչպես այդ պարզ կերպով մատնացույց է արված Դիոնի մոտ։ Իրավացի է նույնպես և Ասատուրյանը[3], որը կարծում է, որ նահանջի բուն պատճառը եղել է հռոմեական զորքի բարոյալքումը և վհատությունն իր լուրջ անհաջողությունների պատճառով։ Եթե միայն ցուրտը լիներ ապստամբության պատճառը՝ հռոմեական զորքը պետք է, ընդհակառակը, ո՛չ թե ետ նահանջեր, այլ առաջ գնար դեպի Արտաշատ, որն արդեն շատ մոտ էր և գտնվում էր մոտ 100 կիլոմետր հեռավորության վրա[4] և որը ո՛չ միայն կազատեր նրանց ցրտից, այլև կտար պատերազմական մեծ ավար։

Հայաստանից Լուկուլլոսը նահանջեց հարավ և իջավ Միգդոնիա։ Հյուսիսային Միջագետքում, ուր Տավրոսյան լեռներից իջել էր Լուկուլլոսը 68 թվի հոկտեմբեր ամսին՝ դեռևս ամառային տաք եղանակներ էին։ Հայերի ձեռքին էր գտնվում այստեղ Մծբինը, որը նշանավոր բերդաքաղաք էր և շրջապատված էր կրկնակի՝ արտաքին և ներքին պարիսպներով։ Գերագույն իշխանությունը Մծբինում, որն ուներ ռազմական ու ստրատեգիական մեծ նշանակություն, Տիգրանը հանձնարարել էր, ինչպես վերև տեսանք, իր եղբորը՝ Գուրասին։

Արդ՝ ուշագրավ է ու հետաքրքիր, որ հռոմեական զորքը, որն ապստամբել էր և չէր ուզեցել գնալ Արտաշատ՝ այժմ պաշարեց Մծբինն առանց որևէ հակառակության։ Սակայն այս պաշարումն առաջին ամիսները չտվեց ոչ մի հետևանք։ Քաղաքը, որի փաստական հրամանատարն էր ու պաշտպանը հռչակավոր հույն ճարտարապետ Կալլիմաքոսը, ցույց տվեց նույնպիսի ուժեղ դիմադրություն, ինչպես և Տիգրանակերտը։

Քաղաքի պաշտպանները, ինչպես վկայում է Դիոնը[5], միան-

---

[1] Տե՛ս App, Mithrid., 87 և Cass. Dio, XXXVI, 6, 1.

[2] Klio, Bd. X, 2, էջ 213—216։

[3] Տե՛ս «Քաղաքական վերաբերությունները», էջ 63 և այլն։

[4] Տե՛ս իմ «Տիգրան Բ-ը և Հռոմը», էջ 158։ [տե՛ս նաև նույն հատորում, էջ 548. խմբ.]։

[5] Cass., Dio, XXXVI, 6—7.

գամայն վստահ էին, որ հռոմայեցիներըստիպված են լինելու հեռանալ։

Բայց անսպասելի կերպով, անձրևային ու փոթորկալից մի մութ գիշեր, երբ ոչինչ չէր կարելի նկատել կամ լսել՝ հռոմայեցիներին հաջողվեց մոտենալ քաղաքին և տիրել արտաքին պարսպին։ Այնուհետև ներքին պարիսպը ևս հնարավոր չեղավ, մթության ու հորդ անձրևի պատճառով, պաշտպանել նետաձգությամբ ու այրվող նավթով։ Հռոմայեցիները լցրին միջպարիսպային փոսը ցախով և հեշտությամբ վերցրին նաև երկրորդ պարիսպը։ Պարիսպների գրավումից հետո՝ Գուրասը և բերդապահ զորքը, որոնք ամրացել էին միջնաբերդում՝ անձնատուր եղան որոշ պայմանով և ազատ արձակվեցին։ Միայն Կալլիմաքոսը, որ Մծբինից առաջ հաջողությամբ ղեկավարել էր նաև պաշարված Ամիսոսի պաշտպանությունը՝ համարվեց հանցավոր և շղթայվեց։

Մծբինի առումը Լուկուլլոսի վերջին հաջողությունն էր։ Այնուհետև նրա աստղը հետզհետե խավարեց։

Մինչ հռոմեական զորքը երկար ու դժվար ճանապարհներով իջնում էր Միջագետք և պաշարել էր այստեղ Մծբինը՝ Միհրդատը և Տիգրանը, փոխանակ հուսաբեկ ու բարոյալքված թշնամուն հալածելու, հարձակվեցին հռոմեական զորամասերի վրա Պոնտոսում և Տիգրիսի հյուսիսակողմում։ Նրանք դարձյալ շարունակեցին վարել տեղային մանր կռիվներ, որոնք ունեցել էին հաջող հետևանքներ և, ինչպես տեսանք, հյուծել ու անբարոյացրել էին Լուկուլլոսի գլխավոր բանակը։

Միհրդատը, իր հետ վերցնելով ութ հազար զորք, որոնցից չորս հազարը հայեր էին, որ նա ստացել էր Տիգրանից՝ գնաց Պոնտոս, որպեսզի վերագրավե իր թագավորությունը, իսկ Տիգրանն աշխատեց վերանվաճել իր բուն թագավորության հարավային շրջանները[1]։ Այստեղ՝ Տիգրիս գետի հյուսիսակողմում, որը Մեծ Հայաստանի հարավամասն էր՝ Տիգրանը վերագրվեց մի շարք շրջաններ։ Նույնպես և Միհրդատը, որը մտել էր նախ Փոքր Հայքի արևելյան շրջանները, ահաբեկելով այստեղ հռոմայեցիների ցրված ու թույլ ուժերը և կոտորելով մաս առ մաս թշնամիներին՝ մեծ արագությամբ գրավել էր իր թագավորության արևելյան մասերը։ Այստեղից նա կոչ էր արել իր ժողովրդին զենք առնել ու ապստամբել և խոստացել էր ազատել բոլոր պոնտացիներին, որոնք հռոմայեցիների մոտ աշխատում էին որպես

[1] Տե՛ս App., Mithrid., 88 և Cass. Dio, XXXVI, 8—9։

տրուկներ։ Ժողովուրդը, ինչպես վկայում է Դիոնը[1], գրկաբաց ընդունում էր և օգնում Միհրդատին, որովհետև ատելությամբ լցված էր դեպի հռոմայեցիներն ու նրանց դաժան ու հարստահարող իշխանավորները։

Լուկուլլոսը, տեղեկություն ստանալով հռոմեական զորքի անհաջողությունների մասին՝ վճռեց Պոնտոսը փրկելու համար դուրս տանել իր զորքը Միջագետքից և հրաժարվեց անդրեփրատյան իր նվաճումներից։ Սակայն նրա լեգեոնները, որոնք ուրախ ու հանգիստ ապրում էին ձմեռվա տաք կայաններում՝ հրաժարվեցին արշավանքի դուրս գալ գարնանից առաջ։ Այս արդեն երկրորդ անգամն էր, որ հռոմեական զորքերը չէին հնազանդվում իրենց հրամանատարին և ըմբոստաբար ու ինքնագլուխ խախտում էին զինվորական կարգապահությունը։

Շնորհիվ իր զորքի ընդդիմադրության Լուկուլլոսը ստիպված եղավ մնալ Միջագետքում 68/67 թվի ամբողջ ձմեռը։ Միայն 67 թվի գարնան սկզբին նա թողեց Տիգրանակերտն ու Մծբինը և անցնելով Եփրատի աջ կողմը՝ օգնության շտապեց Պոնտոսին։ Դատարկելով Միջագետքը և հարավային Հայաստանը՝ Լուկուլլոսը, ինչպես միանգամայն ճիշտ մատնանշել է Մոմզենը, հրաժարվում էր, անշուշտ, բոլոր իր փայլուն հույսերից, որ կապված էին հայկական արշավանքի հետ[2]։

Լուկուլլոսը դեռևս կես ճանապարհին էր գտնվում, երբ նա տեղեկացավ, որ հռոմեական Տրիարիուս զորավարը, որին նա օգնության էր գնում՝ ծանր պարտություն էր կրել հայ-պոնտական զորքերից Զելայի մոտ։ Այս պարտությունը, ասում է Կիկերոնը, այնքան մեծ էր, որ գլխավոր հրամանատարն իմացել էր նրա մասին ո՛չ թե ճակատամարտին մասնակցող լրաբերից, այլ ժողովրդի մեջ պտտող լուրերից։

Այդ մեծ պարտությունից հետո Միհրդատը ո՛չ միայն կարողացել էր տիրել իր ամբողջ թագավորությանը, այլև նրա հեծելազորն արդեն ասպատակում էր Բիթանիայի արևելյան շրջանները, իսկ Տիգրանը, որն անցել էր Եփրատ գետը՝ ներս էր խուժել Կապպադովկիա և իր փեսայի, Ատրպատականի Միհրդատ թագավորի, հետ նվաճում ու ավերում էր այդ երկիրը։

Այսպիսով՝ Լուկուլլոսի վարած պոնտական ու հայկական պատերազմները, որ նա փայլուն կերպով սկսել էր յոթը տարի առաջ, վերջանում էին բոլորովին անփառունակ կերպով։

[1] Cass. Dio, XXXVI, 9, 2.

[2] Տե՛ս Моммсен, Римская история, III, էջ 63։

«Հենց այսպես,—ասում է Ռեյնաքը,—յոթը տարվա կատաղի պատերազմից հետո՝ դեպքերը պարզապես հանգել էին դարձյալ նույն մեկնակետին։ Լուկուլլոսի մեծամեծ հաղթությունները չքանում էին ինչպես մի երազ։ Հռոմեական արծիվները նույնպիսի արագությամբ, ինչպես նրանք գրնացել էին առաջ՝ ետ դարձան Եփրատից դեպի Տավրոս և Տավրոսից դեպի Հալիս։ Կապպադովկիան արդեն կորցված էր, Բիթանիան անդամատված, պրովինցիա Ասիան վտանգված»[1]։

Թե որքան ծանր դրություն էր ստեղծվել Փոքր Ասիայում 67 թվի վերջերին՝ այդ մանրամասն մատնացույց է արված Կիկերոնի «Պոմպեյոսի հրամանատարության մասին» ճառում։ Իր այդ ճառի մեջ[2] Կիկերոնը նշում է, որ Բիթանիայում հրդեհված ու ոչնչացված էին բազմաթիվ գյուղեր և որ հռոմեական ամբողջ Ասիան սպասում էր, որ երկու հզոր թագավորները, որոնք Հռոմի ամենաոխերիմ թշնամիներն էին, կներխուժեն շուտով և կավերեն հռոմեական շրջանները։ Վտանգ էր սպառնում, նրա ասելով, հռոմեական դրամատերերի հարստություններին, որ նրանք զետեղել էին պետական հարկերի հավաքման գործում։ Հուսալքվել էին, ասում է նա, բաժնետերերը և վարձակալական ընկերությունների գործակալները, որովհետև նրանք գիտեին, որ թշնամու ձիավոր ջոկատների ասպատակները կարող էին իրենց զրկել ամբողջ տարվա եկամուտից։ Վախենում էին վարձակալներն անգամ իրենց ստրուկներից, որոնց նրանք պահում էին արոտավայրերում ու արտերում, նավահանգիստներում ու պահակակետերում։

67 թվին հռոմեական հանրապետության դրությունը ծանր ու աղետալի էր դառել ո՛չ միայն հռոմեական Ասիայում, այլև ծովի վրա ու նաև բուն Իտալիայում։ Չափազանց ուժեղացել էին այդ ժամանակ ծովահենները, որոնք պարզապես տեր ու տնօրեն էին դառել Եգեյան ու Միջերկրական ծովերի։ Նրանք հարձակվում էին ո՛չ միայն առանձին նավերի, այլ նաև ռազմական նավախմբերի վրա։ Նրանք շարունակ կողոպտում էին ծովափնյա շրջանները և գերի էին տանում մինչև իսկ ամենաականավոր հռոմեական պաշտոնյաներին ու զինվորականներին։ Հաղորդակցությունը ծովով չափազանց վտանգավոր էր դառել և Իտալիայում ու առանձնապես Հռոմում, որը հացահատիկ էր ստանում օտար երկրներից՝

[1] *Reinach,* Mithridate Eupator, էջ *377*։

[2] De imperio Cn. Pompeii II, *4—4* V, *12*; VI, *16*.

հացի գները խիստ բարձրացել էին և սկսվել էր արդեն ահավոր սովը։

Հռոմում զգացին, որ հանրապետության սովորական պաշտոնեությունը չի կարողանալու դուրս հանել երկիրը ճգնաժամային այդ դրությունից, այլ հարկավոր են արտակարգ իշխանություն ունեցող պաշտոնյաներ, որոնց պետք է տրվեն դիկտատորական լիազորություններ։

Հենց Լուկուլլոսի նահանջի ժամանակ, նույն այս 67 թվին, ժողովրդական տրիբուն Գաբինիուսն անցկացրեց Հռոմում իր առաջարկը, որով Պոմպեյոսը ստացավ դիկտատորական արտակարգ իրավունքներ, որպեսզի նա ոչնչացնե ծովահեններին և վերականգնե ծովային հաղորդակցության ճանապարհների անվտանգությունը։

Պոմպեյոսը կարողացավ, իրապես, գրավել ծովահենների ամրությունները և, ջախջախելով նրանց ուժերը՝ հարկադրեց նրանց անձնատուր լինել։ Այնուհետև, 66 թվի սկզբներին, ժողովրդական տրիբուն Մանիլիուսի առաջարկությամբ՝ Պոմպեյոսին տրվեց արտակարգ իշխանություն (imperium majus) արևելյան պատերազմը շարունակելու համար։ Համաձայն այդ օրենքի Պոմպեյոսը, որը Լուկուլլոսի վարեմի հակառակորդն էր՝ ստացավ, բացի Գաբինիուսի օրենքով իրեն տրված նախկին լիազորություններից, զորքի բարձրագույն հրամանատարությունն առաջիկա կռիվներում ընդդեմ Միհրդատի և Տիգրանի ու նաև բացարձակ իրավունք պատերազմ հայտարարելու և հաշտություն կնքելու հռոմեական ժողովրդի անունից։

66 թվին ռազմական գործողությունները վերսկսվեցին Արևելքում Պոմպեյոսի առաջնորդությամբ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

# ՊՈՄՊԵՅՈՍԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ՏԻԳՐԱՆԻ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՆՐԱ ՀԵՏ

1. Պոմպեյոսի նոր պատերազմի պատրաստությունները.—զորքերի համակենտրոնացումը Կիլիկիայում.—լրտես Միթրոփանեսի բանակցությունները Միհրդատի հետ.—Դաշինքը Հրահատ Գ-ի հետ:—2. Ներքին խռովությունները Հայաստանում.—Տիգրանի վերադարձը Հայաստան և ապստամբ որդու փախուստը Տիգրան.—Տիգրան Բ-ը կասկածում է, որ իր որդուն գրգռողը Միհրդատն է:—3. Պատերազմի վերսկսումը Պոնտոսում.—վճռական ճակատամարտը Գայլ գետի մոտ.—Միհրդատի փախուստը Սինորիա:—4. Տիգրան Բ-ի բանակցությունները Պոմպեյոսի հետ.—5. Պարթևների և կրտսեր Տիգրանի արշավանքը Հայաստան.—Տիգրան Բ-ի հաղթությունը:—6. Պոմպեյոսի ռազմերթը դեպի Արտաշատ և ռազմերթի ճանապարհը.—Տիգրանի ու Պոմպեյոսի տեսակցությունը:—7. Հաշտությունը Տիգրան Բ-ի հետ:—8. Կրտսեր Տիգրանի ձերբակալությունը.—Հրահատ Գ-ի բողոքը և Պոմպեյոսի պատասխանը.—Հռոմի քաղաքականության փոփոխությունը պարթևների հանդեպ:—9. Պոմպեյոսի արշավանքները Իբերիա, Կողքիս և Աղվանք:—10. Կորդուքի հանձնումը Տիգրան Բ-ին.—պարթևների հարձակումը Տիգրան Բ-ի վրա.—միջնորդ դատավորների վճիռը:—11. Ապստամբությունը Միհրդատ Պոնտացու դեմ և նրա ինքնասպանությունը.—Պոմպեյոսի նվաճած երկրների *քաղաքական կազմակերպումը:—12. Տիգրան Բ-ին տրված երկրները.—Հռոմի վերաբերմունքը դեպի պարթևները:—13. Տիգրան Բ-ի թագավորության վերջին տարիները.—Տիգրանի սխալ բնութագրերը:—14. Վերջաբան:

*Երբ Հռոմում ընդունվում էր Մանիլիուսի վերոհիշյալ օրենքը՝ Պոմպեյոսն ինքը գտնվում էր Կիլիկիայում։ Ստանալով տեղեկություն, որ իր վաղեմի հույսերը լիովին իրականացել են և որ իրեն է հանձնված պոնտական ու հայկական պատերազմների վարումը՝ իսկույն ևեթ նա սկսեց նախապատրաստվել պատերազմի։ Նա կարգադրեց դաշնակից և ստորադրյալ ասիական իշխանավորներին ու քաղաքներին, որ ուղարկեն իրեն օգնական զորքեր։ Նրան*



15—318

հաջողվեց իր դրոշների տակ հավաքել մինչև իսկ այն արձակուրդավոր զինվորներին, որոնք հրաժարվել էին մնալ Լուկուլլոսի բանակում։ Ամենակարճ ժամանակվա ընթացքում նա համակենտրոնացրել էր Կիլիկիայում, բացի այնտեղ գտնվող երեք լեգեոններից և ափական օգնական զորքերից, ավելի քան հիսուն հազար նոր զորք։

66 թվի սկզբներին, իր մեծ արշավանքը սկսելուց առաջ, Պոմպեյոսը նախապես աշխատեց, իրեն հատուկ առանձին զգուշավորությամբ, դիվանագիտական պատրաստություններ ևս տեսնել։ Նա ուղարկել էր Միհրդատի մոտ իբր թե բարեկամական բանակցությունների համար փախստակ Միթրոփանեսին։ Սակայն, իրապես, նրա ուղարկած այս դեսպանը գնացել էր Պոնտոս պարզապես հետախուզական ու լրտեսական նպատակներով։ Միևնույն ժամանակ Պոմպեյոսի մի այլ դեսպանություն գնացել էր նաև Տիգրոն բանակցելու Հրահատ Գ-ի հետ և առաջարկելու, որ նա հռոմայեցիների հետ դաշն կնքե Պոնտոսի ու Հայաստանի թագավորների դեմ։ Այս դաշինքը գլուխ էր եկել նույն այն պայմաններով, որ 68 թվին Պարթևաց թագավորին առաջարկել էին Տիգրանը և Միհրդատը։ Հրահատ Գ-ին խոստում էր արված, որ նա կստանա ամբողջ Միջագետքը մինչև Եփրատ, այսինքն՝ այն երկրները, որ նրանից գրավել էր հարավում Տիգրանը։ Միևնույն ժամանակ առաջարկ էր արված Հրահատին, որ նա, գործակցելով իբրև դաշնակից՝ հարձակվի հայկական թագավորության վրա հարավ-արևելքից։

66 թվի սկզբներին քաղաքական դեպքերը դասավորվում էին ո՛չ ի նպաստ դաշնակից թագավորների։ Մասնավորապես Միհրդատը, որի դեմ շուտով արշավանք էր սկսելու Պոմպեյոսը, այլևս չէր կարող հույս դնել ո՛չ պարթևների վրա, ո՛չ էլ, առանձնապես, Տիգրանի վրա, որի երկրում ծագել էին ներքին խռովություններ և ապստամբություն։

Ինչպես հաղորդում են Ապպիանոսը և Վալերիուս Մաքսիմուսը[1], դավադրությունները Տիգրան Բ-ի դեմ Հայաստանում տեղի էին ունեցել մի քանի անգամ։ Այդ դեպքերը սրանց մոտ պատմված են այնպիսի վիպական մանրամասնություններով, որոնք ըստ իս վիճելի են դարձնում նրանց արժանահավատությունը և որոնք կարող են ընդունվել միայն որոշ վերապահումներով։ Այս հեղինակների վկայություններից երևում է, որ Տիգրանի արքունիքում, որն ամուսնացել էր Միհրդատի Կլեոպատրա դստեր հետ, սո-

[1] Տե՛ս App., Mithrid., 104 և Val. Max., XI, 11։

վորական էին դառել պալատական խարդավանքներն ու արյունահեղ ոճրագործությունները, որոնք մեծ չափերով առանձնահատուկ էին, ինչպես հայտնի է, նաև պոնտական, սելևկյան և այլ արևելյան արքունիքներին։

Տիգրանն ուներ Կլեոպատրայից, ինչպես վկայում է Ապպիանոսը[1], երեք որդիներ, որոնք բոլորն էլ թագավորական իշխանության էին ձգտում հոր մահից առաջ։ Նրանցից մեծը, Զարեհը, հայ իշխանների հետ, որոնք դժգոհ էին Տիգրանից, իր հոր դեմ դավադրություն էր կազմել նրան գահընկեց անելու նպատակով։ Դավաճանությունը սակայն հաջողություն չէր ունեցել, և Զարեհն ու նրա դավակիցները հաղթվել էին ու սպանվել։ Կլեոպատրայից ծնված՝ Տիգրանի միջակ որդին, որի անունը չէր պահպանվել, ուզեցել էր նույնպես գրավել հոր գահը, օգտվելով ուրիշ առիթից։ Ծերունի Տիգրանը որսի էր գնացել իր այդ որդու ու կրտսեր Տիգրանի հետ։ Որսի ժամանակ նա վայր էր ընկել ձիուց ու ուշաթափվել։ Միջակ որդին, թողնելով իր հորն այդ ծանր վիճակում՝ վերցրել էր նրա թագը և դրել իր գլխին, իսկ կրտսերը, մնալով նրա մոտ՝ խնամել էր նրան և օգնել։ Ծերունի թագավորը, ուշքի գալով՝ հրամայել էր միջակ որդուն մահապատժել, իսկ կրտսերին խոստացել էր տալ իր թագն ու գահը։ Սակայն Տիգրանի՝ Կապպադովկիայում գտնված ժամանակ, ապստամբել էր նաև այս կրտսեր որդին։

66 թվի սկզբներին Տիգրանը, լուր ստանալով իր որդու ապստամբության մասին, ստիպված եղավ ընդհատել իր հաղթական արշավանքը Կապպադովկիայում և վերադարձավ Հայաստան։ Ապստամբ որդին, որ պատերազմ էր սկսել իր հոր դեմ՝ պարտություն կրեց, փախավ դավադիր հայ մեծամեծների հետ Տիզբոն և այնտեղ ամուսնացավ պարթևների թագավոր Հրահատ Գ-ի դստեր հետ։

Կրտսեր Տիգրանի այս ապստամբությունը Պոմպեյոսի արշավանքի ճիշտ նախօրյակին ո՛չ միայն մեծապես թուլացրեց դաշնակից թագավորների դիմադրական ուժը, այլև պատճառ դառավ նրանց բարեկամական հարաբերությունների վատացման։ Ծերունի Տիգրանը, ինչպես վկայում է Դիոնը[2], կասկածում էր, որ իր որդուն գրգռողն ու ապստամբության դրդողը հենց ինքը Միհրդատն է։ Նրա կասկածները, իսկապես, որոշ հիմք ունեին։ Տիգրանը, լինելով դաշնակից Միհրդատի, վարում էր, ինչպես վերև

[1] *App.*, Mithrid., 104.
[2] *Cass. Dio*, XXXVI, 50, 1.

տեսանք, իր սեփական ու ինքնուրույն քաղաքականությունը։ Եվ Միհրդատին ձեռնտու էր, իհարկե, հայկական գահի վրա տեսնել իր երիտասարդ թոռին, որին նա կկարողանար իր ձեռքին խաղալիք դարձնել։

66 թվի գարնանը վերսկսվեց Պոնտոսում պատերազմը Միհրդատի դեմ։ Պոմպեյոսի զինական մեծ ուժերի դեմ Միհրդատը, որի երկիրն ավերվել ու ուժասպառ էր եղել Լուկուլլոսի արշավանքների ժամանակ, կարողացել էր հավաքել ու դուրս բերել ընդամենը մոտ 30.000 հետևազոր և 2—3000 հեծելազոր։ Ուստի և նա վարեց Պոմպեյոսի դեմ պարտիզանական լեռնային պատերազմ։ Նա շարունակ ետ էր քաշվում, հարկադրում էր Պոմպեյոսին իրեն հետապնդել, հարձակվում էր հանկարծակի, վնաս էր հասցնում թշնամուն և, ավերելով իր սեփական երկիրը՝ աշխատում էր դժվարացնել հռոմեական զորքի պարենավորումը։ Սակայն նրա այդ դիմադրությունը երկար չտևեց։ Պոմպեյոսը, վերջիվերջո, շրջապատեց նրան մի նեղ կիրճում, և Միհրդատը չկարողացավ այլևս խուսափել ճակատամարտից։ Վճռական ու վերջին կռիվը տեղի ունեցավ Միհրդատի հետ Գայլ գետից դեպի հարավ, էնդերեսից մոտ 10 կիլոմետր հեռավորության վրա գտնվող այժմյան Պյուրկի մոտ, ուր հիմնված էր հետո Նիկոպոլիս քաղաքը։

Հռոմեական զորքը, անցնելով հակառակորդի թիկունքը և գրավելով շրջակա բարձունքները՝ գիշերվա լռության մեջ հանկարծակի ,սուսկալի մարտական աղմուկ բարձրացրեց և չորս կողմից թշնամու վրա թափեց քարեր, նետեր և տեգեր։ Ապա հռոմայեցիները ցած իջան բարձունքներից և կոտորեցին պոնտական գրեթե ամբողջ ահաբեկված խուճապահար զորաբանակը։

Ինքը Միհրդատն այս անգամ էլ կարողացավ թողնել ճակատամարտի դաշտը և իր զորքի փոքրաթիվ մնացորդներով փախավ Հայաստանի սահմանում գտնվող Սինորիա ամրոցը։ Այս անգամ էլ նա հույս ուներ, որ ապաստան կգտնե Հայաստանում և՛ օգնություն կստանա ծերունի Տիգրանից։

Սինորիայում Միհրդատը բաժանեց իր զորքին փող և նվերներ ու Տիգրանի մոտ ուղարկեց սուրհանդակներ խնդրելու նրանից հյուրընկալություն։ Սակայն, ինչպես վերև ասացինք, ծերունի Տիգրանը կասկածում էր, և ո՛չ առանց հիմքի, որ իր որդուն գրգռողն ու իր դեմ բարձրացրած ապստամբության գլխավոր դրդիչն ինքը Միհրդատն է։ Ուստի և նա ո՛չ միայն մերժեց նրան ընդունել և օգնել, այլև ձերբակալեց սրա ուղարկած սուրհանդակներին և

ուղարկեց նրանց Պոմպեյոսին։ Նա ազդարարների միջոցով հայտարարեց, բացի այդ, որ Միհրդատի գլխի համար նա սահմանել է 100 տաղանդ դրամավարձ (=մոտ 420.000 գերմանական ոսկի մարկ կամ 210.000 ոսկի ռուբլի)։

Ֆրանսական գիտնականներ Տուրնեբիզը և Մորգանը, ինչպես և Մոմզենը, միանգամայն իրավացի կերպով ենթադրում են[1], որ Միհրդատի փախուստի հենց ժամանակ Տիգրանը սկսել էր արդեն վարել Պոմպեյոսի հետ հաշտության բանակցություններ։

Ըստ երևույթին, Միհրդատը նաև ինքն այլևս հույս չուներ ընդունելություն գտնելու իր փեսայի մոտ Հայաստանում։ Առանց Տիգրանից պատասխանի սպասելու՝ նա իր փոքրաթիվ զորաբանակով առաջ շարժվեց Սինորիայից դեպի հյուսիս։ Նա հույս ուներ, որ հասնելով Սև ծովի հյուսիսային ափերը՝ կկարողանա իր Բոսփորյան նախկին թագավորությունից դուրս վտարել իր ապստամբ որդուն, որը հռոմայեցիների հետ արդեն դաշն էր կնքել։

Սինորիայից Միհրդատը, ինչպես մանրամասն ցույց է տրրված իմ վերջին հոդվածներից մեկում[2], գնացել էր հյուսիս Եփրատի ափերով մինչև նրա ակունքները և այնտեղից այժմյան Օլթիի ու Արդահանի մոտով ու այնուհետև Արդվինի ու Բաթումի վրայով դեպի Սուխում։

Միհրդատի փախուստից հետո Պոմպեյոսը պատերազմը նրա դեմ համարեց վերջացած և նույն 66 թվին առաջնորդեց իր զորքը դեպի Հայաստան։

Մինչդեռ Պոնտոսում տեղի էին ունեցել վերև հիշատակված անցքերը՝ Հայաստանն իր հերթին ենթարկվել էր հարձակման։ Պարթևների թագավոր Հրահատ Գ-ը, իր նորափեսա Կրտսեր Տիգրանի խնդիրքով և, հավանորեն, նաև Պոմպեյոսի դրդմամբ՝ պատերազմ էր սկսել Տիգրան թագավորի դեմ, որը նրա անհաշտ ախոյանն էր ու թշնամին։ Տիգրանի ապստամբ որդու և խռովարար հայ մեծամեծների ուղեկցությամբ՝ նա ներս էր խուժել Հայաստան և, նվաճելով նրա հարավ-արևելյան շրջանները՝ հասել էր մինչև Արտաշատ մայրաքաղաքը։

Ծերունի Տիգրանը, որը հանկարծակիի էր բերվել, հարկա-

[1] Տե՛ս Fr. *Tournebize*, Histoire politigue et religieuse de l' Arménie, էջ 774, *Morgan*, Histoire du peuple arménien, էջ 78 և *Моммсен*, История Рима, III, էջ 107։

[2] Маршруты понтийского похода Помпея и путь отступления Митридата в Колхиду, Вестник древней истории, Москва, 1940, № 3—4, էջ 89—100։

դրվեց, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[1], փախչել իր երկրի լեռնային շրջանները։ Սակայն Արտաշատ քաղաքը, հավատարիմ մնալով Տիգրան թագավորին՝ ցույց տվեց համառ դիմադրություն։ Եվ պարթևները, որոնք չունեին ամրացրած քաղաքների պաշարման փորձ՝ չկարողացան նրան առնել, և պաշարումը խիստ երկարեց։

Կասսիուս Դիոնի պատմելով՝[2], երբ պարթևների թագավորը տեսավ, որ պաշարումը խիստ երկար է տևելու՝ իր ուժերի մի մասը թողեց Տիգրանի որդուն և վերադարձավ իր երկիրը։ Սակայն հենց որ նա հեռացավ՝ ծերունի Տիգրանը, որն իր շուրջն էր հավաքել իրեն հավատարիմ մնացած զորական ուժերը, հարձակվեց դավաճան որդու և ապստամբած հայ իշխանների վրա, հաղթեց նրանց և հալածեց ու իր իշխանությունը վերահաստատեց ամբողջ իր երկրում։ Կրտսեր Տիգրանը հարկադրված եղավ Հայաստանից փախչել և ուզեց գնալ Միհրդատի մոտ ու ուղևորվեց դեպի Պոնտոս, սակայն, իմանալով ճանապարհին, որ իր պապը ծանր պարտություն է կրել և կարոտ է ինքն օգնության՝ փոխեց իր ծրագիրը և գնաց Պոմպեյոսի մոտ։ Նա հույս ուներ, որ, համաձայնության գալով հռոմայեցիների հետ՝ կկարողանա այս նոր դավաճանության գնով ստանալ իր հոր գահը և թագավորությունը։

Հռոմեական զորավարն ուրախ պիտի լիներ, անշուշտ, որ Տիգրանի ապստամբ որդին, դավաճանելով իր հորը՝ ապավինում էր հռոմայեցիների հովանավորությանն ու օգնությանը։ Բայց Կրտսեր Տիգրանն արդեն ուշացել էր։ Նրա՝ Պոմպեյոսի մոտ գալուց դեռ առաջ՝ ծերունի Տիգրանը, տեսնելով որ անկարելի է միաժամանակ պատերազմել թե պարթևների ու իր որդու և թե հռոմայեցիների դեմ՝ սկսել էր ինչպես վերև տեսանք, հաշտության բանակցություններ վարել Պոմպեյոսի հետ։

Հավանորեն, Պոմպեյոսն ինքը ևս դեմ չէր հաշտության, սակայն նա, օգտվելով Հայաստանում ծագած ներքին խռովություններից՝ ուզում էր, իհարկե, Տիգրանին առաջադրել խաղաղության պայմաններն ըստ իր հայեցողության։ Կասսիուս Դիոնի ուշագրավ մի վկայությունից[3] պարզ ու որոշ երևում է, որ այդ բանում Պոմպեյոսին մեծապես օգնել էր Կրտսեր Տիգրանը, որն ամեն կերպ խոչընդոտել ու խանգարել էր սկսված բանակցությունները։ Ըստ

[1] Cass. Dio, XXXVI, 51, 2.
[2] Նույնը, XXXVI, 51, 2։
[3] Նույնը, XXXVI, 52, 1։

Պոմպեյոսի ճանապարհը Փոքր Հայքից դեպի Արտաշատ

գծ. 9.

Դիոնի՝ որդու այս հակառակությունն էր պատճառը, որ ծերունի Տիգրանը չէր կարողացել դաշն կնքել չափավոր պայմաններով։

Կրտսեր Տիգրանը, հույս ունենալով որ կստանա իր հոր գահը՝ ուղեցույց դառավ հռոմեական զորքին և առաջնորդեց Պոմպեյոսին ուղիղ Արտաշատի վրա։

Այս արշավանքի ճանապարհը ես պարզ կերպով որոշվում է Պեվտինգերյան քարտեզի Սատաղ—Բագավան—Արտաշատ հին ուղեգծով, որ մանրամասն լուսաբանված է «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխարհագրական իմ ուսումնասիրության մեջ։ Հռոմեական բանակն եկել էր Սատաղից Գաղտառիճի վրայով Քեփրիքեյ և այնուհետև գնացել էր Ալաշկերտի դաշտը և այստեղից Հայկական Պար կամ Աղրի-դաղ լեռնաշղթայի հարավային կողմով ու Կուչաղի լեռնանցքով մտել էր Արարատյան դաշտը։

Երբ Պոմպեյոսի զորաբանակը մոտեցել էր Արտաշատին՝ Տիգրան Բ-ը, տեսնելով որ դիմադրությունն աննպատակ է ու անօգուտ՝ վճռեց, ինչ գնով էլ լինի, համաձայնության գալ Պոմպեյոսի հետ և գնաց ինքն անձամբ նրա մոտ ու կամավոր կերպով անձնատուր եղավ հռոմայեցիներին։ Տիգրանի տեսակցության մասին Պոմպեյոսի հետ հին աղբյուրները տալիս են խառնաշփոթ տեղեկություններ, որոնք կարևոր մի քանի կետերում իրարից զգալի չափով տարբերվում են։ Ապպիանոսը, օրինակ, թեև ինքը՝ համապատասխան Կասսիուս Դիոնի և Պլուտարքոսի տեղեկություններին՝ վկայում է, որ Տիգրանի գնալը Պոմպեյոսի մոտ ինքնաբերաբար էր ու հոժարակամ, սակայն միևնույն ժամանակ մատնանշում է, որ ոմանք վկայում են նաև՝ որ Տիգրանին նախապես հրավիրել էր Պոմպեյոսը[1]։

Ինձ թվում է, որ այս վերջին տեղեկությունը, որը հիշատակված է Ապպիանոսի մոտ թռուցիկ կերպով և որը պատմագիտական երկերում աչքաթող է արված, կարող է ճիշտ լինել, որովհետև Պլուտարքոսի մոտ ևս մատնացույց է արված, որ Տիգրանը, նախքան Պոմպեյոսի մոտ գնալը, ներս էր թողել Արտաշատ նրա ուղարկած հռոմեական կայազորը։ Անհավանական չէ, ուրեմն, որ Տիգրանը Պոմպեյոսի մոտ գնացել էր, իրոք, ո՛չ թե ինքնաբերաբար, այլ, հավանորեն, հատուկ հրավերով ու նախնական բանակցություններից ու թերևս որոշ հավաստիացումներից հետո։ Հռոմեական աղբյուրներն աշխատել են, ըստ երևույթին,

[1] Տե՛ս Cass. Dio, XXXVI, 52, 1—4; Plut; Pomp., XXXIII, 1—4 և App., Mithrid., 104։

քողարկել նախնական համաձայնության հավանական այս փաստը և, Պոմպեյոսին մեծարելու համար, կարևոր են համարել առանձնապես շեշտել, որ Տիգրանն ապավինել էր Պոմպեյոսի գթասրտությանը հլու և անվերապահ կերպով։

Համաձայն վերոհիշյալ աղբյուրների տված տեղեկություններին՝ ծերունի Տիգրանը,—որն այդ ժամանակ մոտ 75 տարեկան էր,—Պոմպեյոսի մոտ եկել էր ձի հեծած, առանց արքայական ծիրանու, բայց գլխին ուներ իր խույրն ու ապարոշը։ Երբ նա հասել էր հռոմեական զորաբանակի մուտքի առջև, նա ուզեցել էր, ինչպես այդ ընդունված էր հայերի մոտ, մտնել ճամբար ձիով։ Սակայն Պոմպեյոսի թիկնապահների պահանջով նա, համաձայն հռոմեական կարգերի, իջավ ձիուց ցած, տվեց նրանց իր սուրը ու ներս մտավ ոտքով։ Մտնելով Պոմպեյոսի մոտ, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը[1], նա դեն գցեց իր խույրը և ուզեց խոնարհվել ու նրան ողջունել, սակայն Պոմպեյոսն իսկույն տեղից վեր կացավ, նրան բարձրացրեց և նստեցրեց իր կողքին։ Կասսիուս Դիոնի ասելով՝ Պոմպեյոսն այնուհետև Տիգրանին մխիթարեց և հայտնեց, որ նա ո՛չ միայն կմնա Հայաստանի թագավոր, այլև կհամարվի հռոմայեցիների բարեկամ ու դաշնակից։ Ապա, ծերունուն հանդըստացնելուց ու քաջալերելուց հետո՝ Պոմպեյոսը նրան հրավիրեց ճաշի։ Տիգրանի որդին, որը ներկա էր ու նստած էր Պոմպեյոսի մյուս կողքին և որը հույս ուներ Պոմպեյոսից ստանալու Հայաստանի գահը, տեսնելով որ ինքը խաբված է՝ խիստ դժգոհ մնաց և Պոմպեյոսի մոտ չգնաց ճաշի, որին հրավիրված էր հոր հետ միասին։

Պոմպեյոսի ու Տիգրանի այս հանդիպման ժամանակ նրանց մեջ կայացավ հաշտություն։ Տիգրանը պետք է հրաժարվեր իր բոլոր նվաճումներից, այն է՝ Ասորիքից, արևելյան Կիլիկիայից, Փյունիկեից, Կապպադովկիայից, Կորդուքից ու Ծոփքից և մնալու էր միմիայն իր հայրենի երկրի՝ Մեծ Հայաստանի թագավոր։ Իսկ նրա որդին, Կրտսեր Տիգրանը, ստանալու էր Ծոփքը (ըստ Ապպիանոսի՝[2] նաև Կորդուքը) և հոր մահից հետո ժառանգելու էր նրա գահը։ Ոմանք, հիմնվելով Ապպիանոսի անորոշ մի վկայության վրա՝[3] կարծում են, որ Ծոփքի թագավորությունը նա ստացել էր դեռ առաջ իր հորից։

Ծերունի Տիգրանը ո՛չ միայն հարկադրված եղավ հրաժարվելու

[1] *Cass. Dio*, XXXVI, 52, 3.

[2] *App.*, Mithrid., 105.

[3] Նույնը, 104, տե՛ս նաև Հ. Ասատուրյան, քաղաքական վերաբերություններ, էջ 77։

իր նվաճումներից, այլև վճարելու էր Պոմպեյոսին 6000 տաղանդ պատերազմական տուգանք, որն անում է այժմյան դրամով մոտ 25 միլիոն գերմանական ոսկի մարկ կամ մոտ $12^1/_2$ միլիոն ռուսական ոսկի ռուբլի։ Բացի այդ, նա հռոմեական զորքերին ևս համաձայնել էր տալ առանձին նվեր՝ ամեն մեկ զինվորին 50 դրաքմե (հավասար է մոտ 35 ոսկի մարկի կամ մոտ $17^1/_2$ ոսկի ռուբլու), հարյուրապետներին 100-ական դրաքմե (=350 ոսկի ռուբլի) և զինվորական տրիբուններին 1-ական տաղանդ (=2100 ոսկի ռուբլի)[1]։

Թեև պատմական երկերում հաճախ մատնանշվում է, որ Պոմպեյոսի վերաբերմունքը դեպի Տիգրանը եղել է արտասովոր կերպով մեղմ, սակայն, ինչպես տեսնում ենք, հաշտության վերոհիշյալ պայմանները բավական ծանր էին։ Պետք է ասել, որ արտաքին մեղմությունը և արտակարգ զգուշավորությունը եղել են Պոմպեյոսի քաղաքական ու ռազմական գործունեության հիմնական հատկանիշները։ Լինելով հռոմեական ֆինանսիստների ու վաշխառուների կուսակիցը՝ Պոմպեյոսն ինքը ևս, ինչպես հայտնի է, Իտալիայի ամենախոշոր վաշխառուներից մեկն էր։ Նա գերադասում էր հռոմեական իմպերիալիզմի նպատակներն իրագործել ո՛չ թե զենքի ուժով, ինչպես Լուկուլլոսը, որը խիզախ զինվորական էր, այլ խաղաղ ճանապարհով և առանց ռիսկի։ Հայաստանը, ինչպես տեսնում ենք, նա մեծ հաջողությամբ կարողացել էր ընկճել ու կողոպտել առանց արյունահեղության ու զոհողությունների։

Հաշտության վերոհիշյալ պայմաններից չէր կարող, իհարկե, գոհ լինել Կրտսեր Տիգրանը։ Իբրև վարձ իր դավաճանության՝ նա հույս ուներ ստանալու ո՛չ թե Ծոփաց երկրի թագավորությունը, որը նա, ինչպես տեսանք, նախքան իր ապստամբությունը, ըստ երևույթին, արդեն ստացել էր հորից, այլ հայկական մեծ ու հզոր պետությունը։ Չափազանց ծանր ու անարդար էր նա համարում նաև այն, որ պատերազմական վերոհիշյալ տուգանքը վճարվելու էր, գլխավորապես, Ծոփքում գտնվող գանձապահեստներից, այսինքն՝ իր թագավորության միջոցներից։

Կասսիուս Դիոնի պատմելով՝ Կրտսեր Տիգրանը, որն ըմբոստացել էր և չէր ուզեցել հանձնել իր հորը Ծոփքում գտնվող գանձերը՝ ձերբակալվել էր Պոմպեյոսի հրամանով[2]։ Պետք է սակայն ասել, որ նրա ձերբակալության մասին հին աղբյուրները տալիս են

[1] Տե՛ս Strabo, XI, 14, 10 (530), *Plut.*, Pomp., XXXIII, 3—4 և *App.*, Mithrid., 104։

[2] *Cass. Dio.*, XXXVI, 53, 3—5.

տարբեր տեղեկություններ։ Ապպիանոսը, Հակառակ Դիոնի, ակնարկում է, որ նա նոր դավադրություն էր կազմակերպել իր Հոր դեմ[1]։ Իսկ Պլուտարքոսը մատնանշում է, որ նա՝ Հրավիրված լինելով Պոմպեյոսի մոտ ճաշի՝ Հրաժարվել էր գնալ և անարգել ու վիրավորել էր Պոմպեյոսին[2]։ Ըստ իս այս երեք վկայություններն էլ կարող են որոշ չափով ճիշտ լինել։ Կրտսեր Տիգրանը, որը դժգոհ էր մնացել և թշնամացել էր Պոմպեյոսին՝ կարող էր, իրոք, կոպտաբար վերաբերված լինել սրան, Հակառակած լինել իր թագավորության գանձերի Հանձնմանը և, միևնույն ժամանակ, կարող էր նաև դավեր նյութած լինել իր Հոր դեմ։

Կրտսեր Տիգրանի ձերբակալությունը, որը փաստորեն Պոմպեյոսի դաշնակիցն էր՝ բացաՀայտ բռնություն էր և խախտումը միջազգային իրավունքի։ Միաժամանակ այդ թշնամանք էր ու վիրավորանք կալանավորի աներոջ՝ պարթևների թագավոր ՀրաՀատ Գ-ի նկատմամբ։ Ըստ Պլուտարքոսի վկայության՝

«ՀրաՀատ պարթևը մարդ էր ուղարկել [Պոմպեյոսի մոտ] պաՀանջելու երիտասարդին, որ իր փեսան էր, նաև պաՀանջ Հայտնելու, որպեսզի իրենց իշխանությունների սաՀմանը լինի Եփրատ գետը։ Պոմպեյոսը պատասխանել էր, որ Տիգրանն ավելի մոտ է իր Հորը, քան աներոջը, իսկ սաՀմանը կլինի այն, որ կՀամարվի իրավացի»[3]։

Հակառակ, ուրեմն, ՀրաՀատ Գ-ի բողոքներին, որը Հիշեցնում էր Պոմպեյոսին իր կնքած դաշինքը Հռոմայեցիների Հետ՝ Կրտսեր Տիգրանը և նրա կինն ու դուստրը[4] ուղարկվեցին շղթայով Հռոմ, որպեսզի մասնակից լինեն Պոմպեյոսի ՀաղթաՀանդեսի շքերթին։

Պոմպեյոսի վարքագծի այս անակնկալ փոփոխությունը պարթևական թագավորության Հանդեպ Համապատասխանում էր կատարելապես Հռոմի արտաքին, նենգ ու խարդախ քաղաքականությանը։ Քանի որ պոնտական ու Հայկական թագավորությունները թշնամի էին Հռոմին և պատերազմում էին նրա դեմ՝ վերջինս իրեն ցույց էր տալիս բարեկամ պարթևներին։ Հռոմեական զորավարները, ինչպես Սուլլան և Լուկուլլոսը, նույնպես և Պոմպեյոսը՝ կամ բարեկամական բանակցություններ էին վարում նրանց Հետ և կամ դաշինք էին կնքում ու խոստանում նրանց թողնել Միջագետքը մինչև Եփրատ գետը։ Բայց այժմ պոնտական թագավորությունն այլևս գոյություն չուներ, իսկ Տիգրան թագավորը ճանաչ-

[1] *App.*, Mithrid., *105*.

[2] *Plut.*, Pomp., XXXIII, *4*.

[3] *Plut.*, Pomp., XYXIII, *4*.

[4] *Տե՛ս Նույնը*, XLV, 4.

ված էր իբրև բարեկամ ու դաշնակից Հռոմի։ Ուստի և Հռոմը, որը չէր ուզում ունենալ իր շուրջը հզոր ու մեծ պետություններ՝ հիմա հովանավոր դառավ Տիգրան թագավորի և փոխեց իր վերաբերմունքը դեպի Հրահատ Գ-ը։ Պարթևական թագավորությունը Հռոմի համար այլևս հանդուրժելի չէր իբրև անկախ ու ուժեղ թագավորություն։ Եվ շուտով, ինչպես կտեսնենք, նրանց նախկին բարեկամությունը վերածվեց անհաշտելի թշնամության։

Դժվար չէ նաև կռահել, թե ինչո՛ւ Պոմպեյոսը Հայաստանի գահը չտվեց Կրտսեր Տիգրանին։ Շատ պարզ է, որ ծերունի Տիգրանը, որը պարթևական թագավորության ոխերիմ թշնամին էր՝ հռոմայեցիների համար ավելի ցանկալի դաշնակից էր, քան Կրտսեր Տիգրանը, որը փեսան էր ու բարեկամը Հրահատ Գ-ի։

Ներգրավելով Հայաստանը հռոմեական ազդեցության շըրջանակի մեջ՝ Պոմպեյոսը, ինչպես վկայում է Պլուտարքոսը[1], թողեց այստեղ իբրև վերահսկիչ Աֆրանիուսին, իսկ ինքն առաջնորդեց հռոմեական զորքը դեպի հյուսիս ընդդեմ Միհրդատ Պոնտացու, որը սակավաթիվ իր զորքերով պատսպարվել էր Կողքիսում։

66/65 թվի ձմեռը Պոմպեյոսի զորքերը մնացին Կուր գետի մոտերքում, այժմյան Ախալքալաքի շրջանում։ Այստեղ դեկտեմբերի կեսերին նրանց վրա հարձակվեցին իբերները և աղվանները, բայց այդ հարձակումը, որը չափազանց վտանգավոր կարող էր լինել Պոմպեյոսի զորաբանակի համար՝ չէր հաջողվել։ 65 թվի գարնան սկզբին Պոմպեյոսն արշավեց Իբերիա և, հաղթելով իբերների Արտոկես թագավորին ու ապահովելով իր թիկունքը՝ շարունակեց իր արշավանքը Միհրդատ Եվպատորի դեմ։ Այս արշավանքն ապարդյուն անցավ, որովհետև Միհրդատը կարողացել էր Կողքիսից անցնել Ղրիմ և վերանվաճել էր այնտեղ իր Բոսփորյան թագավորությունը։ Վերադառնալով Կողքիսից Հայաստան՝ Պոմպեյոսը արշավեց այստեղից Աղվանք։ Եվ աղվանների Օրոյզես թագավորը, հաղթվելով նրանից՝ ճանաչեց, ինչպես և Իբերիայի Արտոկես թագավորը, Հռոմի գերիշխանությունը։

65 թվի այս երեք արշավանքները մանրամասն նկարագրված են իմ «Տիգրան Բ-ը և Հռոմը» աշխատության մեջ[2]։

Մինչ Պոմպեյոսը պատերազմ էր վարում իբերների ու աղվանների դեմ՝ պարթևները գրավել էին Միջագետքը, որն, ինչպես

---

[1] *Plut.*, Pomp., XXXIV, 1.

Տե՛ս էջ 200—206 [տե՛ս նաև նույն հատորում, էջ 597—601. խմբ.]։ Համեմատե նաև իմ հոդվածը „Круговой путь Помпея в Закавказье“, „Вестник древней истории“, 4, М., 1939, էջ 70—82։

տեսանք, համաձայն Պոմպեյոսի հետ կնքած դաշինքի մինչև Եփրատ գետը պատկանելու էր նրանց։ Պարթևները ներխուժել էին նաև Կորդվաց երկիրը, որի տիրապետության համար վեճ էր առաջացել իրենց ու հայերի մեջ։ Սակայն Պոմպեյոսը պահանջեց Հրահատ Գ-ից մաքրել Կորդուքը, առարկելով որ այդ երկիրը պատկանում է, իբրև, Տիգրան Բ-ին։ Չսպասելով նույնիսկ Հրահատ Գ-ի պատասխանին՝ նա հրամայեց իր օգնականներից մեկին, Աֆրանիուսին, գրավել ու հանձնել Կորդուքը Հայոց թագավորին։

Չնայած Պոմպեյոսի գրգռիչ ոտնձգություններին և դաշնադրության անպատկառ խախտմանը, որի համաձայն հյուսիսային Միջագետքը մինչև Եփրատ գետը ճանաչված էր որպես պարթևներին պատկանող երկիր՝ Հրահատ Գ-ը չհամարձակվեց պատերազմել հռոմայեցիների դեմ։ 64 թվի գարնանը նա դիմեց իր զորքերով Հայաստան և հարձակվեց Տիգրանի վրա, որն օգնություն խնդրեց դաշնակից հռոմայեցիներից։

Այս դեպքը Պոմպեյոսի համար մի հարմար առիթ էր պատերազմ սկսելու նաև պարթևների դեմ, ինչպես այդ ցանկանում էին, իբրև, նրա կուսակիցներից ու սպաներից շատերը։ Սակայն Պոմպեյոսը, որ խիստ զգույշ էր և չուներ Լուկուլլոսի հանդուգն համարձակությունը, չուզեց բախտախաղի դնել իր ձեռք բերած հաջողությունները և խուսափեց կռվից։ Նա արդարանում էր նրանով, որ հռոմեական ժողովուրդն այդ իրեն չի հանձնարարել և որ դեռևս վերջնականապես զինաթափ չի արվել Միհրդատ Պոնտացին[1]։

Պատերազմից հռոմայեցիների հետ, ինչպես ասացինք, խույս էր տալիս նաև պարթևների թագավոր Հրահատ Գ-ը, որը նույնպես չունեցավ արիություն ոտքի ելնելու հռոմեական ուխտանենգ զորավարի դեմ։ Եվ որովհետև նա նորից դեսպաններ էր ուղարկել Պոմպեյոսի մոտ՝ վերջինս հայտնեց նրան, որ կուղարկե երեք միջնորդ դատավորներ, որոնք կհարթեն սահմանների վերաբերյալ նրա ու Տիգրանի վեճը[2]։ Հրահատ Գ-ը և Տիգրանը դադարեցրին պատերազմը և համաձայնեցին ընդունել միջնորդների վճիռը։

Այնուհետև ուղարկված դատավորները քննարկման ենթարկեցին նրանց գանգատներն ու պահանջները և կայացրին իրենց վճիռը հօգուտ Տիգրանի։ Համաձայն նրանց որոշման Հայոց թագավորը ստացավ ո՛չ միայն Կորդվաց երկիրը, այլև հյուսիսային Միջագետքի մի մասը։

---

[1] *Cass. Dio*, XXXVII, 7. 1.

[2] *Cass. Dio* XXXVII, 7, 3; *App.*, Mithrid., 106 և *Plut.*, Pomp., XXXIX, 3.

Երբ կատարվում էին այս անցքերը, Միհրդատ Պոնտացին, որը վերահաստատել էր իր իշխանությունը Բոսփորյան թագավորության մեջ՝ խաղաղության նոր առաջարկություններ արեց հռոմայեցիներին և հայտնեց, որ եթե Պոմպեյոսը համաձայնէ վերադարձնել իրեն Պոնտական թագավորությունը՝ ինքը պատրաստ է հպատակվելու Հռոմին որպես վասսալ և հարկատու։ Պոմպեյոսը, ինչպես և 66 թվին, նրան պատասխանեց նորից, որ նախքան բանակցություններ վարելը՝ նա պետք է անձամբ գա և հնազանդվի Հռոմին։ Հաշտությունն այլևս անհնարին էր։ Եվ Միհրդատը վճռեց նախապատրաստվել Հռոմի դեմ կռվի և մշակեց նոր արշավանքի հանդուգն մի ծրագիր։ Նա մտադիր էր, դաշն կապելով սկյութների, թրակացիների և կելտերի հետ՝ արշավել Իտալիա Դանուբ գետի հովիտներով և Ալպյան լեռների վրայով, ինչպես այդ իրենից առաջ արել էր կարթագենացի Հաննիբալը։ Այդ մեծ արշավանքի համար հարկավոր էին, իհարկե, թե մարդկային և թե նյութական վիթխարի ուժեր ու միջոցներ։ Եվ 63 թվին, երբ Միհրդատը վերջացնելու վրա էր ռազմական իր պատրաստությունները, որոնց ամբողջ ծանրությունն ընկնում էր Բոսփորի բնակչության ու քաղաքների վրա՝ հանկարծակի նրա դեմ բռնկվեց տարերային կատաղի ապստամբություն, որին մասնակից էին ո՛չ միայն գրեթե բոլոր քաղաքները, այլև նրա զորքն ու նրա որդին Փառնակը։ Ծերունի Միհրդատը հասկացավ, որ իրեն չեն խնայելու և որ այլևս փրկվելու ոչ մի հնար չկա։ Պաշարված լինելով Պանտիկապեյոն (այժմյան Կերչ) քաղաքի իր ամրոցում՝ նա չուզեց անձնատուր լինել ապստամբներին և իր կյանքին վերջ տվեց ինքնասպանությամբ (63 թվի գարնանը)։

64 և 63 թվերին Պոմպեյոսը քաղաքականապես կազմակերպեց իր նոր նվաճած երկրները և կարգավորեց նրանց վարչական ներքին գործերը։ Դեռևս 64 թվին, երբ նա գտնվում էր դեռ Պոնտոսում, նա դարձրել էր Նիկոմեդեսի նախկին թագավորությունը, Բիթանիան և Միհրդատի Պոնտական թագավորության արևմտյան մասը հռոմեական նահանգ։ Սելևկյանների իշխանությունը հայտարարվեց Ասորիքում վերցված, և այս ամբողջ երկիրը վերածվեց հռոմեական նահանգի։ Սելևկյան Անտիոքոսը դառավ Հռոմի վասսալ և փոխանակ Ասորիքի ստացավ Կոմագենի փոքր թագավորությունը, որի կենտրոնն էր Սամոսատ մայրաքաղաքը։ Ընդարձակ նոր երկրամասեր ստացան Հռոմի բարեկամ և դաշնակից Կապպադովկիայի Արիոբարզանես թագավորը և Գալատիայի Դեյոտարուս իշխանը, որոնք մեծ ծառայություններ էին մատուցել Հռոմա-

յեցիներին պոնտական և հայկական պատերազմների ընթացքում։ Պոմպեյոսը տվեց Արիոբարզանեսին Կիլիկիայից անջատված մի քանի շրջաններ և ամբողջ Ծոփաց թագավորությունը։ Սրան էր այժմ պատկանում Եփրատի նշանավոր գետանցքը և Տոմիսա ամրոցը։ Իսկ Դեյոտարոսը, որը հայտարարվեց թագավոր՝ ստացավ պոնտական թագավորության արևելյան մասը՝ արևելյան ծովափնյա Պոնտոսը, որի մեջ էին Փառնակիա և Տրապիզոն քաղաքները, ու նաև Փոքր Հայքը։

Եփրատ գետի արևելակողմում Հռոմի գերիշխանությունը ճանաչել էին և նրա ազդեցության շրջանակի մեջ էին համարվում ո՛չ միայն Հայաստանը, որը հայտարարված էր բարեկամ ու դաշնակից հռոմեական ժողովրդի, այլև Ատրպատականը, Իբերիան, Կողքիսը, Աղվանքը, Օսրոենը և մի քանի այլ արաբական փոքր ցեղեր հյուսիսային Միջագետքում։

Հայաստանը, որը բարեկամ ու դաշնակից էր հայտարարված Հռոմի և անվանապես ընդունել էր սրա գերիշխանությունը՝ դառավ այժմ հռոմեական աշխարհակալության ռազմական առաջապոստը։ Պոմպեյոսը հիմնապես այնուհետև փոխեց իր քաղաքականությունը նրա հանդեպ։ Տիգրանը ևս, ինչպես և Արիոբարզանեսը և Դեյոտարոսը, ստացավ Պոմպեյոսից և կամ սրա աջակցությամբ ո՛չ միայն Կորդուքը և հյուսիսային Միջագետքը, որոնց միացումը Հայաստանին վերև հիշատակել էինք, այլև, հավանորեն, Կղարջքը, Դերջանը և Ակիլիսենը[1], որն այդ ժամանակ պարունակում էր իր 'մեջ բացի հին Եկեղյաց գավառից նաև Դարանաղին, Մանանաղին, Աղյունը և Մզուրը։ Այսպիսով Մեծ Հայաստանը, ինչպես տեսնում ենք, Տիգրան Բ-ի ժամանակ ևս իր սահմաններն ընդարձակել էր թե Հայկական լեռնաշխարհի հարավակողմում և թե Փոքր Հայքի ու Ծոփաց աշխարհի հարակից շրջաններում։

Պոմպեյոսի սիրաշահական նոր քաղաքականությունը Մեծ Հայաստանի հանդեպ արտահայտվեց նաև նրանով, որ «թագավորների թագավոր» պատվանունը, որը մինչև Տիգրանը կրել էին պարթևների թագավորները և որը, Տիգրանի աշխարհակալության տապալումից հետո, հռոմայեցիները սկզբում ճանաչել էին իբրև Հրահատ Գ-ի տիտղոս՝ այժմ վերապահվեց միմիայն Տիգրանին, իսկ Հրահատ Գ-ին սկսեցին անվանել լոկ «թագավոր»։

Պարթևների թագավորը հարկադրված եղավ անտրտունջ

[1] *Տե՛ս Markwart*, Die Genealogie der Bagratiqen, էջ 63 և իմ «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 73 և իմ հոդվածը „Маршруты понтийского похода Помпея“, „Вестник древней ист.“, 3—4, 1940г., էջ 99։

կերպով տանել այդ ակներև վիրավորանքներն ու թշնամանքները։ Հռոմի այս խաբված դաշնակիցն այժմ ինքն էր գտնվում երկու կրակի մեջ, ինչպես 66 թվին նրա ախոյանը՝ Տիգրանը։ Ասորիքի սահմանում կազմ և պատրաստ կանգնած էր Պոմպեյոսի մեծ զորաբանակը, իսկ Միջագետքի և Ատրպատականի կողմից սպառնում էին պարթևներին Հռոմի նոր դաշնակցի՝ Տիգրանի հայկական զորքերը։ Հրահատ Գ-ը հիմա նոր միայն հասկացած կլիներ, որ իր դաշնակցությամբ հռոմայեցիների հետ նա, ինչպես նախազգուշացրել էր իրեն Միհրդատը՝ կորստյան մատնել ո՛չ միայն իր հարևաններին, այլև ինքն իրեն։

Պոմպեյոսի՝ Իտալիա վերադառնալուց հետո (61 մեր թվ. առաջ)՝ Տիգրան Բ-ը խաղաղ ու անվրդով թագավորեց Հայաստանում մինչև խորին ծերություն, հավանորեն, մինչև 56 կամ 55 թիվը։ 56 թվին նա դեռ կենդանի էր և հիշատակված էր Կիկերոնի ճառերից մեկում[1]։ Իսկ Կրասսոսի արշավանքի ժամանակ, 54 թվին, Հայաստանում միանձնորեն թագավորում էր նրա որդին՝ Արտավազդ Բ-ը։ Լուկիանոսը վկայում է, որ Տիգրանը վախճանվել էր խոր ծերության մեջ 85 տարեկան հասակում[2]։ Եթե այս վկայությունը, որը կարող է կասկածելի համարվել, հնարավոր լինի հետագայում հաստատել՝ կարելի կլինի ենթադրել, որ նա ծնված պիտի լիներ 141 կամ 142 թ. (մեր թվ. առաջ) և, ուրեմն, մոտ տասը տարով մեծ եղած պիտի լիներ Միհրդատ Եվպատորից, որը ծնվել էր, համաձայն Ռեյնաքի, 132 թվին[3]։

Տիգրանի կինը՝ Կլեոպատրան, ըստ երևույթին, թողած է եղել իր ամուսնուն և հեռացած է եղել իր հոր մոտ, հավանորեն, Կրտսեր Տիգրանի ապստամբության ժամանակ։ 63 թվին, իր հոր ինքնասպանության ժամանակ, նա ևս, ինչպես հայտնի է, գտնվել է իր հոր հետ Պանտիկապեյոն քաղաքում[4]։

Տիգրան Բ-ի հետ վերջանում էր Հայաստանի մեծապետական վերելքի խիստ կարճատև շրջանը։ Շատ պարզ է, որ այս հզոր թագավորը, որը Հայաստանը դարձրել էր լայնածավալ պետություն և իրեն նպատակ էր դրել զարգացնել իր երկրում հելլենիստական քաղաքային կուլտուրան և դուրս հանել հայ ժողովուրդը հետամնաց կացությունից՝ չէ կարող համարվել միջակ ու սովորական մի դեմք։ Սակայն պատմական խոշոր ու առաջավոր այս

1 Pro Sestio, 27, 59.

2 Տե՛ս Lucianus, Makrobioi, Bibl. Teubn.:

3 Mithridate Eupator, էջ 52.

4 Նույնը, էջ 405։

դեմքը, դժբախտաբար, աղավաղված ու խեղաթյուրված է պատմագիտական գրեթե բոլոր օտար և հայ երկերում։

Տիգրանի սխալ բնութագրերը բոլոր այդ երկերում պետք է ըստ իս անվերապահ կերպով մերժվեն, որովհետև դրանք, ինչպես տեսանք, հիմնված են, գլխավորապես, Պլուտարքոսի և նրա սկզբնաղբյուրների չարամիտ ու հնարովի հերյուրանքների վրա, որոնք չունեն պատմական նշանակություն։

Տիգրան Բ-ը, ինչպես և Միհրդատ Եվպատորը, անտարակույս, հելլենիստական տիպի միապետներ էին, որոնք բուռն թափով առաջ էին տանում Ալեքսանդր Մակեդոնացու ու նրա հաջորդների քաղաքակրթական մեծ գործը։ Թե ի՛նչպիսի խոր արմատներ էր ունեցել հելլենական կրթությունը հայկական արքունիքում՝ այդ երևում է նրանից, որ Տիգրանի որդին՝ Արտավազդը, ինչպես վերև ասացինք, գրած է եղել հունարեն լեզվով ողբերգություններ, ճառեր և պատմական երկեր, որոնցից մի քանիսը հայտնի են եղել Պլուտարքոսին[1]։

Տիգրանի և Միհրդատի վերանորոգչական ու առաջադիմական գործունեությանը վերջ դրին Լուկուլլոսի և Պոմպեյոսի արշավանքները։ Հաղթող ու աշխարհակալորեն առաջ շարժվող Հռոմը ո՛չ միայն ամայացրեց և ավերակների կույտ դարձրեց Պոնտոսի և հարավային Հայաստանի հարուստ ու փարթամ քաղաքները և գյուղերը, այլև, հաստատվելով մշտականապես Ասորիքում՝ հետզհետե առաջ բերեց ինչպես Հայաստանում, նույնպես և ամբողջ Առաջավոր Ասիայում, հելլենիստական քաղաքակրթության թուլացում և կուլտուրական հետադիմություն[2]։ Հատկապես Հայաստանում ու նրա հարևան պարթևական թագավորության երկրներում հելլենիզմը և հելլենական քաղաքային կուլտուրան հետզհետե զիջեցին իրենց տեղը իրանական հին կենցաղին ու ավանդություններին, որոնք խոր արմատներ ունեին առանձնապես այս երկրներում։

Հռոմեական աշխարհակալության հաստատմամբ Եփրատ ու Տիգրիս գետերի մոտ Հին Հայաստանի համար ստեղծվեց քաղաքական ծանր ու տանջալից բուֆերական կացություն, որն այնուհետև տևեց երկար դարեր։ Գտնվելով երկու հզոր թշնամիների՝ Հռոմի և Իրանի միջև՝ Հայաստանը հարկադրված եղավ, հակառակ հայ ժողովրդի կենսական շահերին, մասնակից լինել կատաղի

[1] *Plut.*. Crassus, XXXIII, 1.

[2] Տե՛ս *Eduard Meyer*, Blüte und Niedergang des Hellenismus in Asien Berlin, 1925, էջ 62 ևն.։

ու անվերջ պատերազմներին, որ պարբերաբար վերսկսում էին իրար դեմ հարևան մեծ պետությունները։

Հայկական լեռնաշխարհը հենց ինքը դառավ այնուհետև միջազգային պայքարի ու մրցությունների առարկա և կատարում էր հաճախ հենարան երկրի ու ռազմադաշտի ծանր դեր։ Կռվող պետությունների համար Հայաստանին տիրապետելը խիստ կարևոր էր և պայմանավորված էր ո՛չ միայն այն հանգամանքով, որ նրա մեջ գտնվում էր համաշխարհային առևտրական ճանապարհների հյուսիսային մեծ գիծը, այլ, գլխավորապես, նրա ռազմական ու ստրատեգիական մեծ կարևորությամբ։

Ուստի և քաղաքական մերձեցումը Հայաստանի հետ կամ նրա բռնի նվաճումն այնուհետև ամենահիմնական հարցը եղավ թե Հռոմի և թե Պարթևների արտաքին քաղաքականության։

# ԳԼՈՒԽ ՏԱՍՆՅՈԹԵՐՈՐԴ

## ԿՐԱՍՈՍԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ԱՐՏԱՎԱԶԴ Բ-Ի ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐԹԵՎՆԵՐԻ ՀԵՏ

1. Ընդարձակված Մեծ Հայաստանը Արտավազդ Բ-ի ժամանակ։—2. Խաղաղության խանգարումն Արևելքում.—պարթևների հաշտարար քաղաքականությունը հայերի հանդեպ.—3. Կրասոսի պարթևական արշավանքի նպատակը.—արևմտյան Միջագետքի քաղաքների նվաճումը.—Արտավազդի գալուստը Ասորիք ու նրա առաջարկը։—4. Օրոդեսի արշավանքը Հայաստան.—Արտավազդի արած նոր նախազգուշացումը։—5. Հռոմեական զորքի սոսկալի պարտությունը.—Օրոդեսի հաշտությունն Արտավազդի հետ։—6. Պարթևական-հայկական արշավանքներն Ասորիքում։—7. Քաղաքացիական պատերազմը Հռոմում և Տաքսիլեսի ու Մեգաբատեսի հայկական զորամասերի մասնակցությունն այդ պատերազմին.—Պոմպեյոսի սպանությունը և Փառնակի պարտությունը Զելայի մոտ։—8. Պարթևների համաձայնությունը հանրապետականների հետ.—Բակուրի իշխանության հաստատումն Ասորիքում։—9. Հայաստան բերված հրեական գաղթականությունը։—10. Պարթևների պարտությունն Ասորիքում.—Անտոնիոսի ծրագիրը։

*Տիգրան Բ-ի որդին, Արտավազդը, ինչպես ենթադրում են, դեռևս հոր ծերության օրերին նրա աթոռակիցն էր և նրան հաջորդել էր 56/55 թվերին մեր թվականությունից առաջ։*

*Իր դրամների վրա, որ պահպանվել են մինչև մեր օրերը՝ Արտավազդը անվանում է իրեն «թագավորների թագավոր»։ Նրա ժամանակ Մեծ Հայաստանը, իրապես, հզոր պետություն էր ու զգալի չափով ընդարձակվել էր, որովհետև Տիգրանյան Հայաստանին, ինչպես տեսանք, միացվել էին Կորդուքը, հյուսիսային Միջագետքը և որոշ երկրամասեր Հայկական լեռնաշխարհի արևմտակողմում։ Մեծ Հայաստանի սահմաններից դուրս էր մընացել միայն Ծոփքը, որը Պոմպեյոսը 62 թվին (մեր թվ. առ.) տվել էր Կապպադովկիայի Արիոբարզանես թագավորին։*

Ինչպես հայտնի է, առաջին անգամ միայն Տիգրան Բ-ի ժամանակ Մեծ Հայաստանն այնքան էր ընդարձակվել, որ իր մեջ բովանդակում էր Խորենացու Աշխարհացույցի մեջ հիշատակված 15 նահանգները։

«Հայաստան աշխարհագրական գաղափարը,— ասում է Հյուբշմանը,— հաստատուն կերպով զարգացավ Տիգրանի ժամանակ, որն առաջին անգամ Հայաստանին միացրեց Ծոփքն ու Կորդուքը։ Հաջորդ դարերին այս գաղափարը տիրող մնաց հայերի մոտ, թեև քաղաքական հարաբերությունները միշտ նույն գաղափարին չէին համապատասխանում։ Եթե հարավային նահանգները պարսիկներին էին անցնում, արևմտյանները՝ հույներին, հյուսիսայինները՝ վրացիներին կամ աղվաններին, և եթե հռոմայեցիներն ու պարսիկները երկիրը իրենց մեջ էին բաժանում՝ Հայաստանը հայերի համար միշտ այն երկիրն էր համարվում, որը—հին բացատրությամբ— իր սահմաններն ուներ հարավից Մասիս լեռը (Տավրոսը, որ Հայաստանը բաժանում էր Միջագետքից, Ստրաբ., 521, 522, 527), արևելքից՝ Ատրպատականն ու Մեդիան, հյուսիսից՝ Կասպից ծովի կողմերը գտնվող Պարաքոաթրյան լեռները, Վրաստանը, Աղվանքը և Կովկասը՝ Մոսքյան և Կողքիսյան լեռներով, արևմուտքից՝ Պարխարը և Սկյուդիսեսը, Փոքր Հայքն ու Եփրատը (որը Հայաստանը բաժանում էր Կապադովկիայից և Կոմմագենից)[1]։

Խաղաղությունը, որ հաստատվել էր պարթևների հետ Պոմպեյոսի հաղթական կռիվներից հետո, անշուշտ, լոկ մի զինադադար էր Հռոմի համար, որը հարմար ժամանակի էր սպասում, որպեսզի շարունակեր իր նվաճումներն Առաջավոր Ասիայում։ 66—62 թվերին (մեր թվ. առաջ) Հռոմեական հանրապետությունը, ինչպես հայտնի է, հենց ինքը ծանր դրության մեջ էր գտնվում Կատիլինայի դավադրության և քաղաքացիական ներքին պատերազմի պատճառով։

Դավադրության ճնշումից հետո Հռոմում իշխանության գլուխ անցան 60 թվին մեր թվականությունից առաջ Պոմպեյոսը, Յուլիուս Կեսարը և Կրասսոսը, որոնք կազմեցին այսպես կոչված առաջին տրիումվիրատը կամ եռապետությունը։ 56 թվին (մեր թվ. ա.) սրանք բաժանեցին իրենց մեջ Հռոմեական աշխարհածավալ պե-

---

[1] Տե՛ս Հյուբշման, «Հին հայոց տեղւոյ անունները», թարգմ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1907, էջ 26—27։

*տության երկրները, և Ասորիքը բաժին ընկավ Մարկոս Կրասոսին։*

*Շուտով, Արտավազդ Բ-ի թագավորության արդեն սկզբի տարիներում, խաղաղությունն Արևելքում նորից խախտվեց, ու վերսկսվեց հռոմեական նվաճողական արշավանքն այս անգամ պարթևական թագավորության դեմ։ Նոր այս պատերազմը բավական հարմար ժամանակ էր նախապատրաստվում, որովհետև պարթևական թագավորության մեջ սկսվել էին 57 թվին (մեր թվ. ա.) ներքին խռովությունները։*

*Մոտավորապես հենց այս՝ 57 թվին Հրահատ Գ-ի որդիները, Օրոդեսը և Միհրդատը, ուզենալով գրավել հոր գահը՝ նրան սպանել էին։ Թագավորությունն այնուհետև ստացավ Հրահատ Գ-ի մեծ որդին՝ Օրոդեսը։ Բայց Միհրդատը, դժգոհ մնալով՝ ապստամբեց և, գահընկեց անելով եղբորը՝ կարճ ժամանակով թագավոր դառավ ինքը (56—55 մեր թվ. ա.)*[1]*։ Շուտով սակայն նա՝ պարտվեց և ենթարկվեց մահապատժի։*

*Մոմզենը և ուրիշ պատմագետներ ենթադրում են, որ Հրահատ Գ-ի որդին՝ Միհրդատ Գ-ը 56 թվին պատերազմ էր սկսել Արտավազդ Բ-ի դեմ*[2]*։ Գերմանական գիտնական Յուստին կարծում է, բացի այդ, որ իբր թե այս պատերազմի ժամանակ պարթևները վերագրաված են եղել Կորդուքը*[3]*։ Այս ենթադրությունները պարզապես թյուրիմացության արդյունք են և, ըստ երևույթին, հիմնված են, գլխավորապես, Յուստինուսի սխալ հասկացված վկայության վրա։*

*Ինչպես մատնացույց է արել Գուտշմիդը, Յուստինուսի համապատասխան վկայությունը (XLII, 4,) վերաբերում է, իրապես, ոչ թե Միհրդատ Գ-ին և Արտավազդ Բ-ին, այլ Միհրդատ Բ-ի կռիվներին ընդդեմ Արտավազդ Ա-ի*[4]*։*

*Իմ «Տիգրան Բ-ը և Հռոմը» աշխատության մեջ մատնացույց էր արված, որ Հրահատ Գ-ը դեռևս 64 թվին (մեր թվ. ա.) փոխել էր իր թշնամական քաղաքականությունը Հայաստանի հանդեպ և լռելյայն համաձայնել էր զիջել Տիգրանին Կորդուքը և հյուսիսային Միջագետքը։ Նա, ըստ երևույթին, հույս ուներ, որ շնորհիվ բարի հարևանական այդ նոր քաղաքականության պարթևներին կհաջողվի*

---

[1] Տե՛ս *Tarn,* The Gambridge Ancient History, vol. IX, 1932, էջ 604և 613։

[2] *Моммсен*, Римская история, III, М., 1887, էջ 292։

[3] *Justi F.*, Geschichte Irans, Grundriss der Iranischen Philolog e, II, 5, էջ 498։

[4] Տե՛ս *Gutschmid,* Geschichte Irans, էջ 86, ծան. 2։

հաշտվել հայերի հետ և ստանալ նրանցից օգնություն ընդդեմ հռոմայեցիների[1]։

54 թվի սկզբներին (մեր թվ. առաջ) եկավ Ասորիք Կրասսոսը, որը ստանձնելու էր այս երկրի կառավարությունը և արդեն սկսել էր պատերազմի պատրաստվել ընդդեմ պարթևների։ Ասորիքի այս նոր կուսակալը, որը Հռոմի ամենահարուստ ու ընչաքաղց վաշխառուներից մեկն էր՝ ուզում էր թե իր բաժինը ստանալ Արևելքի հարստություններից և թե հռչակվել, որպես Լուկուլլոսն ու Պոմպեյոսը, մեծ զորավար։ Պլուտարքոսը, որը Կրասսոսի պարթևական արշավանքը նկարագրել է ավելի անաչառ կերպով, քան իր փառաբանած հերոսների, Լուկուլլոսի և Պոմպեյոսի, հայկական արշավանքները՝ նրա այս արշավանքի նպատակի մասին տալիս է հետևյալ տեղեկությունը։

«Այսուհետև,—ասում է Պլուտարքոսը,—նա [Կրասսոսը]՝ անչափ մեծամտած ու կուրացած՝ իր մեծ գործի նպատակ էր դնում ո՛չ միայն Ասորիքը կամ պարթևներին, այլ, համարելով Լուկուլլոսի արածը Տիգրանի դեմ և Պոմպեյոսինը Միհրդատի դեմ երեխայական սուտ խաղեր՝ ինքն իրեն խաբուսիկ հույսերով հասցնում էր մինչև Բակտրիա, Հնդկաստան և Օվկիանոս»[2]։

54 թվի ամառը (մեր թվ. առաջ) Կրասսոսը ներխուժեց արևմտյան Միջագետք, որը ենթարկված էր պարթևների իշխանությանը։ Այստեղ նա փ փախուստ դարձրեց պարթևների Սիլլակես կուսակալին և գրավեց Նիկեփորիումն ու մի քանի այլ քաղաքներ։ Սակայն նա, փոխանակ իր հաջող կերպով սկսած արշավանքը շարունակելու՝ վերադարձավ այնուհետև Ասորիք։ Կրասսոսի այս վերադարձն Ասորիք Պլուտարքոսն իրավացի կերպով համարում է նրա ամենամեծ սխալը[3], որովհետև պարթևները մոտ մեկ տարի ժամանակ վաստակեցին և կարողացան նախապատրաստվել պատերազմի։

Ասորիքում Կրասսոսը հավաքեց ձմեռվա ընթացքում որոշ քանակությամբ հեծելազոր և, օգտագործելով իր ազատ ժամանակը՝ կողոպտեց Հիերապոլիս-Բամբյուկեի և Երուսաղեմի տաճարները։

Նույն այս թվին Կրասսոսի մոտ եկավ Ասորիք Արտավազդ Բ-ը, որը դաշնակից էր ու բարեկամ Հռոմի։ Նա ուներ իր հետ 6.000

---

[1] Տե՛ս «Տիգրան Բ-ը և Հռոմը», էջ 208 և 211։ [տե՛ս նաև սույն հատորում, էջ 596 և 599. խմբ.]։

[2] *Plut*, Crassus, XVI, 2.

[3] Նույնը, XVII.

հեծելազոր և խոստանում էր տալ 10.000 զրահավոր հեծելազոր և 30.000 հետևազոր։ Բայց, ի նկատի ունենալով իր սեփական երկրի անվտանգությունն ու ապահովությունը՝ առաջարկեց, որ հռոմեական զորքն արշավե պարթևների դեմ ո՛չ թե Միջագետքի հարթավայրերով, այլ Հայաստանի ու Ատրպատականի լեռնային շրջաններով, որտեղ չէր կարող ազատ շարժվել ու վտանգավոր լինել պարթևական հեծելազորը։ Կրասոսն այս առաջարկը չընդունեց և որոշեց գնալ Բաբելոն և Սելևկիա ամենակարճ ճանապարհով։

Այս խորհրդակցության մասին, որ տեղի էր ունեցել Ասորիքում, մանրամասն տեղեկություն է տալիս միայն Պլուտարքոսը, որի կարևոր այդ վկայությունն ավելորդ չեմ համարում մեջ բերել բառացի թարգմանությամբ։

> «Մանավանդ նրան [Կրասոսին] սիրտ տվեց,—պատմում է Պլուտարքոսը,—Արտավազդ Արմենի ժամանումը։ Նա եկավ բանակ վեց հազար հեծելազորով։ Իսկ սրանք, ինչպես ասում էին, միմիայն թագավորի թիկնապահներն էին և ուղեկիցները։ Նա խոստանում էր, որ կտա տասը հազար այլ զրահավոր հեծելազոր և երեսուն հազար հետևազոր, որոնց կպարենավորե ինքը։ Բայց նա համոզում էր Կրասոսին, որ նա Պարթևստան արշավե Հայաստանի միջով, որովհետև այնտեղ ո՛չ միայն կունենա զորքն առատ պաշար, որ ինքը կհայթայթե, այլև նա կգնա ապահով կերպով, պաշտպանված լինելով բազմաթիվ լեռներով, անվերջանալի բլուրներով և դժվար տեղերով հեծելազորի համար, որը պարթևների միակ ուժն է։ Սակայն Կրասոսը նրա պատրաստակամությունը և փառահեղ օգնությունն առանձին գոհունակությամբ չընդունեց և ասաց, որ ինքը գնալու է Միջագետքի միջով, ուր թողել է բազմաթիվ քաջ հռոմայեցիներ։ Արդ՝ Հայոց թագավորն այնուհետև հեռացավ»[1]։

Երբ Ասորիքում վերոհիշյալ անցքերն էին կատարվում՝ պարթևական թագավորության մեջ արդեն վերջանում էր ներքին երկպառակությունը։ 54 թվի վերջերին (մեր թվ. ա.) Օրոդես թագավորը դառավ միահեծան տնօրեն ամբողջ երկրի։ 53 թվի գարնան սկզբին նա հատուկ դեսպանություն ուղարկեց Կրասոսի մոտ և ուզեց տեղեկություն ստանալ խաղաղության խախտման պատճառների մասին։ Կրասոսը դեսպաններին պատասխանեց, որ պատերազմի պատճառը նա կհայտնե Սելևկիա քաղաքում։

---

[1] Տե՛ս *Plut.*, Crassus, XIX, 1—4.

Այս պատասխանը պատերազմի որոշակի հայտարարություն էր։ Ուստի և Օրոդեսը, որն արդեն նախապատրաստվել էր պատերազմի՝ խուսափելով թշնամու դեմ ելավ ռազմերթի։ Նա ուղարկեց հռոմայեցիների դեմ իր զորքի մի մասը երիտասարդ ու տաղանդավոր Սուրեն զորավարի առաջնորդությամբ։ Իսկ ինքն արշավեց Հայաստան, որպեսզի խանգարե հայկական հեծելազորին միանալ հռոմեական բանակին։ Արտավազդը, բնականաբար, ստիպված եղավ պաշտպանել իր հայրենի երկիրը։

Վերոհիշյալ անցքերի մասին գլխավոր մեր աղբյուրներն են Կասսիոս Դիոնի և Պլուտարքոսի վկայությունները, որոնք հիմնականում իրար չեն հակասում։

1. Կասսիոս Դիոն, գիրք XL, գլ. 16, 1—3՝

«Երբ Կրասսոսը ներխուժեց Միջագետք՝ Օրոդեսը, ինչպես ասում են, դեսպաններ ուղարկեց նրա մոտ Ասորիք և, դատապարտելի համարելով ներխուժումը՝ ուզեց իմանալ պատերազմի պատճառը։ Նա ուղարկեց զորք Սուրենի առաջնորդությամբ նվաճված ու անջատված շրջանները, որովհետև ինքը մտադիր էր արշավել Հայաստան, որը մի ժամանակ Տիգրանի երկիրն էր, որպեսզի Տիգրանի որդին, Արտավազդը, որն այնտեղ այդ ժամանակ թագավորում էր, մտահոգված իր սեփական երկրի դրությամբ՝ չուղարկե հռոմայեցիներին որևէ օգնություն։ Արդ՝ Կրասսոսը պատասխանեց, որ պատերազմի պատճառը կհայտնե նրան Սելևկիայում։ Այս քաղաքը Միջագետքումն էր և նրա բնակչության մեծագույն մասը այժմ էլ հելլեններն են»

2. Պլուտարքոս, Կրասսոս, XXI, 3՝

«Արդ՝ Օրոդեսն խսկույն բաժանեց իր զորքը երկու մասի, և ինքն Արտավազդին պատժելու համար ավերում էր Հայաստանը, իսկ Սուրենին ուղարկեց հռոմայեցիների դեմ»։

53 թվի գարնանը (մեր թվ. ա.) Կրասսոսն իր զորքի հետ, որը բաղկացած էր 7 լեգեոնից, 4.000 հեծելազորից և 4.000 թեթևազեններից՝ անցավ Զեվգմայի մոտ Եփրատ գետը և, Օսրոենի Աբգար Բ թագավորի խորհրդով, հարթավայր ճանապարհներով շարժվեց դեպի Սելևկիա և Տիզբոն։ Ավանդական կարծիքը, որ Աբգար Բ-ը դավաճանաբար նրան առաջնորդել էր անապատներով՝ չէ հաստատվում աղբյուրների վկայությունների ուշադիր քննությամբ։ Երբ Կրասսոսն արդեն Եփրատն անցել էր և առաջ էր շարժվում արևմտյան Միջագետքի միջով՝ նրա մոտ եկան Արտավազդի ուղարկած սուրհանդակները և նրան զգուշացրին, որ Արտավազդը

հռոմայեցիներին չէ կարող օժանդակ զորք ուղարկել, որովհետև Հայաստանը ենթարկվել է հարձակման և նա պետք է պաշտպանե իր սեփական երկիրը։

«Եվ այդ ժամանակ,—վկայում է Պլուտարքոսը,—Արտավազդ Արմենի մոտից եկան սուրհանդակներ և Կրասոսին հայտնեցին, որ Արտավազդը մեծ պատերազմի է բռնվել Օրոդեսի ներխուժման պատճառով և չէ կարող նրան օգնություն ուղարկել։ Նա խորհուրդ է տալիս Կրասոսին, որ ամենից լավը կլինի, որ ինքը Կրասոսը ևս գա այնտեղ Հայաստան և, միանալով հայերի հետ՝ միասին կռվի Օրոդեսի դեմ. իսկ եթե ո՛չ, թո՛ղ միշտ, ճանապարհ գնալիս և բանակելիս՝ խույս տա այնպիսի տեղերից, որ նպաստավոր են հեծելազորի համար, և թող նա մոտ գա լեռնային շրջաններին։ Կրասոսը, բարկացած լինելով և անքաղաքավարի գտնվելով՝ Արտավազդին գրավոր պատասխան չուղարկեց, այլ ասաց բերանացի, որ այժմ նա ժամանակ չունի զբաղվելու հայերով, բայց կվերադառնա և կպատժե Արտավազդին դավաճանության համար»[1]։

Ինչպես Պլուտարքոսի այս վկայությունից երևում է, հռոմեական զոռոզ զորավարը «բարեկամությունն ու դաշնակցությունը» հայերի հետ հասկանում էր առանձնահատուկ իմաստով և կարծում էր, որ Արտավազդ Բ-ը իբրև Հռոմի շահերի հլու ու հնազանդ սպասավոր՝ պարտավոր էր մտածել միմիայն հռոմեական զենքի հաջողության մասին։

Հասնելով Խառան քաղաքը՝ հռոմեական զորքն այնուհետև գնաց Իխնեի ուղղությամբ և, անցնելով Բալիսսոս գետը (այժմյան Բելիքը)՝ թշնամու հետ շփման մեջ մտավ մայիս ամսի սկզբներին։ Շուտով տեղի ունեցավ այստեղ այն մեծ ճակատամարտը, որը վերջացավ Կրասոսի բանակի սոսկալի պարտությամբ։

Պարթևական զորքը, որ բաղկացած էր, գլխավորապես, զրահավոր հեծելազորից և ձիավոր նետաձիգներից՝ Միջագետքի հարթավայրերում ուներ մարտավարական խոշոր առավելություններ։ Լեռնային խորդուբորդ տեղերում հեծելազորի նշանակությունը երկրորդական էր, իսկ այստեղ նա ազատորեն գործում ու մարտնչում էր, մինչդեռ հռոմեական լեգեոնները չունեին ո՛չ մի ստրատեգիական հենարան։ Հռոմեական զորքերի քաջությունն ու կարգապահությունը կորցնում էին այստեղ իրենց նշանակությունը,

[1] *Plut.*, Crassus, XXII, 2.

որովհետև պարթևական շարժուն հեծելազորն անվրեպ կոտորում էր հռոմեական հետևակներին, որոնք պատերազմում էին հոծ շարքերով։ Գտնվելով այս ծանր պայմաններում՝ հռոմայեցիներն ունեցան, բնականաբար, խիստ մեծ կորուստներ։ Կրասոսի 42—44.000 զորքից սպանվեցին մոտ 20.000 հոգի, մոտ 10.000 էլ գերվեցին ու ուղարկվեցին Մերվ։ Պարթևների ձեռքն ընկան հարուստ ավարի հետ հռոմեական արծվակիր դրոշները։ Սպանվեց նաև ինքը Կրասոսը, և Սուրենն ուղարկեց նրա գլուխն Օրոդեսին, որը գտնվում էր Հայաստանում։

Պարթևների այս հզոր թագավորը, որը, ըստ երևույթին, հետևվում էր իր հոր հեռատես քաղաքականությանը և ձգտում էր հաշտվել հայերի հետ՝ կարողացել էր հաշտություն կնքել նրանց հետ և այդ դաշինքն ամրապնդելու համար իր թագաժառանգ որդի Բակուրին ամուսնացրել էր Արտավազդ Բ-ի քրոջ հետ։ Պլուտարքոսը պատմում է, որ Կրասոսի գլուխը բերել էին Արտաշատ արքայանց հարսանեկան խնջույքի ժամանակ, երբ հույն դերասանների խումբը ներկայացնում էր արքունիքում Եվրիպիդեսի «Բաքոսյաններ» ողբերգությունը։ Այս ողբերգության մեջ ցուցադրվում էր Պենթևսի գլուխը, որ հոշոտել էին Բաքոսի քրմուհիները։ Յասոնը, որ խաղում էր Ագավեի դերը, դեն դնելով Պենթևսի դիմակը՝ խլում է ներս բերված Կրասոսի գլուխը և, հանդիսականներին մեծ հրճվանք պատճառելով՝ բաքոսյան մոլեգնությամբ երգում ու կատարում է իր դերը։

Պլուտարքոսի վկայությունը, որի որոշ մանրամասնությունները կարող են գունավորված ու վիճելի լինել՝ մեջ եմ բերում թարգմանաբար ընդարձակ բովանդակությամբ։

> «Երբ այս անցքերը [Սուրենի հաղթությունը և հաղթական շքերթը Սելևկիայում] տեղի էին ունենում՝ Օրոդեսն արդեն հաշտվել էր Արտավազդ Արմենի հետ և նրանք համաձայնել էին, որ Արտավազդի քույրն ամուսնանա Օրոդեսի որդու՝ Բակուրի հետ։ Եվ այդ ժամանակ նրանք իրար մոտ խնջույքներ ու կերուխում էին սարքում, ուր կարդացվում էին բազմաթիվ հունական քերթվածներ։ Օրոդեսն անտեղյակ չէր հունարեն լեզվի և գրականության, իսկ Արտավազդը մինչև իսկ գրում էր ողբերգություններ, ճառեր և պատմական երկեր, որոնցից մի քանիսը պահպանվել են։

Երբ Կրասոսի գլուխը բերին դռան մոտ՝ սեղաններն արդեն հավաքել էին և ողբերգախաղաց դերասանը, Յասոն անունով Տրալլեսցին, արտասանում էր Եվրիպիդեսի Բաքոս-

յաններից Ագավեի դերը։ Հենց այն ժամանակ, երբ նա հաջողություն ուներ, Սիլլակեսը, ներս գալով սեղանատուն, երկրպագեց թագավորին և մեջտեղը գցեց Կրասսոսի գլուխը։ Պարթևները ծափահարեցին մեծ աղմուկով ու ցնծությամբ և թագավորի հրամանով սպասավորները Սիլլակեսին սեղան նստեցրին։ Իսկ Յասոնն իր Պենթեվսի դիմակը տվեց խմբերգիչներից մեկին և, վերցնելով Կրասսոսի գլուխը՝ բաքոսյան մոլեգնությամբ ու խանդավառությամբ արտասանեց երգելով հետևյալ բանատողերը՝—

«Մենք բերում ենք լեռներից, տուն վերադառնալով՝ նոր սպանված եղջերուն, բախտավոր մի որս»։—

Եվ այս մեծ հրճվանք պատճառեց բոլորին։ Իսկ հետո, երբ նրանք փոխադարձ խմբի հետ երգում էին՝—

«Ո՞վ սպանեց», «իմն է այդ փառքը»,—

Պոմաքսաթրեսը [Կրասսոսի սպանողը], որը պատահմամբ մասնակից էր խնջույքին՝ վեր թռավ տեղից և գլուխը խլեց, ասելով որ ավելի շուտ ինքը պետք է այդ երգե, քան նա։ Թագավորը, ուրախացած՝ նրան նվեր տվեց ըստ երկրի սովորության և Յասոնին ևս տվեց մեկ տաղանդ։ Պատմում են, որ այս էր ավարտման գործողությունը Կրասսոսի արշավանքի, որը վերջացավ ողբերգության նման»[1]։

Կրասսոսի 53 թվի պարտությունից հետո Արևելքում քաղաքական դրությունը զգալիորեն փոխվեց, և արևելյան երկրներում վարկաբեկվեց Հռոմեական հանրապետության հեղինակությունը։ Պարթևները, որ բարեկամացել ու դաշնակից էին հայերի հետ՝ սրանց հետ միացած սպառնում էին հռոմեական Ասորիքին և Կապպադովկիային, իսկ հռոմեական շրջանների կեղեքված բնակչությունը պատրաստ էր ապստամբելու հռոմեական իշխանության դեմ։ Հայերը, ինչպես մատնանշում է Գարագաշյանը[2], թերևս հույս ունեին, որ նորից ձեռք կբերեն Ծոփքը և իրենց կորցրած մյուս երկրները։

Պարթևները Սուրենի առաջնորդությամբ արդեն պատրաստվում էին հարձակվելու Ասորիքի վրա (52 մեր թվ. առաջ), սակայն իրենց մեծ հաղթությունից կարճ ժամանակ հետո կասկածամիտ Օրոդեսը հրամայել էր սպանել հաղթական այս զորավարին, համարելով նրան վտանգավոր թեկնածու իր գահի։ Նրանք միայն վերագրավել էին Միջագետքը մինչև Եփրատ գետը։

---

[1] Տե՛ս Plut., Crassus, XXXIII, 1—5.

[2] «Քննական պատմութիւն հայոց», մասն Բ, Թիֆլիս, 1895, էջ 172։

Սուրենի սպանությունից հետո արշավող զորքերի առաջնորդ նշանակվեց թագաժառանգ Բակուրը, հայոց թագավորի փեսան, բայց՝ սրա փոքրահասակության պատճառով՝ զորքի հրամանատարն էր իրապես, Վասակը (Osaces), որին իրավացի կերպով Խալաթյանցը ենթադրաբար համարում է հայ զորավար[1]։ Ըստ երևույթին, պարթևների ասորական արշավանքներին մասնակցում էին նաև հայերը, իբրև դաշնակիցներ։

51 թվին (մեր թվ. ա.) պարթևական-հայկական զորքերը Բակուրի առաջնորդությամբ ներխուժեցին Ասորիք, որի հարստահարված բնակչությունը նրանց ընդունում էր ամենուրեք մեծ համակրությամբ։ Հռոմեական զորքի առաջնորդն էր Ասորիքում Կրասսոսի զորավարներից մեկը, Կասսիոսը, որը խույս տալով մարտից՝ ամրացել էր Անտիոք քաղաքում։ Պարթևները, որ հմուտ չէին մեծ քաղաքների պաշարման գործին՝ չկարողացան վերցնել Անտիոքը և ստիպված եղան նահանջել։ Նահանջի ժամանակ Անտիգոնիայի մոտ նրանք ծանր կորուստ կրեցին դարան մտած հռոմայեցիներից, և այստեղ զորավար Վասակը ծանր վերք ստացավ, որից նա շուտով մեռավ։

51/50 թվի ձմեռը պարթևական-հայկական զորաբանակը մընաց հյուսիսային Ասորիքում, Կիլիկիայի սահմանակից Կիրեստիկայում, և ուշագրավ է, որ հենց նույն այս թվին Կիկերոնը, որը Կիլիկիայի կուսակալն էր՝ անհրաժեշտ էր համարել գնալ հռոմեական զորքի հետ միասին Կապպադովկիա։ Կիկերոնն իր նամակներում մատնանշում է[2], որ ինքը Կապպադովկիա էր եկել, որպեսզի հայոց թագավոր Արտավազդը, որը կարող էր Կապպադովկիայի վրա հարձակվել՝ իմանա, որ հռոմեական զորքը գտնվում է Հայաստանի սահմանների մոտ։

Պարթևական-հայկական զորքերը, որոնք հեռացել էին Ասորիքից 50 թվի գարնանը (մեր թվ. ա.)՝ նորից էին արշավել այստեղ, ինչպես երևում է աղբյուրների տված աղոտ վկայություններից՝ 45 թվին ու ապա նաև 40 թվին (մեր թվ. ա.)։ Միանգամայն սխալ է ըստ այսմ Գարագաշյանի և Գ. Ասլանի ենթադրությունը, որ իբր թե 51 թվի արշավանքից հետո պարթևները գրավել էին Ասորիքը և մնացել էին այստեղ մոտ քսան կամ մոտ տասնհինգ տարի[3]։

49 թվի սկզբին (մեր թվ. ա.) քաղաքացիական մեծ պատե-

---

1 Տե՛ս *Халатьянц*, Очерк истории Армении, М., 1910, էջ 230։

2 Տե՛ս *Cicero*, Epist. ad familiares, XV, 2՝ 3 և Epist, ad Atticum, V, 20։

3 Տե՛ս Գարագաշյան, «Քննական պատմութիւն հայոց», Բ, էջ 173 և K. *Aslan*, Études historigues sur le peuple arménien, Paris, 1909, էջ 112։

բազմ սկսվեց Հռոմում Պոմպեյոսի ու Յուլիուս Կեսարի միջև, և հետաքրքրական է, որ այս պատերազմում Արևելքը, ընդհանուր առմամբ, համակիր էր ու կողմնակից Պոմպեյոսին, որն արևելյան ժողովուրդների հանդեպ վարել էր համեմատաբար խաղաղասիրական քաղաքականություն։ Ինչպես վկայում է Ապպիանոսը, հայերն այդ կռիվներին ունեցել էին գործոն մասնակցություն։ Փոքր Հայքը Պոմպեյոսին ուղարկել էր օգնական զորք Տաքսիլեսի հրամանատարությամբ, իսկ Մեծ Հայաստանը՝ առաջնորդությամբ Մեգաբատեսի, որն Արտավազդ թագավորի կուսակալն էր[1]։ Փոքր Հայքը գտնվում էր այդ ժամանակ Գալատիայի Դեյոտարոս թագավորի իշխանության տակ, որի հետ Արտավազդ Բ-ը բարեկամություն էր հաստատել, ամուսնացնելով իր դստերը նրա որդու հետ (50 մեր թվ. ա.)[2]։

48 թվին (մեր թվ. ա.) Պոմպեյոսը պարտություն կրեց Փարսալուսի մոտ Թեսսալիայում և փախավ Եգիպտոս ու այնտեղ սպանվեց։ Կեսարը, որն եկավ նույնպես Եգիպտոս պատերազմելու Պոմպեյոսի կողմնակիցների հետ, հալածեց սրանց և Պտոլեմյանների գահը տվեց իր սիրուհուն, Կլեոպատրային։ Նա գնաց այնտեղից Փոքր Ասիա, ուր Փառնակը, Միհրդատ Եվպատորի որդին, վերանվաճել էր Պոնտոսը, Կապպադովկիան և Փոքր Հայքն ու վերականգնել էր իր հոր թագավորությունը։ Կեսարն այնպիսի արագությամբ հաղթեց նրան Ջելայի մոտ, որ այդ մասին գրեց Հռոմ միայն երեք բառ՝ «եկա, տեսա, հաղթեցի» (veni, vidi, vici.)։ Իր պարտությունից հետո Փառնակը վերադարձավ Բոսփոր և Դեյոտարոսը, որը Փարսալուսի մոտ մարտնչել էր Կեսարի դեմ՝ կորցրեց իր իշխանության տակ գտնվող երկրների մի մասը։ Նրան պատկանող Փոքր Հայքը Կեսարը տվեց Կապպադովկիայի Արիոբարզան թագավորին։

Ուշագրավ է, որ պարթևները ևս Արևելքում որոշ աջակցություն էին ցույց տվել Պոմպեյոսի կողմնակիցներին ընդդեմ Կեսարի։ 45 թվին (մեր թվ. ա.) նրանք հանկարծակի նորից արշավեցին Ասորիք և օգնեցին այնտեղ Կեկիլիոս Բասսոսին, որն ապստամբել էր Կեսարի դեմ։ Բայց ձմեռվա սկզբին նրանք դարձյալ թողին Ասորիքը և հեռացան։

Կեսարն արդեն պատրաստվում էր վրեժ առնել պարթևներից թե այդ օգնության և թե Կրասսոսի սպանության համար, սակայն

[1] Տե՛ս *App.*, De bellis civilibus, II, 71։

[2] Տե՛ս *Cicero*, Epist. ad Atticum, V, 21։

44 թվին (մեր թվ. ա.) նա սպանվեց սենատի նիստի ժամանակ և այնուհետև 43 թվին Անտոնիոսը, Լեպիդոսը, և Օկտավիանոսը, որը Կեսարի քրոջ թոռն էր և նրա որդեգիրը՝ կազմեցին երկրորդ եռապետությունը (տրիումվիրատը)։

Կեսարի սպանությունից հետո հանրապետականները, որ փախել էին, գլխավորապես, Հունաստան և Արևելք՝ սկսեցին եռապետների դեմ պատրաստվել պատերազմի։ Նրանք համաձայնություն էին եկել պարթևների հետ և դեռևս 43 թվին ստացել էին սրանցից օգնական հեծյալ զորամաս, որը մասնակցել էր մեծ ճակատամարտին Փիլիպպիի մոտ Թրակիայում (42 մեր թվ. ա.)։

40 թվին (մեր թվ. ա.) պարթևները, հանրապետականների դրդմամբ, որոնք պարզապես նրանց գիջել էին Ասորիքը՝ մեծ ուժերով արշավեցին այստեղ դարձյալ Բակուրի առաջնորդությամբ։ Այս անգամ պարթևական-հայկական զորքերը կարողացան նվաճել ո՛չ միայն Ասորիքը, այլ նաև Փյունիկիան ու Պաղեստինը։ Այս երկրները և նրանց մեջ գտնվող գրեթե բոլոր քաղաքները ճանաչեցին Օրոդես թագավորի գահակից Բակուրի իշխանությունը։ Պարթևների այս տիրապետությունն Ասորիքում ու սրա հարևան երկրներում, ինչպես շեշտվում է աղբյուրների մեջ, շատ ավելի մեղմ ու արդարամիտ էր, քան Հռոմեական հանրապետության դաժան ու հարստահարիչ պրոկոնսուլային իշխանությունը։ Ինքը Բակուրը վկայում էր Ասորիքի բնակչության վստահությունն ու սերը, իբրև նրանց ազատարարը հռոմեական ծանր լծից։

Պարթևական-հայկական արշավանքների ու պատերազմների մասին Ասորիքում և Պաղեստինում աղոտ հիշողություններ պահպանված են Փավստոսի ու Մովսես Խորենացու մոտ[1]։

Պարթևներն իրենց արշավանքների ժամանակ վերցրել էին բազմաթիվ գերիներ և գերի էին տարել նաև հրեաների Հյուրկանոս քահանայապետին։ Գերիների մի մասը նրանք, ըստ երևույթին, տվել էին դաշնակից հայերին, որոնք բնակեցրել էին նրանց Հայաստանի քաղաքներում։ Փավստոսի ու Խորենացու այս գաղթականության վերաբերող վկայությունները քննության են առնված Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին ռուսերեն իմ աշխատության մեջ[2], ուր մանրամասն մատնանշված է, որ բացի Տիգրան

[1] Տե՛ս Փավստոս, IV, գլ. 55 և Խորենացի, II, գլ. ԺԹ, ԿԵ, III, գլ. ԼԵ։ Խորենացու Պատմության մեջ պատմական անցքերը, ինչպես ցույց է տվել Խալաթյանցը, շփոթված են և խեղաթյուրված. տե՛ս Армянские Аршакиды, М., 1909 էջ 61—68։

[2] Տե՛ս „О торговле и городах Армении“, էջ 97—69։ Համեմատե նաև Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները, էջ 558—563։

Մեծի բերած «առաջին գերությունից»-ից եղել է և երկրորդ գերությունը, որը բերված է եղել Հայաստան ո՛չ թե Տիգրան Բ-ի ժամանակ, ինչպես այդ խառնաշփոթ կերպով ակնարկում են Փավստոսը և Խորենացին, այլ նրա որդու՝ Արտավազդ Բ-ի ժամանակ։

Հիմնվելով կարևոր այս փաստի վրա՝ կարելի է ըստ իս ենթադրել, որ հելլենիստական քաղաքային կուլտուրայի տարածման ու զարգացման քաղաքականությունը շարունակվել է Հայաստանում նաև հելլենական կրթություն ստացած Արտավազդ Բ-ի թագավորության ժամանակ։

Պարթևների իշխանությունը Ասորիքում տևեց մոտ երկու տարի (40—39 մեր թվ. ա.)։ Հռոմում հենց այդ ժամանակամիջոցում վերջացել էին ներքին երկպառակությունները եռապետների միջև, և Մ. Անտոնիոսը, որին բաժին էր ընկել Ասորիքը՝ ուղարկեց Փոքր Ասիա նոր զորք Պուբլիոս Վենտիդիոս Բասսոսի հրամանատարությամբ։

39 թվին (մեր թվ. ա.) սա պարտության մատնեց պարթևների զորավար Փրանիպատեսին և մաքրեց Ասորիքը թշնամուց։ Իսկ 38 թվին նա սարսափելի ջարդ տվեց պարթևներին Գինդարոսի մոտ հյուսիսային Ասորիքում, ուր սպանվեց նաև զորքի առաջնորդ Բակուրը՝ Արտավազդ Բ-ի փեսան։

Ասորիքի վերագրավումը միայն մի մասն էր Անտոնիոսի մեծ ծրագրի, որ նա 39 թվից սկսած հետզհետե իրագործելու էր Արևելքում։ Անտոնիոսը ևս, ինչպես և Կրասսոսը, մտադիր էր նվաճել ամբողջ Առաջավոր Ասիան ու վերականգնել Աղեքսանդր Մակեդոնացու մեծ աշխարհակալությունը։ Փոքր Ասիայի բարեկամ ու դաշնակից պետություններին հռոմայեցիները հանդուրժում էին միայն ժամանակավորապես։ Այս պետությունները ժամանակի ընթացքում միացվելու էին Հռոմին իբրև սոսկ նահանգներ, իսկ նրանց հարստությունները դառնալու էին, իհարկե, հռոմեական հաղթող ժողովրդի ավարը։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

# ԱՆՏՈՆԻՈՍԻ ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ԱՐՏԱՎԱԶԴ Բ-Ի ՈՂԲԵՐԳԱԿԱՆ ՄԱՀԸ

**1. Քաղաքական ընդհանուր դրությունը 38—37 թվերին։—2. Անտոնիոսի նախապատրաստումը պատերազմի.—Կանիդիոսի արշավանքը Հայաստան, Վրաստան ու Աղվանք։—3. Պարթևական արշավանքի նոր ծրագիրը.—զորքերի հավաքատեղին.— արշավանքի ճանապարհը։—4. Փրաասպայի պաշարումը և Ստատիանոսի զորամասի ոչնչացումը.—Արտավազդ Բ-ի մեկնումը Հայաստան։—5. Հռոմեական զորքի նահանջը դեպի Հայաստանի սահմանները։—6. Ամբաստանություններ Հայոց թագավորի մասին.—Ստրաբոնի վկայության անհավանականությունը։—7. Անտոնիոսի պարտության հետևանքները։—8. Ատրպատականի Արտավազդ թագավորի դաշինքը Անտոնիոսի հետ.—Անտոնիոսի խարդախ մեքենայությունները Հայոց թագավորի հանդեպ։—9. Արտավազդի կալանավորումը և Հայաստանի նվաճումը։—10. Անտոնիոսի հաղթահանդեսը.—Աղեքսանդրի Հայոց թագավոր հայտարարվելը.—Հայաստանի նվաճման առթիվ Անտոնիոսի դրամները։—11. Օկտավիանոսի դժգոհությունը.— Մեծ Աղբակի և Փոքր Հայքի անջատումը Հայաստանից.—Անտոնիոսի պարտությունն Ակտիումի ճակատամարտում և ինքնասպանությունը.—Հայոց Արտավազդ թագավորի ողբերգական մահը։—12. Հայաստանի քաղաքական վտանգավոր կացությունը Արտավազդ Բ-ի ժամանակ.—Արտավազդ Բ-ի ինքնուրույն ու անկախ քաղաքականությունը.—Արտավազդ Բ-ի սխալ բնութագիրը Խորենացու Պատմության մեջ։**

*38—37 թվերին քաղաքական ընդհանուր կացությունը հիմնավորապես փոխվել էր ի նպաստ Հռոմի և թվում էր, որ Անտոնիոսի Արևելքի նվաճման հոյակապ ծրագիրը կարող էր հաջողությամբ իրագործվել։ Եռապետությունը Հռոմում վերածվել էր այդ ժամանակ երկապետության, Անտոնիոսն ամուսնացել էր Օկտավիանոսի Օկտավիա քրոջ հետ և Հռոմեական պետության այս երկու տիրակալներն իրար հետ հաշտ էին ու բարեկամ։*

*Ընդհակառակը, պարթևական թագավորության մեջ սկսվել էին նոր խռովություններ ու երկպառակություններ։ Բակուրի պար-*

տությունից ու սպանությունից հետո Օրոդես թագավորը, որը խորապես հուզված ու հուսահատված էր իր սիրած որդու մահվան պատճառով՝ հրաժարվեց գահից և թագավորությունը տվեց իր մյուս որդուն՝ Հրահատին։ Իսկ սա, հենց որ ստանձնեց թագավորական իշխանությունը՝ կոտորեց իր եղբայրներին ու ազնվականներից շատերին և սպանեց նաև հորը, որպեսզի ապահովե իր գահը վտանգավոր թեկնածուներից։ Մեծամեծներից ոմանք, նրանց թվում նաև ամենահայտնին, Մոնեսեսը, փախան և ապավինեցին հռոմայեցիների պաշտպանությանը։

Պարթևական թագավորության մեջ ներքին այս խառնակությունները, ինչպես և Վենտիդիոսի հաղթությունները Ասորիքում՝ վստահություն էին ներշնչում Անտոնիոսին, որ նա կկարողանա վրեժ առնել պարթևներից Կրասսոսի խայտառակ պարտության համար։

Ասորիքի վերանվաճումից հետո Անտոնիոսն սկսեց պատրաստվել պատերազմի և աշխատեց ապահովել ու ամրացնել իր թիկունքը (37—36 թ. ձմեռը)։ Արևելյան Փոքր Ասիայի երկրների իշխանությունը նա տվեց իրեն հավատարիմ մարդկանց։ Կապպադովկիայի Արիարաթ Ժ թագավորին, որը 40 թվին անցել էր պարթևների կողմը՝ նա մահվան դատապարտեց և նրա թագավորությունը տվեց Արխելաոսին, որը Կոմանա քաղաքի քրմապետն էր[1]։ Իսկ Պոնտոսի թագավոր նա հայտարարեց հույն Պոլեմոնին, որն իր Պյութադորիս թոռան ամուսինն էր։

Դեռևս 38 թվին, պարթևական իր արշավանքը սկսելուց երկու տարի առաջ, Անտոնիոսը ծրագրել էր նվաճել նախ Հայաստանը և դարձնել այս երկիրը հենարան ու ելակետ պարթևական թագավորության նվաճման։ Սակայն 37 թվին (մեր թվ. ա.) նա փոխեց իր սկզբնական ծրագիրը և, չնայած որ Արտավազդ Բ-ը 53 թվից սկսած պարթևների դաշնակիցն էր, որոշեց ժամանակավորապես հետաձգել Հայաստանի նվաճումը և, ենթարկելով Արտավազդ Բ-ին Հռոմի գերիշխանությանը՝ օգտագործել հայերի ռազմական ուժերը առաջիկա պատերազմում[2]։

37 թվին (մեր թ. առաջ) Հայաստան եկավ Անտոնիոսի Արևելքի կուսակալը, Պուբլիոս Կանիդիոս Կրասսոսը, և Արտավազդը ստիպված եղավ ընդունել Հռոմի գերիշխանությունն ու նորից դառավ հռոմայեցիների դաշնակիցը։ Ուշագրավ է, որ ինչպես

---

[1] Տե՛ս Tern, The Cambridge Ancient History, vol. X, 1934, էջ 70 ծան. 1։

[2] Նույնը, էջ 52—54 և 72։

Պոմպեյոսի հայկական և կողքիսյան արշավանքների ժամանակ, նույնպես և այժմ՝ պարթևական արշավանքից առաջ, անհրաժեշտ համարվեց ապահովել հռոմեական զորքի թիկունքը հյուսիսային Անդրկովկասի կողմից։ Ուստի և Կանիդիոսը հռոմեական գերիշխանությունը տարածեց նաև Իբերիայի ու Աղվանքի վրա։

«Եվ ձմեռվա մյուս կիսում [37 թվին],—վկայում է Կասսիուս Դիոնը,—Գելլիոսի և Ներվայի հյուպատոսության ժամանակ՝ Պուբլիոս Կանիդիոս Կրասոսը, արշավելով իբերների դեմ՝ հաղթեց այդ կռվում նրանց Փառնաբազ թագավորին նրան դաշնակից դարձրեց և, նրա հետ միասին ներխուժելով հարևան Ալբանիան և հաղթելով նաև ալբաններին ու նրանց Զոբեր թագավորին՝ սրան ևս իր կողմը գրավեց»[1]։

Երբ Կանիդիոսը վերջացրել էր իր արշավանքն Անդրկովկասում՝ Անտոնիոսը որոշեց արշավանքի ելնել ընդդեմ պարթևների։ Նա նախօրաք հայրենիք ուղարկեց մեծ իշխան Մոնեսեսին, որին ներում էր շնորհել թագավորը, որպեսզի սա հռոմայեցիների կողմից խաղաղության առաջարկ անե Հրահատ Դ-ին։ Անտոնիոսը, ըստ երևույթին, հույս ուներ, որ խաղաղության կեղծ բանակցությունների միջոցով կկարողանա արշավանքից առաջ քնեցնել պարթևների աչալրջությունը[2]։

Հռոմեական նոր արշավանքը պարթևների դեմ դեռևս Կեսարի ժամանակ ծրագրված էր ո՛չ թե Միջագետքի վրայով, որը լավ պաշտպանված էր, այլ Հայաստանի ու Ատրպատականի միջով դեպի Եկբատանա և այնտեղից դեպի Տիզբոն։ Արշավանքի միևնույն ծրագիրը, ինչպես վերև տեսանք, Արտավազդ Բ-ն առաջարկել էր Կրասոսին 53 թվին (մեր թվ. ա.)։

36 թվի (մեր թվ. ա.) գարնան վերջերին Անտոնիոսը, բաժանվելով Կլեոպատրա թագուհուց, որի հետ նա 37 թվին ամուսնացել էր՝ արշավանքի ելավ պարթևների դեմ։ Նա եկավ Եգիպտոսից Ասորիք և այստեղից Մելիտենեի, Փոքր Հայքի ու Սատաղի վրայով գնաց Հայաստան, ուր Կարնո դաշտում հավաքվելու էր հռոմեական հարձակվող բանակը։

«Ուղարկելով Կլեոպատրային Եգիպտոս,—ասում է Պլուտարքոսը,—ինքը [Անտոնիոսը] գնում է Արաբիայի ու Արմենիայի միջով, ուր հավաքվել էին նրա և դաշնակից թագավորների զորքերը. այս վերջինները շատ էին և հզորագույնն էր բոլորից Հայաստանի Արտավազդ թագավորը, որը տվել

[1] *Cass. Dio,* XLIX, 24, 1 Համեմատե նաև *Plut.,* Antonius, XXXIV.
[2] Տե՛ս *Plut.,* Antonius, XXXVII.

ՍԵՎ ԾՈՎ

Սատաղ
Սինարա
Գաղտարիճ
Էրզրում
Քեոփրիքյոյ
Արաքս
Արտաշատ
Բագավան
Որդսպու
Մանազկերտ
Արտազ
Նախիջևան
Ջուլֆա
Մարանդ
Տավրիժ
Թավրիզ
Խոյ
Filadelfia
Ուրմիա լիճ
Գանձակ
Փրասպա
Վանա լիճ
Մուշ
Արածանի
Խարբերդ
Տիգրանակերտ
Տիգրիս

Անտոնիոսի արշավանքի և նահանջի ճանապարհը

գծ. 10.

էր 6.000 հեծելազոր և 7.000 հետևազոր։ Անտոնիոսն այստեղ ստուգատես կատարեց իր բանակին, որը բաղկացած էր 60.000 հետևազորից, որոնք բոլորը հռոմայեցիներ էին, 10.000 իսպանացի և գաղղիացի հեծյալներից, որոնք համախմբված էին հռոմեական դրոշների տակ, և, բացի այդ, նաև 30.000 մարդ զանազան ժողովուրդներից՝ թե հեծելազոր և թե թեթևազեններ»[1]։

Հռոմեական զորքը Կարին գավառից պետք է արշավեր նախ Ատրպատական, որի Արտավազդ թագավորը գտնվում էր պարթևական գերիշխանության տակ։ Ըստ երևույթին, Անտոնիոսը հաշիվ էր անում, որ եթե պարթևներն օգնության գային Ատրպատականի թագավորին՝ նա վճռական մարտ կունենար նրանց հետ նպաստավոր տեղում ու պայմաններում, իսկ եթե ո՛չ՝ նվաճված Ատրպատականը հենարան ու հիմք կդառնար նաև պարթևական թագավորության նվաճման։

Հռոմեական զորքի ճանապարհը Բարձր Հայքից Ատրպատական, որը դեռ մինչև այժմ լուսաբանված չէ՝ որոշվում է ըստ իս Պեվտինգերյան քարտեզի Քյոփրիքյոյ—Անտաք—Բագավան և Օրդուպու—Խոյ—Տասվիչ հին ուղեգծով, որը մանրամասն քննված է «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխարհագրական իմ աշխատության մեջ[2]։ Հռոմեական բանակը գնացել էր Կարին գավառից դեպի այժմյան Քյոփրիքյոյ, ուր իրար են խառնվում Մուրցը և Արաքսը, ու այնուհետև գնացել էր Ալաշկերտի դաշտը և այստեղից Չայկական Պար կամ Աղրի-դաղ լեռնաշղթայի հարավային կողմով իջել էր այժմյան Խոյ։ Իսկ Խոյից նա շարունակել էր իր ճանապարհը, հավանորեն, ո՛չ թե այժմյան Մարանդի վրայով, ինչպես այդ ենթադրում են Գուտշմիդը[3] և ուրիշները, այլ այժմյան Տասվիչի վրայով ու Ուրմիա լճի արևելյան ափերի երկարությամբ, ինչպես այդ մանրամասն լուսաբանված է վերոհիշյալ իմ ուսումնասիրության մեջ։

Արշավող զորքը գնում էր դեպի Ուրմիա լճի հարավ-արևելակողմում գտնվող Փրաասպա—Գանձակ մայրաքաղաքը, որի տեղադրությունը ենթադրում են այժմյան Թախտ-ի-Սուլեյմանի մոտ[4]։ Իր հետ նա երեք հարյուր սայլի վրա տանում էր, ինչպես

---

[1] *Plut.*, Antonius, XXXVII, 2.

[2] Տե՛ս «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», Երևան, 1936, էջ 49—62 և 144—172։

[3] *Gutschmid*, Geschichte Irans, էջ 99։

[4] Տե՛ս *H. Rawlinson*, Journ. Geogr. Society, Bd. X:

վկայում է Պլուտարքոսը, պաշարողական մեքենաներ ու նրանց թվում նաև պարիսպակործան մի խոյ 80 ոտ կամ մոտ 24 մետր երկարությամբ[1]։ Պլուտարքոսի այս վկայությունից կարելի հետևցընել, որ Հայաստանի միջով անցնող ռազմական ճանապարհը, հավանորեն, եղել է լայն պողոտա և համեմատաբար գտնվում է բարեկարգ վիճակում։

Կարին գավառից Անտոնիոսի զորքը դուրս էր եկել հունիս ամսին և պաշարողական մեքենաների տեղափոխման դժվարությունների պատճառով, ըստ երևույթին, շարժվում էր առաջ բավական դանդաղ։ Ուստի Անտոնիոսը, ինչպես պատմում է Պլուտարքոսը[2], սայլերը թողնելով իր ետևում՝ մեքենաների պահպանությունն ու ուղեկցորդումը հանձնեց Ստատիանոսին, որն ուներ իր հետ երկու լեգեոն, իսկ ինքը գլխավոր ուժերի հետ արագորեն առաջ գնաց ու պաշարեց Փրաասպա—Գանձակը, որի մեջ գտնվում էին Ատրպատականի Արտավազդ թագավորի կանայք ու երեխաները։ Նա շտապում էր պատերազմն Ատրպատականում վերջացնել նախքան պարթևների գալը։

Բայց օգոստոս ամիսն էր արդեն, իսկ պաշարված մայրաքաղաքն արիաբար ու համառորեն պաշտպանվում էր։ Շուտով օգնության հասավ Փրաասպային Հրահատ Դ-ը, որն ուներ իր հետ մոտ 40.000 պարթևական և 10.000 մեդական հեծելազոր։ Այս զորքի գլխավոր հրամանատարն էր հռոմայեցիների բարեկամ վերոհիշյալ Մոնեսեսը, որն, ինչպես հույս ուներ Անտոնիոսը՝ պետք է ներքին խռովություններ առաջ բերեր պարթևական թագավորության մեջ։

Մոնեսեսը մեծ հեռատեսությամբ անցավ Անտոնիոսի թիկունքը և շրջապատեց նախ և առաջ Ստատիանոսի երկու լեգեոնը և սայլագումակը, որոնք մեծ բանակին դեռ չէին հասել։ Պարթևական հեծելազորը գլխովին ջարդեց Ստատիանոսի ամբողջ զորքը, որ թվով մոտ 7.500 մարդ էին, և ջարդուփշուր արեց նաև պաշարողական մեքենաները։ Բացի այդ, պարթևները այստեղ գերի վերցրին Պոնտոսի Պոլեմոն թագավորին։

Այս կոտորածը խիստ ծանր մի հարված էր, որ կասկածելի էր դարձնում հռոմեական զորքի ապագա անկայլությունները։ Արտավազդ Բ-ը, որը կորցրեց իր հավատը դեպի Անտոնիոսի ձեռնարկած արշավանքի հաջող վախճանը՝ ետ քաշեց իր զորքերը

[1] Տե՛ս *Plut.*, Antonius, XXXVIII, 1.

[2] Նույնը, Antonius, XXXVIII.

և վերադարձավ Հայաստան[1]։ Կասսիուս Դիոնն առանձնապես ընդգծում է, որ պարթևները կարողացել էին ոչնչացնել Ստատիանոսի զորամասը, որովհետև հայոց թագավորը չէր մասնակցել այս ճակատամարտին[2]։

Ստատիանոսի զորքերի ջարդից հետո, որ տեղի ունեցավ օգոստոսի կեսերին (36 մեր թվ. առաջ)՝ Անտոնիոսը շարունակեց Փրաասպայի պաշարումը, բայց հաջողություն չունեցավ։ Շուտով սկսվեց աշունը, և հռոմեական զորաբանակի դրությունը խիստ վատացավ ցրտերի ու սննդամթերքի պակասության պատճառով։ Վերջ ի վերջո, Անտոնիոսը ստիպված եղավ բանակցության մեջ մտնել Հրահատ Դ-ի հետ և առաջարկեց նրան հաշտություն՝ այն պայմանով, եթե տրվեն Կրասսոսի պարտության ժամանակ գերված զինվորները և հռոմեական արծվեկիր դրոշները։ Հրահատը համաձայնեց թույլ տալ միայն, որ անարգել կերպով նահանջեն, բայց պահանջեց, որ անհապաղ վերացնեն Փրաասպայի պաշարումը։

36 թվի (մեր թվ. ա.) հոկտեմբեր ամսին Ատրպատականի մայրաքաղաքի պաշարումը վերացվեց և սկսվեց հռոմեական զորքերի նահանջը դեպի Հայաստանի սահմանները, որը չափազանց ծանր եղավ։ Պարթևները, հակառակ Հրահատ թագավորի խոստման, անընդհատ հարձակվում էին և նրանց մեծ կորուստներ էին պատճառում։ Նրանց մեջ մեծ կոտորած էին գործում, բացի այդ, նաև ցուրտը ու սովը և կարգապահության վերացումը զինվորների մեջ, որ հարկադրել էր Անտոնիոսին դիմել ամենախիստ միջոցների։

Մեծ դժվարություններով ու կորուստներով հռոմեական հոգնած ու բարոյալքված բանակը հասավ Արաքս գետի ափը 27 օր տևող նահանջից հետո։ Նրա վերադարձի ճանապարհը ենթադրում են ո՛չ թե նախկին, այլ նոր ուղղությամբ՝ այժմյան Թավրիզի ու Մարանդի շրջաններով դեպի այժմյան Ջուլֆա։ Իր այս աղետալի արշավանքի ընթացքում Անտոնիոսը կորցրել էր ամբողջ իր պաշարողական պարկը և իր զորքերի գրեթե մեկ քառորդը՝ մոտ 24.000 զինվոր։

Արտավազդը Հայաստանում նրանց ընդունեց բարեկամաբար և զորքին հայթայթեց պարենի պաշար։ Որ հռոմեական բանակը, անցնելով Արաքս գետը և մտնելով Հայաստան, միանգամայն

---

[1] Տե՛ս Plut, Antonius, XXXIX, 1.

[2] Cass. Dio, XLIX, 25, 5—26, 1.

վտանգից զերծ էր ու ապահով՝ այդ հիշատակված է Պլուտարքոսի մոտ։

> «Վեցերորդ օրը,—պատմում է Պլուտարքոսը,—վերջին ճակատամարտից հետո՝ նրանք [Հռոմայեցիները] հասան Արաքս գետի ափը, որը Մեդիան բաժանում էր Հայաստանից։ Թվում էր, որ գետը դժվարանցանելի է իր խորության ու արագության պատճառով։ Բացի այդ, լուր էր պտտվում, որ հենց այդ տեղերում թշնամին դարան է մտել և իրենց վրա հարձակվելու է գետն անցնելու ժամանակ։ Իսկ երբ անվտանգ կերպով գետն անցան ու մտան Հայաստան՝ կարծես թե այդ երկիրը նրանք տեսնում էին նավազնացությունից հետո՝ երկրպագեցին նրան ու ուրախությունից լաց եղան ու իրար հետ գրկախառնվեցին»[1]։

Անտոնիոսը չուզեց Հայաստանում ձմեռել, որովհետև շտապում էր գնալ իր սիրուհու մոտ՝ Աղեքսանդրիա։ Ձմեռվա ցրտերի ու նաև հիվանդությունների պատճառով հռոմեական զորքը, որը նույնպես չմնաց Հայաստանում՝ ունեցավ մեծ կորուստներ նաև Հայաստանի միջով անցնելիս մոտ 8.000 զինվոր։

Անտոնիոսի անհաջող արշավանքը և խայտառակ նահանջը վարկաբեկում էին Հռոմի հեղինակությունն Արևելքում։ Հռոմեական զորավարը պետք է, իհարկե, իրեն որևէ կերպ արդարացներ։ Եվ նա, ինչպես այդ հռոմայեցիների սովորությունն էր՝ արշավանքի անհաջողությունը վերագրեց ո՛չ թե իր արած անթույլատրելի սխալներին, այլ Հայոց Արտավազդ թագավորի դավաճանությանը։

Սակայն այս մեղադրանքը, որը՝ չնայած եվրոպական խոշոր պատմագետների առարկություններին՝ հիմնավոր են համարել գիտնականներից ոմանք՝ հավանական չէ կարող լինել, որովհետև Արտավազդի դավաճանության մասին այդ տեղեկությունը, որը հիմնված է Անտոնիոսի բարեկամ ու զինակից Դելլիուսի կասկածելի հաղորդության վրա՝ զգալիորեն տարբերվում է ո՛չ միայն Կասսիուս Դիոնի, այլ նաև դեպի Անտոնիոսը բարեհաճ տրամադրված Պլուտարքոսի վկայություններից։

Ամենակարևորն այդ վկայություններից մեջ եմ բերում ներքև բառացի թարգմանությամբ հունարենից։

1. Պլուտարքոս, Անտոնիոս, L, 1—2՝

> «Այս բոլորովին պարզ եղավ, որ Արտավազդն էր պատճառը, որ Անտոնիոսն այս պատերազմի վերջը տանուլ տվեց։ Եթե Մեդիայից [Ատրպատականից] տարած Արտավազդի

[1] *Plut.,* Antonius, XLIX, 2.

*վեց հազար հեծելազորը, որ զինված էր պարթևականի նըման և սովոր էր նրանց դեմ կռվելու՝ այնտեղ լիներ, այդ դեպքում՝ երբ պարթևների ճակատամարտի ժամանակ հռոմայեցիներն ի փախուստ էին դարձնում՝ արմենները ևս կհալածեին փախչող թշնամուն, և պարտվելուց հետո սրանք չէին կարողանա ուշքի գալ և չէին համարձակվի ճակատամարտ տալ այդքան անգամ։ Արդ՝ բոլորը զայրացած էին և դրդում էին Անտոնիոսին վրեժ առնել հայից։ Իսկ նա, որովհետև իր զորքն ուժասպառ էր եղել և ծանր դրության մեջ էր՝ խոհեմաբար նրան չպարսավեց, ոչ էլ փոխեց նրա նըկատմամբ սովորական իր բարեկամական վերաբերմունքը ու հարգանքը։ Սակայն հետո, ներս խուժելով նորից Հայաստան՝ շատ խոստումներով ու առաջարկներով նրան համոզեց գալ իր մոտ, բռնեց նրան ու շղթայված տարավ Աղեքսանդրիա իր հաղթահանդեսի համար»։*

*2. Կասսիուս Դիոն, XLIX, 25,5՝*

*«Այդ կարողացան նրան [պարթևները] անել, որ Արտավազդ Արմենը չէր մասնակցել կռվին. և թեև, ինչպես ասում են ոմանք, կարող էր օգնել հռոմայեցիներին, սակայն ո՛չ այդ արեց, ո՛չ էլ գնաց Անտոնիոսի մոտ, այլ վերադարձավ տուն»։*

*3. Նույնը XLIX, 31, 2—3՝*

*«Իսկ նա [Անտոնիոսը] թեև զայրացած էր Արտավազդ Արմենի վրա, որովհետև նա իրենց թողել էր, ու թեև ցանկանում էր վրեժ առնել նրանից, սակայն նկատել չտվեց այդ, այլ ցույց տվեց հարգանք, որպեսզի նրանցից վերցնե կենսամթերք ու փող. և, բացի այդ, որովհետև զինվորները չէին կարող դիմանալ երկար ճանապարհի, մանավանդ ձմեռը, ու իզուր պետք է տանջվեին և քանի որ նա կարճ ժամանակից հետո մտադիր էր վերադառնալ Հայաստան՝ նա շարունակ շողոքորթում էր թագավորին և անընդհատ խոստումներ էր տալիս, որպեսզի սա նրանց թույլ տար ձմեռել իր երկրում, ասելով որ գարնան սկզբին նա նորից պիտի արշավանքի ելնե պարթևների դեմ»։*

*4. Ստրաբոն, XI, 13, 4 (524)՝*

*«Իսկ Անտոնիոսի արշավանքը դժվարին էր դարձրել ո՛չ թե տեղի բնույթը, այլ դավեր նյութող Հայոց թագավոր Արտավազդը, որին նա իրեն անգիտակցորեն խորհրդատու էր վերցրել և իրազեկ էր արել պատերազմի ծրագրին։ Եվ թեև Անտոնիոսը նրանից վրեժ առավ, բայց շատ ուշ, երբ հռո-*

մայեցիներն արդեն շատ չարիքներ էին կրել, որոնց պատճառն էր բացի Արտավազդից նաև նա, որ հռոմայեցիների ճանապարհը Եփրատի մոտ գտնվող Զևգմայից մինչև Ատրպատական դարձրել էր 80.000 ստադիոն, այսինքն՝ ուղիղ ճանապարհի կրկնակիից ավելին՝ լեռներով, անանցանելի տեղերով և զառտուղի ճանապարհներով»։

Մեջ բերված այս վկայություններից, ինչպես տեսնում ենք, միայն չորրորդը Անտոնիոսի արշավանքի անհաջողությունը վերագրում է Հայոց Արտավազդ թագավորի կանխամտածված դավաճանությանը։ Ստրաբոնի այս վկայության աղբյուրը, ինչպես մատնանշել էր Մոմզենը, Դելլիուսն է, որը 36 թվի արշավանքի նկարագրությունը տվել է գունավորված կերպով, հավանորեն, հենց իրեն Անտոնիոսի պատվերով։ Այդ հաղորդագրությունը, Մոմզենի կարծիքով, «ողորմելի մի փորձ է ծեծված զորավարի արդարացման»[1]։ Արշավանքի ծրագրի համար, ասում է իրավացի կերպով Մոմզենը, պատասխանատուն էր ո՛չ թե Արտավազդը, այլ ինքը Անտոնիոսը. նմանապես և Մոնեսեսի վրա դրած նրա հույսերի խորտակումը, Ստատիանոսի աղետը, Փրաասպայի պաշարման անհաջողությունը ո՛չ թե Արտավազդի պատճառով էին առաջացել, այլ արդյունք էին իր սխալների ու անխոհեմության։

Պատմագետներից ոմանք, որոնք հավատ ընծայելով Ստրաբոնին, Արտավազդին մեղադրում են դավաճանության մեջ, օրինակ՝ Տարնը, Գարագաշյանը և ուրիշները[2], ենթադրում են նաև, որ Հայոց թագավորը ծածուկ խոսք է կապած եղել պարթևների հետ և շարունակ նրանց տեղեկություններ է տվել Անտոնիոսի դժվարությունների և հռոմեական զորքի տեղաշարժումների մասին։ Այս պնդումները դարձյալ անապացույց կռահումներ են, որ բնավ չեն հիմնված սկզբնաղբյուրների հաղորդած տեղեկությունների վրա։ Ինչպես կտեսնենք, Ատրպատականի Արտավազդ թագավորը Հայոց թագավորին համարում էր ո՛չ թե արբանյակ ու գործակից պարթևների, այլ մեղսակից ու մասնակցորդ Անտոնիոսի արշավանքի։

Վերև մեջ բերված վկայություններից ավելի վստահելի են համարում պատմագետների մեծագույն մասը Կասսիուս Դիոնի և Պլուտարքոսի վկայությունները։ Այս երկու հեղինակները, որոնց

---

[1] *Th. Mommsen*, Römische Geschichte, Bd. V, Berlin, 1886, էջ 367, ծանոթ. 1։

[2] Տե՛ս *Tarn*, Campridge Ancient History, vol. X, էջ 72—73, Գարագաշյան, *քննական պատմություն Հայոց*, Բ, էջ 178։

հաղորդած տեղեկությունները, հավանորեն, ծագում են իրարից անկախ աղբյուրներից, ինչպես վերև տեսանք, մեղադրում են Հայոց թագավորին միայն այն բանում, որ նա չէր ուզեցել մարտնչել պարթևական-մեդական միացյալ ուժերի դեմ և իր զորքերը ետ էր քաշել ու վերադարձել Հայաստան։ Այս նահանջը, որի պատճառը թշնամու գերազանց ուժերն էին, չէ կարելի, իհարկե, բնորոշել իբրև դավաճանություն։ Ինչպես շատ ճիշտ մատնանշել է Գուտշմիդը, Արտավազդ թագավորին կարելի է հանդիմանել, գլխավորապես, այն բանի համար, որ նա ցանկություն չէ ունեցել իրեն ու իր զորքը զոհելու հռոմայեցիների գործի համար[1]։

Պարթևների համար, ասում է Գուտշմիդը, նոր այս հաղթության անուղղակի հետևանքներն ավելի մեծ էին, քան ինքը հաղթությունը։ Անտոնիոսի անհաջողությունը լրացումն էր Կրասսոսի պարտության։ Թվում էր ապացուցված, որ պարթևներն իրենց սեփական երկրում անհաղթելի են բոլոր կողմերից։ Եվ ավելի քան հավանական է, որ առաջին հերթին հենց այդ համոզումն էր պատճառը, որ Պարթևական թագավորությունը մոտ մեկ և կես դար պաշտպանված ու ապահովված մնաց հռոմեական անհագությունից և հարձակումներից։

Անտոնիոսի արշավանքի անհաջողությունը սկիզբն եղավ նրա հեղինակության անկման։ Դիկտատորական իրավունքներ ստացած Հռոմի զորավարները զորքի ու իշխող դասերի համակրանքն էին վայելում միայն այն դեպքում, եթե նրանք, հափշտակողական հաջող պատերազմներ վարելով՝ կողոպտված ժողովուրդների հարստությունները քշում էին Իտալիա և ո՛չ միայն իրենք էին հարստանում, այլև հարստացնում էին իրենց հայրենակիցներին։ Հռոմեական զորքի ձախորդությունն Ատրպատականում միաժամանակ և ֆինանսական ձախորդություն էր։ Արշավանքից վերադառնալուց հետո Անտոնիոսն անկարող եղավ լրիվ բավարարել մինչև իսկ իր զինվորներին։

Հռոմեական Ասիան, որը բաժին էր ընկել Անտոնիոսին՝ գտնվում էր ինքը տնտեսական աղետալի դրության մեջ։ Հանրապետականներ Բրուտոսը և Կասսիոսը Յուլիուս Կեսարի սպանողները, Փոքր Ասիան թալանել էին ավելի մեծ չափերով, քան Սուլլան ու նրան հաջորդող զորավարներն ու կուսակալները։ Գալատիան, Կապպադովկիան և Պոնտոսը տնտեսապես արդեն հյուծվել էին հռոմեական վարկատուների ու վաշխառուների ցանցում։

---

[1] *Gutschmid*, Geschichte Irans, էջ 101։

Հռոմեական գերիշխանության տակ գտնվող մեծ թագավորություններից մնում էին միայն երկուսը՝ Եգիպտոսը և Հայաստանը, որոնք դեռևս տնտեսապես արնաքամ չէին եղել և ունեին համեմատաբար մեծ հարստություններ։

Բայց Անտոնիոսի սիրուհին, Եգիպտոսի Կլեոպատրա թագուհին, ո՛չ միայն հրաժարվում էր նրան տրամադրել դրամական միջոցներ, այլ, ընդհակառակը, աշխատում էր բարձրացնել ու հարստացնել իր թագավորությունը Անտոնիոսի իշխանության տակ գտնվող երկրների հաշվին և ձգտում էր վերականգնել եգիպտական փարավոնների նախկին փառքը։ Անտոնիոսի պարթևական արշավանքից հետո Հայաստանը միակ երկիրն էր, որ կարող էր հագուրդ տալ հռոմայեցիների անկշտում ընչաքաղցության, և Արտավազդի երևակայական դավաճանությունը, բնականաբար, սոսկ մի պատրվակ էր Հայաստանի նվաճման ու կողոպտման։

Հռոմեական պարտված զորքերի վերադարձից հետո Ատրպատականի Արտավազդ թագավորի և Հրահատ Դ-ի միջև տարաձայնություններ ու դժգոհություններ էին ծագել պատերազմական ավարի բաժանման պատճառով (35 մեր թվ. առաջ)։ Արտավազդը, որ վրդովված էր ու զայրացած՝ ազատեց գերի բռնված Պոնտոսի Պոլեմոն թագավորին և, ուղարկելով նրան Անտոնիոսի մոտ՝ առաջարկեց դաշինք կռել իր հետ ընդդեմ պարթևների։ Նա մտածում էր վրեժ առնել նաև Հայոց Արտավազդ թագավորից, որն իր ոխերիմ թշնամին էր և Անտոնիոսի հետ ներխուժել ու ավերել էր Ատրպատականը։

Անտոնիոսը, իհարկե, ուրախությամբ ընդունեց Ատրպատականի թագավորի առաջարկը,որովհետև նրա զորական օգնությունը խիստ կարևոր էր պարթևական նոր ծրագրվող արշավանքի համար և, բացի այդ, որովհետև այս դաշնակցությամբ մեկուսացվում ու վտանգվում էր թիկունքից Հայաստանը, որը նա մտադիր էր նվաճել։

Հայաստանի նվաճումը և կողոպտումը Անտոնիոսն աշխատեց գլուխ բերել նենգ ու խարդախ միջոցներով։ Լուկուլլոսի նման սա ևս հաջողությամբ քնեցրեց հայոց թագավորի աչալրջությունը, որպեսզի կարողանա ներխուժել Հայաստան հանկարծակի ու գողաբար։

Սկզբում, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը, Արտավազդ թագավորին Անտոնիոսը խաբեությամբ հրավիրեց Եգիպտոս՝ իբր թե պարթևական նոր արշավանքի մասին խորհրդակցելու համար։ Սակայն Արտավազդ Բ-ը չխաբվեց և մերժեց Եգիպտոս գնալ։

«Իսկ հետևյալ ամառը [35 մեր թվ. առաջ),—պատմում է Կասսիուս Դիոնը,—երբ Պոմպեյոսը և Կորնուֆիկոսն էին հյուպատոսներ, Անտոնիոսը պատրաստվեց արշավելու Արտավազդ Արմենի դեմ, մեծ հույս դնելով մեդացիների թագավորի վրա, որը թշնամացած էր Հրահատի հետ, որովհետև սա ավարից իրեն շատ մաս չէր տվել և իրեն չէր պատվել որևէ այլ կերպ։ Իսկ Արտավազդ Արմենից նա կամենում էր վրեժ առնել հռոմայեցիներին իրեն դեմ բերելու համար։ Ուստի և նա ուղարկեց Պոլեմոնին Անտոնիոսի մոտ հայցելու բարեկամություն և զինակցություն։ Եվ Անտոնիոսը, իհարկե, անչափ ուրախացավ և ո՛չ միայն նրա հետ դաշն կնքեց, այլև Պոլեմոնին, ի վարձատրություն սրա միջնորդության, տվեց կարճ ժամանակից հետո Փոքր Հայքը։

Արդ՝ Արտավազդ Արմենին նա նախ հրավիրեց, իբրև բարեկամի, Եգիպտոս, որպեսզի նրան առանց դժվարության ձեռք ձգե այստեղ և սպանե։ Իսկ երբ սա, գլխի ընկնելով՝ չընդունեց հրավերը՝ նա մտածեց նրան խաբել որևէ այլ կերպ։ Անտոնիոսն իր զայրույթը նրան ցույց չէր տալիս բացահայտ կերպով, որպեսզի նրա հետ պատերազմ չունենա»[1]։

Պետք է ասել, որ Կասսիուս Դիոնին նրա պատմության Անտոնիոսին վերաբերող մասերում աղբյուր էր ծառայել Տիտուս Լիվիուսը, որը՝ իբրև Օկտավիանոսի բարեկամ՝ անբարեհաճ էր տրամադրված դեպի Անտոնիոսը։ Հնարավոր է, ուրեմն, որ նրա վկայությունները Անտոնիոսի չարանենգությունների մասին Արտավազդի նկատմամբ կարող են մի փոքր գունավորված լինել։ Սակայն, ըստ էության, այդ վկայությունները, ըստ երևույթին, ստույգ են ու արժանահավատ, որովհետև Պլուտարքոսը ևս, ինչպես վերև տեսանք, վկայում է, որ Անտոնիոսը «շատ խոստումներով ու առաջարկներով» համոզում էր Արտավազդ Բ-ին գալ իր մոտ[2]։

35/34 թվի (մեր թվ. ա.) ձմեռը Անտոնիոսն անցկացրեց Կլեոպատրայի մոտ Եգիպտոսում, բայց ինչպես հաղորդում է Կասսիուս Դիոնը, նա նորից փորձեց բարձ դնել Արտավազդի գլխի տակ և ուղարկեց նրա մոտ իբրև խնամախոս Դելլիուսին, առաջարկելով ամուսնացնել իր Աղեքսանդր որդուն Արտավազդի դստեր հետ։ Այնուհետև, 34 թվի գարնան սկզբներին, նա հանկարծ

[1] Cass. Dio, XLIX, 33, 1—3.

[2] Տե՛ս Plut., Antonius, L, 2։

ինքը զորքով եկավ Փոքր Հայք ու Արտավազդ Բ-ին հրավիրեց դարձյալ իր մոտ խորհրդակցության: Բայց որովհետև Արտավազդը զանազան պատրվակներով հրաժարվեց գնալ նրա մոտ՝ Անտոնիոսն արագ երթերով դիմեց իր զորքով դեպի Արտաշատ: Այս անգամ նա, զենքի սպառնալիքով ու նաև համոզելով բարեկամների միջոցով, հարկադրեց հայոց թագավորին գալ իր բանակը: Հայաստանն այժմ ևս, ինչպես Լուկուլլոսի արշավանքի ժամանակ, հանկարծակիի բերվեց և, պատրաստված չլինելով պատերազմի, չէր կարող ցույց տալ զինված դիմադրություն:

Խաբված Արտավազդը, որ նենգ ու անվայել միջոցներով ծուղակի մեջ էր գցվել՝ ձերբակալվեց, և նրան, ինչպես պատմում է Կասսիոս Դիոնը՝ Անտոնիոսն իր հետ ման ածեց Հայաստանի բերդերը, ուր գտնվում էին արքունական գանձերը, որպեսզի կարողանա բռնագրավել Հայաստանի հարստությունները առանց պատերազմի: Բայց հայ մեծամեծները, Անտոնիոսի նենգագործ արարքներից գրգռված՝ զենքի դիմեցին և Հայաստանի թագավոր ընտրեցին Արտավազդ Բ-ի մեծ որդուն՝ Արտաշես Բ-ին: Սակայն տեղի ունեցած ճակատամարտում հայկական զինված ուժերը, որ չէին նախապատրաստվել մեծ պատերազմի՝ հաղթվեցին, և Արտաշեսը փախավ պարթևների մոտ:

Այս պարտությունից հետո Հայաստանը հայտարարվեց նըվաճված երկիր և ենթարկվեց ընդհանուր կողոպուտի հռոմեական լեգեոնների կողմից: Անխնա կողոպտվեցին և Հայաստանի հարուստ տաճարները ու նրանց թվում նաև Անահիտի տաճարը Եկեղյաց գավառում, որի մեջ Անահիտ աստվածուհու ոսկեձույլ արձանը բռնագրավեց ինքը՝ Անտոնիոսը:

34 թվի (մեր թվ. առաջ) ամառվա վերջերին Անտոնիոսը վերադարձավ Եգիպտոս, թողնելով հռոմեական զորքը նվաճված Հայաստանում: Նա իր հետ Եգիպտոս տարավ արծաթե շղթաներով կապված Արտավազդ թագավորին, նրա կանանց, նրա Տիգրան ու Արտավազդ որդիներին ու հայ գերիներին: Աղեքսանդրիայում նա հանդիսավոր կերպով տոնեց իր հաղթությունը և Հայաստանի նվաճման առթիվ կազմակերպեց շքեղ հաղթական երթ, որը Մոմզենը համարում է կապիտոլյան հաղթահանդեսների մի ծաղրանկար[1]:

Հանդիսավոր երթի ժամանակ Արտավազդը կալանդված էր ոսկե շղթաներով, իսկ Կլեոպատրան նստած էր ոսկեզօծ գահի

[1] Տե՛ս *Mommsen,* Reschichte, Bd, V, Berlin, 1886, էջ 369:

վրա արծաթապատ բեմում։ Հայոց թագավորին ու նրա ընտանիքին, ազատության խոստում տալով՝ հորդորում էին դիմել Կլեոպատրային խնդիրքով ու աղերսանքով։ Սակայն սրանք չուզեցին նրան դիմել աղերսանքով, ո՛չ էլ գլուխ խոնարհեցրին, այլ ցույց տվին, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը, ոգու վեհություն, որի համար ստացան վեհամիտ անձերի համբավ։

Հունա-հռոմեական աղբյուրների կարևոր տեղեկությունները, որ վերաբերում են Արտավազդի կալանավորման, Հայաստանի նվաճման ու վերոհիշյալ մյուս անցքերին՝ ավելորդ չեմ համարում մեջ բերել բառացի թարգմանությամբ հունարենից ու լատիներենից։

1. Կասսիուս Դիոն, XLIX, 39, 2—6՝

«Որպեսզի կարողանա Արտավազդ Արմենից առանց դըժվարության վրեժ առնել՝ Անտոնիոսն ուղարկեց նրա մոտ ոմն Կվինտուս Դելլիուսին, որը երբեմն իր սիրելին էր՝ և խնդրեց նրա աղջկանն ի կնություն իր Աղեքսանդր որդուն և նրան շատ խոստումներ արեց։ Եվ, վերջիվերջո, գարնան սկզբին նա հանկարծ եկավ Նիկոպոլիս, որ հիմնել էր Պոմպեյոսը, և նրան այնտեղ հրավիրեց այն պատրվակով, որ իբր թե նրա հետ խորհրդակցելու և համագործակցելու է ընդդեմ պարթևների։ Իսկ երբ Արտավազդը, նախատեսելով նրա դիտավորությունը, մոտը չեկավ՝ նա նորից բանակցությունների համար ուղարկեց Դելլիուսին և ինքը ևս շտապեց գնալ Արտաշատ։

Եվ այսպիսով, թե նրան համոզելով բարեկամների միջոցով, թե իր զորքերի երկյուղով և թե, ընդհանրապես, իբրև բարեկամի նրան գրելով ու ամեն տեսակ միջոցների դիմելով՝ վերջապես, երկար ժամանակից հետո, նրան հարկադրեց գալ բանակ։ Եվ ձերբակալելով նրան այնտեղ՝ սկըզբում պահեց առանց կապանքների և նրան տարավ իր հետ այն ամրացրած տեղերը, ուր գտնվում էին գանձերը, որպեսզի կարողանա բռնագրավել այն առանց պատերազմի։ Նա արդարանում էր, որ թագավորին ձերբակալել է միայն այն պատճառով, որպեսզի հայերից տուրք վերցնե նրա անձի ու նրա թագավորության փրկության համար։ Իսկ երբ գանձերի պահապանները նրան չլսեցին և զինված ուժերը Արտավազդի փոխարեն թագավոր ընտրեցին սրա որդիներից մեկին, Արտաշեսին, Անտոնիոսն Արտավազդին կապեց արծաթե շղթաներով, որովհետև, ըստ երևույթին, ամոթալի համարեց նրան, որ թագավոր էր եղել՝ կապել երկաթե շղթաներով։

Եվ այնուհետև Անտոնիոսը, ոմանց հոժարակամ նվաճելով, ոմանց էլ բռնությամբ՝ տիրեց ամբողջ Հայաստանին։ Իսկ Արտաշեսը, որ պատերազմի բռնվեց ու պարտվեց՝ փախավ պարթևների թագավորի մոտ։ Այս անելուց հետո Անտոնիոսը, որպեսզի ավելի մեծ բարեկամություն հաստատի մեդացիների թագավորի հետ՝ իր որդուն նշանեց նրա աղջկա հետ, և ապա իր բանակը թողեց Հայաստանում ու վերադարձավ Եգիպտոս, իր հետ տանելով թե այլ մեծ ավար և թե Հայոց թագավորին իր կանանց ու երեխաների հետ։

Ուղարկելով մյուս գերիների հետ սրանց իր առջևից Աղեքսանդրիա իբր հաղթահանդեսի երթում՝ նա ինքը ներս մտավ քաղաք մարտակառքով. և բացի այլ ամենից, որ շնորհեց Կլեոպատրային՝ նրան բերեց իր ընտանիքի հետ նաև Հայոց թագավորին, որը կալանդված էր ոսկե շղթաներով։ Իսկ Կլեոպատրան նստած էր բազմության մեջ ոսկեզօծ գահի վրա՝ արծաթապատ բեմում։ Սակայն բարբարոսները, թեև նրանց շատ էին ստիպում և շատ էին հորդորում, տալով ազատության խոստում՝ չդիմեցին նրան աղերսանքով, ո՛չ էլ գլուխ խոնարհեցրին։ Եվ որովհետև միայն նրա անունն էին տալիս՝ նրանք վեհամիտ անձերի համբավ ստացան, բայց և նույն այդ պատճառով ենթարկվեցին անգութ վերաբերմունքի։

2. Պլուտարքոս, Անտոնիոս, L, 2՝

«Սակայն հետո, նորից ներս խուժելով Հայաստան՝ շատ խոստումներով ու առաջարկներով [Անտոնիոսը] համոզեց նրան [Արտավազդին] գալ իր մոտ, բռնեց նրան և շղթայված Աղեքսանդրիա տարավ իր հաղթահանդեսի համար»։

3. Ստրաբոն, XI, 14, 15 (632)՝

«Նրան [Տիգրան Բ-ին] հաջորդող Արտավազդը, քանի որ նա հռոմայեցիների բարեկամ էր՝ բարեհաջող դրության մեջ էր գտնվում։ Բայց երբ նա դավաճանեց Անտոնիոսին ի նպաստ պարթևների պատերազմի ժամանակ սրանց դեմ՝ ենթարկվեց պատժի։ Նա տարվեց Անտոնիոսի հրամանով Աղեքսանդրիա, ման ածվեց քաղաքի մեջ շղթաներով կալանդված, մնաց մի քանի ժամանակ բանտում, իսկ հետո սպանվեց Ակտիումի կռվի ժամանակ»։

4. Տակիտոս, Տարեգրություններ, II, 3՝

«Երբ Վոնոնը պարտվեց՝ նրան ապաստարան ծառայեց Հայաստանը, որն այդ ժամանակ թագավոր չուներ և որը,

գտնվելով պարթևների ու հռոմայեցիների ուժերի միջև՝ անհավատարիմ էր Անտոնիոսի եղեռնագործության պատճառով, որը Արտավազդին, հայերի թագավորին, բարեկամության դիմակի տակ ծուղակի մեջ էր քաշել, իսկ հետո շղթայել էր և սպանել»։

5. Հովսեպոս Փլավիոս, Հնախոսություն, XV, 4, 3՝

«Իսկ Անտոնիոսը, տիրելով Հայաստանին՝ շղթայված Եգիպտոս է ուղարկում Արտավազդին՝ Տիգրանի որդուն, իր որդիների ու մեծամեծների հետ միասին և նվիրում է Կլեոպատրային թե սրանց և թե Արտավազդի թագավորության ամբողջ արդուզարդը, որ նա վերցրել էր այնտեղ»։

Ուշադիր կերպով ծանոթանալով մեջ բերված այս վկայություններին՝ մենք դարձյալ տեսնում ենք, որ Անտոնիոսի ու Արտավազդի մասին մեր ձեռքը հասել են իրար հակասող տարբեր տեղեկություններ։ Ստրաբոնի վկայությունները, ինչպես վերև ասացինք հիմնված են Անտոնիոսի մոտ բարեկամ Դելլիուսի հաղորդագրությունների վրա, որոնք ավելի քան կասկածելի են։ Եթե Արտավազդը հռոմայեցիներին դավաճանած լիներ՝ նա, անշուշտ, կալանավորվելուց հետո իսկույն մահվան կդատապարտվեր, ինչպես Կապպադովկիայի Արիարաթ Ժ թագավորը, որին Անտոնիոսը, ինչպես վերև տեսանք, մահապատժի էր ենթարկել դավաճանության համար 37/36 թվի ձմեռը։ Ուշագրավ է, սակայն, որ Արտավազդ Բ-ին չէին սպանել նաև հաղթահանդեսից հետո, ինչպես այդ ընդունված էր հռոմայեցիների մոտ։

Դժվար չէ, ուրեմն, համոզվել, որ վերև մեջ բերված վկայություններից համեմատաբար ավելի վստահելի կարող են համարվել ո՛չ թե Ստրաբոնի, այլ վերոհիշյալ մյուս վկայությունները։

Հայաստանի նվաճումից և վերոհիշյալ հաղթահանդեսից հետո ժողովրդի մեծ բազմության ներկայությամբ տեղի ունեցավ Աղեքսանդրիայում հանդիսավոր նիստ և այդ նիստում Անտոնիոսը, որ իրեն համարում էր արդեն նոր աշխարհակալության հիմնադիր՝ բաժանեց նվաճված ու նաև ճնշված արևելյան երկրները Կլեոպատրայի ու նրա երեխաների մեջ։

Կլեոպատրան հայտարարվեց «թագավորների թագուհի», իսկ Յուլիուս Կեսարի ու Կլեոպատրայի Պտղոմեոս Կեսարիոն որդին, որն իր մորը գահակից էր՝ հայտարարվեց «թագավորների թագավոր», և սրանք ստացան Եգիպտոսն ու Կիպրոսը։ Մյուս երկրները բաժին ստացան Անտոնիոսի և Կլեոպատրայի զավակները։ Վեց տարեկան Աղեքսանդրին Անտոնիոսը տվեց Հայաստանը,

նաև Մեդիան ու պարթևական թագավորությունը, որ հարկավոր էր դեռ նվաճել։ Երկու տարեկան Պտղոմեոս Փիլադելփոսը ստացավ եգիպտական երկրամասերն Ասորիքում և Կիլիկիայում, իսկ Կլեոպատրա Սելենեն՝ Լիբիան և Կիրենաիկան։

Բացի իր հաղթության առթիվ հաղթահանդես կատարելուց՝ Անտոնիոսը ի հիշատակ Հայաստանի նվաճման 34 թվին կտրել է տվել հատուկ դրամներ։ Այդ դրամների մեկ կողմը դրոշմված է նրա պատկերը, որի շուրջը գրված է՝ «Անտոնիոս Հայաստանը նվաճված» (Antoni Armenia devicta), իսկ մյուս կողմը դրոշմված է Կլեոպատրայի պատկերը և նրա շուրջը գրված է «Կլեոպատրայի թագավորների թագուհու թագավորների որդոց» (Cleopatrae reginae regum filiorum regum)։

Հռոմեական արևելյան երկրների տարաբաշխումը Կլեոպատրային ու նրա զավակներին, բնականաբար, առաջ բերեց Հռոմում մեծ դժգոհություն։ Հռոմայեցի հայրենասերները և, գլխավորապես, Օկտավիանոսը և նրա կուսակիցները խիստ գրգռված էին Անտոնիոսի դեմ, որովհետև նա ոտնատակ էր արել Աղեքսանդրիայում Հռոմեական պետության շահերը։ Անտոնիոսի քաղաքական հակառակորդների համար Հայաստանի կողոպտումը և Արտավազդ թագավորի կալանավորումը պրոպագանդայի միջոցներ էին Անտոնիոսին արատավորելու ու տապալելու համար։ Բայց, իրապես, Օկտավիանոսը, ինչպես երևում է հռոմեական աղբյուրների վկայություններից՝ խիստ դժգոհ էր, որ ինքը մաս չէր ստացել Հայաստանի կողոպուտից և որ նվաճված Հայաստանի հողերը չէին բաշխվել հռոմեական զորքին։

33 թվին (մեր թվ. առաջ) Անտոնիոսը նորից եկավ Հայաստան և Արաքս գետի մոտ տեսակցություն ունեցավ Ատրպատականի Արտավազդ թագավորի հետ, որը վախենում էր պարթևական հարձակումից։ Պարթևական այս արշավանքը, որը, իրապես, շուտով տեղի ունեցավ՝ ետ էր մղվել, ըստ երևույթին, հռոմեական զորքերի օգնությամբ, որոնք գտնվում էին Հայաստանում։ Տեսակցության ժամանակ Անտոնիոսի և Արտավազդ Մեդացու դաշնակցությունն ավելի ևս ամրապնդվեց։ Մարկվարտը ենթադրում է[1], որ, հավանորեն, նույն այս 33 թվին ատրպատականցիները ետ էին առել հայերից Մեծ Աղբակ գավառը, այսինքն՝ այժմյան Բաշկալեի շուրջը գտնվող երկիրը, որը Ստրաբոնի մոտ անվանված է Συμβάκη[2] (ըստ Մարկվարտի՝ պետք է ուղղել և կարդալ ’Αλβάκη)։

---

[1] Տե՛ս Markwart, Eranschahr, էջ 109.

[2] Strabo, XI, 13, 2 (523).

Ըստ երևույթին, նաև նույն այս 33 թվին (մեր թվ. առաջ) Անտոնիոսը տվել էր Փոքր Հայքը Պոնտոսի թագավոր Պոլեմոնին, որի միջնորդությամբ էր կնքվել վերոհիշյալ դաշինքն Արտավազդ Մեդացու հետ։ Այդ մասին ունի վկայություն Կասսիուս Դիոնը, որը պարզ ու որոշ ասում է, որ Անտոնիոսը «Պոլեմոնին ի վարձատրություն սրա միջնորդության թվեց Փոքր Հայքը»[1]։ Ոմանք ենթադրում են, որ Փոքր Հայքը 33 թվից առաջ կցված է եղել Արտավազդ Բ-ի թագավորությանը և նրանից անջատվել է, ինչպես և Մեծ Աղբակը Հայաստանի նվաճումից հետո[2]։ Այս խնդիրը, իմ կարծիքով, կարոտ է դեռ հատուկ քննության։ Միանգամայն ըստ իս հնարավոր է, որ Փոքր Հայքը կարող էր միացված լինել Մեծ Հայաստանին Ասորիքի նվաճման և պարթևական-հայկական արշավանքների ժամանակ 40—38 թվերին (մեր թվ. առաջ)։

33 թվին (մեր թվ. ա.) Անտոնիոսն այլևս չէր կարող նոր արշավանքի ելնել պարթևների դեմ, որովհետև նրա ու Օկտավիանոսի հարաբերությունները սկսել էին արդեն սրվել, և նա պետք է նախապատրաստվեր պատերազմի իր գլխավոր ոսոխի դեմ։

33 թվի անցքերի մասին ուշագրավ են Կասսիուս Դիոնի վկայությունները, որ կարևոր եմ համարում մեջ բերել առանց կրճատումների։

> «Իսկ Անտոնիոսը,—պատմում է Դիոնը,—այդ ժամանակ եկավ մինչև Արաքս գետը, իբր թե պատերազմ սկսելու նաև պարթևների դեմ, և նա գոհ մնաց Մեդացու հետ կնքված համաձայնությունից։ Նրանք պայմանավորվեցին, որ պետք է իրար օգնեն պատերազմի ժամանակ, ինքը՝ պարթևների դեմ, իսկ նա՝ Կեսարի [Օկտավիանոսի] դեմ։ Եվ այնուհետև նրանք փոխադարձաբար իրար տվին որոշ քանակությամբ զինվորներ. Մեդացին վերցրեց նորանվաճ Հայաստանի զորքի մի մասը, իսկ Անտոնիոսն առավ նրա Յոտապե աղջկանն իբրև կին Աղեքսանդրին ու նաև զինվորական դրոշները, որոնք գրավված էին Ստատիանոսի հետ ճակատամարտում։ Այսպ Անտոնիոսը, ինչպես ասում են, շնորհեց Պոլեմոնին Փոքր Հայքը, իսկ

---

[1] Տե՛ս Cass. Dio, XLIX, 33, 2. Տարնը Դիոնի այս վկայությունը համարում է սխալ և ենթադրում է, որ Պոլեմոնը Փոքր Հայքը ստացել էր Անտոնիոսից Պոնտոսի հետ միասին 37/36 թվի ձմեռը։ Տարնի այս կարծիքն ավելի քան վիճելի է. տե՛ս Turn, Cambridge Ancient History, vol. X, էջ 70։

[2] Համեմատե Халатьянц, Очерк истории Армении, М., 1910, էջ 242։

միաժամանակ Լուկիոս Կլուույոսին, որն իր հետ էր, հյուպատոս նշանակելով և եա թողնելով՝ ինքը շտապեց գնալ Յոնիա և Հունաստան պատերազմելու Կեսարի [Օկտավիանոսի]դեմ։ Եվ Մեդացին, օգտվելով դաշնակից հռոմայեցիներից՝ սկզբում հաղթեց պարթևներին ու Արտաշեսին, որոնք հարձակվել էին իր վրա, բայց երբ Անտոնիոսն իր զորքերը ետ կանչեց և պահեց, բացի այդ, մոտը և նրա զորքերը՝ նա պարտվեց և գերի ընկավ. և այսպիսով Հայաստանը Մեդիայի հետ միասին կորսվեց»[1]։

32 թվին (մեր թվ. առաջ) հռոմեական ծերակույտը Օկտավիանոսի առաջնորդությամբ զրկեց Անտոնիոսին բոլոր լիազորություններից և հայտարարեց հայրենիքի թշնամի։ Այնուհետև 31 թվի աշնանը երկու ախոյանի միջև տեղի ունեցավ Ակտիումի մոտ՝ Հունաստանում վճռական ճակատամարտ, որի հենց սկզբում Եգիպտոս փախավ նախ Կլեոպատրան ու ապա նաև նրա սիրեկանը։ Իսկ Անտոնիոսի զորքը, մնալով առանց առաջնորդի՝ անձնատուր եղավ Օկտավիանոսին։

Վերադառնալով Աղեքսանդրիա՝ Կլեոպատրան, որպեսզի հաստատուն դարձնե դաշինքը Արտավազդ Մեդացու հետ՝ գլխատել տվեց հայոց Արտավազդ թագավորին և գլուխը ուղարկեց Ատրպատականի թագավորին։ Սակայն Կլեոպատրայի հաշիվները և հույսերը ի դերև ելան։ 30 թվին (մեր թվ. ա.) և ինքը Կլեոպատրան և Անտոնիոսը ինքնասպանություն գործեցին, և Եգիպտոսը, որը գրավել էր Օկտավիանոսը՝ դառավ հռոմեական նահանգ։

Անտոնիոսի մահից հետո երկապետությունը վերացավ և այնուհետև Օկտավիանոսն իշխեց միանձնաբար։ Հռոմեական հանրապետությունը վերջնականապես կործանվեց և նրան փոխարինեց Հռոմեական կայսրությունը։ Իսկ Հայաստանում Արտավազդ Բ-ի որդին, Արտաշես Բ-ը, ինչպես կտեսնենք, վերականգնեց Արտաշեսյան թագավորական տոհմի իշխանությունը։

Արտավազդ Բ-ի թագավորության ընթացքում Հայաստանը ենթարկված էր մահացու վտանգի։ Դամոկլյան սուրը, սպառնում էր հայ ժողովրդի քաղաքական ինքնուրույն գոյությանը։ Հռոմը, որ անչափ ընդարձակել էր իր տիրապետությունը թե Արևմուտքում և թե Արևելքում՝ այս ժամանակաշրջանում անզուսպ ձգտում ուներ նվաճելու ամբողջ Առաջավոր Ասիան և վերստեղծելու Աղեքսանդր Մակեդոնացու համաշխարհային արևելյան մեծ պետությունը։ Եթե Կրասսոսի և Անտոնիոսի պարթևական արշավանք-

[1] Տե՛ս Cass. Dio, XLIX, 44, 1—4.

ները հաջողությամբ պսակվեին՝ Հայաստանը կկորցներ, անշուշտ, քաղաքական իր ինքնուրույնությունը և կմիացվեր, հավանորեն, ինչպես Արևմուտքում Իսպանիան ու Գալլիան, Հռոմեական պետությանը՝ իբրև հռոմեական նահանգ։ Այդ դեպքում հայ ժողովուրդը, ինչպես Պոնտոսի ու Փոքր Ասիայի հարևան ժողովուրդները՝ կկորցներ նաև իր կուլտուրական ինքնուրույնությունը և իր լեզուն։

Հայերի քաղաքական ինքնուրույնությունը փրկվեց ու պաշտպանվեց հաջորդ դարերում, ինչպես և գերմանացիները՝ Արևմուտքում, գլխավորապես, այն պատճառով, որ հռոմայեցիները պարտություն կրեցին, Եփրատ և Հենոս գետերի մոտերքում և դարեր շարունակ կաշկանդված մնացին այս գետերին։

Արտավազդ Բ-ի թագավորության քաղաքական անցքերը լուսաբանելիս պետք է ըստ իս աչքի առաջ ունենալ այն վտանգավոր կացությունը, որի մեջ գտնվում էր Հայաստանն այս ժամանակաշրջանում։

Գտնվելով պայքարող երկու հարևանների միջև՝ Արտավազդ Բ-ը չէր ուզեցել լինել անխոս կամակատարն իր հարևանների և աշխատել էր վարել ինքնուրույն ու անկախ քաղաքականություն, ի նկատի ունենալով իր սեփական երկրի ու ժողովրդի շահերը։ Կրասսոսի պարթևական արշավանքի ժամանակ նա չհամաձայնեց հլու սպասավորը լինել հռոմեական շահերի, այլ իր պարտքը համարեց պաշտպանել թշնամուց, նախ և առաջ, իր պետության անվտանգությունը։ Արտավազդ Բ-ի քաղաքական վարքագիծը զուսպ էր և վերապահ նաև Անտոնիոսի պարթևական արշավանքի ժամանակ, որն առանձին ոգևորություն չէր կարող ներշնչել ո՛չ նրան, ո՛չ էլ նրա զորքին։ Ինչպես հայտնի է, Անտոնիոսը պարթևական իր արշավանքից առաջ, Կանիդիոս Կրասսոսի անդրկովկասյան հաղթություններից հետո, կտրել էր տվել դրամ, որի վրա դրոշմված էր հայկական խույրը՝ ի նշան Հայաստանի ընկճման ու հպատակեցման[1]։

Արտավազդ Բ-ը, որի ժամանակ դեռ կենդանի էին Տիգրանյան Հայաստանի հզորության հիշողությունները, աշխատել էր, ըստ երևույթին, Հայաստանի գերիշխանությանը ենթարկել հարևան փոքր պետությունները։ Աղբյուրների ակնարկներից կարելի է ըստ իս կռահել, որ 40—38 թվերի (մեր թվ. ա.) պարթևական-հայկական հաղթական պատերազմների ժամանակ նա, հավանորեն, միացրած է եղել Մեծ Հայաստանին Փոքր Հայքը ու թերևս

[1] Տե՛ս Tarn, The Cambridge Ancient History, vol. X, էջ 72։

նաև Մոփքը։ Նա ձգտել է ենթարկել իր գերիշխանությանը նաև Հարևան Ատրպատականի թագավորին։ Նա շարունակել էր կիրարկել իր Հոր տնտեսական քաղաքականությունը, և Ասորիքից ու Հրեաստանից Հայաստանի քաղաքներն էր գաղթեցրել առևտրականներ, արՀեստավորներ և այլ որակյալ աշխատավորներ։

Հելլենական կրթություն ստացած այս լուսամիտ թագավորը, որը Մեծն Տիգրանի Հաջորդն էր, ինչպես տեսնում ենք, պատմական խոշոր անձնավորություն է։ Սակայն Արտաշեսյան տոՀմի նշանավոր այս դեմքը, ինչպես և սրա Հայր Տիգրան Բ-ը, խեղաթյուրված ու նվաստացված է պատմագիտական նոր երկերում։ Տիգրան Մեծի դեմքը, ինչպես ցույց եմ տվել իմ «Տիգրան Բ. և Հռոմը» աշխատության մեջ, չարամիտ կերպով աղավաղված է Պլուտարքոսի մոտ, իսկ Արտավազդինը՝ անՀանդուրժելի կերպով այլանդակված է թյուրիմացաբար Խորենացու Պատմության մեջ, որի ազդեցության տակ են գտնվում Հայ պատմաբաններից շատերը։

Արտավազդ Բ-ի սխալ բնութագիրը, որ ծաղրանկարային ձևով պատկերել է Մովսես Խորենացին, ու նաև պատմաՀոր մյուս կարևոր վկայությունները սրա մասին՝ ավելորդ չեմ Համարում մեջ բերել այստեղ ընդարձակ բովանդակությամբ։

1. Խորենացի, II, գլ. ԻԲ, էջ 137 (Տփղիս 1913)՝

«Բայց ուրիշ ո՛չ մի արության և քաջության գործ ցույց չտվեց [Արտավազդը], այլ անձնատուր էր լինում ուտելխմելու, շրջում էր ու թափառում ճաՀճոտ տեղերում, եղեգնուտներում և քարափներում, վայրի էշեր ու վարազներ որսալով։ Անփույթ լինելով դեպի իմաստությունը, քաջությունը և բարի Հիշատակ թողնելը՝ նա իսկապես ծառա և ստրուկ է դառել որովայնի և մեծացնում էր աղբանոցները։ Սա, Հանդիմանվելով իր զորքերից խիստ ծուլության և սաստիկ որկրամոլության Համար, մանավանդ որ Անտոնիոսը նրանից առել էր Միջագետքը՝ զայրացած Հրաման տվեց Ատրպատական նաՀանգից Հավաքել տասնյակ Հազարավոր զորքեր ու Հավաքել նաև Կովկաս լեռան բնակիչներին աղվանների ու վրացիների Հետ և գնաց իջավ Միջագետք և Հալածեց Հռոմայեցիների զորքերը»։

[«Բայց այլ ոչ ինչ գործ արութեան և քաջութեան եցոյց. այլ ուտելեաց և ըմպելեաց պարապեալ, մօրից և եղեգնապուրակաց թափառեալ շրջէր և առապարաց, զիշավայրիս և զխոզս արածելով. զիմաստութենէ և զքաջութենէ և զբարի յիշատակաց անփոյթ արարեալ, ծառայ և ստրուկ որովայնի

արդարև լինելով՝ զաղբիւս մեծացուցանէր։ Սա բարբելով յիւրոց զօրացն վասն առաւել պղերգութեանն և սաստիկ որկրամոլութեանն, մանավանդ զի և զՄիջագետս Անտոնիոսի հանեալ էր ի նմանէ, զայրացեալ՝ հրաման տայր զօր յարուցանել զբիւրաւորս Ատրպատական նահանգին և զբնակիչս լերինն Կաւկասու հանդերձ Աղուանիւք և Վրօք. խաղայ իջանէ ի Միջագետս, և հալածականս առնէ զզօրս Հռոմայեցւոց»]։

2. Խորենացի, II, գլ. ԻԳ, էջ 138՝

«Առյուծի նման գազանաբար մռնչաց Անտոնիոսը, ավելի ևս գրգռվելով Կլեոպատրայից, որովհետև սա քեն էր պահում իր մամի՝ Տիգրանից կրած չարչարանքների համար։ Եվ ոչ միայն հայերին էր նա մահ բերում, այլև ուրիշ շատ թագավորներին, որպեսզի տիրե նրանց իշխանություններին։ Ուստի և Անտոնիոսը, շատ թագավորներ սպանելով՝ նրանց իշխանությունը հանձնում է Կլեոպատրային, բացի Տյուրոսից և Սիդոնից ու այն երկրներից, որոնք գտնվում էին Ազատ գետի մոտ։ Եվ վերցնելով բազմաթիվ զորքեր՝ նա դիմում է Արտավազդի վրա և, անցնելով Միջագետքի միջով՝ սաստիկ ջարդում է հայկական զորքերը և նրանց թագավորին ձերբակալում է։ Եվ վերադառնալով Եգիպտոս՝ նա Կլեոպատրային է պարգևում Տիգրանի որդուն, Արտավազդին, պատերազմի կողոպուտից ստացած ուրիշ շատ ավարի հետ»։

[«Մռնչեալ առիւծաբար գազանութեամբ Անտոնիոս, առավել ևս թունեալ ի Կղէոպատրայ, քանզի քէն պահէր վասն լլկանաց իւրոյ հանոյն, որ ի Տիգրանայ. և ոչ միայն Հայոց, այլ բազմաց այլոց թագաւորաց լինէր մահաբեր, զի նոցա յոցն տիրեսցէ իշխանութեանց։ Սակս որոյ բազում թագաւորս սպանեալ Անտոնիոս՝ ի Կղէոպատրայ հաւատայ զնոցա իշխանութիւնս, բայց ի Տիւրոսէ և ի Սիդովնէ, և որ միանգամ ընդ Ազատ գետովն էին։ Եւ առեալ զբազմութիւն զօրացն՝ դիմէ ի վերայ Արտաւազդայ. և անցեալ ընդ Միջագետս՝ կոտորէ անհնարին զզօրս Հայոց և ձերբակալ առնէ զարքայն նոցա։ Եւ դարձեալ յԵգիպտոս՝ պարգևէ Կղէոպատրայ զԱրտաւազդ որդի Տիգրանայ, հանդերձ բազում ընչիւք յանկածէ պատերազմին»]։

Խորենացու հաղորդած այս տեղեկությունների Արտավազդ Բ-ի մասին քննության են առնված Խալաթյանցի «Հայ Արշակունիները» աշխատության մեջ[1]։ Տիգրան Բ-ի որդու պատմության համար

[1] Տե՛ս Халатьянц, Армянские Аршакиды, М., 1903, էջ 67—68։

Խորենացու միակ աղբյուրը, ինչպես շատ ճիշտ դիտել է Խալաթյանցը, եբրայեցի հին պատմագիր Հովսեպոս Փլավիոսն է, որն իր «Հնախոսության» մեջ (XV, 4, 3) վկայում է, որ Անտոնիոսը, տիրելով Հայաստանին՝ Արտավազդին շղթայել էր և որդիների, մեծամեծների ու Հայաստանում կողոպտված հարստությունների հետ ուղարկել էր Եգիպտոս և ընծայել էր Կլեոպատրային։

Այս մեծ աղետը Խորենացին վերագրում է, բնականաբար, Արտավազդ Բ-ի թուլության, ուստի և, համարելով նրան պարսավանքի արժանի, համաձայն իր սովորության, ճարտասանորեն սարքել է ինքն Արտավազդի վերոհիշյալ բացասական բնութագիրը, որը, ինչպես տեսանք, չէ համապատասխանում պատմական իրողության։ Բոլորովին անհիմն է, ինչպես ցույց է տվել Խալաթյանցը[1], նաև Խորենացու ենթադրությունը, որ իբր թե Կլեոպատրան հայերի դեմ քեն էր պահում իր մամի կրած չարչարանքների համար։

Իրապես, Ասորիքի Կլեոպատրա-Սելենի թագուհին, որը Տիգրան Բ-ի հրամանով սպանվել էր 69 կամ 68 թվին (մեր թվ. ա.)՝ մայրն էր ո՛չ թե Եգիպտոսի թագուհի Կլեոպատրայի հոր՝ Պտոլեմեոս Դիոնիսոսի, այլ Անտիոքոս Դիոնիսոսի[2]։

Արտավազդ Բ-ի վերոհիշյալ սխալ բնութագիրը, որը Խորենացու ազդեցությամբ սովորաբար մեջ է բերվում պատմագիտական հայ երկերում՝ պետք է, իհարկե, անվերապահ կերպով մերժվի, որովհետև այդ, ինչպես տեսնում ենք, հնարովի հերյուրանք է, որ չունի պատմական արժեք։

---

[1] Նույնը, էջ 68։

[2] Տե՛ս *Gutschmid,* Ueber die Glaubwürdigkeit der Armenischen Geschichte des Moses von Khoren, Berichte über d. Verhandlungen d. Königl. Sächs. Gesellschaft der Wissenschaften, 1876, էջ 24։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

# ԱՐՏԱՇԵՍ Բ-Ի ԵՎ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ՀԱՄԱՌ ՊԱՅՔԱՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**1. Արտաշես Բ-ի գահակալությունը և հռոմայեցիների կոտորածը Հայաստանում.—Արտաշես Բ-ը Հայաստանի և Ատրպատականի թագավոր:—2. Օկտավիանոսն Ասորիքում և պարթևա-հայկական խնդրի լուծման հետաձգումը:—3. Հայաստանի քաղաքական անկախության վերականգնումը.—Արտաշես Բ-ի հարաբերությունը Հռոմի հետ:—4 Օգոստոսի արտաքին քաղաքականության բնույթը.—անկախ Հայաստանի օղակումը Հռոմի ազդեցության տակ գտնվող պետություններով:—5. Հռոմի արևելյան քաղաքականության կենդանացումը.—Օգոստոսի և Տիբերիոսի գալը Արևելք.—արծվեկիր դրոշների և գերիների հանձնումը հռոմայեցիներին:—6. Արտաշես Բ-ի սպանությունը և Հռոմի գերիշխանության ճանաչումը Տիգրան Գ-ի կողմից.—Ատրպատականի անջատումը Հայաստանից.—Հայաստանի հպատակեցման հիշատակումները հռոմեական բանաստեղծների երկերում.—Հաղթանակի առթիվ կտրված դրամները:—7. Հակահռոմեական կուսակցությունը Հայաստանում և նրա պարթևական կողմնորոշման պատճառները:—8. Հայերի հակահռոմեական քաղաքականությունը Տիգրան Դ-ի թագավորության ժամանակ.—պարթևների բարեկամությունը Հռոմի հետ.—Հայաստանը դեռևս հզոր պետություն:—9. Արտավազդ Գ-ի կարճատև թագավորությունը և Տիգրան Դ-ի վերահաստատումը գահի վրա.—Կայոս Կեսարը Արևելքում.—պարթևների հաշտությունը Կայոսի հետ.—Տիգրան Դ-ի մահը.—10. Հռոմայեցիների նշանակած թագավորները՝ Արիոբարզանը, Արտավազդ Դ-ը և Տիգրան Ե-ը:—11. Էրատո և անտերնչությունը Հայաստանում:—12. Օգոստոսի քաղաքականության ձախողումը:**

*Օկտավիանոսի դեմ պատերազմի նախապատրաստվելիս՝ Անտոնիոսն իր հետ Արևելքից Հունաստան էր տարել ո՛չ միայն հռոմեական զորքերի մեծագույն մասը, այլև իր դաշնակից Արտավազդ Մեծացու հեծելազորը։*

*Օգտվելով այս հանգամանքից՝ Արտավազդ Բ-ի անդրանիկ որդին՝*[1] *Արտաշեսը, որը 34 թվին (մեր թվ. առաջ) ապաստանել*

[1] *Տե՛ս Jos. Flav.*, Ant. Jud., XV, 4, 3.

էր, ինչպես ասացինք, Հրահատ Դ-ի մոտ՝ պարթևների օգնությամբ հաղթեց Ատրպատականի Արտավազդ թագավորին և, նվաճելով իր հայրենի թագավորությունը՝ վերահաստատվեց Հայաստանի գահի վրա (30 մեր թվ. առաջ)։ Դեպի հռոմայեցիներն Արտաշես Բ-ը լցված էր, բնականաբար, կատաղի ատելությամբ իր հոր եղեռնական սպանության պատճառով։ Ուստի և, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը՝[1] իր անմեղ հոր կալանավորման ու գլխատման համար նա վրեժ առավ և կոտորել տվեց բոլոր հռոմայեցիներին, որոնք մնացել էին Հայաստանում։

Մոմզենը, ինչպես և Տուրնեբիզը, Բասմաջյանը և ուրիշները, ենթադրում են, որ 30 թվին (մեր թվ. առաջ) Արտաշես Բ-ը թագավոր էր հայտարարվել ո՛չ միայն Հայաստանի, այլ նաև Ատրպատականի։

> «Բայց երբ Կեսարի [Օկտավիանոսի] դեմ պատերազմի ընթացքում,—ասում է Մոմզենը,—իր զորքերն Անտոնիոսն այնտեղից [Արևելքից] կանչեց՝ պարթևները հաղթող հանդիսացան, պարտության մատնեցին մեդացիներին և Մեդիայում, ինչպես նաև Հայաստանում, թագավոր դրին Արտաշեսին, որը քինախնդիր լինելով իր հոր գլխատման համար՝ հրամայեց բռնել ու սպանել երկրի մեջ ցրված բոլոր հռոմայեցիներին»[2]։

Արտաշես Բ-ն այնուհետև թագավորեց (30—20 թ. մեր թվ. առաջ) անկախ Հռոմից, որի գերիշխանությունն այլևս չէր տարածվում ո՛չ Հայաստանի, ո՛չ էլ Ատրպատականի վրա։

Հենց նույն այս 30 թվին (մեր թվ. ա.), երբ Արտաշես Բ-ը վերստին հաստատվել էր իր հոր գահի վրա՝ Օկտավիանոսը, Եգիպտոսը նվաճելուց հետո, եկավ Ասորիք կարգավորելու համար հռոմեական Ասիայի գործերը։ Քաղաքացիական մեծ կռիվներից հետո նա ուներ իր տրամադրության տակ զինվորական խոշոր ուժեր։ Կարելի է ենթադրել, որ նա անմիջապես հարձակման կանցնե պարթևների ու հայերի դեմ, վրեժ կառնե Արտաշես Բ-ից հռոմայեցիների կոտորածի համար և կվերականգնե Հայաստանում Հռոմի հեղինակությունն ու գերիշխանությունը։

Բայց, իրապես, Օկտավիանոսը, որը հետևող էր Պոմպեյոսի խոհեմ քաղաքականության և գործում էր զգուշաբար առանց

---

[1] Տե՛ս Cass. Dio, LI. 16, 2:

[2] Տե՛ս Mommsen, Römische Geschichte, Bd. V. Berlin, 1886 էջ 369. Tournebize, Histoire politicue et religieuse de l'Arménie, էջ 781. Բասմաջյան, Եսկական պատմություն Հայոց, Պոլիս, 1914, էջ 169 և ուրիշ.։

ոսկի՝ խույս տվեց պատերազմից պարթևների և հայերի միացյալ ուժերի դեմ և ավելի կարևոր համարեց վերակազմել նախ Հռոմեական հանրապետությունը որպես միապետություն ու ամրացնել միանձնյա իր իշխանությունը։ Պարթևական և հայկական խնդիրների լուծումը նա պետք է հետաձգեր նաև այն պատճառով, որովհետև արյունահեղ ու բազմամյա քաղաքացիական կռիվների սարսափներից ու ծանր զրկանքներից հետո հռոմեական հասարակությունը և, մանավանդ, զորքը ծանր ստրճան հոգնել էին և խաղաղության ու հանգստի պահանջը խիստ մեծ էր ու ընդհանուր։

Ապահովելու համար Հռոմի արևելյան սահմանները՝ Օկտավիանոսը դիմեց նենգ ու խարդավանական միջոցների։ Նա օգտվեց ներքին երկպառակություններից պարթևական թագավորության մեջ և ապաստան տվեց Ասորիքում պարթևական գահի թեկնածու Արշակունի Տրդատին, որը պարտություն էր կրել Հրահատ Դ-ից և փախել էր իր մոտ։ Հովանավորելով Տրդատին՝ նա սաստման ու սպառնալիքի տակ էր պահում Հրահատ Դ-ին։

Գերությունից փախել և Օկտավիանոսի մոտ էր ապաստարվել նաև Ատրպատականի Արտավազդ թագավորը, որին նա սիրալիր կերպով ընդունել տվեց Փոքր Հայքի իշխանությունը, վերցնելով այս շրջանը Պոնտոսի Պոլեմոն թագավորից։ Հռոմի այս նոր դաշնակիցը, որն Արտաշես Բ-ի ոխերիմ ու կատաղի թշնամին էր՝ պաշտպանն էր լինելու հռոմեական սահմանների ընդդեմ Մեծ Հայաստանի թագավորի, որը թշնամաբար էր տրամադրված դեպի հռոմայեցիները։

Գարագաշյանը, Բրյուսովը և ուրիշ պատմագետներ ենթադրում են[1], որ Արտաշես Բ-ը ձևականորեն ճանաչել էր Հռոմի գերիշխանությունը և խաղաղության դաշն էր կնքել Օկտավիանոսի հետ 29 թվին մեր թվականությունից առաջ։ Այս ենթադրությունը ճիշտ չէ։

Արտաշես Բ-ը, ինչպես երևում է հռոմեական աղբյուրների և, գլխավորապես, Տակիտոսի վկայությունից՝ չուներ որևէ կախում Հռոմից և կատարելապես վերականգնել էր Հայաստանի քաղաքական նախկին անկախությունը, որ ունեցել էր Հայկական թագավորությունը Տիգրան Մեծի ու նրա նախորդների ժամանակ։

«Սրա [Արտավազդ Բ-ի] որդին՝ Արտաշեսը,—ասում է Տակիտոսը,—որն իր հոր հետ կապ ունեցող հիշողության

[1] Տե՛ս Գարագաշյան, «Քննական պատմութիւն Հայոց», Բ., էջ 185, *Брюсов*, Летопись исторических судеб армянского народа, Ереван, 1940, էջ 28. *Халатьянц*, Очерк истории Армении, էջ 246 և ուրիշները։

պատճառով մեզ [հռոմայեցիներիս] թշնամացած էր՝ պաշտպանեց և իր անձը և իր թագավորությունը Արշակունիների ուժով»[1]։

Հայաստանի ազատագրումը հռոմեական պրոտեկտորատից, նրա դաշնակցությունը պարթևների հետ, ինչպես և հռոմայեցիների կոտորածն Արտաշես Բ-ի հրամանով՝ վարկաբեկում էին, բնականաբար, Հռոմեական պետության հեղինակությունն արևելյան երկրներում։ Այս դրությունը, իհարկե, չէր կարող Օկտավիանոսը հանդուրժելի համարել։ Սակայն նա, որպեսզի իր զորքի ու ժողովրդի խիստ տենչացած խաղաղությունն ապահոված լինի՝ Հայաստանի հանդեպ առժամանակ վարեց խաղաղ քաղաքականություն։

Ըստ երևույթին, Հայաստանի և Հռոմի միջև դիպլոմատիկական հարաբերությունները վերանորոգված են եղել արդեն այս ժամանակաշրջանում։ Կասսիուս Դիոնի ուշագրավ մի վկայությունից հայտնի է[2], որ 29 թվին (մեր թվ. առաջ) Արտաշես Բ-ը բանակցություններ էր վարել Օկտավիանոսի հետ և խնդրել էր նրանից ուղարկել Հայաստան գերի վերցրած Տիգրան ու Արտավազդ իր եղբայրներին, որոնք 30 թվին Օկտավիանոսի կարգադրությամբ տարվել էին Եգիպտոսից Հռոմ։ Օկտավիանոսը մերժել էր այս խնդիրքը, առարկելով որ Արտաշես Բ-ը կոտորել է տվել բոլոր հռոմայեցիներին, որոնք մնացել էին Հայաստանում։

Այս պատասխանից դժվար չէր կռահել, որ Հռոմը մոտ ապագայում աշխատելու է վրեժ առնել Հայոց թագավորից։

29/28 թվերին (մեր թվ. առաջ) Հռոմեական միապետության և Օկտավիանոսի միանձնյա իշխանության հաստատումը հիմնականում ավարտվել էր և 27 թվի հունվար ամսին հռոմեական ծերակույտի հանդիսավոր նիստում կառավարչական բարձրագույն այս հիմնարկի կողմից Օկտավիանոսը ստացավ Օգոստոս (Augustus «սրբազան») պատվատիտղոսը։ Այնուհետև արտաքին քաղաքականության, պատերազմ հայտարարելու և խաղաղություն ու դաշնագիր կնքելու իրավասությունը պատկանում էր միմիայն Օկտավիանոսին, որը 27 թվից սկսած անվանվում էր Օգոստոս։

Եվրոպական պատմագետները սովորաբար ենթադրում են, որ Օգոստոսի արևելյան քաղաքականությունը Յուլիոս Կեսարի և Անտոնիոսի քաղաքականությունից տարբերվել է, գլխավորապես, նրանով, որ այս հեռատես ու ողջամիտ միապետը հրաժարվել էր

---

[1] *Tacitus,* Annales, 2, 3.

[2] *Տե՛ս Cass. Dio,* LI, 16, 2.

ագրեսիայից ու նվաճումներից Արևելքում և, ընդունելով Հռոմեական կայսրությունն իբրև Միջերկրական ծովային պետություն՝ նրա բնական սահմանը համարել էր Եփրատ գետը[1]։ Ինձ թվում է, որ այս եզրակացության հետ դժվար է համաձայնել անվերապահ կերպով։ Հռոմի նվաճողական առաջխաղացումն Արևելքում Օգոստոսի ժամանակ կանգ էր առել ո՛չ այն պատճառով, որ նա սկզբունքորեն հակառակ էր իր նախորդների քաղաքականության, այլ որոշ իրենից անկախ օբյեկտիվ պատճառներով։ Նրա խաղաղասեր քաղաքականությունը միմիայն ժամանակավոր ու ակամա նահանջ էր, որ բնավ չէր նշանակում սկզբունքային փոփոխում Հռոմի աշխարհակալական քաղաքականության[2]։

Օգոստոսը, որն Արևելքում հռոմեական սուրը հարկադրված էր պահել պատյանում՝ աշխատեց Արտաշեսյան Հայաստանը և պարթևական թագավորությունն ենթարկել Հռոմի գերիշխանությանըն ու ազդեցությանը ո՛չ թե զենքի ուժով, այլ հռոմեական մարզված ու փորձված դիպլոմատիայի միջոցով։

Արևելյան երկու այս անկախ թագավորությունները, որոնք գտնվում էին ֆեոդալիզմի կազմակերպման շրջանում՝ թույլ էին, ինչպես հայտնի է, շնորհիվ ներքին երկպառակությունների ու ապստամբությունների։ Ուստի և հռոմեական դիպլոմատիան եռուն ու թաքուն աշխատանք սկսեց այս երկրներում, կազմակերպեց և ուժեղացրեց նրանց մեջ հռոմեասեր կուսակցությունը և աշխատեց նրանց թուլացնել ու քայքայել ներքուստ։

Օգոստոսն առաջին հերթին նպատակ դրեց իրեն, նախ վերացնել Հայաստանի անկախությունը, որովհետև այս երկիրն ուներ ռազմական ու ստրատեգիական մեծ կարևորություն։ Ուստի և հռոմեական դիպլոմատիան սկսեց առանձին եռանդով նախապատրաստել հայկական հարցի լուծումը։

Դեռևս Լուկուլլոսի և Պոմպեյոսի արշավանքների ժամանակ Հռոմը համոզվել էր, որ Հայաստանին դաշնակից են ու բարեկամ և նրա հետ սերտ կապված են Անդրկովկասի մյուս ժողովուրդները, գլխավորապես իբերներն ու աղվանները։ Նա գիտեր, որ Հայաստանը թուլացնելու ու նվաճելու համար հարկավոր է չեզոքացնել կամ հռոմեական ազդեցությանն ենթարկել ամբողջ հյուսիսային

[1] Տե՛ս J. G. C. Anderson, The Cambridge Ancient History, vol. X, 1934, էջ 256—7. *Mommsen*, Römische Geschichte, Bd. V, էջ 371 և ուրիշները։

[2] Համեմատե Histoire Générale Գլոցի. Histoire Romaine, T. III, Le Haut Empire par *Léon Homo*, Paris, 1933, էջ 75։

Անդրկովկասը մինչև Կովկասյան լեռները և մինչև Կասպից ծովի արևմտյան ափերը։

Ըմբռնելով Հայաստանի հյուսիսային և արևմտյան թիկունքների մեծ կարևորությունը՝ Օգոստոսը ո՛չ միայն ոտքի հանեց Հռոմի կողմնակիցներին Հայաստանի ներսում, այլև աշխատեց բարեկամություն հաստատել իբերների և աղվանների հետ։ Նա աշխատեց հետզհետե օղակել անկախ Հայաստանը Հռոմի ազդեցության տակ գտնվող պետություններով։ Հենց այս նպատակով, ինչպես վերև տեսանք, նա տվել էր Փոքր Հայքի իշխանությունն Արտավազդ Մեդացուն։ Հայտնի է նույնպես, որ Պոլեմոնը, որն Օգոստոսի կողմից վերահաստատվել էր իբրև Պոնտոսի թագավոր և որը բացի Պոնտոսից իշխում էր նաև Հայաստանի հարևան Կողքիսում՝ աչալուրջ նեցուկն էր դառել հռոմեական քաղաքականության՝ Անդրկովկասում։ Արտաշես Բ-ին մեկուսացնելու համար Օգոստոսը կարգադրել էր նմանապես վերանորոգել հին պայմանագրերն իբերների ու աղվանների հետ։

Հռոմեական դիպլոմատիայի նախապատրաստական աշխատանքներից հետո Օգոստոսի արևելյան քաղաքականությունն ընդունեց ավելի համարձակ բնույթ։

26—25 թվերին մեր թվականությունից առաջ պարթևական գահի թեկնածու Տրդատը, հավանորեն, Հռոմի թելադրանքով, նոր փորձ արեց գահընկեց անելու Հրահատ Դ-ին, սակայն անհաջողություն կրելով՝ եկավ նորից Ասորիք, իր հետ բերելով պարթևների թագավորի փոքր որդուն, Հրահատակին, որին գողացել էին ու գերել։ Գերված երեխան Հռոմի ձեռին դառավ միջոց շահավետ սակարկության։Օգոստոսն ետ ուղարկեց Հրահատակին, և Հրահատ Դ-ը խոստացավ վերադարձնել հռոմայեցիներին արծվակիր դրոշներն ու գերիներին, որ պարթևները վերցրել էին Կրասսոսի պարտության ժամանակ։

Բայց որովհետև պարթևների թագավորն իր խոստումը չէր կատարում՝ Օգոստոսը որոշեց, որ պետք է ճնշում գործ դնել պարթևների վրա և, դիմելով կտրուկ միջոցների՝ պետք է միաժամանակ կարգավորել նաև հայկական հարցը։

20 թվին մեր թվականությունից առաջ Օգոստոսը եկավ Ասորիք և իր որդեգիր Տիբերիոս Կլավդիոս Ներոնին, որն այդ ժամանակ 21 տարեկան էր, մեծ զորքով ուղարկեց Հայաստան և հրամայեց գահընկեց անել Արտաշես Բ-ին և թագավոր պսակել նրա եղբայր Տիգրանին, որը, ինչպես տեսանք, Աղեքսանդրիայից տարվել էր Հռոմ և պահվում էր այնտեղ իբրև պատանդ։ Հռոմեական դիպլո-

մատիայի ետևն այժմ կանգնած էր հռոմեական հզոր բանակը, բայց Օգոստոս այժմ ևս ձգտում էր խույս տալ պատերազմից և աշխատում էր կարգավորել հռոմեական պահանջները խաղաղ ճանապարհով, առանց արյունահեղության։

Օգոստոսի գալն Ասորիք և Տիբերիոսի զորաբանակի առաջշարժումը դեպի Արևելք, որ նախազգուշացումն էր ու ռազմական մեծ ցույց՝ Հրահատ Դ-ի վրա թողին խոր տպավորություն։ Պարթևների թագավորը, վախենալով որ կարող է հարձակման ենթարկվել հռոմայեցիների ու միաժամանակ նաև գահի թեկնածու Տրդատի կողմից՝ որոշեց կատարել Օգոստոսի պահանջը և 20 թվի մայիսի 12-ին հանձնեց հռոմայեցիներին պարթևների վերցրած վերոհիշյալ արծվեկիր դրոշները և գերիներին։

Պարթևների հետ համաձայնությունը հեշտացրեց Տիբերիոսին տրված հանձնարարության իրագործումը։ Հռոմեական զորքի հարձակման սպառնալիքն առաջ բերեց Հայաստանում ներքին երկպառակություններ։ Հռոմեական կուսակցությունը, որն այժմ այստեղ գերակշռություն ստացավ՝ պատգամավորություն ուղարկեց Օգոստոսի մոտ և խնդրեց Արտաշես Բ-ի տեղ թագավորեցնել Տիգրանին։ Հռոմեական զորքը Հայաստան դեռ չհասած՝ Արտաշես Բ-ը դավաճանությամբ սպանվեց իր ազգակիցների կողմից[1], հավանորեն, հռոմայեցիների դրդումով, գուցե և ոսկով։ Տիբերիոսն այնուհետև առանց դիմադրության հանդիպելու մտավ Հայաստան և հանդիսավոր կերպով թագ դրեց իր լեգեոնների ներկայությամբ Արտաշես Բ-ի փոքր եղբայր Տիգրան Գ-ի գլխին[2] (20 թվին մեր թվ. առաջ)։

Այսպիսով Հռոմեական կայսրությունը հասավ իր նպատակին առանց պատերազմի, և Հայաստանը, կորցնելով իր անկախությունը՝ ընկավ նրա ազդեցության շրջանակի մեջ և ճանաչեց նորից Հռոմի գերիշխանությունը։

Հայաստանի անկախության վերացումից հետո՝ նոր լուծում ստացավ Ատրպատականի խնդիրը, որը, ինչպես տեսանք, գտնվում էր Արտաշես Բ-ի իշխանության տակ։ Այս երկիրը քաղաքականապես Հայաստանից անջատվեց, և Օգոստոսը, ինչպես նա վկայում է իր Կտակի մեջ՝ տվեց Ատրպատականին իբրև թագավոր Փոքր

---

[1] Ըստ Հովսեպոսի վկայության (Ant Jud., XV, 4, 3)՝ Արտաշես Բ-ին վտարել էին Կապպադովկիայի թագավոր Արքելայոսը և Տիբերիոսը։

[2] Տե՛ս Res Gestae, 25—28. *Cass. Dio,* LIV, 94—5. *Tac.,* Annales, II, 3, *Svetonius,* Tiberius, IX, I. *Strabo,* XVII, 1, 54 (821) և ուրիշ.։

Հայքի իշխան Արտավազդ Մեդացու որդուն, Արիոբարզանին[1], որը, ինչպես և Տիգրան Գ-ը, ստացել էր հռոմեական կրթություն։

Օգոստոսն իր Կտակի մեջ առանձնապես շեշտում է, որ Արտաշես Բ-ի սպանությունից հետո Հայաստանը նա կարող էր դարձնել հռոմեական նահանգ, սակայն չկամեցավ այդ անել և, իր նախնիքների օրինակին հետևելով՝ տվեց հայերին թագավոր[2]։ Այս պարծենկոտ հայտարարությունն արված է, անշուշտ, հռոմեական հասարակությունը բավարարելու և ոգևորելու համար։ Բայց, իրապես, Հայաստանը դժվար էր կցել որպես նահանգ Հռոմեական կայսրությանը, որովհետև այդ դեպքում հայ ազնվականությունն ու ժողովուրդը ցույց կտային համառ ու կատաղի դիմադրություն, և Օգոստոսը ստիպված կլիներ ավելացնելու մեծ չափերով հռոմեական զորքերի քանակն Արևելքում ու նաև այդ բանակի ռազմական ծախքերը։

Սակայն, այնուամենայնիվ, Օգոստոսի հաջողությունն Արևելքում, որ ձեռք էր բերվել առանց պատերազմի, չափազանց մեծ էր։ Հռոմեական հասարակության վրա այդ անցքերը թողել էին խոր տպավորություն, և հռոմեական նշանավոր բանաստեղծները—Վերգիլիոսը, Հորատիոսը և Օվիդիոսը—իրենց երկերում հիշում են Օգոստոսի և Տիբերիոսի մեծ հաղթանակը։

Օվիդիոսը, օրինակ գրում էր որ «Հայն աղերսում է այժմ խաղաղություն»[3]։ Վերգիլիոսն Էնեասի վահանի վրա հիշատակում է Արաքս գետը, որը խորհրդանիշ է Հայաստանի, և ասում՝ որ «Արաքսը զայրույթով լի է դեպի կամուրջը», այսինքն՝ դեպի հռոմեական լուծը[4]։ Իսկ Հորատիոսն իր Ոտանավոր նամակներից մեկում գրում է որ «Հային ցած է գցել Կլավդիոս Ներոնի [Տիբերիոսի] ահեղի ուժը»[5]։

Տիբերիոսի 20 թվի հաղթանակի առթիվ կտրված են և պահպանվել են մինչև այժմ մեծ քանակությամբ դրամներ՝ ոսկի և արծաթ։ Այդ դրամների մի կողմում դրոշմված է, մեծ մասամբ, Օգոստոսի գլուխը՝ իսկ մյուս կողմում գրված է «Հայաստանն առնված» (Armenia capta) կամ «Հայաստանը վերստին առնված» (Armenia recepta) և քանդակված են այլևայլ պատկերներ, գլխավորապես, իբրև Հայաստանի խորհրդանիշներ. օրինակ՝ Հայոց թագավորի

[1] Տե՛ս Res Gestae, 28—32:
[2] Նույնը, V, 25—28:
[3] Տե՛ս Trist. II, 27—nunc petit Armenius pacem:
[4] Տե՛ս Aen., VIII, 728—Et pontem indignatus Araxes:
[5] Տե՛ս Epist., 1, 12, 28:

խույրը և կողքին կապարճ ու աղեղ կամ հայ զինվոր, որ աջ ձեռքում բռնած ունի նիզակ, իսկ ձախում՝ աղեղ. երբեմն Հայաստանը ներկայացված է կնոջ կերպարանքով, որ նստած է ծնկաչոք և ձեռքերը կարկառած, կամ ներկայացված է իբրև սփինքս, որ նստած է կծկված, և այլ նման նկարներ։

Պարթևների հետ համաձայնությունը և Հայաստանում Հռոմի գերիշխանության վերահաստատումը, ինչպես տեսնում ենք, մեծ խանդավառություն էին առաջ բերել Իտալիայում։ Բայց այդ, մեծ մասամբ, ագիտացիա էր և պրոպագանդա հասարակությունը ոգևորելու համար։ Իրապես, ինչպես շատ ճիշտ նշում է Անդերսոնը[1], Օգոստոսի հրաժարումը հարձակողական պատերազմից և նոր նվաճումներից Արևելքում այն չէր, ինչ որ նրանից սպասում էին հռոմայեցիները։

Վաղաժամ էին, իրապես, տոնախմբությունները ու ուրախությունները Հռոմում, հատկապես, Հայաստանի հպատակեցման առթիվ, որովհետև Արաքս գետը զայրագին կերպով շարունակեց փշրել հռոմեական կամուրջները նաև 20 թվից հետո։ Հայ ժողովուրդը, ինչպես կտեսնենք, կատաղի կերպով պայքարեց հռոմայեցիների դեմ և պաշտպանեց իր երկրի անկախությունը նույնպես և Արտաշես Բ-ի հաջորդների ժամանակ։

Արտաշես Բ-ի սպանությունից հետո հայրենասեր հայ իշխաններն ու ազնվականությունը, որոնք լի էին ատելությամբ դեպի Հռոմը և չէին կարող մոռանալ նրա տմարդի արարքները Մեծն Տիգրանի որդու ու թոռան հանդեպ՝ Հայաստանի անկախությունն աշխատեցին վերականգնել պարթևների օգնությամբ։ Պատմագիտական երկերում սովորաբար մատնանշում են, որ հայերի համակրությունը միշտ եղել է պարթևների կողմը, որովհետև նրանք իրենց բարքերի, նիստուկացի, կրոնի և քաղաքական ու զինվորական կազմակերպության նմանությամբ մոտ են եղել պարթևներին ու նաև նրանց հետ կապված են եղել խնամիություններով։

Ընդհանուր ընդունված այս կարծիքը, իհարկե, ճիշտ է, բայց դժվար չէ կռահել, որ հայրենասեր հայերի պարթևական կողմնորոշման պատճառը միայն այդ չէր։ Հայ-պարթևական բարեկամության հիմնական պատճառն էր նաև այն, որ պարթևները, իբրև դաշնակիցներ, վտանգավոր չէին Արտաշեսյան Հայաստանի անկախության համար, իսկ Հռոմը, իբրև «բարեկամ ու դաշնակից», թշնամի էր նրա անկախության և աշխատում էր նրան զրկել հնարավորու-

---

[1] Տե՛ս The Cambridge Ancient History, vol. X, 1944, էջ 264։

թյունից վարելու ինքնուրույն քաղաքականություն և հետամուտ լինելու սեփական շահերի[1]։ Պարթևական կուսակցությունը Հայաստանում շատ լավ գիտեր, որ հռոմայեցիների «բարեկամությունը» և ապա պրոտեկտորատը եղել են ամենուրեք անկախության նախաքայլեր։ Հենց իրեն Օգոստոսի ժամանակաշրջանում Հռոմեական կայսրությանը միացվել էին, իբրև հատուկ նահանգներ, Հռոմի դաշնակից արևելյան մի քանի թագավորությունները կամ նրանց որոշ երկրամասերը,—Ամյունտասի մահից հետո՝ Գալատիան, Արքելայոսի հրաժարեցումից հետո՝ Հրեաստանը (Հրեաստանը, Սամարիան և Իդումեան) նմանապես և Պոնտոսի թագավորության արևմտյան որոշ շրջանները և Պափլագոնիան[2]։

Հասկանալի է, ուրեմն, թե ինչո՛ւ պարթևական կուսակցությունը Հայաստանում, որ երկրի իրական շահերի ու ձգտումների արտահայտիչն էր, պայքար էր մղում շարունակ Հռոմի ու նրա կողմնակիցների դեմ։

Տիգրան Գ-ի մասին, որն իր թագը հանդիսավոր կերպով ստացել էր Տիբերիոս Կլավդիոս Ներոնից՝ մենք գրեթե տեղեկություն չունենք։ Տակիտոսի կարևոր մի վկայությունից մեզ հայտնի է միայն, որ նա թագավորել է կարճ ժամանակ։

> «Երբ Արտաշեսը,—ասում է Տակիտոսը,—սպանվեց իր ազգականների դավադրությամբ՝ Օգոստոսի կողմից Հայաստանին տրվեց իբրև թագավոր Տիգրանը, որին առաջնորդեց դեպի իր թագավորությունը Տիբերիոս Ներոնը։ Սակայն երկար չտևեց ո՛չ Տիգրանի և ո՛չ էլ նրա զավակների իշխանությունը, որոնք ըստ օտար սովորության իրար հետ ամուսնացած էին և միասին թագավորում էին»[3]։

Ֆրանսական դրամագետ Բաբելոնն այս Տիգրան Գ-ին է վերագրում մորուքավոր Տիգրանի դրամը, որը գտնվում է Փարիզի Ազգային թանգարանում[4]։

Տիգրան Գ-ի մահվան թվականը որոշ չէ։ Պետք է ասել, որ Արտաշես Բ-ից հետո նրա հաջորդներին վերաբերող ժամանակա-

---

[1] Համեմատե Ed. Meyer, Blüte und Niedergang des Hellenismus in Asien, Berlin, 1925, էջ 63։

[2] Տե՛ս Histoire Générale Գլոցի, Histoire Romaine, t. III, Le Haut-Empire par L. Homo, էջ 106—107։

[3] Tac., Annales, II, 3:

[4] Տե՛ս M. Ernest Babelon, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, 1890, էջ CCV:

գրության մեջ այնպիսի մեծ խառնակություն է տիրապետում, որ նրանց թագավորության թվականները կարելի է որոշել միայն մոտավոր կերպով։ Արտաշեսյանների ու նրանց հաջորդների թագավորության ժամանակը մոտավոր, բայց հիմնավորված կերպով, որոշված է Cambridge Ancient History-ի տասներորդ հատորի համապատասխան գլուխներում և նրա վերջում դրված հատուկ աղյուսակում, որն ըստ իս լավագույնն է եղած աղյուսակներից։ Մեր այս աշխատության մեջ գերադասություն է տրված այս նոր աղյուսակի ժամանակագրությանը[1]։

Տիգրան Գ-ից հետո, որի մահը տեղի ունեցավ 6 թվից առաջ նախքան մեր թվականը՝ հայկական հարցը, որ Օգոստոսը լուծված էր համարում, նորից ստացավ սուր կերպարանք։

Տիգրան Գ-ին հաջորդեց նրա որդին, Տիգրան Դ-ը, և սրա հետ թագավորեց նաև քույրը՝ Էրատոն որը նրա կինն էր։ Եղբոր ու քրոջ ամուսնությունը, որ տարբեր մայրերից էին ծնած, թույլատրելի էր ո՛չ միայն ըստ զրադաշտական կրոնի, այլև ըստ հունական որոշ օրենսդրությունների։ Տիգրան Գ-ի որդին գահ էր բարձրացել Հայաստանում ընդունված ժառանգական կարգով և, ինչպես երևում է Քսիփիլինոսի վկայությունից[2], որը Կասսիուս Դիոնի Պատմության համառոտողն է, նախապես նա չէր ստացել Օգոստոսի համաձայնությունը։ Այդ, իհարկե, խախտումն էր Հռոմի գերիշխանության։ Պարթևական կուսակցությունը Հայաստանում, որը նորից իր ձեռքն էր առել իշխանության ղեկը, ըստ երևույթին ուզեցել էր ազատագրել Հայաստանը Հռոմի նվաստացուցիչ խնամակալությունից։

Հայաստանի անկախության համար մաքառող հայերը, խզելով Արտաշեսյան թագավորության վասալական կապը Հռոմի հետ՝ իրենց հույսը պետք է դնեին ավելի իրենց սեփական ուժերի վրա, քան պարթևական։ Հռոմեական դիպլոմատիան կարողացել էր հենց այդ ժամանակ ուժեղացնել պարթևական արքունիքում Հռոմի ազդեցությունն ու ներգործությունները մի գեղանի ստրուկ իտալուհու աջակցությամբ, որին Օգոստոսն ընծա էր ուղարկել Հրահատ Դ-ին։

Այս իտալուհու դրդմամբ, որի անունն էր Թեա Ուրանիա Մուսա, Հրահատ Դ-ը, վախենալով գահակալական նոր երկպա-

---

[1] Տե՛ս Cambridge Ancient History, vol. X, էջ 1038։

[2] Տե՛ս *Xiphil.*, Epitome, 55, 10 a, 3—Excerpta sedis incertae, հրատ. *Dindorf-Teubner*, հատ. V, էջ 237. համեմատե *Sandalgian*, Histoire documentaire de l'Arménie, t. II, էջ 497։

ռակություններից՝ Հռոմ էր ուղարկել իր չորս որդիներին և իր մոտ պահել, որպես թագաժառանգ, միայն օրինավոր թագուհի ճանաչված Թեա Ուրանիայի Հրահատ որդուն (10 կամ 9 թվին մեր թվ. առաջ)։ Հրահատ Դ-ի թագավորության (37—2 մեր թվ. առաջ) վերջին տարիներում պարթևների հարաբերությունները Հռոմի հետ բարեկամական էին ու մտերիմ։

Հայաստանը քաղաքական այս աննպաստ պայմաններում ևս ընդդիմություն էր ցույց տալիս Հռոմեական մեծ կայսրությանը։ Նա դեռևս ուժեղ պետություն էր, և նրա մեջ դեռ չէին մարել Արտաշեսյան թագավորության մեծ անցյալի հիշողությունները։ Այս տեսակետից առանձնապես ուշագրավ է, որ հռոմեական պատմագիր Սեքստոս (Ֆեստոս) Ռուփուսը, խոսելով հայերի ապստամբության մասին Տիգրան Դ-ի թագավորության ժամանակ՝ մատնանշում է, որ այս ժամանակ հայերն ավելի հզոր էին, քան պարթևները[1]։ Եթե Տիգրան Մեծից հետո պարթևները գերիշխող ու առաջնորդող դեր էին կատարում Առաջավոր Ասիայում՝ դրա պատճառն այն էր, որ Պարթևական թագավորությունը շնորհիվ իր հեռավորության և աշխարհագրական նպաստավոր դրության ավելի էր պաշտպանված ու ապահովված հռոմեական հարձակումներից, քան Հայաստանը։

Հայերի հակահռոմեական քաղաքականությունը Տիգրան Դ-ի թագավորության ժամանակ Հռոմը, իհարկե, չէր կարող հանդուրժել։ Օգոստոսն այս անգամ ևս հանձնարարեց իր որդեգիր Տիբերիոսին (6 թվին մեր թ. ա.) գնալ Հայաստան և հայկական գործերը, եթե հարկավոր լինի՝ կարգավորել հռոմեական զենքի օգնությամբ։ Սակայն Տիբերիոսը հրաժարվեց կատարել այդ հանձնարարությունը և ընտանեկան գժտությունների պատճառով հեռացավ Հռոմից Հռոդոս։

Շուտով այնուհետև Հայաստանի գահը կարճ ժամանակով գրավեց հռոմեական զորքի օգնությամբ Արտավազդ Գ-ը, որը, հավանորեն, Արտաշես Բ-ի և Տիգրան Գ-ի եղբայրն էր։

Արտավազդ Գ-ի (մոտավորապես 5—2 մեր թվ. ա.) գահ բարձրանալուց հետո Պարթևական թագավորության մեջ տեղի ունեցավ նոր հեղաշրջում։ Թեա Ուրանիայի որդին, թագաժառանգ Հրահատակը, սպանելով մոր սադրանքով իր հայր Հրահատ Դ-ին՝ թագավորեց նրա տեղը 2 թվին մեր թվականությունից առաջ։ Հայերն այդ ժամանակ ապստամբել էին հռոմայեցիների ուղարկած Արտավազդ Գ-ի դեմ։ Նրանք օգնություն ստացան պարթևական նոր

---

[1] Տե՛ս *Sextus Rufus*, Breviarium, XIX։

թագավորից և դուրս վտարեցին Հայաստանից թե՛ Արտավազդ Գ-ին և թե՛ պարտության մատնված հռոմեական զորքը։ Նրանք վերահաստատեցին գահի վրա Տիգրան Դ-ին, որը, ըստ երևույթին, իր քրոջ՝ Էրատոյի հետ փախել էր պարթևների մոտ։

Ուշագրավ է, որ իր Կտակի մեջ Օգոստոսը չի հիշատակում ո՛չ հռոմեական զորքի պարտությունը, ո՛չ էլ Արտավազդ Գ-ին։ Սակայն այդ անցքերը, որ պատվաբեր չէին հռոմեական կայսրության պրեստիժի համար՝ հիշատակված են Տակիտոսի Տարեգրություններում ու մասամբ նաև Վելլեյուս Պատերկուլուսի Հռոմեական պատմության մեջ[1]։

> «Օգոստոսի հրամանով,—վկայում է Տակիտոսը,—թագավոր դրվեց Արտավազդը, որը գահընկեց արվեց ո՛չ առանց մեր կորուստի»[2]։

Հռոմի համար, ինչպես տեսնում ենք, այս անգամ էլ հայկական հարցի պատճառով ստեղծվեց ծանր ու ամոթաբեր դրություն։ Օգոստոսը դարձյալ հարկադրվեց զորք ուղարկել, և 1 թվին մեր թվականությունից առաջ Արևելք եկավ Օգոստոսի թոռը և որդեգիրը, Կայոս Կեսարը, որն այդ ժամանակ քսան տարեկան էր։ Կայոսը մտավ Ասորիք հռոմեական մեծ զորաբանակով և նոր նվաճումների ծրագրերով։ Սակայն այս անգամ էլ, ինչպես և քսան տարի առաջ Տիբերիոսի զորաշարժի ժամանակ, Հռոմի վճռական քաղաքականությունն ու պատերազմի պատրաստակամությունն ահաբեկող ազդեցություն գործեցին ինչպես Պարթևստանում, նույնպես և Հայաստանում։ Մտրուկ իտալուհու որդին, Հրահատակ կամ Հրահատ Ե թագավորը, որն իրեն ապահով չէր զգում պարթևական գահի վրա՝ խաղաղության դաշն կնքեց Կայոս Կեսարի հետ և հրաժարվեց Հայաստանի գործերին միջամտելուց։ Այս համաձայնությունը հանդիսավոր կերպով կայացավ Հրահատակի և Կայոս Կեսարի ներկայությամբ Եփրատ գետի մի կղզում, որը համարվեց չեզոք երկրամաս, 1 թվին մեր թվականությունից հետո։

Ըստ երևույթին, նույն այս թվին, կամ թերևս մի փոքր առաջ, Տիգրան Դ-ը, ինչպես վկայում է Քսիփիլինոսը[3], ուղարկել էր Օգոստոսին նվերներ և իր նամակի մեջ իրեն չէր անվանել թագավոր, համաձայնելով այս պատվատիտղոսն ընդունել նրանից։ Օգոստոսն

---

1 *Տե՛ս Tac.*, Annales, II, 4. *Velleius Paterculus*, II, 94, 4.

2 Annales, II, 4.

3 *Xiphil.*, Epitome, 55, 100, 3.

*ստացել էր նվերներ և, հուսադրելով նրան՝ կարգադրել էր գնալ Կայոս Կեսարի մոտ՝ Ասորիք։*

*Բայց շուտով Տիգրան Դ-ը, ինչպես հայտնի է Կասսիոս Դիոնի վկայությունից*[1], *սպանվում է «պատերազմի մեջ բարբարոսների դեմ» (ըստ երևույթին, Կովկասյան լեռնականների դեմ), իսկ նրա քույրն ու կինը, Էրատոն, հրաժարվում է իշխանությունից։ Տիգրան Դ-ն ու Էրատոն, ինչպես տեսնում ենք, թագավորել էին այս երկրորդ անգամ մոտ երեք տարի՝ 2 թվից (մեր թվ. ա.) մինչև 1 թիվը (մեր թվ. հ.)։*

*Տիգրան Դ-ի անունով, որը Արտաշեսյան տոհմի վերջին թագավորն էր, պահպանվել է մի դրամ, որ գտնվում է Փարիզի Ազգային գրադարանում։ Դրամի մի կողմում դրոշմված է Տիգրան Դ-ի պատկերը, որի շուրջը գրված է՝ «թագավոր թագավորների Տիգրան»* (βασιλέυς βασιλέων Τιγράνης), *իսկ դրա մյուս կողմում դրոշմված է Էրատո թագուհու պատկերը հետևյալ արձանագրությամբ՝ «Էրատո Տիգրան թագավորի քույր»* (᾿Εράτω Βασιλέως Τιγράνου ἀδελφή):

*Հետաքրքիր է ու առանձնապես ուշագրավ, որ Արտաշեսյան տոհմի այս թագավորները, որոնք թագավորում էին Հռոմից անկախ՝ դրամների վրա իրենց Տիգրան Մեծի նման անվանում են «թագավոր թագավորների», իսկ Հռոմի գերիշխանությունն ընդունված թագավորներն իրենց անվանում են ո՛չ թե «թագավոր թագավորների», այլ «մեծ թագավոր»* (Μέγας Βασιλεύς):

*Տիգրան Դ-ի մահից հետո Արտաշեսյան թագավորական տոհմից մնացել էր միայն սրա քույրը՝ Էրատոն, և Կայոս Կեսարը Հայաստանի գահի վրա նստեցրեց Ատրպատականի Արիոբարզան թագավորին, որը Անտոնիոսի բարեկամ Ատրպատականի Արտավազդ թագավորի որդին էր (2 թվին մեր թվ. հ.)։ Տակիտոսը վկայում է, որ Հայաստանում Արիոբարզանին ընդունել էին իբրև թագավոր նրա անձնական հատկությունների պատճառով։*

> *«Այդ ժամանակ Հայաստանի գործերը կարգավորելու համար,—ասում է Տակիտոսը,—ընտրվում է Կայոս Կեսարը։ Սա հայերի ցանկությամբ թագավոր դրեց Արիոբարզանին, ծագումով մեդացուն, նրա փարթամ կերպարանքի և ազնիվ բնավորության պատճառով*[2]*»։*

*Անդերսոնի կարծիքով, Արիոբարզանը Հայաստանի թագավոր էր նշանակվել ո՛չ միայն իր հատկությունների համար, այլ նաև այն պատճառով, որ Ատրպատականի թագավորական ընտանիքը*

---

[1] *Cass. Dio,* LV, 10a, 5.

[2] *Tac.,* Annales, II, 4.

Արտաշեսյանների հետ կապված էր խնամությունններով և որովհետև մի փոքր առաջ այս երկու թագավորությունները գտնվում էին Արտաշես Բ-ի իշխանության տակ[1]։

Արիոբարզանը Հայաստանի թագավոր էր դառել, ըստ երևույթին, միայն Հռոմի կուսակիցների ցանկությամբ։ Իսկ հայ իշխանների ու ազնվականության հակահռոմեական խումբը, չնայած որ պարթևներն այլևս իրենց չէին օգնում, ապստամբեցին և ցույց տվին դիմադրություն, որը Կայոս Կեսարը ճնշեց հռոմեական զենքի ուժով (2 թվին մեր թվ. հ.)։ Այս ապստամբության ժամանակ, ինչպես վկայում են հույն-հռոմեական հեղինակները[2], ծանր վերք ստացավ ինքը Կայոս Կեսարը Արտագերք բերդի մոտ, որը գտնվում էր Արշարունյաց գավառում (հյուսիս-արևմուտքում այժմյան Կաղզվանից), սեպտեմբերի 9-ին 2 թվի մեր թվականությունից հետո։

Կայոս Կեսարը եկել էր Արտագերք բերդի մոտ բանակցելու նրա հրամանատար Ադդոնի հետ, որն իբր թե ցույց էր տալու նրան արքունի գանձերի ցուցակը։ Եվ երբ Կայոսը ուշադիր կերպով կարդում էր գրությունը՝ Ադդոնը ծանր կերպով նրան վիրավորեց դաշույնով։ Հռոմ վերադառնալիս՝ Կայոսը մեռավ այդ վերքից Լյուկիայի Լիմիրա նավահանգստում (14 թ. մեր թվ. հ., փետր. 21-ին)։ Իսկ հռոմեական զորավարները, ինչպես հաղորդում է Ստրաբոնը[3], երկար պաշարումից հետո գրավեցին բերդը և պարիսպները քանդեցին։

Այս ողբերգական դեպքից մի փոքր հետո, վկայում է Տակիտոսը[4], «Արիոբարզանը մահացավ պատահական մահով» (մոտավորապես 4 թվին մեր թվ. հետո)։ Հայաստանի թագը Օգոստոսի համաձայնությամբ այնուհետև տրվեց Արիոբարզանի որդուն, Արտավազդին, որը միաժամանակ, ինչպես և իր հայրը, նաև Ատրպատականի թագավոր էր և որը համարվում է Հայոց Արտավազդ Դ թագավորը (մոտավորապես 4—6 թ. մեր թվ. հետո)։ Սրա թագավորության ժամանակ հայերը նորից ապստամբում են և, ինչպես երևում է Օգոստոսի Կտակից ու Տակիտոսի վկայությունից[5],

---

1 Տե՛ս Cambridge Ancient History, vol. X, էջ 276։

2 *Cass. Dio,* LV, 10. *Vel. Paterc.,* II. 102. *Sextus Rufus,* XIX. *Florus,* Epitome, II, 32. *Tacitus,* I, 3 և ուրիշները։

3 *Str.,* XI, 14, 6 (529).

4 *Tac.,* Annales, II, 4.

5 Res Gestae Divi Augusti, 27. *Tacitus,* Annales, II, 4.

սպանում են այս մեղացուն։ Նրանք չէին ուզում, որ Հայաստանում իշխե Արիոբարզանի սերունդը։

Արտավազդ Դ-ի սպանությունից հետո Օգոստոսն աշխատեց ապստամբված հայերին բավարարել և իբրև թագավոր ուղարկեց Հայաստան Տիգրան Ե-ին, որին իր Կտակի մեջ նա համարում է շառավիղ Հայոց թագավորական տոհմի։ Այս Տիգրան Ե-ը, ինչպես ենթադրում են, որդին էր Հրեաստանի Հերովդես Մեծի Աղեքսանդր որդու ու նրա կնոջ Գլաֆյուրայի, որի մայրը՝ Կապպադովկիայի Արքեղայոս թագավորի առաջին կինը՝ դուստրն է եղել, հավանորեն Արտաշեսյան տոհմի հայ թագավորի։

Տիգրան Ե-ը, որը հայ թագավորներից վերջինն է որ հիշատակված է Օգոստոսի Կտակի մեջ՝ թագավոր էր դրվել Հայաստանում, ինչպես ենթադրում է Անդերսոնը՝ մոտավորապես 6 թվին մեր թվականությունից հետո[1]։ Բայց սա ևս գահից մերժվում է կարճատև թագավորությունից հետո։

Այնուհետև հակահռոմեական կուսակցությունը, որը գահընկեց էր արել Տիգրանի Ե-ին՝ Հայաստանի գահի վրա նորից է նստեցնում Արտաշեսյան ծագում ունեցող Էրատո թագուհուն։ Սա, ինչպես վերև տեսանք, Հայաստանում թագավորել էր իր եղբոր ու ամուսնու՝ Տիգրան Դ-ի հետ։ Սակայն Էրատոյի թագավորությունը ևս շատ կարճ տևեց։ Շուտով սա գահից հեռացվեց, և Հայաստանը մի քանի տարի մնաց, ինչպես վկայում է Տակիտոսը, անտերունչ վիճակում։

> «Կնոջ իշխանությունը,—ասում է Տակիտոսը,—որի անունն էր Էրատո, փորձելուց և սրան ևս շուտով հեռացնելուց հետո՝ նրանք [հայերը], վարանած ու լքված, գտնվելով ավելի շուտ անտերունչ, քան ազատ վիճակում՝ իբրև թագավոր ընդունում են Վոնոնին»[2]։

Ինչպես Էրատոյի, նույնպես և անտերնչության շրջանում՝ Հայաստանը նորից էր իր վրայից թոթափել հռոմեական գերիշխանության լուծը։

Վերև մատնանշված պատմական անցքերը համառոտ կերպով և որոշ նպատակավոր հապավումներով մեջ են բերված Օգոստոսի Կտակի մեջ, որն ամենահիմնական աղբյուրներից մեկն է Օգոս-

---

[1] Անդերսոնի կարծիքով, Օգոստոսի Կտակի մեջ արտաքին անցքերը հիշված են միայն մինչև 6 թիվը (մեր թվ. հ.). տե՛ս Cambridge Ancient History, vol. X, էջ 277։

[2] *Tac.*, Annales, II, 4.

տոսյան ժամանակի պատմության[1]։ Ավելորդ չեմ համարում Կտակի համապատասխան հատվածը մեջ բերել ամբողջությամբ։

«Մեծ Հայաստանը,—ասված է Կտակի մեջ,—թեև ես կարող էի նրա Արտաշես թագավորի սպանությունից հետո դարձնել նահանգ, սակայն ավելի լավ համարեցի, հետևելով մեր նախնիքների օրինակին՝ այդ թագավորությունը տալ Տիգրանին, որն Արտավազդի որդին էր և Տիգրան թագավորի թոռը, հանձնարարելով այդ Տիբերիոս Ներոնին, որն այն ժամանակ իմ որդեգիրն էր։ Այնուհետև, երբ այդ ժողովուրդն ընդվզեց և ապստամբեց՝ նրան նվաճեցի իմ որդու՝ Կայոսի ձեռքով և թագավորական գահը տվի Արիոբարզանին, մեդացիների Արտավազդ թագավորի որդուն, որպեսզի նա երկիրը կառավարե, իսկ սրա մահից հետո, նրա որդուն՝ Արտավազդին։ Երբ սա սպանվեց՝ ուղարկեցի այդ թագավորությունը Տիգրանին, որը Հայոց արքունի տոհմից էր»[2]։

Թեև Օգոստոսն իր հաշվետու Կտակի մեջ մատնացույց է անում Հռոմի հաղթանակներն ու հաջողությունները Հայաստանում՝ սակայն, իրապես, նա չէր կարող գոհ լինել իր քաղաքականության արդյունքներից հայկական հարցում։ Արտաշես Բ-ի սպանությունից հետո մինչև Տիգրան Ե-ը, մոտ քսանհինգ տարվա կարճ ժամանակամիջոցում, Հայաստանում թագավորել էին, ինչպես վերև տեսանք, հինգ հռոմեական թեկնածուներ՝ Տիգրան Գ-ը, Արտավազդ Գ-ը, Արիոբարզանը, Արտավազդ Դ-ը և Տիգրան Ե-ը, որոնցից երկուսը, Արտավազդ Գ-ը և Տիգրան Ե-ը, մերժվել էին և վտարվել երկրից, մեկը՝ Արտավազդ Դ-ը սպանվել էր, իսկ Արիոբարզանը մեռել էր կասկածելի պատահական մահով։ Հայաստանում ծանր վերք էր ստացել և այդ վերքից կարճ ժամանակից հետո մեռել էր նաև Օգոստոսի թոռը և ժառանգը՝ Կայոս Կեսարը։

Ինչպես տեսնում ենք, հռոմայեցիների 20 թվի հույսերն ավելի քան խաբուսիկ դուրս եկան՝ Արտաշեսյան Մեծ Հայաստանը ո՛չ ընկճվել էր, ո՛չ էլ խոնարհվել, այլ հերոսաբար ու դրեթե անընդհատ պայքար էր մղել իր ազատության անկախության համար։

---

[1] Այդ «Գործք հանգուցյալ Օգոստոսի» (Res Gestae Divi Augusti) անունը կրող կտակը, որն ի պատիվ Օգոստոս կայսեր փորագրված է եղել լատիներեն և հունարեն լեզուներով Անկյուրայում (այժմ Անգորա) կառուցված տաճարի պատերի վրա և գտնված է տաճարի ավերակներում, անվանում է նաև «Հիշատակարան Անկյուրական» (Monumentum Ancyranum)։

[2] Res Gestae Divi Augusti, 25—32. տե՛ս Գաբրճյան, Տիեզեր. պատմ., Բ, 97, ծան. 9։

*Արտաշեսյանների իշխանությունը տևեց Հայաստանում մոտ 200 տարի։ Սրանց թագավորության ընթացքում միացյալ Մեծ Հայաստանը, ինչպես տեսանք, մեծապես ընդարձակվել և պետականորեն աճել ու զարգացել էր և նրա մեջ գերիշխում էր ամենուրեք հայերեն լեզուն։ Արտաշես Ա-ի, Տիգրան Մեծի և սրանց հաջորդների ժամանակաշրջանի նշանավոր ու ցնցող պատմական դեպքերը հայ ժողովրդի վրա, բնականաբար, թողել էին խոր ու անջնջելի տպավորություն։ Պատմական այդ մեծ անցքերն արդեն հնագույն այս ժամանակներում նյութ էին դառել ժողովրդական վեպի ու զրույցի և երգվում էին երգիչներից։ Գիտակցության եկած հայ ժողովուրդը, որը ոգևորված էր իր մեծ անցյալով՝ արդեն այնքան էր կենսունակ դառել, որ նրան այլևս դժվար էր հլու ու անխոս գործիքը դարձնել հռոմեական քաղաքականության նպատակների։*

*Եվ միանգամայն բնական է, որ նրա ընդդիմությունը Հռոմի քաղաքականության շարունակվելու էր նաև Արտաշեսյան թագավորության անկումից հետո։*

## Մեծ Հայաստանի թագավորները մինչև Արտաշեսյան տոհմի անկումը

1. *Արտաշես Ա, 189—շուրջ 160 ն. Քր.*
2. *Արտավազդ Ա, Արտաշես Ա-ի որդին*
3. *Տիրան կամ Տիգրան Ա, Արտաշես Ա-ի որդին*
4. *Տիգրան Բ. Մեծ, Տիգրան Ա-ի որդին, 95/4—56/5*
5. *Արտավազդ Բ, Տիգրան Ա-ի որդին, 55—34.*
6. *Աղեքսանդր, Անտոնիոսի և Կլեոպատրայի որդին, 34—31*
7. *Արտաշես Բ, Արտավազդ Բ-ի որդին, 30—20*
8. *Տիգրան Գ, » » » 20—շուրջ 8*
9. *Տիգրան Դ և Էրատո, Տիգրան Գ-ի զավակները, շուրջ 8—5*
10. *Արտավազդ Գ, Արտավազդ Բ-ի որդին, շուրջ 5—2*
11. *Տիգրան Դ և Էրատո, երկրորդ անգամ 2 ն. Քր.—1 հ. Քր.*
12. *Արիոբարզան, Ատրպատականի Արտավազդ թագավորի որդին, 2—4*
13. *Արտավազդ Դ, Արիոբարզանի որդին, շուրջ 4—6*
14. *Տիգրան Ե, Հրեաստանի Հերովդես Մեծի թոռը, շուրջ 6*
15. *Էրատո, Տիգրան Գ-ի դուստրը, կարճատև թագավ.*
16. *Անտերնչություն, կարճատև ժամանակ։*

Ազգացուցակ Արտաշեսյան դինաստիայի թագավորների

1. Արտաշես Ա 189—շուրջ 160 ն. Քր.

2. Արտավազդ Ա 3. Տիգրան Ա (Տիրան) Զարեհ

4. Տիգրան Բ, 95/94—56/55 ն. Ք. Գուրաս

5. Արտավազդ Բ, 55—34 ն. Քր.

6. Արտաշես Բ, 30—20 ն. Քր. 7. Տիգրան Գ, 20—շուրջ 8 ն. Քր. 9. Արտավազդ Դ, շուրջ 5—2 ն. Քր.

8. 10. Տիգրան Դ և Էրատո, շուրջ 8—5 ն. Քր. 2 ն. Քր.—1 հ. Քր.

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

# ՕՏԱՐԱԶԳԻ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ԱՆԿԱՅՈՒՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

1. Խռովություններ պարթևական թագավորության մեջ.—պարթևական Վոնոն թագավորի գահընկեցությունը.—Արտավան Գ-ը՝ պարթևական նոր հարստության հիմնադիր:—2. Վոնոնի կարճատև թագավորությունը Հայաստանում.—Տիբերիոսի զգուշավոր քաղաքականությունն Արևելքում.—Վոնոնի ձերբակալումը Տիբերիոսի հրամանով.—3. Գերմանիկոսի գործուղումն Արևելք.—Կիլիկիայի կիսանկախ մասի և Կապադովկիայի ու Կոմմագենի միացումը կայսրության.—այդ միացման կարևոր նշանակությունը:—4. Զենոն-Արտաշեսի Հայոց թագավոր պսակվելը:—5. Արտավան Գ-ի զորեղացումը և նրա Արշակ որդու գահակալությունը Հայաստանում:—6. Տիբերիոսի ձեռք առած վճռական միջոցներն Արևելքում.—Արշակի սպանությունը և Փառասմանի ու Միհրդատի արշավանքը Հայաստան.—Արտավան Գ-ի որդի Օրոդեսի պարտությունը:—7. Փառասմանի եղբայր Միհրդատը՝ Հայաստանի թագավոր.—Արտավան Գ-ի փախուստը և Տրդատ Գ-ի թագավոր ընտրվելը.—Արտավանի վերադարձը և հաշտությունը հռոմայեցիների հետ:—8. Կալիգուլայի արևելյան նոր քաղաքականությունը.—9. Միհրդատի ձերբակալումը.—Հայաստանի քաղաքական նոր կացությունը:—Միհրդատի վերադարձը Հայաստան և վերահաստատումը գահի վրա:—10. Հայերի դիմադրությունը «Դեմոնաքս»-ի՝ Դիմաքսյան նահապետի առաջնորդությամբ: 11. Միհրդատի եղերական մահը և Հռադամիզդի կարճատև թագավորությունը:—12. Պարթևների զորեղացումը և միջամտությունը հայկական գործերին:

*Առաջին տասնամյակում մեր թվականությունից հետո քաղաքական խառնակ ու խռովահույզ վիճակումն էր գտնվում ո՛չ միայն Հայաստանը, այլև պարթևական թագավորությունը։*

*Հրահատ Դ-ի և իտալուհի Թեա Ուրանիայի որդին, Հրահատ Ե թագավորը (2 մեր թվ. առաջ—4 մեր թվ. հետո), պարթևական գահի վրա երկար չմնաց։ Նա ատելի էր ազնվականությանը, որովհետև զտարյուն պարթև չէր։ Եվ 4 թվի վերջերում (մեր թվ.*

առաջ) նրա դեմ ապստամբություն ծագեց, և նա փախավ հռոմեական շրջանը։

Հրահատ Ե-ին հաջորդեց աքսորից վերադարձած Օրոդես Բ-ը (4—6 մեր թվ. հ.)։ Բայց իր անագորույն ու ծայրահեղ վայրագության պատճառով շուտով սա ևս պարթևներին անելի դարձավ և սպանվեց որսի ժամանակ։ Այնուհետև, Օրոդես Բ-ից հետո, պարթևները մի քանի տարի մնացին առանց թագավորի և գտնվում էին, ինչպես և հայերն էրատոյից հետո, անտերունչ վիճակում։

Անիշխանական այս դրությանը վերջ տալու համար պարթևները դիմեցին Օգոստոսին և խնդրեցին, որ նա իրենց թագավոր տա Հրահատ Դ-ի Հռոմ ուղարկած որդիներից մեծին՝ Վոնոնին։ Օգոստոսն այս առաջարկը հոժարությամբ ընդունեց, և Վոնոնը, որն իր եղբայրների հետ ապրում էր Հռոմում և մեծ չափով ենթարկվել էր արևմտյան քաղաքակրթության ազդեցությանը՝ ուղարկվեց Տիզբոն և ստացավ այստեղ պարթևական թափուր գահը։

Սակայն պարթևական մեծամեծները շուտով զղջացին, որ թագավոր են խնդրել Օգոստոսից։ Նրանք ամոթալի ու անհանդուրժելի համարեցին, որ պարթևական գահի վրա նստել է հռոմայեցիների հանձնակատարը, որն իր կրթությամբ բոլորովին խորթացել է իրենց վարք ու բարքից։ Նոր թագավորը նրանց անելի էր դառել, որովհետև նա չէր գնում իրենց հետ որսի, չէր սիրում իրենց հետ քեֆ ու կերուխում անել, շրջապատել էր իրեն հույներով և զբոսանքի էր գնում ո՛չ թե տղամարդու նման ձիով, այլ պատգարակով։

Վոնոնի թագավորությունը շատ կարճ տևեց (8—11 մեր թվ. հ.)։ Երեք տարուց հետո նա ստիպված եղավ հեռանալ իր երկրից և պարթևական գահը տրվեց Արտավան Գ-ին (11—40 մեր թվ. հ.)։ Այս նոր թագավորը, որը համառ պատերազմից հետո փախուստի էր մատնել Վոնոնին՝ Արշակունի էր միայն մոր կողմից և մեծացել ու դաստիարակվել էր դահ ցեղի մեջ, որն ապրում էր Վրկանի հյուսիսակողմում գտնվող այն տափաստաններում, որոնք Արշակունիների բուն հայրենիքն էին։

Արտավան Գ-ն ուներ ուժեղ կամք և խրոխտ բնավորություն։ Նա Տիզբոնում հիմնադիր եղավ թագավորական նոր դինաստիայի, որի իշխանության ընթացքում իրանական կուլտուրան և զրադաշտական կրոնն ավելի մեծ թափով էին զարգանում, քան առաջ։ Հովսեպոս Փլավիոսի վկայությամբ՝ Արտավանը, պարթևական

գահը գրավելուց առաջ, թագավոր էր եղել Ատրպատականի[1], որը Հայաստանից, ըստ երևույթին անջատվել էր Արտավազդ Գ-ի սպանությունից հետո։

Հաղթված ու գահընկեց արված Վոնոն թագավորը կարողացավ փախչել Հայաստան, որն հենց այդ միջոցին գտնվում էր անտերունչ վիճակում։ Այստեղ նա ստացավ Արտաշեսյանների թագը և կարճ ժամանակով դառավ Հայաստանի թագավոր, գլխավորապես, Հռոմի կողմնակից ազնվականների աջակցությամբ (11 թվից հետո)։ Այսպիսով Հայաստանը շնորհիվ Հռոմի արբանյակի գահակալման նորից ենթարկվեց կայսրության քաղաքական ազդեցությանը։

Հենց նույն այս ժամանակ, երբ Վոնոնը դեռ նոր էր ստացել հայկական գահը, մեռավ Օգոստոս կայսրը (14 թվին մեր թվ. հ.), և նրան հաջորդեց Տիբերիոս Կլավդիոս Ներոնը (14—37 մեր թվ. հ.), որը 34 տարի առաջ հպատակեցրել էր Հայաստանը Հռոմին և թագավոր էր պսակել Արտաշատում Տիգրան Գ-ին։ Տիբերիոսը, ինչպես հայտնի է, Օգոստոսի գլխավոր խորհրդատուներից մեկն էր Արևելյան հարցում և, բնականաբար, ինքը ևս, հավատարիմ մնալով իր նախորդների զուսպ ու զգուշավոր արևելյան քաղաքականության՝ ուզեց խուսափել Արևելքում պատերազմից և աշխատեց պահպանել այստեղ կայսրության շահերն ու իրավունքները խաղաղ ճանապարհով։

Հռոմը ստիպված էր ժամանակավորապես հրաժարվել նվաճողական հավակնություններից, որովհետև Օգոստոսի իշխանության հենց՝ վերջին տարիներում քաղաքական դժվարություններ էին ստեղծվել Հռենոսի և Դանուբի սահմաններում և Վարոսի հռոմեական լեգեոնները պարտություն էին կրել ու ոչնչացվել Տեվտոբուրգյան անտառում (9 թ. մեր թվ. հետո)։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ Արտավան Գ-ը չէր կարող թույլ տալ, որ պարթևական թագավորությունից վտարված իր հակառակորդը թագավորե հարևան Հայաստանում։ Նա սպառնաց

[1] Տե՛ս Jos. Flav., Ant. Jud., XVIII, 2, 4: Մարկվարտը ենթադրում է (Beiträge zur Geschichte und Sage v. Eran, ZDMG, 49, էջ 641), որ Արտավան Գ-ը ծագում է Ատրպատականի թագավորական տոհմից։ Սակայն այս ենթադրության դեմ, որն ընդունելի են համարել Յուստին (Geschichte Irans, Grundriss der Iranischen Philologie, Bd. II, 5. Lieferung, էջ 503) և Հերցֆելդը (Sakastan, Arch. Mitt. aus Iran, IV, 1932, էջ 61, 74, 86), արտահայտվել են Վերներ Շուրը և ուրիշները (տե՛ս Վ. Շուր, Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը, թարգմ. Մեսրոպ Հապոզյանի, Վիեննա, 1930, էջ 115—119)։

պատերազմ սկսել հռոմայեցիների դեմ, եթե նրանք ուզենային պաշտպանել և թողնել Հայաստանի գահի վրա իր ախոյանին: Եվ Տիբերիոսը, որը խույս էր տալիս վտանգավոր պատերազմից՝ հրաժարվեց ճանաչել Վոնոնին իբրև Հայաստանի թագավոր և կարգադրեց Ասորիքի կուսակալ Կրետիկոս Սիլանոսին (մոտավորապես 16 թ. մեր թվ. հետո) հրավիրել Վոնոնին Ասորիք և ձերբակալել նրան Անտիոքում, պահելով նրա թագավորական անունը և արքայական համապատասխան շուքը:

Վոնոնի կարճատև թագավորությունը Հայաստանում (մոտավորապես 11 թվից հետո մինչև 16 թ. մեր թվ. հետո) և նրա ձերբակալումն Ասորիքում նկարագրված են Հովսեպոս Փլավիոսի և Տակիտոսի ներքև մեջբերված վկայություններում, որոնք իրար հետ համերաշխ են և իրար լրացնում են:

1. Հովսեպոս Փլավիոս, Հնախոս., XVIII, 2, 4՝

«Նա [Արտավանը] թագավորեց պարթևների մոտ, իսկ Վոնոնը փախավ Հայաստան: Սա ուզեց անհապաղ տիրել երկրին և ուղարկեց հռոմայեցիների մոտ դեսպաններ: Սակայն Տիբերիոսը նրա խնդիրը մերժեց իր փոքրոգության և Պարթևի սպառնալիքների պատճառով (որովհետև Արտավանը դեսպանների միջոցով սպառնացել էր, որ պատերազմ կսկսե): Իսկ Վոնոնը ոչ մի ուրիշ հնար չուներ թագավորությունը պահպանելու, քանի որ Հայաստանի մեծամեծները, որոնք Նպատ լեռան շուրջն էին բնակում, հարել էին Արտավանին: Ուստի և ինքն անձնատուր եղավ Ասորիքի կուսակալ Սիլանոսին:

2. Տակիտոս, Տարեգրութ., II, 4՝

«Կնոջ իշխանությունը, որի անունն էր Էրատո, փորձելուց և սրան շուտով հեռացնելուց հետո՝ նրանք [հայերը], վարանած ու լքված՝ գտնվելով ավելի շուտ անտերունչ, քան ազատ վիճակում՝ ընդունում են թագավոր Վոնոնին: Սակայն քանի որ Արտավանը սպառնում էր և հայերի պաշտպանությունը շատ քիչ էր, և եթե մեր ուժով պաշտպանեինք, պետք է պատերազմեինք պարթևների դեմ՝ ուստի և Ասորիքի Կրետիկոս Սիլանոս կառավարիչը նրան կանչում է, շրջապատում է պահակորով, բայց պահում է նրա արքայական շուքը և թագավորական անունը»:

Վոնոնի ձերբակալությունից հետո Հայաստանը դարձյալ մնաց առանց թագավորի, անտերունչ վիճակում, իսկ պարթևական գահի վրա վերջնականապես հաստատվեց ժիր ու խոհուն Արտավան Գ-ը: Հայ-պարթևական խնդրի այս լուծումը, անշուշտ, ամոթաբեր մի

պարտություն էր Հռոմի արևելյան քաղաքականության, և կայսրությունը պետք է աշխատեր վերականգնել իր հեղինակությունն Արևելքում։

Արդեն հետևյալ տարին (17 թվին մեր թվ. հետո) Տիբերիոսն ուղարկեց մեծ լիազորություններով Արևելք իր եղբորորդուն ու որդեգրին, Գերմանիկոսին, կարգավորելու այնտեղի խճճված դրությունը։ Կայսեր այս ազգականը, որ 14—16 թվերին մեր թվականությունից հետո մի քանի հաղթական արշավանքներ էր կատարել գերմանացիների դեմ և հայտնի էր իր քաջությամբ և շրջահայեցությամբ՝ համարվեց ամենահարմար մարդը պատասխանատու այդ աշխատանքի համար։

Գալով Արևելք՝ Գերմանիկոսն իր գործունեությունն այստեղ սկսեց ըստ առաջուց նախապատրաստված ծրագրի ու, նախ և առաջ, Տիբերիոսի կարգադրությամբ, Հռոմեական կայսրությանը միացրեց Կապպադովկիայի, Կոմմագենի և Հյուսիսային Ասորիքին սահմանակից Կիլիկիայի թագավորությունները և այդ հովանավորյալ պետությունները դարձրեց հռոմեական նահանգներ։ Ջառամյալ Արքեղայոսը, որը '36 թվից սկսած (մեր թվակ. առաջ) թագավորում էր Կապպադովկիայում և Արտավազդ Մեդացու մահից հետո (20 թ. մեր թվ. ա.) թագավոր էր դառել նաև Փոքր Հայքի՝ կանչվեց Հռոմ և դատի հանձնվեց «հեղափոխական գործունեության» համար[1]։ Իսկ մի փոքր առաջ մեռել էին Կոմմագենի Անտիոք Գ թագավորը և Կիլիկիայի կիսանկախ մասի Փիլոպատոր թագավորը։

Վերացնելով այս թագավորությունները՝ Հռոմը դառավ Հայաստանի անմիջական հարևանը, և նրա զորքերը բանակում էին այնուհետև Եփրատ գետի վերին հոսանքի մոտ՝ դեմ առ դեմ Մեծ Հայաստանի։ Ռազմական այս նոր սահմանը, ինչպես շատ ճիշտ նշում է Անդերսոնը, կազմակերպվում էր այն նպատակով, որպեսզի Հայաստանում գերակշռություն ունենա Հռոմեական կայսրության քաղաքական ազդեցությունը և որպեսզի այս երկրում պահվի Հռոմի գերիշխանությունը[2]։ Դժվար չէ նաև կռահել, որ

---

[1] Գվատկինի կարծիքով, Արքեղայոսի վրա մեղադրանք էին բարդել, որ նա աշխատել է օգնել իր ազգական Տիգրան Դ-ին վերագրավելու Հայաստանի գահը։ Ինչպես վերև տեսանք, Արքեղայոսի երկրորդ կինը Արտաշեսյան հայ թագավորի դուստր էր. տե՛ս *Gwatkin W. E.*, Cappadocia as a Roman procuratorial province, Univ. of Missouri Studies, V, Columbia, Miss. 1930։ Համեմատե *Anderson*, Cambridge Ancient History, vol. X, էջ 744։

[2] *Anderson*, Camb. An. His., X, էջ 745։

Հռոմը, որը թե Օգոստոսի և թե Տիբերիոսի ժամանակ կանխամտածված ծրագրով ընդարձակում էր քայլ առ քայլ պետական իր սահմաններն Արևելքում՝ հենարան ու գործողությունների հիմք էր պատրաստում իր ապագա առաջխաղացման ու նոր նվաճումների համար։

Ամենացավոտ խնդիրը, որ պետք է Արևելքում լուծեր Գերմանիկոսը, անշուշտ, Հայաստանի խնդիրն էր։ 18 թվին մեր թվականությունից հետո նա եկավ Ասորիք և կարգադրեց այստեղի կուսակալին ուղարկել Հայաստան լեգեոնական զորամասեր և, չնայած որ այդ կարգադրությունը դեռ չէր կատարվել՝ նա հենց ինքը շտապեց գնալ Արտաշատ և այստեղ, իրենց հայերի աջակցությամբ, Հայաստանի թագավոր պսակեց Պոնտոսի Պոլեմոն թագավորի և նրա երկրորդ կնոջ, հռոմեական կայսերական տան ազգակից Պիթոդորիսի, Զենոն որդուն, որը փոքր հասակից մեծացել էր հայկական միջավայրում և ընտելացել էր հայերի նիստուկացին ու սովորություններին։

Հայերը գոհունակությամբ ու ուրախությամբ ողջունեցին Զենոնի թագավորությունը։ Ըստ երևույթին, նրանք հույս ունեին, որ իրենց առաջարկած այս թեկնածուի ընտրությամբ հիմք կդրվի հայկական նոր թագավորական տոհմի։ Թագադրության հանդեսի ժամանակ նրանք տվին Զենոնին իրենց սիրած Արտաշես անունը, իհարկե, ո՛չ թե ըստ Արտաշատ քաղաքի անվան, ինչպես կարծում է Տակիտոսը, այլ ըստ անվան Արտաշեսյան թագավորության հիմնադրի՝ Արտաշես Ա-ի։

Գերմանիկոսի ձեռքով Զենոն-Արտաշեսի թագավոր պսակվելը, որ մանրամասն նկարագրված է Տակիտոսի մոտ՝ ավելորդ չեմ համարում թարգմանաբար մեջ բերել մանրամասն կերպով։

> «Այս ժողովուրդը [հայերը] վաղուց հետե,—ասում է Տակիտոսը,—երկդիմի էր և ըստ մարդկանց բնավորության և ըստ երկրի տեղադրության, որովհետև, լայն կերպով հարելով մեր նահանգներին՝ տարածվում էր ներս դեպի մեդացիների երկիրը։ Գտնվելով մեծամեծ պետությունների միջև՝ նրանք [հայերը] շատ հաճախ անմիաբան են իրար հետ և լի են ատելությամբ դեպի հռոմայեցիները, իսկ դեպի պարթևները լի են նախանձով։ Հենց այս ժամանակ, Վոնոնի հեռացումից հետո, նրանք թագավոր չունեին։ Բայց ժողովրդի տրամադրությունը Պոնտոսի թագավոր Պոլեմոնի որդու՝ Զենոնի կողմն էր, որովհետև սա ամենավաղ մանկությունից յուրացրել էր հայերի սովորություններն ու նիստուկացը, ըն-

տելացել էր նրանց որսերին, կերուխումին և այլ բարքերին, որ բարբարոսների մոտ ընդունված են, և գրավել էր իր կողմն առաջնորդներին, ինչպես և հասարակ ժողովուրդը։ Արդ՝ Գերմանիկոսը ազնվականության հավանությամբ և շրջապատող ժողովրդի բազմության ներկայությամբ նրա գլխին դրեց Արտաշատ քաղաքում թագավորական պատվանշանը։ Սրանք, հարգանք հատուցանելով թագավորին՝ նրան ողջունում էին անվանելով Արտաշես, և այդ անունը նրան տվել էին ըստ քաղաքի անվան»[1]։

Արտավան Գ-ը, ակնածելով Գերմանիկոսից, որ պատրաստ էր պատերազմ սկսել նրա դեմ՝ չհակառակեց ո՛չ Կապպադովկիայի ու Կոմմագենի կցմանը կայսրության, ո՛չ էլ Զենոն-Արտաշեսի թագակալությանը։ Արտավանը դեռևս իրեն ամուր ու ապահով չէր զգում պարթևական գահի վրա, ուստի և նա դեսպանություն ուղարկեց Գերմանիկոսի մոտ և հայտնեց, որ ինքը Հռոմի հետ պատրաստ է բարեկամություն հաստատել, բայց խնդրում է, որ Վոնոնը, որը պարթևական ավագանու հետ ապստամբություն է նյութում իր դեմ՝ հեռացվի Ասորիքից և պահվի հեռավոր մի տեղում։ Արտավան Գ-ի այս խնդիրքը Գերմանիկոսը հոժարությամբ կատարեց և Վոնոնին տեղափոխեց խկույն Կիլիկիայի Պոմպեյոպոլիս քաղաքը։ Ինչպես մանրամասն պատմում է Տակիտոսը, նա այստեղ կարճ ժամանակից հետո սպանվեց, որովհետև փորձ էր արել փախչելու և ապավինելու սկյութացիների օգնության (19 թ. մեր թվ. հ.)[2]։

Հայկական գործերի խաղաղ լուծումը և համաձայնությունն Արտավան Գ-ի հետ առաջ բերին Հռոմում մեծ բավականություն և այնտեղ նախապատրաստում էին Գերմանիկոսի համար հանդիսավոր ընդունելություն։ Սակայն կայսրության այս գահաժառանգին ևս, ինչպես և 15 տարի առաջ Կայոս Կեսարին, վիճակված չէր վերադառնալ Իտալիա։ Նա հիվանդացավ և վախճանվեց Անտիոք քաղաքում 19 թվին մեր թվականությունից հետո, հոկտեմբերի 10-ին։

Զենոնը, կամ Արտաշես Գ-ը, թագավորեց Հայաստանում մինչև իր մահը՝ մոտ 17 տարի (18—34 մեր թվ. հետո)։ Նրա համեմատաբար երկարատև թագավորության ժամանակ խաղաղությունն Արևելքում մնաց անխախտ։ Բայց նրա մահից հետո

---

[1] Տե՛ս Tacitus, Annales, II, 56. համեմատե նաև Str., XII, 3, 29 (556) և Svetonius, Caligula, I, 1—2.

[2] Tac., Annales, II, 68. Համեմատե նաև Svetonius, Tiberius, 49, 2.

քաղաքական դրությունը նորից բարդվեց Արևելքում, և Հայաստանը դառավ կրկին միջազգային պայքարի ու մրցությունների առարկա։

Արտավան Գ-ն արդեն իրեն ամուր ու անսասան էր զգում պարթևական գահի վրա երկարատև խաղաղության շնորհիվ։ Նա սիրտ էր առել և համարձակ էր դառել նաև շնորհիվ իր հաղթական կռիվների ընդդեմ Իրանի հարևան ժողովուրդների։ Իսկ նույն այս ժամանակ զառամյալ Տիբերիոս կայսրը, բարձիթողի անելով պետական գործերը՝ ապրում էր առանձնացած Կապրի կղզում։

Արտավան Գ-ը, քաջալերված իր մեծ հաջողություններով և կարծելով, որ ծերունի Տիբերիոսը խույս կտա պատերազմից՝ ուզեց ո՛չ միայն թագավորեցնել Հայաստանում իր մեծ որդուն, Արշակին, այլև հույս ուներ ետ գրավել արևմտյան այն բոլոր երկրները, որոնք պատկանել էին Աքեմենյաններին և Սելևկյաններին։

Ըստ երևույթին, Արտավան Գ-ի քաղաքական այս մեծ ծրագիրը հույս էր ներշնչում ռազմատենչ հայ ազնվականներին, որ պարթևական դինաստիայի հաստատմամբ Հայաստանում իրենք ևս կկարողանան վերականգնել Արտաշեսյան մեծ ու հզոր նախկին պետությունը։ Եվ 34 թվին (մեր թվ. հ.), պարթևական կուսակցության համաձայնությամբ, Հայաստանում թագավոր դրվեց Արտավան Գ-ի որդին՝ Արշակը։

34 թվի այս անցքերը հանգամանորեն հիշատակված են Տակիտոսի մոտ, որի համապատասխան վկայությունը մեջ եմ բերում առանց կրճատումների։

«Նա [Արտավանը],—վկայում է Տակիտոսը,—որը վախենալով Գերմանիկոսից՝ հավատարիմ էր հռոմայեցիներին և արդարամիտ էր դեպի յուրայինները՝ շուտով մեր վերաբերմամբ ամբարտավանացավ և հայրենակիցների հանդեպ մոլեգնեցավ, հույս դնելով պատերազմների վրա, որ հաջողությամբ մղել էր շրջակա ժողովուրդների դեմ, և արհամարհելով Տիբերիոսի ծերությունն իբր անզոր։ Ագահորեն աչք տնկելով Հայաստանին՝ նա թագավոր դրեց այնտեղ, Արտաշես թագավորի մահից հետո, իր որդիներից ամենամեծին՝ Արշակին, և անպատվությունը կրկնապատկեց նրանով, որ ուղարկեց մարդիկ, որոնք պահանջեցին վերադարձնել գանձերը, որ թողել էր Վոնոնը Ասորիքում և Կիլիկիայում։ Միաժամանակ նա պահանջում էր Պարսից և Մակեդոնացոց հին սահմանները և սպառնում էր սնապարծորեն, որ ինքը մտադիր է

*արշավել այն երկրները, որ պատկանել էին Կյուրոսին և ապա Աղեքսանդրին»*[1]։

*Շուտով սակայն երևաց, որ Արտավան Գ-ի ակնկալությունները Տիբերիոսի ծերության ու անկարության վերաբերմամբ անհիմն էին։ Արտավան Գ-ի հավակնություններին զառամյալ կայսրը ցույց տվեց վճռական դիմադրություն։ Նա ուղարկեց Արևելք մեծ իրավունքներով Լուկիոս Վիտելլիոսին, որը համարձակ զինվորական էր և ճարպիկ դիպլոմատ, հանձնարարելով նրան՝ դիմել անհրաժեշտ դեպքում զենքի օգնության։*

*Միևնույն ժամանակ նա գործ դրեց հռոմեական քաղաքականության փորձված հին միջոցները։ Հռոմեական ոսկու օգնությամբ նա աշխատեց ներքին դժգոհություններ ու ապստամբություններ առաջ բերել թե Պարթևստանում և թե Հայաստանում։ Շուտով հանդես բերվեցին նաև պարթևական ու հայկական գահերի նոր թեկնածուներ,—պարթևական գահի համար՝ Հրահատ Դ-ի ամենափոքր որդին, Հրահատը, իսկ հայկական գահի համար՝ Իբերիայի Փարսաման թագավորի եղբայր Միհրդատը։*

*Տիբերիոսի իշխանության ժամանակ հռոմայեցիներին հաջողվել էր խախտել անդրկովկասյան ժողովուրդների բարեկամությունն ու միասնականությունը, և իբերների Փարսաման թագավորը, որը «բարեկամ ու դաշնակից» էր դառել Հռոմի՝ պետք է օգներ իր եղբորը գրավելու Հայաստանի գահը։*

*Երկու եղբայրները, ինչպես պատմում է Տակիտոսը, դիմելով դավադրական ու ստոր միջոցների՝ կաշառեցին Հայաստանում պալատական ծառայողներին և նրանց օգնությամբ թունավորել տվին Արշակ թագավորին։ Այնուհետև նրանք մեծ զորքով մտան Հայաստան և տիրեցին Արտաշատ մայրաքաղաքին (35 մեր թվ. հետո)։ Արտավան Գ-ը, տեղեկություն ստանալով իր որդու եղերական մահվան մասին՝ նրա փոխարեն Հայաստան ուղարկեց իր մյուս՝ Օրոդես որդուն։ Բայց սրա դեմ պատերազմի դուրս եկան ո՛չ միայն իբերները, այլև նրանց հետ միացած դաշնակից աղվանները և հյուսիսային Կովկասից կանչված սարմատական վարձկան զորքերը, հավանորեն, ալանները։*

*Տեղի ունեցած մեծ ճակատամարտում Օրոդեսը չարաչար հաղթվեց ու ծանր վիրավորվեց։ Եվ այսպիսով Հայկական թագավորությունը մնաց Միհրդատի ձեռին։*

*Վերոհիշյալ անցքերը և Փարսամանի միացյալ ուժերի մեծ*

---

[1] *Tac.*, Annales, VI, 31.

պատերազմն Արտավան Գ-ի որդի Օրոդեսի դեմ, որ նկարագրված են մի փոքր տարբեր կերպով Տակիտոսի և Հովսեպոս Փլավիոսի մոտ[1], մեջ եմ բերում բառացի թարգմանությամբ լատիներենից և հունարենից։

1. Տակիտոս, Տարեգրութ., VI, 33՝

«Արդ՝ թագավորներից առաջինը Միհրդատն էր, որ ստիպեց Փարասմանին աջակցել իր փորձին դավով ու ուժով։ Սրանք գտան անօրեն մարդիկ, որոնք Արշակի ծառաներին հրապուրեցին շատ ոսկով ոճիր գործել։ Միևնույն ժամանակ իբերներն արշավեցին մեծ զորքով Հայաստան և տիրեցին Արտաշատ քաղաքին։ Երբ Արտավանն այդ իմացավ՝ հանձնարարեց իր Օրոդես որդուն վրեժ լուծել։ Նա տալիս է նրան պարթևական զորք և ուղարկում է մարդիկ, որպեսզի վարձով ձարեն օգնական զորք։ Իսկ, մյուս կողմից, Փարասմանը դաշն է կապում աղվանների հետ և կանչում է սարմատներին, որոնց իշխանները վարձ էին ստանում երկուստեք և, համաձայն իրենց ցեղերին հատուկ սովորության, հանձն էին առնում պարտականություններ երկու կողմերի հանդեպ։ Սակայն իբերները, որ այդ տեղերի տերն էին՝ Կասպյան ճանապարհով ողողեցին իսկույն Հայոց երկիրը սարմատներով։ Իսկ ովքեր որ գալիս էին պարթևներին օգնելու՝ հեշտությամբ արգելվեցին, որովհետև թշնամին կարողացել էր փակել մյուս անցքերը»։

2. Հովսեպոս Փլավիոս, Հնախոս., XVIII, 4, 4՝

«Տիբերիոսը նամակ է ուղարկում Վիտելլիոսին և հրամայում է նրան բարեկամություն հաստատել պարթևների թագավոր Արտավանի հետ։ Նրան վախեցնում էր այն, թե չլինի՛ թե Արտավանը, որն իրեն թշնամի էր և գրավել էր Հայաստանը՝ ավելի մեծ չարիքներ գործե։ Եվ Տիբերիոսը հրամայում է հավատ ընծայել Արտավանի բարեկամությանը միայն այն դեպքում, եթե կտրվեն պատանդներ և, գլխավորապես, Արտավանի որդին։ Այս գրավոր կարգադրությունը Վիտելլիոսին անելուց դուրս՝ Տիբերիոսը տալիս է իբրև նըվեր իբերների և աղվանների թագավորներին մեծ գումարներ և համոզում է նրանց, որ անհապաղ պատերազմ սկսեն Արտավանի դեմ։ Իսկ սրանք դժվարանում էին, ուստի և Ար-

---

[1] Համեմատե նաև Cass. Dio, Hist. Rom., LVIII, 26:

տավանի դեմ ներս թողին սկյութացիներին[1] և ճանապարհ տվին նրանց իրենց երկրների միջով, բաց անելով Կասպյան դռները։ Հայաստանն այնուհետև իսկույն ետ առնվեց և, որովհետև թշնամիները ներս էին խուժել պարթևների երկիրը՝ սպանվեցին այնտեղ եղող մարդկանցից լավերն, ու նրանց ամբողջ երկիրն ավերվեց։ Այս կռիվներում սպանվեց թագավորի որդին ու նրա հետ անթիվ քանակությամբ զինվորներ»։

Հովսեպոս Փլավիոսի այս վկայության մեջ անհավաստի է, իհարկե, նրա հաղորդած վերջին տեղեկությունը, որ իբր թե իբերները, աղվանները և ալաններն ավերել էին պարթևների երկիրը։ Իրապես, այդ պատերազմը տեղի էր ունեցել Հայաստանում և ավերվել ու կողոպտվել էր ո՛չ թե պարթևների, այլ հայերի երկիրը։

Լուր առնելով իր որդու պարտության մասին՝ Հայաստան եկավ մեծ ուժերով ինքն Արտավանը։ Սակայն հենց այդ միջոցին այստեղ լուր տարածվեց, որ հռոմեական զորքերը մոտեցել են Եփրատ գետին Վիտելլիոսի առաջնորդությամբ և սպառնում են պարթևական Միջագետքի սահմաններին։ Արտավանը ստիպված եղավ ետ նահանջել, բայց արդեն ուշ էր։ Վիտելլիոսը նախօրոք կազմակերպել ու նրա դեմ ապստամբեցրել էր պարթևական ազնվականության դժգոհ մասը, որը նրա փոխարեն թագավոր էր ընտրել Հրահատ Դ-ի թոռին, Տրդատ Գ-ին (36 մեր թվ. հ.)։ Վերև հիշված հռոմեական մյուս թեկնածուն, Հրահատը, մի փոքր առաջ հիվանդացել էր և վախճանվել։

Արտավան Գ-ը ստիպված եղավ հեռանալ քաղաքական ասպարեզից և փախավ Վրկանաց աշխարհը, հույս ունենալով օգնություն ստանալու իր հին բարեկամներից։ Բայց արդեն հետևյալ տարին նրան ետ կանչեցին նոր թագավորին թշնամացած իշխանները, և Արտավան Գ-ը, փախցնելով իր հակառակորդ Տրդատ Գ-ին Ասորիք՝ վերագրավեց իր գահն առանց պատերազմի (37 մեր թվ. հ.)։

Վիտելլիոսը նորից առաջնորդեց հռոմեական լեգեոնները դեպի Եփրատ գետը, սակայն պատերազմական գործողություններ տեղի չունեցան։ Տիբերիոսի կարգադրությամբ նա սկսեց խաղաղության բանակցություններ Արտավան Գ-ի հետ և նրանք, համ-

---

[1] Գուտշմիդը մատնանշում է, որ Փարասմանի դաշնակիցներն էին ըստ ձեռագրերի ալանները, իսկ «սկյութացիներին» [Σκύθας] բառը Հովսեպոսի բնագրում ընդմիջարկություն է. տե՛ս Geschichte Irans. էջ 121, ծան. 1։




Ալանների արշավանքի Caspia via ճանապարհը

*դիպելով իրար Եփրատ գետի մոտ՝ հաշտության դաշինք կնքեցին[1], որի համաձայն Հռոմը ճանաչեց Արտավան Գ-ին իբրև պարթևների թագավոր, իսկ վերջինս Հայաստանի թագավոր ճանաչեց Հռոմի թեկնածու Միհրդատին։*

*Դաշնակցությունը կնքելուց հետո Արտավան Գ-ը Հռոմ ուղարկեց իբրև պատանդ իր Դարեհ որդուն[2]։ Նրա թագավորության վերջին տարիներում նրա դեմ, ըստ երևույթին, կազմվել էր նոր դավադրություն, և նա փախել ու պատսպարվել էր Ադիաբենի Իզատես թագավորի մոտ։ Իր հավատարմության համար Իզատեսը, ինչպես վկայում է Հովսեփոս Փլավիոսը[3], ստացավ նրանից, բացի այլ շնորհումներից, նաև Մծբին քաղաքն իր շրջակայքով, որն առնված էր արմենների թագավորից։*

*37 թվին մեռավ Տիբերիոս կայսրը, և նրան հաջորդեց Կայոս Կեսար Գերմանիկոսը, որի մականունն էր Կալիգուլա (37—41 մեր թվ. հետո)։ Մոտ չորս տարվա սրա իշխանության ժամանակ Հռոմի արևելյան քաղաքականությունը հիմնովին փոխվեց և ստացավ նոր ընթացք։ Կալիգուլան, հայտնի չէ թե ինչ պատճառով, կանչեց Հռոմ Փարասմանի եղբորը՝ Միհրդատին և Հայաստանում նրա փոխարեն նոր թագավոր չդրեց։ Նա միաժամանակ կալանքի տակ պահեց Միհրդատին և ապա աքսոր ուղարկեց[4]։*

*Նախկին Կապպադովկիա և Կոմմագենե թագավորությունները, ինչպես վերև տեսանք, Տիբերիոսի կարգադրությամբ վերածվել էին 17 թվին (մեր թվ. հ.) հռոմեական նահանգների։ Իսկ այժմ Կալիգուլան փոխեց այդ կարգադրությունը և, վերականգնելով Կոմմագենի թագավորությունն ավելի ընդարձակ սահմաններում՝ այդ թագավորությունը տվեց նախկին Անտիոքոս Գ. թագավորի որդուն՝ Անտիոքոս Դ-ին (37 մեր թվ. հ.)։ Նա վերանորոգեց իբրև թագավորություն Կապպադովկիայի հյուսիս-արևելքում նաև Փոքր Հայքը և այնտեղ թագավոր դրեց Պոնտոսի Պոլեմոն Ա-ի թոռին՝ Կոտիսին, որը սրա Անտոնիա Տրիփոնա դստեր և Թրակիայի Կոտիս թագավորի որդին էր։*

*Պատմագիտական երկերում Կալիգուլայի այս քաղաքականությունը համարում են անմիտ ու նաև կարծում են, որ այդ ամենը*

---

[1] **Տե՛ս** *Cass., Dio,* LIX 27. *Svet.*, Caligula, **XIV**, 3, Vitellius, II, 4. *Jos.*, Antiquit., XVIII, 4, 5.

[2] **Տե՛ս** *Svet.*, Caligula, 19. 2.

[3] *Jos.*, Antiq., XX, 3, 3.

[4] **Տե՛ս** *Tac.*, Annales, XI, 8, *Cass, Dio*, LX, 8, 1. *Seneca*, De tranquil-animi, 11, 12.

նա արել էր նախանձից դրդված Տիբերիոսի հանդեպ[1]։ Սակայն այս խնդիրը բավարարաչափ դեռ պարզված չէ և կարոտ է նոր ուշադիր քննության։

Կալիգուլայի արևելյան քաղաքականությունը լուսաբանելիս պետք է ըստ իս ի նկատի ունենալ հետևյալ հանգամանքները, որ աչքաթող են արված։ Կիսաֆեոդալական Կապպադովկիայի և Կոմմագենի հռոմեական նահանգների վերածվելը, հավանորեն, մեծ դժգոհություն էր առաջ բերել տեղական արտոնյալ ազնվականության մեջ, և կարելի է ենթադրել, որ Արտավան Գ-ը, 36 թվին Կապպադովկիա արշավելուց առաջ, ուզքի էր հանել ու ապստամբեցնել այդ երկրները, որոնց մեջ ուժեղ էր իրանական տարրը։ Եվ գուցե հենց այդ խռովություններն էին եղել գլխավոր պատճառը Կալիգուլայի նոր քաղաքականության։ Առանձնապես ուշագրավ է այն, որ Կլավդիոսը ևս, Կալիգուլայի հաջորդը, որը հետևում էր Օգոստոսի և Տիբերիոսի քաղաքականության՝ հարկ չհամարեց միացնել Կոմմագենը և Փոքր Հայքը Հռոմեական կայսրության և այդ երկրները նաև նրա իշխանության ժամանակ մնացին իբրև առանձին թագավորություններ։

Կալիգուլայի ժամանակ Հայաստանը, ինչպես ասացինք, մնացել էր առանց թագավորի։ Եվրոպական գիտնականները և նրանց հետևող նաև հայ պատմաբաններն ու բանասերները միահամուռ կերպով պնդում են, որ 37 թվից հետո անտերունչ Հայաստանը դառավ պարթևական նահանգ և կառավարվեց պարթև «Դեմոնաքս» կուսակալի ձեռքով։

Այս պնդումը, որի գլխավոր հեղինակներից մեկը Մոմզենն է, ըստ իս վիճելի է ու կասկածելի։ Մոմզենը հենց ինքը հարկ է համարել ծանոթության մեջ մատնանշել, որ Հայաստանի գրավման մասին պարթևների կողմից սկզբնաղբյուրները չեն տալիս պարզ տեղեկություն[2]։ Եվ ըստ իս դժվար չէ նաև համոզվել, որ այդ չէ հետևում բնավ նաև Տակիտոսի այն հաղորդագրությունից (XI, 9), որ ներքև մեջ ենք բերելու։

Ավելի հավանական է թվում, որ «Դեմոնաքսը», որի անունը, ինչպես կտեսնենք, Տակիտոսի մոտ աղճատված է՝ հայ իշխան է և Հայաստանի սպարապետն է, որն այս խառն ու անտերունչ շրջանում աշխատել է պահպանել Հայաստանի անկախությունը։

Որ Արտավան Գ-ը, որը 37 թվին դաշն էր կնքել հռոմայե-

---

[1] Տե՛ս Mommsen, Römische Geschichte, V, էջ 379. Gutschmid, Geschichte Irans, էջ 123 և ուրիշ.։

[2] Տե՛ս Mommsen, Römische Geschichte, V, էջ 379, ծան. 1։

ցիների հետ՝ Հայաստանը նորից վերագրավել էր նույն այդ ժամանակները՝ այդ պարզապես չհիմնավորված ու անապացույց մի ենթադրություն է։

Կալիգուլայի եղերական սպանությունից հետո (41 թ. մեր թվ. հ., հունվար ամսին) նրա հաջորդը, Կլավդիոս կայսրը (41—54 մեր թվ. հ.), Հայկական հարցում շարունակեց Օգոստոսի և Տիբերիոսի նախկին քաղաքականությունը։ Հայաստանը հռոմեական պրոտեկտորատի տակ պահելու համար նա ևս, ինչպես և Տիբերիոսը, իրեն հենարան ու գործիք դարձրեց Իբերիան ու նրա Փարսաման թագավորին։ Նա աքսորից ետ կանչեց Միհրդատին և, տալով նրան հռոմեական օժանդակ զորաբանակ՝ ուղարկեց Հայաստան։ Նա կարգադրություն արեց նաև Փարսամանին, որ սա ևս արշավե Հայաստան և օգնե իր եղբորը գրավելու հայկական գահը (հավանորեն, 42 թ. մեր թվ. հետո)։

Արտավան Գ-ի մահից հետո (40 մեր թվ. հ.), հենց նույն այս ժամանակները, պարթևների մոտ ծագել էին ներքին խռովություններ։ Իսկ հատկապես 42 թվին իրար դեմ մեծ պատերազմ էին սկսել Արտավան Գ-ի որդիները՝ Վարդանը և Գոտարզը։ Հայերը, հույս չունենալով օգնություն ստանալու պարթևներից՝ Հայաստանի անկախությունը փորձեցին պաշտպանել սեփական իրենց ուժերով և հռոմեա-իբերական միացյալ ուժերին դիմադրեցին «Դեմոնաքսի» առաջնորդությամբ։ Ըստ երևույթին, նրանք ուզում էին Հայաստանում թագավոր կարգել Փոքր Հայքի թագավոր Կոտիսին, որը Զենոն-Արտաշես Գ-ի քրոջ որդին էր։

Բայց այս Կոտիսին, որը նույնպես փորձել էր Միհրդատի գահակալությունը խանգարել՝ Կլավդիոսը նամակ է գրում և հարկադրում է դադարեցնել դիմադրությունը։ Այնուհետև հռոմեա-իբերական զորքերը, մտնելով հայերին պարտության՝ պաշարեցին Հայաստանի բերդերն ու ամրությունները և հաստատեցին Միհրդատին նրա նախկին գահի վրա (43 թ. մեր թվ. հետո)։

Միհրդատի և Փարսամանի նոր արշավանքը Հայաստան և վերոհիշյալ մյուս անցքերը հանգամանորեն նկարագրված են Տակիտոսի վկայություններում, որ մեջ եմ բերում մանրամասն կերպով։

1. Տակիտոս, Տարեգր., XI, 8՝

«Մոտավորապես այդ ժամանակ Միհրդատը, որն իշխում էր Հայաստանում... և որին, ինչպես ես հիշեցի, շղթայել էր տվել Կայոս Կեսարը [Կալիգուլան]՝ Կլավդիոսի հորդորմամբ վերադարձավ իր թագավորությունը, հույսը դնելով Փարսամանի գործակցության վրա։ Այս վերջինը, որ իբերների

թագավորն էր և միաժամանակ Միհրդատի եղբայրն էր՝ լուր էր ուղարկել, որ պարթևների մոտ երկպառակություն է, և բարձրագույն իշխանությունը գտնվում է տատանվող վիճակում. ուստի և նրանց մոտ ավելի փոքր գործերը մնում են առանց հոգատարության»։

2. Նույնը, Տարեգրութ., XI, 9՝

«Այժմ, երբ Արևելքի ուժերը բաժանվել էին և անորոշ էր, թե ո՛ր կողմը կթեքվեն նրանք՝ Միհրդատին առիթ տրվեց գրավելու Հայաստանը. հռոմեական զինվորի ուժով պետք է ոչնչացվեին սեպ ամրությունները, իսկ միաժամանակ իբերների զորքը պետք է ասպատակեր դաշտային տեղերը։ Սակայն հայերը, երբ հաղթվեց Դեմոնաքս կուսակալը (praefectus), որը հանդգնել էր ճակատամարտ տալ՝ այլևս չդիմադրեցին։ Մի փոքր հապաղում առաջ բերեց Փոքր Հայքի թագավոր Կոտիսը, որի մոտ փախել էին մեծամեծներից ոմանք. նրան զսպեց հետո Կեսարի նամակը և ամեն ինչ ընթացավ հօգուտ Միհրդատի, որն ավելի դաժան էր, քան պատեհ է նոր թագավորության։ Իսկ պարթևների հրամանատարները, որոնք իրար դեմ ճակատամարտի էին պատրաստվում՝ երբ բացվեց ժողովրդականների դավադրությունը, որի մասին հայտնել էր իր եղբորը Գոտարզը՝ հանկարծ դաշն կնքեցին»:

Եվրոպական գիտնականները հենց մեջբերված այս վկայություններից եզրակացրել են, որ Կալիգուլայի ժամանակ Հայաստանը եղել է պարթևական նահանգ և որ նրա կառավարումը հանձնարարված է եղել Դեմոնաքս պարթև մարզպանին։ Այս հետևությունը, ինչպես վերև ասացինք, միանգամայն անհիմն է։ Ինձ հավանական է թվում, որ Demonax praefectus-ը, որի անունը Տակիտոսի մոտ մի փոքր աղճատված է, կարող է լինել Դիմաքսյան հին տոհմի իշխաններից մեկը, որ նույն այս ժամանակաշրջանում հիշատակված է Խորենացու Պատմության մեջ։

Խորենացու երկրորդ գրքի հիմնական աղբյուրներից մեկը, ինչպես հայտնի է, եղել է «Հայոց երգն վիպասանաց», որի մեջ հիշողություններ են պահպանված պատմական դեպքերի մասին՝ սկսած Արտաշես Ա-ից մինչև Տրդատ Ա-ը։ Հենց այդ գրքի ԽԶ գլխում հիշատակված է Դիմաքսյան Գիսակը, Արտաշեսի ծծմոր որդին, որը հերոսաբար կռվել ու մեռել էր հաղթական մեծ ճակատամարտում Երվանդի և նրան օգնող Փարասման թագավորի դեմ։

Խորենացու այս վկայությունը, որ առնված է, անտարակույս, Վիպասանքից՝ ըստ իս մի ապացույց է այն քաղաքական մեծ դերի, որ Դիմաքսյանները Հայաստանում կատարել են պատմական մեծ

անցքերի ժամանակ, հատկապես, Փարասմանի ու Միհրդատի դեմ մղվող պատերազմում։ Այս կարևոր զուգադիպումն ինձ վստահություն է տալիս կարծելու, որ Տակիտոսի մոտ հիշատակված Դեմոնաքսը, որը 42 թվին «հանդգնել էր ճակատամարտ տալ» և դիմադրել էր Փարասմանին ու Միհրդատին՝ կարող է լինել հենց «Դիմաքսեան նահապետ»-ը (=Demonax praefectus), որի անունը Տակիտոսի մոտ աղճատվել և դառել է Դեմոնաքս։

43 թվին մեր թվականությունից հետո Միհրդատը վերահաստատվեց իր թագավորության մեջ Հայաստանում և այս անգամ նա թագավորեց բավական երկար՝ ավելի քան 8 տարի (43—51 մեր թվ. հ.)։ Նա, ինչպես տեսանք, Հայաստանին տիրել էր արյունահեղ կռիվներից հետո և հակառակ երկրի ցանկության։ Իր թագավորական իշխանությունը, որի դաժան լինելը մատնանշված է Տակիտոսի մոտ՝ նա կարողացել էր պահպանել, հենվելով հռոմեական բռնարկու զորաբանակի վրա, որը գրավել էր Գառնիի բերդը և մնացել էր Հայաստանում։ Սրա իշխանության վերահաստատումը հայերը հարկադրված էին լռելյայն տանել, որովհետև նրանք չէին կարող ապավինել պարթևների օգնությանը, որոնց մոտ ներքին երկպառակությունները շարունակվում էին և Վարդանի (42—45 մեր թվ. հ.) և Գոտարզի ժամանակ (45—51 մեր թվ. հ.)։

Միհրդատի իշխանությունը Հայաստանում ունեցավ եղերական վախճան, որ մանրամասն նկարագրված է Տակիտոսի մոտ[1]։

Առաջին դարի երկրորդ կեսի սկզբին մեր թվականությունից հետո իբերական թագավորական ընտանիքն ասպարեզ դառավ նողկալի չարագործությունների։ Փարասման թագավորն ուներ Հռադամիզդ անունով փառասեր ու ամբարտավան մի որդի, որն ամեն բանի ընդունակ էր և որը մտածում էր հափշտակել իր ալևոր հոր թագավորությունը։ Այս վտանգավոր ախոյանից ծերունի թագավորն աշխատեց ազատվել և խորհուրդ տվեց որդուն դավադրություն կազմել Միհրդատի դեմ և նստել նրա փոխարեն թագավոր Հայաստանում։

Հռադամիզդը, որ Միհրդատի եղբորորդին էր և ամուսնացած էր նրա աղջկա հետ՝ եկավ Հայաստան և, ձևացնելով թե ինքը գժտված է հոր հետ՝ սիրալիր ընդունելություն գտավ իր հորեղբոր մոտ։ Հայաստանում նա կապեր հաստատեց հայ մեծամեծների հետ, որոնք դժգոհ էին Միհրդատից, և ապա, վերադառնալով

[1] *Tacitus*, Annales, XII, 44—49.

*Իբերիա՝ ստացավ իր հորից մեծ զորք և գնաց հորեղբոր դեմ պատերազմելու։*

*Ահաբեկված Միհրդատը, որը հանկարծակիի էր բերվել՝ փախավ Գառնի բերդը և ապավինեց հռոմեական բերդապահ զորքի պաշտպանությանը։ Հռադամիզդը Գառնին պաշարեց, բայց չկարողացավ առնել։ Սակայն շուտով նա իր նպատակին հասավ ուրիշ ճանապարհով։ Նա մեծ կաշառք տվեց հռոմեական կայազորի հրամանատար Կելիուս Պոլլիոնին, և սա Միհրդատին ստիպեց դուրս գալ բերդից և իր եղբորորդու հետ կնքել հաշտության դաշինք։ Երբ Միհրդատը եկավ սրա հետ տեսնվելու՝ նրան խեղդելով շղթայեցին, և Հռադամիզդը, որը խոսք էր տվել չգործադրել նրա դեմ սուր կամ թույն՝ հրամայեց, որ նրանց խեղդեն ծանր գորգերի տակ։ Սպանվեցին նաև Միհրդատի որդիները, որոնք լաց էին եղել, տեսնելով ծնողների սպանությունը։*

*Հայաստանի Միհրդատ թագավորի սպանությունը, որը գտնվում էր Հռոմի հովանավորության տակ, ինչպես տեսնում ենք, կատարվել էր ո՛չ միայն հռոմեական պահապան կայազորի աչքերի առաջ, այլև այդ զորքի վաճառված հրամանատարի մեղսակից գործակցությամբ։ Եվ ուշագրավ է, որ հռոմեական բարձր իշխանավորներն Արևելքում այս խայտառակությանը վերաբերվեցին անփույթ անտարբերությամբ։ Նրանցից շատերը կարծում էին նույնիսկ, որ Հռոմի քաղաքական շահերի տեսակետից նման ոճրագործությունները օգտավետ են ու ցանկալի։*

*Տակիտոսի համապատասխան վկայությունը կարևոր եմ համարում մեջ բերել ամբողջությամբ։*

> *«Իսկ Կվադրատուսը,—պատմում է Տակիտոսը,—իմանալով, որ Միհրդատը դավաճանված է և թագավորությունը գրավել են մարդասպանները՝ հրավիրում է խորհրդակցություն, հաղորդում է եղելությունը և խորհուրդ է հարցնում, թե արդյոք անհրաժեշտ չէ՞ պատժել։ Սակայն հասարակաց պատվի մասին քչերն էին հոգում [ժողովում], շատերը խոսում էին ավելի անվտանգության մասին։ Ասում էին, որ օտարների ամեն մի ոճրագործություն պետք է ընդունվի ուրախությամբ, որ անհրաժեշտ է նույնիսկ նրանց մեջ ատելության սերմեր ցանել, ինչպես այդ հաճախ արել են հռոմեական կայսրները, որոնք հենց նույն Հայաստանը տվել են իբրև առատաձեռն նվեր, որպեսզի բարբարոսների մեջ առաջ բերեն երկպառակություններ։ Թո՛ղ Հռադամիզդն, ասում էին, ունենա իր իշխանության տակ հանցանքով ստացածը, միայն*

թե նա լինի ատված և վատանուն, որովհետև այդ ավելի օգուտ կբերե, քան եթե նա վտարվելու լինի փառքով։ Այս կարծիքին համանություն տրվեց»[1]։

Ինչպես դժվար չէ հետևցնել Տակիտոսի այս վկայությունից, հռոմեական դիպլոմատիան առաջ էր բերում Հայաստանում խառնակություններ և երկպառակություններ, խորացնում էր երկրում անքարոյացումը և ներքին կազմալուծումը և չէր ցանկանում, որ Հայաստանում հաստատվեր ուժեղ և ազնվականությանը հաճելի նոր դինաստիա։ Հռոմի այս քաղաքականությունն էր, անշուշտ, հիմնական պատճառը, որ հայերը, ինչպես մատնանշում է Տակիտոսը, դեպի հռոմայեցիները տածում էին խոր ատելություն։

51 թվին մեր թվականությունից հետո հռոմեական Կապպադովկիայի կուսակալ Յուլիուս Պելիգնուսի ներկայությամբ, որը նույնպես կաշառված էր Հռադամիզդից՝ այս վերջինը պսակվեց Արտաշատում Հայաստանի թագավոր։ Սակայն սրա թագավորությունը կարճատև եղավ։ Արդեն 52 թվին լուր ստացվեց, որ պարթևները ներս են մտել Հայաստան, և Հռադամիզդը թողեց իր թագավորական գահը և իբերական զորքերի հետ փախավ իր հոր մոտ։

Հռադամիզդի գահակալության ժամանակ պարթևական թագավորության մեջ տեղի էին ունեցել խոշոր փոփոխություններ։

51 թվի կեսերին մեռել էր Գոտարզը, և նրան հաջորդել էր Ատրպատականի թագավոր Վոնոնը, որին Փիլոստրատոսի վկայության համաձայն ենթադրաբար համարում են Արտավան Գ-ի եղբայրը[2]։ Իսկ Վոնոն Բ-ից հետո, որը թագավորել էր միայն մի քանի ամիս պարթևական գահը ստացել էր, իր Բակուր ու Տրդատ եղբայրների համաձայնությամբ, Վոնոն Բ-ի մեծ որդին՝ Վաղարշը, որը պարթևական ամենաընդունակ ու ամենաուժեղ թագավորներից մեկն էր (51—75 մեր թվ. հետո)։ Սրա ժամանակ մեծ զարկ էր ստացել իրանական կուլտուրայի զարգացումը, հիմնվել էին Վաղաշկերտ (Տիզբոնի մոտ) և Վոլոգեզիաս (Բաբելոնից հարավ) քաղաքները և սկիզբ էր դրվել կրոնական զրադաշտական գրքերի հավաքման։

Պարթևական թագավորության թուլության հիմնական պատճառն էին, ինչպես տեսանք, գահակալական անվերջ կռիվները։ Սրանց առաջն առնելու համար Վաղարշ Ա-ը աշխատեց գոհացնել իր եղբայրներին և տվեց Բակուրին Ատրպատականի թագավորու-

---

[1] *Tac.*, Annales, XII, 48.

[2] *Տե՛ս Justl,* Geschichte Irans, Grundriss der iran. Philol., Bd. II, 5, էջ 505։

*թյունը, իսկ փոքր եղբորը՝ Տրդատին, որոշեց տալ Հայոց թագավորությունը։ Հայաստանն ու Ատրպատականը պետք է լինեին Արշակունյաց տոհմի երկրորդ ու երրորդ ինքնուրույն թագավորությունները։ Հայկական գործերին միջամտելու համար առիթ ծառայեցին իբերական թագավորական ընտանիքի դաժան ու վայրագ գործողությունները Հայաստանում, որոնք հայ ժողովրդի մեջ առաջ էին բերել զայրույթ ու թշնամանք։*

*Արդեն 52 թվին մեր թվականությունից հետո պարթևները մըտան Հայաստան, և Հռադամիզդը, ինչպես ասացինք, չդիմադրեց ու ստիպված եղավ փախչել։ Արտաշատ ու Տիգրանակերտ քաղաքները հոժարակամ կերպով անձնատուր եղան Վաղարշին։ Սակայն ձմեռվա խստությունը, պաշարի պակասությունը և պարթևական բանակի մեջ ծագած համաճարակը հարկադրեցին Վաղարշին իր զորքերը ժամանակավոր կերպով ետ քաշել Հայաստանից. ուստի և Հռադամիզդը, օգտվելով այս հանգամանքից՝ կարողացավ վերագրավել լքված երկիրը և սկսեց անգթաբար վրեժ առնել հայերից, որոնք անցել էին պարթևների կողմը։*

*Շուտով սակայն, ինչպես վկայում է Տակիտոսը*[1]*, համբերությունից դուրս եկան իրենք հայերը և, ապստամբելով նրա դեմ՝ զինված խմբերով շրջապատեցին նրա պալատը։ Եվ Հռադամիզդը, չունենալով փրկության այլ միջոց՝ ապավինեց, ինչպես հեգնորեն ասում է Տակիտոսը՝ իր ձիերի արագավազությանը և հազիվհազ կարողացավ փախչել Իբերիա (54 մեր թվ. հ.)*[2]*։*

*Հռադամիզդի փախուստը պատմելիս՝ Տակիտոսը մանրամասն նկարագրել է նրա Զենոբիա կնոջ եղերական արկածը, որը հետագայում նյութ էր դառել Մետաստասիոյի «Զենոբիա» բանաստեղծական գրության։ Դժբախտ թագուհին, պատմում է Տակիտոսը, հղի լինելով՝ ճանապարհին խիստ նեղվում էր ու տանջվում, ուստի և խնդրեց ամուսնուն սպանել իրեն և ազատել ծանր գերությունից։ Հռադամիզդը, չկարողանալով նրան փրկել՝ նրան հարվածում է դաշույնով և վիրավոր կնոջը քարշ է տալիս ու ձգում Արաքս գետը (հավանորեն, Ախուրյան գետը)։ Բայց Զենոբիային, որը դեռ կենդանի էր՝ ալիքները գցում են ափը, և հովիվները բուժում են գյուղական դեղերով և տանում Արտաշատ։ Այստեղից նա հասարակական ծախսով ուղարկվում է Տրդատի մոտ, որը նրան ընդունում է մարդասիրաբար և պահում է թագավորավայել պատվով։*

---

[1] *Տե՛ս Tac.*, Annales, XII. 50.

[2] *Նույնը*, XII, 51.

Հռադամիզդի փախուստից հետո, նույն այս 54 թվին, պարթևական մեծ զորքով Տրդատը նորից մտավ Հայաստան և, առանց որևէ դիմադրության հանդիպելու, գրավեց երկիրը և նորից հայտարարեց իրեն Հայաստանի թագավոր։

Այս տխուր լուրը կայսրության արևելյան քաղաքականության ծանր պարտության մասին Հռոմ հասավ այն ժամանակ, երբ Կլավդիոսն արդեն վախճանվել էր (54 մեր թվ. հ., հոկտեմբեր ամս.) և նրան հաջորդել էր Գերմանիկոսի թոռը՝ տասնյոթ տարեկան Ներոնը (54—68 մեր թվ. հ.)։

Երիտասարդ Ներոնը, ինչպես տեսնում ենք, ստանում էր Կլավդիոսից ծանր ժառանգություն, և պատերազմը նրա ժամանակ դառավ անխուսափելի։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՏԱՍՆԱՄՅԱ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՎ ԱՐՇԱԿՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*1. Հռոմեական քաղաքականության անհաջողությունները.—Հայկական պատերազմի նախապատրաստությունները և Կորբուլոնի ուղարկումն Արևելք։—2. Խռովությունները Պարթևական թագավորության մեջ և ժամանակավոր զինադադարը.—Հռոմեական զորքի մարզումը և ձմեռումը Կարնո սարահարթում։—3. Ռազմական գործողությունները Տրդատի դեմ.—բանակցությունների անհաջող վախճանը։—4. Ներոնի արևելյան նոր քաղաքականությունը։—5. Կորբուլոնի արշավանքը դեպի Արտաշատ.—արշավանքի ճանապարհի ուղղությունը։—6. Արտաշատի առումը և կործանումը.—Կորբուլոնի արշավանքը դեպի Տիգրանակերտ.—կռիվները մարդերի հետ։—7. Արշավանքի ճանապարհի ուղղությունը.—Հռոմայեցիների գրաված ամրությունների տեղադրությունը։—8. Տիգրանակերտի և Լեգերդայի գրավումը.—Տիգրան Զ-ը՝ Հայաստանի թագավոր.—Տիգրան Զ-ի հարձակումը Ադիաբենի վրա։—9. Պարթևների զայրույթը և պարթևական պատերազմը Հռոմի դեմ։—10. Զինադադարը պարթևների հետ և նրա պայմանները։—11. Հայաստանի հռոմեական նահանգ դարձնելու նոր ծրագիրը։—12. Կեսեննիուս Պետուսի արշավանքը Հայաստան.—Վաղարշ Ա-ի հաղթությունը և Պետուսի զորաբանակի անձնատրությունը։—13. Խաղաղության բանակցությունները Հռոմում։—14. Կորբուլոնին տրված արտակարգ իրավունքները և Հռանդեյայում կայացած համաձայնությունը։—15. Տրդատի ուղևորությունը Հռոմ և հանդիսավոր թագադրությունը։—16. Արտաշատ քաղաքի վերաշինությունը։—17. Հիշողություններ Տրդատ Ա-ի մասին Խորենացու և Ագաթանգեղոսի երկերում։*

*Ինչպես վերև տեսանք, Հայկական հարցը դառել էր հռոմեական քաղաքականության համար մշտական մտահոգության առարկա։ Թեև Հայաստանը Հռոմի գերիշխանությանն էին ենթարկել և Տիբերիոսը (20 մեր թվ. առ.), և Գայոս Կեսարը (2 մեր թվ. հ.), և Գերմանիկոսը (18 մեր թվ. հ.), և Վիտելլիոսը (36 մեր թվ. հ.), սակայն փաստորեն նրանք Հայաստանում կատարել էին սիզիֆյան ապարդյուն աշխատանք։ Հռոմեական քաղաքականությունը, ինչ-*

պես շատ ճիշտ նկատել է Մոմզենը, շարունակ ջուր էր ածել մաղի մեջ[1]։ Հռոմայեցիների պարբերական անհաջողությունները պետք է վերագրել, իհարկե, ո՛չ միայն պարթևական թագավորության, այլ, գլխավորապես, հայ ժողովրդի ուժեղ ու համառ ընդդիմությանը, որը պաշտպանում էր իր երկրի ինքնուրույնությունն ու անկախությունը։

Իր նախկին քաղաքականության ավանդական ուղիից Հռոմը շեղվեց, ինչպես ներքև տեսանք, Ներոնի ժամանակ և տասնամյա պատերազմից հետո նա հարկադրված եղավ համաձայնելու, որ Հայաստանում հաստատվի հայ Արշակունյաց թագավորությունը։

Հայաստանի գրավումը պարթևների կողմից 54 թվին (մեր թվ. հ.) հավասարազոր էր հարկավ պատերազմի հայտարարության, ուստի և երիտասարդ Ներոնը, որի խորհրդատուներն էին նրա խնամակալ Սենեքա փիլիսոփան և պրետորիականների պետ Բուռոսը, իսկույն ձեռք առավ համապատասխան միջոցներ։

Հռոմեական լեգեոններն ուղարկվեցին սահման Եփրատ գետի մոտ, որի վրա գցվեցին կամուրջներ։ Կոմմագենի Անտիոքոս և Քաղկիսի Ագրիպպա թագավորներին հրաման տրվեց նախապատրաստել պատերազմի համար իրենց զորքերը։ Փոքր Հայքի թագավորությունը, որ հիմնվեց Հայաստանի կողքին, տրվեց Արիստոբուղոսին, որը Հերովդեսի սերունդից էր, իսկ Ծոփքի թագավորությունը՝ Սոյեմոսին, որն էմոսայի իշխանների տոհմից էր։ Այս թագավորությունները պատերազմի ժամանակ մեծ կարևորություն ունեին, որովհետև նրանք, իբրև դաշնակիցներ, հռոմայեցիների տրամադրության տակ էին դնելու իրենց տեղական ուժերը։ Պատերազմական գործողությունների համար Հայաստանի դեմ բնական բազա էր Կապպադովկիան, ուստի և իբրև կուսակալ ու զորքերի հրամանատար ուղարկվեց այս նահանգը հռոմեական նշանավոր զորավար Գնեյոս Դոմիտիոս Կորբուլոնը, որին պետք է ենթարկվեին նաև դաշնակից թագավորները։

Միաժամանակ հռոմեական դիպլոմատիան և հռոմեական ոսկին այժմ էլ պարթևական թագավորության մեջ աշխատեցին առաջ բերել ներքին խռովություններ և ապստամբություններ։ Վաղարշ Ա-ի դեմ իբրև թեկնածու ոտքի հանվեց պարթևական նախկին Վարդան թագավորի որդին[2]։ Բացի այդ, դարձյալ Հռոմի դրդմամբ

---

[1] *Mommsen,* Römische Geschichte, Bd. V, էջ 384։

[2] Տակիտոսի մոտ (XIII, 7) ասված է. «Այդ ժամանակ Վաղարշի դեմ ոտքի ելավ իբրև ախոյան Վարդանի որդին» (Exortusque in tempore aemulus Vologaesi filius Vardanis)։ Բանասերներից ոմանք փոխանակ Վարդանի որ-

մեծ ապստամբություն բռնկվեց նաև Վրկանում։ Այս ներքին խռովությունները Վաղարշի ձեռքերը կապեցին, և նա չկարողացավ մեծ օգնություն հասցնել Տրդատին, որը դառել էր Հայաստանի թագավոր։ Վաղարշը ստիպված եղավ նույնիսկ վերանորոգել հռոմայեցիների հետ հին բարեկամությունը և ուղարկեց սրանց պատանդներ (55 մեր թվ. հետո)։ Նա կարծում էր, որ բարեկամական հարաբերությունների շնորհիվ պատերազմը կհետաձգվի և Հռոմը առժամանակ կհանդուրժե իր եղբորը իբրև Հայաստանի թագավոր։

Չնայած քաղաքական բարենպաստ այս պայմաններին՝ ինքը Կորբուլոնը ևս հարկադրվեց հետաձգել պատերազմը Տրդատի դեմ ավելի քան երկու տարով։ Նա պատերազմը ի վիճակի չէր իսկույն սկսելու, որովհետև երկարատև խաղաղության պատճառով Արևելքում եղած լեգեոնները անպետքացած և անբարոյացած էին և չէին կարող կռվել և դիմանալ պատերազմի դժվարություններին։

Միայն 57 թվին մեր թվականությունից հետո հռոմեական վերակազմված ու կարգապահության վարժված զորքերը, անցնելով սահմանը՝ մտան Հայաստան։ Այնտեղ նրանք ձմեռեցին Բարձր Հայքում, հավանորեն, Կարնո սարահարթում, ուր Կորբուլոնն ամբողջ ձմեռը (57—58 մեր թվ. հ.) մարզեց ու կոփեց նրանց, ընտելացնելով Հայաստանի ծանր կլիմայական պայմաններին։

Պատերազմական լուրջ գործողություններն սկսվեցին Հայաստանում 58 թվի գարնանը (մեր թվ. հ.)։ Վաղարշը կռվում էր այդ ժամանակ Վրկանի ապստամբների դեմ, ուստի և Տրդատը հենվելու էր, գլխավորապես, հայկական ուժերի վրա։ Նա աշխատեց խույս տալ մեծ ճակատամարտից և վարեց պաշտպանողական ու պարտիզանական փոքր պատերազմ և ամեն կերպ դժվարացրեց հռոմեական զորքի պարենավորումը։ Սակայն Կորբուլոնը ինքը ևս իր զորքը մաս-մաս անելով՝ մանր մարտեր սկսեց Հայաստանի սահմանների վրա, որը արևմուտքից ու հյուսիսից շրջապատված էր ու օղակված Հռոմի դաշնակից թագավորություններով։ Նրա կարգադրությամբ՝ զանազան կողմերից Հայաստան էին ներս խուժել նաև Կոմմագենի Անտիոքոս թագավորը, Փարասմանը, հենիոքները[1] և, հավանորեն, նաև Փոքր Հայքի ու Ծոփքի նոր թագավորները։

---

դին (filius Vardanis) կարդում են «որդին Վարդան» (filius Vardanis) և կարծում են, որ ախոյանն իրեն Վաղարշի որդին էր։

[1] Տակիտոսի բնագիրն ունի Insochi (Ինսոքներ) անճարված ընթերցվածը, որ սովորաբար կարդում են Moschi (մոսքեր)։ Սակայն M. Carry-ը Classical Review հանդեսում (XXV, 1911, էջ 107) մատնանիշ է արել, որ նույն

Ընկնելով ծանր դրության մեջ և հույս չունենալով օգնություն ստանալու Վաղարշից՝ Տրդատը բանակցություններ սկսեց Կորբուլոնի հետ, սակայն բանակցությունները հետևանք չտվին, և պատերազմն անողոք կերպով շարունակվեց և 58 և 59 թվերին։

Հայկական պատերազմին վերաբերող վերոհիշյալ տեղեկությունները, որ մեջ են բերված Տակիտոսի մոտ՝ ավելորդ չեմ համարում տալ թարգմանաբար ընդարձակ բովանդակությամբ։

1. Տակիտոս, Տարեգր., XIII, 34՝

«Թեև ձգձգվող պատերազմը, որը պարթևների ու հռոմայեցիների միջև մղվում էր Հայաստանը գրավելու համար՝ մինչ այժմ մեղմ սկիզբ ուներ, սակայն այս տարվա ընթացքում սուր ընթացք ընդունեց, որովհետև Վաղարշը թույլ չէր տալիս, որ իր եղբայր Տրդատը զրկվի թագավորությունից, որը նրան տվել էր ինքը, կամ այն ընդունե իբրև նվեր այլ իշխանությունից։ Իսկ Կորբուլոնը կարծում էր, որ հռոմեական ժողովրդի վեհությանն արժանավայել է, որ ետ ստացվի այն, ինչ որ առաջներում ձեռք էին բերել Լուկուլլոսը և Պոմպեյոսը։ Մանավանդ որ հայերը ևս, իրենց տատանվող հավատարմության հետևանքով, հրավիրում էին թե մեկ և թե մյուս կողմի զորքերին։ Իրենց երկրի տեղադրությամբ և բարքերի նմանությամբ նրանք ավելի մոտ էին պարթևներին, որոնց հետ խառնված էին ամուսնություններով. և քանի որ նրանք անտեղյակ էին ազատության, թեքվում էին ավելի մյուս կողմը՝ դեպի ծառայության վիճակը»։

2. Տակիտոս, Տարեգր., XIII, 37՝

«Եվ Տրդատը, բացի իր սեփական կողմնակիցներից, օգնական ուժեր ստանալով նաև իր եղբայր Վաղարշից՝ արդեն ո՛չ թե թաքուն, այլ բացահայտ կերպով պատերազմ վարեց և սկսեց թշնամական գործողություններ Հայաստանում։ Եվ ում որ նա մեզ հավատարիմ էր համարում՝ նրանց երկրներն ավերում էր, իսկ եթե նրա դեմ զորքեր էին դուրս բերվում՝ նա խույս էր տալիս և, սլանալով այս ու այն կողմ՝ ավելի սարսափեցնում էր լուրերի, քան մարտերի միջոցով։ Արդ՝ Կորբուլոնը, որ երկար ժամանակ և ապարդյուն կերպով աշխատել էր նրան ճակատամարտ տալ՝ հարկադրվեց թշնամիների օրինակով կռիվը մասնատել. Նա իր ուժերը ցրեց

---

ժողովրդի անունը հանդիպում է նաև Տակիտոսի այլ հատվածում (II, 68) և վերոհիշյալ Insochi ընթերցվածը պետք է, հավանորեն, կարդալ Heniochi. տե՛ս Cambridge Ancient History vol. X, էջ 880։

և կարգադրեց, որ իր օգնականներն ու հրամանատարները միաժամանակ արշավեն զանազան տեղեր։ Նա հորդորեց նույնպես Անտիոքոս թագավորին, որ սա հարձակվի իրեն ամենամոտ շրջանների վրա։ Իսկ Փարասմանը, սպանելով իր որդի Հռադամիզդին իբրև դավաճանի և ցույց տալով դրանով իր հավատարմությունը դեպի մեզ՝ իր հին ատելությունը դեպի հայերը արտահայտում էր ավելի համարձակ։ Եվ այդ ժամանակ առաջին անգամ մեր կողմը գրավված ինսոքները (insochi)—այս ցեղն ուրիշներից ավելի էր դաշնակից հռոմայեցիներին—ասպատակեցին Հայաստանի հեռավոր անկոխ վայրերը։ Այսպիսով Տրդատի մտադրությունները ստացան հակառակ ընթացք։ Եվ նա դեսպաններ ուղարկեց, որոնք իր և պարթևների անունից պետք է բացատրություն պահանջեին, թե ինչո՞ւ, երբ նոր են տրվել պատանդները և նոր է վերանորոգվել բարեկամությունը, որը ճանապարհ է բաց անում նոր ևս բարիքների՝ ինքը դուրս է վտարվում Հայաստանի իր հին տերությունից։ Ինքը Վաղարշը դեռևս տեղից չէր շարժվել այն պատճառով, որովհետև նա գերադասում է գործել ավելի իրավադատությամբ, քան զենքի ուժով։ Իսկ եթե նրանք համառորեն պնդում են պատերազմի վրա՝ Արշակունիներին չեն պակասի ո՛չ արիությունը, ո՛չ էլ բախտը, որ արդեն շատ անգամ փորձել են հռոմայեցիներն իրենց պարտությունների ժամանակ։ Կորբուլոնը, որին լավ հայտնի էր, որ Վաղարշը հապաղում է Վրկանի ապստամբության պատճառով, պատասխանելով դրան՝ խորհուրդ է տալիս Տրդատին դիմել խնդիրքով կայսրին. նա կարող է ձեռք բերել հաստատուն թագավորություն առանց արյունհեղության, եթե, թողնելով հեռավոր ու անագան հույսերը՝ հետամուտ լինի լավագույնին և առձեռնին»։

Մեջբերված այս երկու վկայությունը կարևոր են համարվում հատկապես նաև այն տեսակետից, որ սրանց մեջ, ինչպես ենթադրում են եվրոպական պատմագետները, մատնանշված է հայկական պատերազմի նպատակը և ակնարկված է Ներոնի արևելյան քաղաքականության նոր ուղղությունը։ Հենվելով, գլխավորապես, այս վկայությունների վրա՝ Մոմզենը ենթադրում է[1], որ Ներոնը, շեղվելով Օգոստոսյան քաղաքականությունից՝ հայկական գահը ուզեցել է տալ ո՛չ թե հռոմեական թեկնածուի, այլ հենց իրեն

---

[1] *Mommsen,* Römische Geschichte, V, էջ 383—385։

Տրդատին։ Հայկական պատերազմի նպատակն է եղել, նրա կարծիքով, զենքի ուժով սրան ստիպել, որ ստանա իր թագը Ներոնից և ճանաչե Հռոմի գերիշխանությունը։

Մոմզենի այս տեսությունն ընդարձակ կերպով քննության են առել և հիմնավորել են նաև Հենդերսոնը և Վերներ Շուրը[1]։ Վերջինս առանձնապես մատնանշում է, որ Կորբուլոնի վերոհիշյալ պատասխանը Տրդատին (տե՛ս վկայութ. 2) մի պարզ արձագանք է Ներոնի կառավարության արևելյան նոր քաղաքականության[2]։

Եվրոպական պատմագիտության այս դիտողությունները, որ միանգամայն ճիշտ են, վերաբերում են ըստ իս Ներոնյան քաղաքականության նպատակներին Հայկական պատերազմի առաջին տարիներում։ Իսկ նույն պատերազմի վերջին տարիներում նոր այդ քաղաքականությունը ենթարկվեց, ինչպես կտեսնենք, կարևոր փոփոխությունների։ Ուստի ավելի քան վիճելի է Վերներ Շուրի ընդհանուր եզրակացությունը, որի վրա հենվելով՝ նա առանձնապես շեշտում է «կայսերական քաղաքականության համառ հետևողականությունը և նպատակին անշեղ ձգտումը տասնամյա կռիվների հարափոխությունների մեջ»[3]։

Երբ այլևս հույս չմնաց Տրդատի հետ խաղաղ կերպով համաձայնության գալու՝ Կորբուլոնը վճռեց խորտակել հայերի ուժը վճռական ճակատամարտում և իր ամբողջ բանակով ուղղվեց դեպի Հայաստանի Արտաշատ մայրաքաղաքը։ Նրա այս արշավանքի ճանապարհը պարզ կերպով որոշվում է Պետինգերյան քարտեզի այն հին ուղեգծով, որով 66 թվին (մեր թվ. առաջ) եկել էր Արտաշատ Պոմպեյոսը[4]։

Հռոմեական նրա զորաբանակը, որը 57 թվին (մեր թվ. հ.) Սատաղից Գաղտառիճի վրայով եկել էր այժմյան Էրզրումի շրջանը՝ այստեղից Քյոփրիքյոյի վրայով գնացել էր Ալաշկերտի դաշտը և այնուհետև Հայկական Պար կամ Աղրի-դաղ լեռնաշղթայի հարավային կողմով և Կուչաղի լեռնանցքով մտել էր Արարատյան դաշտը, ուր գտնվում էր Արտաշատը։ Պետինգերյան քարտեզում նշանակված այդ հին ռազմուղին մանրամասն լուսաբանված է «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխարհագրական

---

[1] Տե՛ս B. W. Henderson, The Life and Principate of the emperor Nero, London, 1903. Դր. Վերներ Շուր, Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը, թարգմ. Մ. Հապոզյանի, Վիեննա, 1930։

[2] Տե՛ս Շուր, նույնը, էջ 26։

[3] Նույնը, էջ 16—17։

[4] Տե՛ս իմ աշխատությունը «Տիգրան Բ և Հռոմը», Երևան, 1940, էջ 188—189։ [Տե՛ս նաև սույն հատորում, էջ 577—578. խմբ.]։

իմ ուսումնասիրության մեջ (էջ 17—82)։ Հենց այս ճանապարհի վրա է գտնվում, ինչպես մանրամասն ցույց ենք տվել այդ աշխատության մեջ, Տակիտոսի հիշատակած Վոլանդ ամրոցը (castellum Volandum), որը նվաճելուց հետո Կորբուլոնը իջել էր Այրարատ և գրավել էր Արտաշատը։

Ի նկատի առնելով, որ պատմագիտական հայ և օտար երկերում սխալ է որոշված թե Վոլանդ ամրոցի տեղը և թե Կորբուլոնի արշավանքի ճանապարհը դեպի Արտաշատ՝ ավելորդ չեմ համարում կանգ առնել կարևոր այս խնդիրների վրա և թարգմանաբար մեջ բերել Տակիտոսի համապատասխան վկայություններն առանց կրճատումների։

1. Տակիտոս, Տարեգր., XIII, 39՝

«Եվ Կորբուլոնը, որպեսզի կռիվն իզուր չձգձգվի և որպեսզի հարկադրե հայերին պաշտպանելու այն, ինչ որ իրենցն էր՝ որոշում է ոչնչացնել նրանց ամրությունները։ Ինքը վերապահում է իրեն այս շրջանում ամրություններից ամենազորեղը, որն անվանվում էր Վոլանդ. իսկ ավելի փոքրերը հանձնարարում է, որ գրավեն լեգատ Կորնելիուս Ֆլակկուսը և բանակատեղերի պրեֆեկտ Ինստեյուս Կապիտոնը։ Այնուհետև նա զննում է ամրությունները, նախապատրաստում է ինչ որ հարկավոր էր նրանց դույթով վերցնելու համար. և խրախուսում է զինվորներին, որ նրանք այդ տեղերը գրավեն շրջող թշնամուց, որը ո՛չ խաղաղություն է ուզում, ո՛չ էլ ճակատամարտ է ընդունում, այլ իր փախուստով բացահայտ կերպով ցույց է տալիս իր նենգությունը և փոքրոգությունը. նա հորդորում է նաև, որ նրանք միևնույն ժամանակ հող տանեն ձեռք բերելու և փառք, և ավար։

Ապա նա, բաժանելով զորքը չորս մասի՝ նրանցից ոմանց հավաքում է վահաններից կազմված ծածկի տակ և տանում է քանդելու պատնեշները. ոմանց կարգադրում է մոտեցնել պարիսպներին սանդուղքները. շատերին հրամայում է նետիչ մեքենաներով ձգել ջահեր և նիզակներ. իսկ նետաձիգներին ու պարսավորներին տեղ է հատկացվում, որպեսզի նրանք արձակեն հեռվից կապարե գնդակներ։ Շարժումը պետք է ամեն կողմից հավասար թափով լիներ, որպեսզի թշնամու որևէ մասն օգնություն չհասցներ նեղն ընկածներին։

Այնուհետև կռվող զորքի ոգևորությունն այնքան մեծ եղավ, որ արդեն օրվա երրորդ մասի ընթացքում պարիսպները կռվողներից մաքրվեցին, դարպասների նիգերը խորտակվեցին, ամրություններն առնվեցին վերելքով և բոլոր հասա-

կավորները մատնվեցին սրի. իսկ հռոմայեցիները չկորցրին և ո՛չ մի զինվոր և ունեցան միայն քիչ վիրավորներ։

Այդ՝ չկռվող հասարակ ժողովուրդը վաճառվեց ստրկության. մնացած ավարը բաժին ընկավ հաղթողներին։ Նույնպիսի հաջողություն ունեցան նաև լեգատն ու պրեֆեկտը, և երեք ամրությունները միևնույն օրը նվաճելուց հետո՝ մյուսներն անձնատուր եղան բնակչության ահաբեկման պատճառով և ոմանք՝ հոժարակամ»։

2. Տակիտոս, Տարեգրութ., XIII, 40՝

«Այնուհետև Կորբուլոնը լիահույս էր, որ կարողանալու է հարձակվել Արտաշատի վրա, որը երկրի մայրաքաղաքն էր։ Սակայն լեգեոնները նա չէ տանում ամենամոտ ճանապարհով, որովհետև՝ եթե նրանք Արաքս գետը, որը ողողում էր քաղաքի պարիսպները, անցնելու լինեին կամուրջով՝ կընկնեին թշնամու հարվածի տակ. ուստի և անցնում են գետը հեռվում՝ լայն ու ընդարձակ ծանծաղուտով»։

Այս վկայություններից պարզ երևում է, որ Վոլանդ ամրության տեղը պետք է ենթադրել Արտաշատ քաղաքից ո՛չ շատ հեռու և այնպիսի մի շրջանում, որտեղ իրար մոտ են գտնվել մի շարք ամրություններ։ Արդ՝ ի նկատի ունենալով, որ Պևտինգերյան քարտեզի Սատաղ—Արտաշատ ռազմական հին ճանապարհի ուղղությունը պարզ կերպով որոշվում է, ինչպես ցույց է տրված վերոհիշյալ իմ աշխատության մեջ[1], Կարվանսարայի կամ Կուչաղի լեռնանցքով՝ դժվար չէ համոզվել, որ Կորբուլոնը՝ առաջ քան Արտաշատի վրա հարձակվելը՝ պետք է նախապես նվաճեր Գայլատու լճի արևելյան կողմերում գտնվող այն ամրությունները, որոնք ստրատեգիական և պաշտպանողական կարևոր դիրքեր էին Արարատյան դաշտի և Արտաշատի թիկունքում։ Վ. Շուրի ենթադրությունը, որ Վոլանդը և մյուս «առաջաբերդերը» գտնվել են Իգդիրի մոտ[2], պարզապես սխալ է։ Հին այս բերդերի ավերակները մինչև այժմ պահպանվել են, ինչպես մանրամասն հաղորդում է Ս. Հայկունին, Կարվանսարայի կամ Կուչաղի լեռնային դժվարամատչելի շրջանում[3]։

Վոլանդը և մյուս ամրոցները նվաճելուց հետո՝ Կորբուլոնի

---

1 «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 35 ևն։

2 Տե՛ս «Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը», էջ 28, նաև *Anderson*, Cambridge Ancient History, vol. X, էջ 762։

3 Տե՛ս Ս. Հայկունի, Բագրևանդ. ջրաբաշխ գավառ, Վաղարշապատ, 1894, էջ 363—364։

առջև բաց էր ռազմական մեծ ճանապարհը մինչև Արտաշատ։ Սակայն նա, ինչպես վկայում է Տակիտոսը, վտանգավոր համարելով անցնել Արաքսը Արտաշատի մոտ գտնվող կամուրջով՝ անցել էր գետը «հեռվում լայն ու ընդարձակ ծանծաղուտով» և հարձակվել էր Արտաշատի վրա Արաքսի ձախ կողմից։ Արաքսի անցանելի այս հունը, ինչպես ցույց է տրված դարձյալ վերոհիշյալ իմ աշխատության մեջ[1], հավանորեն, Վարդանակերտ ավանի մոտ գտնվող այն ծանծաղուտն է, որը հիշատակված է Սեբեոսի և Ղևոնդի մոտ[2]։

Կորբուլոնի, 58 թվի արշավանքի ճանապարհը, ինչպես և Վոլանդ ամրոցի տեղադրությունը, ինչպես տեսնում ենք, ճշտիվ որոշվում են։

Կորբուլոնը, ինչպես և Լուկուլլոսը 68 թվին (մեր թվ. առաջ), ռազմի էր ելել Արտաշատի դեմ, կարծելով, որ Հայաստանի մայրաքաղաքին սպառնացող վտանգը Տրդատին կստիպե իր հետ վճռական կռվի բռնվելու։ Եվ հիրավի, ինչպես որ նա մտածում էր՝ այնպես էլ եղավ։ Տրդատը, որը պարտիզանական փոքր պատերազմ էր վարում՝ շտապեց գնալ դեպի Արտաշատ, հարձակվեց հռոմեական արշավող բանակի վրա, բայց հաջողություն չունեցավ։ Այնուհետև նա թողեց Արտաշատը ճակատագրի կամքին և ստիպված եղավ Հայաստանից հեռանալ Ատրպատական։

Թագավորի հեռանալուց հետո Հայաստանի մայրաքաղաքը բաց արեց իր դռները Կորբուլոնի առջև և անձնատուր եղավ առանց կռվի (58 թ. մեր թվ. հետո)։ Ենթադրում են, որ 58/59 թվի ձմեռը Կորբուլոնն իր զորքերի հետ անցկացրել էր Արտաշատում։ 59 թվի գարնանը նա գնաց գրավելու հարավում նաև Տիգրանակերտ քաղաքը։ Բայց այս նոր արշավանքից առաջ նա Արտաշատ քաղաքը այրեց և հիմնահատակ կործանեց, որովհետև, ինչպես մատնացույց է անում Տակիտոսը[3], այս մեծ բերդը չէր կարելի պահել առանց ուժեղ պահակազորի, իսկ նա այնքան ուժ չուներ, որ կարողանար զորքի մի մասը թողնել Արտաշատում։

Արտաշատ քաղաքի իսպառ կործանումը սաստկացրել էր հայ ժողովրդի զայրույթը և ատելությունը հռոմայեցիների դեմ, և Կորբուլոնի՝ Արտաշատից Տիգրանակերտ շարժվող բանակի ճանապարհին շարունակվեց պարտիզանական լեռնային պատերազմը։

[1] «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 45—46։

[2] Տե՛ս Սեբեոս, Ս. Պետերբ., 1879, գլ. ԻՁ, էջ 94, Ղևոնդ, Ս. Պետերբ., 1887, գլ. Ը, էջ 24։

[3] Tac., Annales, XIII, 41. Համեմատե նաև Cass. Dio, LII, 20, 1.

Հռոմեական զորքը ենթարկվեց այս ճանապարհին, գլխավորապես, մարդերի հարձակումներին։ Երբ Կորբուլոնը, վկայում է Տակիտոսը[1], անցնում էր մարդերի երկրի միջով, որոնք ներխուժողների դեմ պաշտպանված էին լեռներով՝ սրանք, որ վարժ էին ավազակության՝ հարձակվեցին հռոմեական բանակի վրա։ Այս ռազմիկ ցեղի դեմ Կորբուլոնն ուղարկեց իբերներին և սրանց միջոցով ավերեց նրանց երկիրն ու նրանցից այսպիսով վրեժ առավ օտարների արյունով։

Կորբուլոնի ճանապարհն Արտաշատից Տիգրանակերտ, ինչպես և մարդերի դեմ կռիվների շրջանը, որոնք դեռ մինչև այժմ բավարար կերպով լուսաբանված չեն՝ ճշտիվ որոշվում են աշխարհագրական իմ և Մարկվարտի ուսումնասիրությունների օգնությամբ։

Գիտնականների մեծագույն մասը ենթադրել են, որ Կորբուլոնը՝ Արտաշատի կողմերից Տարոն անցնելու ժամանակ՝ ենթարկվել էր մարդերի հարձակման Մարդաստանում, որը գտնվում էր Վանա լճից դեպի արևելք[2]։ Այս ուղղությամբ Կորբուլոնի ճանապարհն Արտաշատից Տարոն և այնտեղից Տիգրանակերտ ոմանք մատնացույց են անում Բերկրիի, Ոստանի վրայով և Վանա լճի հարավային ափերով[3], ուրեմն՝ մոտավորապես այն գծով, որ բացատրական իր քարտեզում մատնանշել է Կոնրադ Միլլերը, որպես հավանական ուղի Պևտինգերյան քարտեզի Արտաշատ—Տիգրանակերտ գծի[4]։ Պրոֆ. Մարկվարտը Կորբուլոնի ճանապարհի այդ խիստ հեռավոր ու ոլորապտույտ ուղղությունը համարում է անհավանական ու անընդունելի և կարծում է ինքը, որ մարդերի երկիրը, որի միջով անցել էր Կորբուլոնը, գտնվել է Տարոնից դեպի հյուսիսարևելք[5]։

Մարկվարտի այս ենթադրությունը համապատասխանում է իմ եզրակացություններին Արտաշատ—Տիգրանակերտ գծի ուղղության մասին և կարելի է, իրոք, հավաստի համարել, որ Կորբուլոնի 59 թվի արշավանքի ճանապարհը պետք է ենթադրել Պևտինգերյան քարտեզի Բագավան—Ծումբ—Դոնեվանք—Բաստավան հին հաղորդակցության գծով, որը մանրամասն լուսաբանված է իմ «Հին

---

1 Annales, XIV, 23.

2 Տե՛ս Հյուբշման, Հին հայոց տեղւոյ անունները, էջ 60, ծան. 1. Адонц Армения в эпоху Юстиниана, էջ 417։

3 Տե՛ս օրինակ, Sandalgian, Histoire documentaire de l'Arménie, t. II,, էջ 522. *Henderson,* The life and principate of the emperor Neron, և ուրիշ.։

4 Տե՛ս *K. Miller,* Itineraria Romana, էջ 745—746։

5 *J. Markwart,* Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, էջ 23։

*Հայաստանի գլխավոր ճանապարհները» ուսումնասիրության մեջ (էջ 85—114)։ Ըստ նոր լուսաբանության Տակիտոսի մոտ հիշատակված մարդերի բնակության շրջանը պետք է որոնել Արածանիի հովտի լեռնային վերին շրջաններում։ Պետք է ասել, որ ըստ այս բացատրության մարդերի բնակության շրջանը չի կարող լինել հին Մարդաղի գավառը, ինչպես այդ ենթադրում է Լեոն*[1]*, որովհետև այս գավառը, որը գտնվում էր այժմյան Բինգյոլի հյուսիսակողմում՝ հեռու էր շատ մեր որոշած Արտաշատ—Տիգրանակերտ գծից։*

*Հայաստանի լերկ ու ջրազուրկ լեռներում հռոմեական զորքերը, ինչպես պատմում է Տակիտոսը*[2]*, շատ էին նեղվել ճանապարհի դժվարություններից, ամառային տոթից և պաշարի ու ջրի պակասությունից։ Բայց հետո նրանք, իջնելով մշակված դաշտային շրջանները, քաղել էին այնտեղ առատ հունձ։ Մինչև Տարոն հասնելը հռոմայեցիները գրոհով ու պաշարումով վերցրել էին երկու բերդ, որոնց մեջ ամրացել ու պաշտպանվում էին հայերը։ Այդ բերդերի տեղադրությունը կարելի է ենթադրաբար որոշել։ Պևտինգերյան քարտեզում Հայկական Պար կամ Աղրի-դաղ լեռնաշղթայի հարավակողմում, Տիգրանակերտ տանող ճանապարհի վրա, Բագավան* (*Bagauna) *և Ծումբ* (*Tsumbo) *կայարանների մոտ նշանակված են զույգ աշտարակներ, որոնք, ըստ երևույթին, ցույց են տալիս, որ այս կայարանները եղել են բերդապահ զորքի կայաններ։ Անհավանական չէ, ուրեմն, որ Կորբուլոնը կարող էր գրաված լինել հենց այս ամրությունները։*

*Երբ Կորբուլոնն արդեն հասել էր Տարոն, որը Տակիտոսի մոտ անվանված է* regio Taraunitium *(«երկիր տարաունիտների»)՝ նրան այնտեղ ներկայացան Տիգրանակերտից ուղարկված պատգամավորները, որոնք հանձնեցին նրան ոսկե պսակ և հայտնեցին, որ քաղաքի դռները բաց են նրա առջև։*

*59 թվի վերջերին Կորբուլոնը գրավեց Հայաստանի նաև այս մեծ քաղաքը, Տիգրանակերտը, և որովհետև քաղաքացիներն առանց ընդդիմության անձնատուր էին եղել իրեն՝ նա այդ քաղաքը խնայեց և չկողոպտեց*[3]*։ Բայց Տիգրանակերտի հյուսիսակողմում,*

---

[1] **Լեո,** *Հայոց պատմություն, հատ. Ա, Թիֆլիս, 1917, էջ 461։*

[2] Annales, XIV, 24.

[3] *Տե՛ս* Annales, XIX 24 *և Cass. Dio*, LXII, 20. *Հակառակ Տակիտոսի և Դիոնի տված վկայություններին՝ Փրոնտինուսը հաղորդում է, որ Տիգրանակերտը գրավված էր կարճատև պաշարումից հետո։ «Երբ Դոմետիոս Կորբուլոնը,—ասում է Փրոնտինուսը* (Strategemata, II, 9, 5),*—պաշարել էր Տիգրանակերտը և թվում էր, որ հայերը համառ կերպով դիմանալու էին պաշարմանը՝ նա մեծամեծների միջից, որոնց բռնել էր՝ պատժեց Վադանդին և նրա կտրած*

ինչպես վկայում է Տակիտոսը[1], Կորբուլոնին համառ դիմադրություն ցույց տվեց Լեգերդա (Legerda, այժմյան Լիճե կամ Իլիճա) ամրոցը, որը գտնվում էր Տիգրանակերտից Բալու տանող ճանապարհի վրա։ Այդ ամրոցը, որի մեջ ամրացել էր անվեհեր երիտասարդությունը՝ վերցվեց գրոհով երկար դիմադրությունից հետո[2]։ Պարտիզանական համատարած պատերազմը Հայաստանում և ամրությունների ուժեղ դիմադրությունը կապ են ունեցել, հավանորեն, Տրդատի ձեռնարկած նոր արշավանքի հետ, որը Ատրպատականից ներխուժել էր Հայաստան իր կորցրած թագավորությունը վերագրավելու նպատակով։ Սակայն նա այս անգամ ևս հաջողություն չունեցավ, և հռոմեական զորքերը հարկադրեցին նրան վերադառնալ Ատրպատական։

Արտաշատի և Տիգրանակերտի գրավումից հետո Հայաստանը համարվեց վերջնականապես նվաճված։ Այս առթիվ Հռոմում կատարվեցին մեծ տոնահանդեսներ, և Ներոնը հռչակվեց «իմպերատոր» հինգերորդ (կամ թերևս վեցերորդ) անգամ։ Հատկապես Արտաշատ քաղաքի նվաճման առնչությամբ ծերակույտը որոշել էր, որ տոն օրեր հայտարարվեն թե այդ հաղթության, թե այդ մասին հայտարարման և թե ծերակույտին զեկուցելու օրերը։

Հասած լինելով իր նպատակին՝ Հռոմը այժմ պետք է կարգավորեր Հայաստանի քաղաքական դրության խնդիրը, և Ներոնը, հետևելով այս անգամ Օգոստոսյան նախկին քաղաքականության՝ Հայաստանի թագը տվեց Հռոմում ապրող նոր թեկնածուի, Տիգրան Զ-ին, որը Հայաստանի Տիգրան Ե. թագավորի Աղեքսանդր եղբոր որդին էր (60 թվ. մեր թվ. հ.)։ Տակիտոսի վկայությամբ՝ սա երկար ժամանակ պատանդ էր եղել Հռոմում և ստորաքարշ ու համբերող էր դառել, ինչպես ստրուկները։ Տիգրան Զ-ը գահ նստեց Տիգրանակերտում 60 թվին մեր թվականությունից հետո։

Հայ ժողովրդի ստվար մեծամասնությունը դեմ էր այս նոր

---

գլուխը նետիչ մեքենայով գցեց թշնամիների ամրության մեջ։ Այդ գլուխը, որ օտարազգիների մոտ ամենամեծ հարգանքն էր վայելում, ընկավ պատահմամբ ժողովականների մեջտեղը. տեսնելով գլուխը և սարսափահար լինելով իբր հրաշքից՝ նրանք շտապեցին անձնատուր լինել»։

[1] Annales, XIV, 25.

[2] Գարագաշյանը («Քննական պատմություն Հայոց», Բ, էջ 219), Խալաթյանցը („Очерк истории Армении", էջ 277) և ուրիշները սխալմամբ կարծում են, որ երիտասարդությունն ամրացել էր ու պաշտպանվում էր Տիգրանակերտի միջնաբերդում։ Իսկ Յուստին (Geschichte Irans, էջ 505, ծան. 5) Լեգերդայի տեղը սխալմամբ ենթադրել է Մազարայից դեպի հյուսիս-արևելք։ Լեգերդայի տեղը (=Իլիճա) որոշել է Լեման-Հաուպտը, տե՛ս Armenien einst und jetzt, I, 522.

*թագավորին, որը կույր ու հնազանդ գործիք էր լինելու Հռոմի ձեռին։ Նա կողմնակից էր Տրդատ Արշակունուն, որն իր թագավորության ընթացքում շահել էր հայերի վստահությունն ու համակրանքը։ Այդ իսկ պատճառով Կորբուլոնը, որը նշանակված էր Ասորիքի կուսակալ, Հայաստանից հեռանալիս՝ Տիգրան Զ-ի գահը ներքին խռովություններից ապահովելու համար՝ Տիգրանակերտում թողեց 1000 հոգուց բաղկացած հռոմեական մի զորամաս և մոտ 3—4000 հեծելազոր ու հետևազոր դաշնակիցների զորքերից։ Միևնույն ժամանակ նա, Տիգրան Զ-ի լռելյայն համաձայնությամբ, Հայաստանի սահմանային որոշ շրջանները պարգևեց Կոմմագենի, Փոքր Հայքի, Պոնտոսի և Իբերիայի դաշնակից թագավորներին՝ Անտիոքոս Դ-ին, Արիստոբուլոսին, Պոլեմոն Բ-ին և Փարասմանին, որոնք օգնել էին իրեն նվաճելու Հայաստանը։*

*Հայկական պատերազմից և Հայաստանին թագավոր տալուց հետո՝ իր առաքելությունը Հայաստանում կարող էր Կորբուլոնը համարել ավարտված։ Սակայն, իրապես, Հայկական հարցի լուծումը, որ կատարվել էր առանց պարթևների համաձայնության՝ չէր կարող հարկավ լինել հաստատուն ու հարատև։ Անհրաժեշտ էր, իհարկե, որ կատարված փաստը հարկադրված լինեին ընդունելու նաև պարթևները։ Իսկ դրա համար հարկավոր էր հարված հասցնել ու պարտության մատնել, բացի Տրդատից, նույնպես և Վաղարշ Ա-ին, որի դեմ Պարթևական թագավորության արևելյան կողմերում համառորեն կռվում էր Հռոմի բարեկամ Վրկանը։*

*Իր թագավորության առաջին իսկ տարում, 61 թվի գարնանը մեր թվականությունից հետո, Տիգրան Զ-ը, իհարկե, հռոմեական տերերի իր դրդումով՝ հարձակվեց պարթևական գերիշխանության տակ գտնվող Ադիաբենի վրա և Հայաստանի հարևան այդ երկիրը մատնեց ավերածության և կողոպուտի։ Հռոմեական կառավարության գրգիչ այս ագրեսիան, որի իսկական դրդապատճառը եվրոպական պատմագիտության մեջ բավարար կերպով ուշադրության չէ առնվել, ըստ երևույթին, նպատակ է ունեցել հարկադրելու Վաղարշին, որն այդ ժամանակ պատերազմում էր ապստամբների դեմ Վրկանում՝ որ նա, դրվելով երկընտրանքի մեջ, Արտավան Գ-ի նման համաձայնություն գա Հռոմի հետ և ընդունե Հայաստանում հաստատված կարգը։*

*Բայց այս անգամ հռոմեական քաղաքագետների հաշիվները ճիշտ դուրս չեկան։ Հռոմայեցիների ոտնձգությունները և Ադիաբենի ավերածությունն առաջ բերին Պարթևստանում ընդհանուր զայրույթ ու վրդովմունք։ Վաղարշ Ա-ը, ազդվելով այդ տրամա-*

դրությունից՝ դադարեցրեց ներքին խռովությունները և, հաշտություն կնքելով արևելքում ու ճանաչելով Վրկանաց աշխարհի անկախությունը՝ պարթևական ամբողջ զորքով շարժվեց դեպի արևմուտք և պատերազմ սկսեց Տիգրան Զ-ի և նրան հովանավորող Հռոմի դեմ։

Տիգրան Զ-ի արշավանքն Ադիաբեն, ինչպես վկայում է Տակիտոսը, համբերությունից հանել էր, մանավանդ, Ադիաբենի թագավոր Մոնոբազին և Հայաստանից վտարված Տրդատին։

> «Նմանապես և գահից հալածված Տրդատը,—պատմում է Տակիտոսը[1],—առանձնապես ծանր տպավորություն էր թողնում իր լռությամբ ու զուսպ տրտունջներով։ Անգործությամբ չէ, ասում էր նա, որ պահպանվում են մեծ պետությունները, այլ մարդկանց ու զենքերի մղվող պայքարով։ Մարդկային ամենաբարձր վիճակում նա է առավել արդարացի, ով ավելի հզոր է։ Պահել այն, ինչ որ իրենն է՝ մասնավոր մարդկանց գործ է, իսկ ուրիշների ունեցածի համար կռիվ մղելը՝ կազմում է թագավորների փառքը»։

Նկատելով այս մեծ դժգոհությունը՝ Վաղարշ Ա-ը հանդիսավոր ժողով գումարեց, նստեցրեց Տրդատին իր կողքին և դնելով նրա գլխին Հայաստանի թագը՝ իր պահնորդական հեծելազորի հրամանատար Մոնեսին և Ադիաբենի թագավոր Մոնոբազին հրամայեց ուղեկցել Տրդատին Հայաստան, դուրս քշել այնտեղից Տիգրան Զ-ին և հաստատել հայկական գահի վրա իր եղբորը։ Իսկ ինքը հավաքեց նույնպես մեծ զորք և շարժվեց դեպի Միջագետք ու սպառնում էր այստեղից հռոմեական Ասորիքին[2]։

Այսպիսով 61 թվին մեր թվականությունից հետո սկսվեց Հռոմի համար ծանր ու վտանգավոր պատերազմը պարթևների հետ, որին մասնակցելու էր նաև Հայաստանի մեծագույն մասը, որը ջերմ կուսակից էր Տրդատ Ա-ին։ Կորբուլոնը, տեղեկություն ստանալով պարթևական զորքերի հարձակման անցնելու մասին՝ իսկույն գուշակեց քաղաքական այս նոր դրության վտանգավորությունը և հասկացավ, որ այժմ հարկավոր կլինի համառ ու դժվար պատերազմ մղել և՛ պարթևների և՛ հայերի դեմ։ Նա, իհարկե, չէր ուզում, որ հայկական պատերազմում ձեռք բերած իր փառքը ենթարկվի վտանգի, ուստի և դիմեց Ներոնին և հայտնելով նրան, որ ինքը՝ իբրև Ասորիքի կուսակալ՝ պիտի պաշտպանե իր նահանգի

---

[1] Annales, XV, 1.

[2] Տե՛ս Tacitus, Annales, XV, 2 և Cass. Dio, LXII, 20, 2.

*սահմանները, խնդրեց, որ Հայաստանի համար նշանակվի մի այլ զորավար։*

*Պատերազմի հենց սկզբում Կորբուլոնը խուսափեց իր պատասխանատվությունը տակ առնել այս վտանգավոր պատերազմը և բավականացավ միայն նրանով, որ Տիգրան Զ-ին օգնության ուղարկեց երկու նոր լեգեոն փորձված հրամանատարների առաջնորդությամբ։ Իսկ ինքն ամրացավ Եփրատ գետի ափին, որպեսզի պաշտպանե հարձակումից Ասորիքը։*

*Զինայած իր ստացած օգնության, Տիգրան Զ-ը խույս տվեց կռվից Տրդատի հետ և հռոմեական զորքերի հետ պատսպարվեց Տիգրանակերտ քաղաքի ամուր պարիսպների ետևում։ Պարթևները եկան պաշարեցին Տիգրանակերտը, բայց, ընդունակ չլինելով ամրացրած բերդաքաղաքների դեմ պաշարողական պատերազմ վարելու՝ քաղաքը չկարողացան առնել։*

*Պետք է ասել, որ Տակիտոսի մոտ, որի աղբյուրը «Տարեգրություններ»-ի այս մասում Կորբուլոնի «Հիշատակարաններն» էին՝ մատնացույց է արված, որ իբր թե հռոմեա-պարթևական այս պատերազմի սկզբում հաջողությունը հռոմայեցիների կողմն էր և որ իբր թե Վաղարշ Ա-ը հուսախաբված էր իր զորքերի ծանր դրության պատճառով*[1]*։ Կասսիուս Դիոնը, որն օգտվել է նույն այդ աղբյուրներից՝ նույնիսկ մատնանշում է, որ հուսալքված Վաղարշը Կորբուլոնից զինադադար էր խնդրել և համաձայնել էր Տիգրանակերտի պաշարումը վերացնել, իր զորքերը դուրս հանել Հայաստանից և խաղաղության դաշն կնքելու համար ուղարկել Ներոնի մոտ դեսպաններ*[2]*։ Սակայն Կորբուլոնի զեկուցագրի այս տեղեկությունները, որ Գուտշմիդը իրավացի կերպով համարում է, ինչպես և բոլոր հռոմեական ինքնակենսագրությունները, «չափից դուրս ստախոս գիրք»*[3]*, միանգամայն անվստահելի են ու անհավատալի։*

*Ուշագրավ է այս տեսակետից, որ հենց ինքը Տակիտոսը քննադատաբար է վերաբերվել դեպի Կորբուլոնի այդ տեղեկությունները և պարզ կերպով մատնանշել է, որ բանակցությունների ու զինադադարի կնքման նախաձեռնողը եղել է ո՛չ թե Վաղարշ Ա-ը, այլ Կորբուլոնը, որն ուզեցել է հետաձգել պատերազմը, որպեսզի պարթևների դեմ կռիվ մղե ո՛չ թե ինքը, այլ նոր զորավարը, որ Հռոմից ուղարկված էր Հայաստան*[4]*։*

---

1 *Tacitus,* Annales, XV, 5.

2 *Cass. Dio,* LXII, 20, 3—4.

3 *Տե՛ս Gutschmid,* Geschichte Irans, էջ 131։

4 *Tacitus,* Annales, XV, 6.

Առանձնապես հետաքրքրական են և կնքված զինադադարի պայմանները, որոնք բացահայտ կերպով վարկաբեկիչ էին Հռոմի պրեստիժի համար։ Ըստ այդ պայմանների՝ Վաղարշ Ա-ը համաձայնեց դեսպանություն ուղարկել Հռոմ և խնդրել, որ Հայաստանի գահը տրվի իր եղբորը, և նա հրամայեց Մոնեսին դադարեցնել պատերազմը, վերացնել Տիգրանակերտի պաշարումը և իր զորքերը դուրս հանել Հայաստանից։ Իսկ Կորբուլոնը նույնպես դուրս տարավ Տիգրանակերտից ու Հայաստանից Տիգրան Զ-ին պաշտպանող հռոմեական զորաբանակը։

Այս կարգադրության հետևանքը եղավ, բնականաբար, Տիգրան Զ-ի հեռացումը Հայաստանից ու նրա գահընկեցությունը։ Հռոմայեցիների համար վարկաբեկիչ էր, մանավանդ, այն, որ Հայաստանը, Տիգրան Զ-ի հեռանալուց հետո, ինչպես Տակիտոսի շփոթ ու տատամսող վկայություններից անուղղակի կերպով եզրակացնում է Մոմզենը, տրվեց Տրդատին, որը նորից վերագրավեց իր թագավորությունը[1]։

Վաղարշ Ա-ի խաղաղության առաջարկը Հռոմում չընդունվեց, և նրա դեսպաններին Ներոնը տվեց, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը, խուսափողական ու անորոշ պատասխան[2]։ 61 թվին մեր թվականությունից հետո Արևելք ուղարկվեց, իբրև Կապպադովկիայի կուսակալ և իբրև հրամանատար Հայաստան արշավող հռոմեական բանակի՝ Կեսեննիուս Պետուսը։ Հռոմն այս անգամ նորից հրաժարվել էր Օգոստոսյան արևելյան քաղաքականությունից և վճռել էր Հայաստանը վերագրավել ու վերածել հռոմեական նահանգի։ Ինչպես վկայում է Տակիտոսը[3], Պետուսը, գալով Կապպադովկիա՝ հայտարարեց, որ ինքը հաղթվածների վրա դնելու է հարկ, սորրադրելու է նրանց հռոմեական օրենքներին և թագավորի փոխարեն, որը միայն ստվեր էր, ենթարկվելու է նրանց հռոմեական իշխանության։

Ներոնի այս նոր քաղաքականությունը միանգամայն հետևողական էր, որովհետև երկարատև փորձը պետք է համոզած լիներ հռոմեական քաղաքագետներին, որ հայ ժողովրդի ստվար մեծամասնությունը չէ հանդուրժելու Հռոմի ընտրած թագավորներին, որոնք նրա կամազուրկ համախոհներն էին ու արբանյակները, և որ սրանց պահպանումը հնարավոր էր լինելու միմիայն հռոմեական զենքի ուժով և դրամական մեծ ծախսերի միջոցով։ Եթե

[1] *Տե՛ս Mommsen,* Römische Geschichte, V, *էջ 388, ծան. 1։*
[2] *Cass. Dio,* LXII, 20, 4.
[3] *Tacitus,* Annales, XV, 6.

Հռոմը, ինչպես շատ ճիշտ նշում է Մոմզենը[1], չէր ուզում Հայաստանը թողնել Տրդատին՝ նա պետք է, բնականաբար, աշխատեր այդ թագավորությունը վերածել հռոմեական նահանգի։ Իսկ այս քաղաքականության շնորհիվ, բնականաբար, այժմ վտանգի էր ենթարկվելու ո՛չ միայն հայ պետության անկախությունն ու ինքնուրույնությունը, այլև նրա գոյությունը։

61 թվի ամառը մեր թվականությունից հետո հռոմեական նոր զորավարը, որը Մելիտենի վրայով մտել էր Ծոփք, ուզեց անցնել Տավրոսյան լեռները և նորից վերցնել Տիգրանակերտը, որը հռոմեական զորքերը դատարկել էին մի տարի առաջ։ Ծոփքից նա իջավ Ծովք լճի մոտով այժմյան Արղանայի կողմերը և, երկար դեգերումներից հետո, որոնց նպատակն էր Հայաստանի այս մասերի ավերումն ու կողոպտումը՝ գրոհով գրավեց այստեղ մի քանի հայկական ամրություններ։ Սակայն որովհետև ձմեռն արդեն վրա էր հասնում՝ նա իր զորքերը ետ տարավ Խարբերդի դաշտը և որոշեց ձմեռել մոտակա ամրացրած տեղերում։

Կորբուլոնը, որի փոխհարաբերությունը Պետուսի հետ արդեն պատերազմի սկզբից վատ էր՝ 62 թվի մեծ կռիվներին գրեթե չմասնակցեց։ Նա կառուցեց Եփրատ գետի վրա, հավանորեն, այժմյան Ջեզմայի մոտ, ամրություններ և նավակամուրջ և իր երեք լեգեոններով պաշտպանում էր Ասորիքը պարթևական հարձակումից։ Իր մեծ զորաբանակի հետ Վաղարշ Ա-ը գտնվում էր այդ ժամանակ Կորբուլոնի զորքերի դիմաց Միջագետքում։ Տեսնելով որ Ասորիքի վրա հարձակվելը հնարավոր չէ՝ նա իր մեծ ուժերով մտավ Հայաստան, ուր հայ-պարթևական զորքերն արդեն գրավել էին Տիգրանակերտը, և կարճ ճանապարհով, Տիգրիս գետի հովիտներով, գնաց դեպի Ծոփք Պետուսի դեմ։ Տավրոսի լեռներն անցնելիս պարթևները պարտության մատնեցին և ետ շպրտեցին հռոմեական բոլոր զորամասերը, որոնք պահպանում էին լեռնանցքները։

Այնուհետև նրանք իջան Խարբերդի դաշտը, ուր գտնվում էր հռոմեական հյուսիսային բանակը։ Պետուսն իր հեծելազորի մի մասը տեղավորել էր դաշտում, իր կնոջն ու երեխային, նաև ապաշարքայիններին, պատսպարել էր Արածանիի հարավակողմում գտնվող Արշամաշատ ամրոցում (այժմյան Նաչարանի ու Խարաբայի միջև[2]), իսկ կռվող զորքը ետ էր քաշել ու ամրացրել էր

[1] Römische Geschichte, V, էջ 389։

[2] Տե՛ս E. Huntigton, Verhandl. des Berlin. Anthrop. Gesell. 1900, էջ 149։ Համեմատե J. Markwart, Südarmenien und die Tigrisquellen, էջ 240—241։

ճամբարի մեջ Արածանիի ափին Հռանդեյայի մոտ, որն Ադոնցը ենթադրաբար նույնացնում է Փավստոսի հիշատակած Եռանդ տեղանվան հետ[1]։

Հռոմեական զորքերը, որոնք արդեն պարտության էին մատնվել Տավրոսյան լեռներում ու նաև դաշտում՝ այնքան էին սարսափել թշնամուց, որ չհամարձակվեցին դուրս գալ իրենց ամուր դիրքերից։ Զինվորական կարգապահությունը զորքի մեջ հետզհետե թուլացավ, և մեծ չափեր ընդունեց նաև դասալքությունը։

Պետոսը, որ հուսահատվել ու իրեն կորցրել էր՝ օգնություն խնդրեց Ասորիքում գտնվող իր ընկերակցից, բայց միևնույն ժամանակ, չսպասելով նրա պատասխանին՝ բանակցությունների մեջ մտավ Վաղարշ Ա-ի հետ, որն արդեն շրջապատել ու պաշարել էր նրա զորքը։ Եվ օգնության հասնելուց երեք օր առաջ, երբ Կորբուլոնն անցել էր Կոմմագենի միջով և հասել էր Մելիտենի շրջանը և գտնվում էր Եփրատի սահմանի մոտ՝ արդեն Հռանդեյայում կնքվում էր հռոմայեցիների համար ամոթաբեր զինադադարի դաշինքը, որի համաձայն Պետոսը ամբողջ իր զորքով անձնատուր եղավ պարթևներին (62 մեր թվ. հ.)։

Պաշարված հռոմայեցիները, որոնց հետ բանակցել էր հեծելազորի հրամանատար Վասակը (որը, ըստ երևույթին, հայ էր), համաձայնել էին հանձնել պարթևներին իրենց գրաված բոլոր ամրությունները, իրենց զենքերն ու պարենի պաշարները և պարտավորվել էին դուրս գալ Հայաստանից։ Վաղարշ Ա-ը համաձայնել էր դեսպանություն ուղարկել Հռոմ և խնդրել, որ Հայաստանի գահը տրվի Տրդատին։ Իսկ Պետոսը երդում էր տվել ու խոստացել, որ մինչև բանակցությունների վերջանալը Հռոմում հռոմայեցիներից ոչ ոք չպետք է ներս մտներ Հայաստան։

Հռոմեական զորքի ամոթալի փախուստը Հայաստանից մանրամասն նկարագրված է Տակիտոսի մոտ[2]։ Պետոսը, ինչպես վկայում է Տակիտոսը, մի օրվա ընթացքում անցել էր քառասուն հռոմեական մղոն (մոտ 60 կիլոմետր), թողնելով ճանապարհին վիրավորներին։ Հռոմայեցիների համար ստորացուցիչ էր նաև նրանց ճամբարից դուրս գալը և մեկնումը Հայաստանից։

«Լուր էր պտտում,—պատմում է Տակիտոսը[3],—որ լեգեոններն անց էին կացվել լծի տակով[4], պատմում էին և այլ

---

1 Տե՛ս „Армения в эпоху Юстиниана“, էջ 36—37։

2 *Tacitus*, Annales, XV, 15—16.

3 Նույնը, XV, 15։

4 Գետնի մեջ խրված երկու նիզակների վրա դրվում էր երրորդը, և հաղթվածներն անցնում էին միջով, դեն գցելով իրենց զենքերն ու վերնազգեստը։

*դժբախտ պատահարների մասին, նաև այն, որ նման արարքներ հայերն էին գործել։ Որովհետև սրանք, նախքան հռոմեական զորքի հեռանալը՝ մտել էին ամրացրած ճամբարը, շրջապատել էին ճանապարհները և, նկատելով երբևիցե իրենցից խլված ծառաներին ու գրաստներին՝ վերցնում ու տանում էին։ Նրանք զոռով վերցնում էին հագուստեղենն ու պահած զենքերը, իսկ վախեցած զինվորները զիջում էին, որպեսզի կռվի ո՛չ մի առիթ չծագի»։*

*Հայկական հարցի կարգավորման համար Հռանդեյայի մեծ աղետն ունեցավ, բնականաբար, մեծ նշանակություն։ Նա ցույց տվեց պարթև-հայկական միության հզորությունը և հարկադրեց Հռոմին չափավորել իր պահանջները Հայաստանի նկատմամբ, որը նա, ինչպես վերև տեսանք, որոշել էր դարձնել հռոմեական նահանգ։*

*Իր մեծ հաղթությունից հետո Վաղարշ Ա-ը բանակցության մեջ մտավ նաև Կորբուլոնի հետ և պահանջեց նրանից քանդել Եփրատ գետի վրա կառուցված ամրությունները և կամուրջը։ Կորբուլոնը, ի նկատի առնելով Պետուսի հետ կնքված դաշինքը՝ ինքը ևս զինադադար կնքեց և քանդեց ամրություններն ու կամուրջը։ Եվ Հայաստանում, որի միջից Վաղարշ Ա-ը համաձայնել էր դուրս հանել պարթևական զորքերը՝ մնաց իբրև թագավոր Տրդատը*[1]*։*

*63 թվի գարնանը պարթևական դեսպանությունը եկավ Հռոմ և հանձնեց Ներոնին, ինչպես վկայում է Տակիտոսը*[2]*, հաղթող թագավորի նամակը։ Այդ նամակի մեջ Վաղարշ Ա-ը մատնանշում էր պարթևների զինվորական գերակշռությունը, բայց հայտնում էր, որ ի սեր ընդհանուր խաղաղության ինքը համաձայն է, որ Տրդատը, որն իր քրմական պարտականությունների պատճառով չէ կարող գալ Հռոմ՝ գնա հռոմեական դրոշակների ու կայսեր արձանի մոտ և այնտեղ հռոմեական լեգեոնների ներկայությամբ ստանա իր արքայական թագը։*

*Վաղարշ Ա-ի խաղաղության առաջարկը դժվար էր, իհարկե,*

---

1 *Տե՛ս Anderson*, Cambridge Ancient History, *էջ 770։ Հայկական ու պարթևական պատերազմների ժամանակագրության նկատմամբ գոյություն ունեն որոշ տարաձայնություններ։ Հավանական կարելի է համարել ըստ իս Անդերսոնի տվյալները։ Համեմատե նաև Henderson B. W.*, The Chronology of the wars in Armenia A. D. 51—63, Classical Review, XV, 1901 *և Anderson* G., Review of Henderson's Chronologie, Jahresber. d. philol. Vereins zu Berlin, XXVII, 1901.

2 *Tacitus*, Annales, XV, 24.

*ընդունել, որովհետև Հռոմի համաձայնությունը, ինչպես շատ ճիշտ մատնանշում է Մոմզենը*[1], *կարող էր հասկացվել իբրև վավերացում Հռանդեյայի խայտառակ անձնատրության դաշինքի։ Իսկ այդ վիրավորական էր Հռոմի ինքնասիրության և վարկաբեկիչ էր նրա հեղինակության համար։*

*Ներոնը խորհրդակցություն ունեցավ ականավոր պետական գործիչների հետ և նրանց համաձայնությամբ որոշեց պատերազմը շարունակել։ Հռոմ եկած պատգամավորությանը նա առատ նվերներ տվեց և պատասխանեց նրանց, որ ինքը պատրաստ է տալու Տրդատին Հայաստանի թագը, եթե նա անձամբ գա Հռոմ և իրեն հպատակություն հայտնե*[2]*։*

*Պետուսի փոխարեն Կապպադովկիայում նորից կուսակալ նշանակվեց Կորբուլոնը, որին, ինչպես և 67 թվին (մեր թվ. առաջ) Պոմպեյոսին, տրվեցին արտակարգ իշխանություն* (maius imperium) *և մեծ զորաբանակ։ 64 թվի գարնանը մեր թվականությունից հետո, երբ Հայաստան արշավելու համար բոլոր նախապատրաստությունները ավարտված էին, իր հզոր բանակի գլուխն անցած՝ Կորբուլոնը մտավ Ծոփք, որը, ինչպես և 60 թվին (մեր թվ. հ.) Հայաստանից անջատված սահմանային մյուս շրջանները, նորից միացվել էր Մեծ Հայաստանին։ Նրա ճանապարհի ուղղությունը Տակիտոսի մոտ մատնանշված է Մելիտենի վրայով և նույն այն ռազմուղիով, որով 69 թվի գարնանը (մեր թվ. առաջ) Հայաստան էր ներխուժել Լուկուլլոսը*[3]*։*

*Ինչպես որոշակի վկայում է Կասսիուս Դիոնը, Կորբուլոնը, թեև արտաքուստ պատերազմի էր պատրաստվում Վաղարշ Ա-ի դեմ, սակայն մասնավոր կերպով, արշավանքից առաջ, նրան նորից խորհուրդ տվեց համաձայնություն կնքել և ուղարկել Տրդատին Հռոմ*[4]*։ Դժվար չէ, ուրեմն, կռահել, որ Կորբուլոնը չէր ուզում, որ պատերազմը տեղի ունենա, և աշխատում էր վերականգնել Հռոմի հեղինակությունն ու պատիվը խաղաղ ճանապարհով։*

*Ինչպես որ Կորբուլոնը ծրագրում էր՝ այնպես էլ եղավ։ Համաձայնությունը շուտով գլուխ եկավ։ Պատերազմական գործողությունները դեռ չսկսված՝ Կորբուլոնի մոտ եկան և խաղաղության բանակցություններ վարեցին Վաղարշ Ա-ի և Տրդատի դեսպանները։*

---

[1] Römische Geschicte, V, *էջ 391։*

[2] *Տե՛ս Cass. Dio,* LXII, 22, 3. *Համեմատե նաև Tacitus,* Annales, XV, 25.

[3] *Տե՛ս Tacitus,* Annales, XV, 27. *Համեմատե նաև իմ աշխատությունը «Տիգրան Բ և Հռոմը», էջ 97—99։*

*[Տե՛ս նաև սույն հատորում, էջ 491—493. խմբ]։*

[4] *Cass. Dio,* LXII, 23, 1.

Այնուհետև Կորբուլոնը և Տրդատն անձամբ տեսակցություն ունեցան, և վերջինս տվեց իր համաձայնությունը հռոմեական պահանջը կատարելու և ստանալու Հայաստանի թագը Հռոմում։

Մի քանի օրից հետո հռոմեական լեգեոնների և պարթևական հեծելազորի ներկայությամբ տեղի ունեցավ նրանց հանդիսավոր նոր հանդիպումը Հռանդեյայում, ուր պարթևները պաշարել և պարտության էին մատնել Պետոսի զորքերը։ Այստեղ հրապարակի մեջտեղում կառուցված էր բարձր բեմ և բեմում հատուկ աթոռի վրա դրված էր Ներոնի անդրի-պատկերը։ Տրդատը համաձայն իրենց սովորության զոհեր մատուցեց և ապա, վերցնելով իր գլխից արքայական խույրը՝ դրեց կայսեր պատկերի առջև և հանդիսավոր կերպով խոստացավ, որ իր թագը ետ կստանա Ներոնի ձեռից։

Այնուհետև նա խոնարհական մի նամակ գրեց Ներոնին և, իր աղջկանը թողնելով որպես պատանդ՝ գնաց իր եղբայրների ու մոր հետ տեսնվելու և պատրաստվելու երկար ճանապարհորդության։ Հռանդեյայում կայացած համաձայնությունից հետո Կորբուլոնի զորքերի մի մասը, ըստ երևույթին, ժամանակավորապես մնացել էր Ծոփքում (64/65 մեր թվ. հ.)։ Հենց այդ տարիներից, ինչպես հայտնի է, Խարբերդի շրջանում պահպանվել են երեք հռոմեական արձանագրություններ, որոնք հաղորդում են, որ այդտեղ կառուցվել է այդ ժամանակ ինչ-որ մի բերդ[1]։

Տրդատի ճանապարհորդությունը Հռոմ մանրամասն նկարագրել է Կասսիուս Դիոնը, և այդ մասին լրացուցիչ տեղեկություններ տալիս են նաև Տակիտոսը, Պլինիոսը և Սվետոնիոսը[2]։ Տրդատը ճանապարհ էր ընկել մեծ շուքով, հավանորեն, 65 թվին մեր թվականությունից հետո։ Երիտասարդ թագավորին ուղեկցում էին իր ընտանիքը՝ կինը և երեխաները, Վաղարշ Ա-ի և Ատրպատականի ու Ադիաբենի թագավորներ Բակուրի և Մոնոբազի որդիները, 3000 հայ ու պարթև հեծյալներից բաղկացած շքախումբն ու նաև հռոմեական հատուկ մի զորամաս։

Քաղաքներն ու ժողովուրդները, որոնց միջով նրանք անցնում էին՝ նրանց ընդունում էին հանդիսավոր կերպով և մեծ պատվով ու ցնծությամբ։ Ուղևորության ամբողջ ծախսը, որ օրական կազմում էր մոտ 200.000 դենար-դրաքմե կամ 800.000 սեստերց

---

1 Տե՛ս *Anderson*, Cambridge Ancient History, էջ 772. Դր. Վ. Շուր, «Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը», էջ 72 և 147։

2 Տե՛ս *Cass. Dio*, LXIII, 1—7. *Tac.*, Annales, XVI, 24. *Plin.*, Nat. Hist. XXX, 16. XXXIII, 54 և *Sueton.*, Nero, XIII և ուրիշ.։

(= մոտ 200.000 ֆրանսական ոսկի ֆր.), հոգում էր կայսերական գանձարանը։ Ճանապարհորդությունը տևեց խիստ երկար՝ մոտ ինն ամիս։ Տրդատը, իբրև զրադաշտական և քուրմ, հրաժարվել էր գնալ ծովով, որովհետև ըստ զրադաշտական կրոնի ջուրը սրբազան տարր էր և նրան չէր կարելի պղծել աղտեղություններով։

Հայաստանից մինչև Իտալիա Արշակունի թագավորը, որը դեռ ծաղիկ հասակումն էր, գեղեցիկ ու բարձրահասակ՝ գնաց իր կնոջ հետ ձիով։ Թագուհին իր գլխին դրած ուներ ոսկե սաղավարտ, որով դեմքը ծածկած էր պահում ըստ իրենց երկրի սովորության։ Երբ Իտալիա հասան՝ նրանք նստեցին կառքերի մեջ, որ ուղարկել էր Ներոնը։

Այնուհետև նրանք եկան Նեապոլիս, ուր գտնվում էր Ներոնը։ Այստեղ նրանց ընդունեցին մեծ պատիվներով։ Երբ Տրդատը գնում էր ներկայանալու Ներոնին՝ նրան հրամայեցին, որ սուրը վրայից հանե, ինչպես այդ ընդունված էր կայսերական ունկնդրություն-ների ժամանակ։ Սակայն նա հրաժարվեց այդ անել և սուրը մե-խերով ամրացրեց պատյանին։

Մոտենալով կայսեր՝ նա խոնարհվեց նրա առջև և, մի ծնկի վրա չոքած ու ձեռքերը կրծքին խաչաձև բռնած՝ նրան անվանեց տեր[1]։ Ի պատիվ իր հյուրի Ներոնը Պուտեոլում սարքեց կրկեսային խաղեր և սուսերամարտություններ, և Տրդատը այնտեղ, ինչպես վկայում է Դիոնը, նետեր արձակեց գազանների վրա և միանգամից մի նետով սպանեց երկու ցուլ[2]։ Իսկ այնուհետև Ներոնը նրան տա-րավ Հռոմ, ուր կատարվեց թագադրության հանդեսը։

Հռոմն ամբողջ զարդարված էր ծաղիկներով, իսկ երեկոյան՝ հրավառության ճրագներով։ Քաղաքը դուրս էր թափվել տներից և ուզում էր թագավորին տեսնել։ Մինչև իսկ տների կտուրները լցված էին մեծ բազմությամբ։ Հրապարակի մեջտեղում, ուր պիտի կատարվեր մեծ հանդեսը՝ շարք-շարք կանգնել էր ժողո-վուրդը, սպիտակ շորեր հագած և դափնե պսակները գլուխներին, իսկ նրա շուրջը կանոնավոր շարքերով շարվել էր զինված զորքը։

Ներոնը եկավ հրապարակ, փայլուն հաղթական զգեստ հագած և շրջապատված ծերակուտականներով և թիկնապահ զորքով։ Նա

---

[1] Կարելի է ըստ իս ենթադրել, որ Տրդատի այս խոնարհումը Ներոնի առջև պարթևների և, հավանորեն, նաև հայերի մոտ ընդունված վասալական հպատա-կության ու հավատարմության հավաստիացումն էր և որոշ ծիսավորություն էր, որ համապատասխանում էր միջնադարյան Եվրոպայի hommagium-ին (=hom-mage) և Ռուսաստանի челобитье-ին։

[2] Տե՛ս Cass. Dio, LXIII, 1—7.

բարձրացավ բեմ և նստեց իր համար պատրաստված կայսերական հատուկ գահի վրա։ Այնուհետև եկան Տրդատը և նրա ուղեկիցները, որոնք առաջվա նման ծունկ իջան և խոնարհ գլուխ տվին։ Հետո Տրդատը հանդիսավոր կերպով հայտնեց, որ ինքն Արշակունի է, Վաղարշի և Բակուրի եղբայրն է, Ներոնի ծառան է և եկել է կայսեր մոտ նրան ողջունելու համար, որպես իր Միհր աստուծուն։ Իսկ Ներոնը պատասխանեց, որ տալիս է Տրդատին Հայաստանի թագավորությունը։ Ապա կայսրը նրան հրամայեց բարձրանալ իր մոտ, համբուրեց նրան, նստեցրեց գահի վրա մի աստիճան ցած և դրեց նրա գլխին հայկական թագը։ Հանդիսականները ցնծագին աղաղակներով ողջունեցին Հայոց թագավորին։

Հանդեսը վերջանալուց հետո հռոմեական ծերակույտի հրամանով տեղի ունեցավ շքեղ ներկայացում Պոմպեյոսի մեծ թատրոնի մեջ, որն ամբողջ, բոլոր իր կահկարասիքով զարդարված էր ու պատած ոսկով, թանկարժեք կերպասներով և ծիրանիով. և հենց այդ պատճառով հռոմայեցիներն այդ օրն անվանել էին «ոսկեօր»։ Ներկայացումը վերջացավ ճոխ խնջույքով։

Թագադրության տոնակատարությունները վերջանալուց հետո՝ Հայոց թագավորը, ինչպես վկայում է Կասսիուս Դիոնը՝ ստացավ Ներոնից զանազան նվերներ, որոնց արժեքը հասնում էր մոտ 50 միլիոն դենար-դրաքմեի կամ 200 միլիոն սեստերցի (=մոտ 50.000.000 ֆրանսական ոսկի ֆր.)։ Հռոմեական կայսրը թույլ տվեց, որ վերանորոգվի Արտաշատը և Տրդատն իր մայրաքաղաքի վերաշինության համար Իտալիայից տարավ իր հետ Հայաստան բազմաթիվ արհեստավորներ, որ նրան տվել էր Ներոնը։

66 թվին մեր թվականությունից հետո Տրդատն իր ուղեկիցների հետ վերադարձավ իր թագավորությունը և Հայաստանում նրա առաջին գործը եղավ Արտաշատի վերաշինությունը, որն ի պատիվ հռոմեական կայսեր անվանվեցավ Ներոնեյա (Neroneia), այսինքն՝ Ներոնի քաղաք[1]։

Հռոմեա-պարթևական փոխզիջական համաձայնության շնորհիվ, որը հետևանք էր, անշուշտ, հռոմայեցիների պարտության Հռանդեյայի մոտ, Հայաստանում վերջնականապես հաստատվեց պարթև Արշակունիների իշխանությունը և Հայաստանն այնուհետև դարձավ Արշակունիների երկրորդ թագավորությունը (Secundo-

[1] Ի հիշատակ հռոմայեցիների հաջողությունների հայկական և պարթևական պատերազմների ընթացքում Ներոնի ժամանակ կտրված են եղել 58, 61, 62 և 63 թվերին (մեր թ. հ.) պղնձե, արծաթե և ոսկե դրամներ՝ զանազան մակագրություններով։

genitur)։ Թեև Տրդատ Ա-ը Հայաստանի նկատմամբ ճանաչել էր Հռոմի գերիշխանությունը, սակայն Հռոմի այդ գերագույն իշխանությունը, ինչպես շատ ճիշտ մատնանշել էր Մոմզենը[1], դրեթե մի ձևականություն էր և ավելի անվանական էր, քան իրական։ Տրդատի փառահեղ հանդեսները փաստորեն ոչ այլ ինչ էին, քան Հռոմի զինվորական վարկը և քաղաքական հեղինակությունը փրկելու պատվավոր մի միջոց։ 66 թվից հետո (մեր թվ. հ.) Հայաստանը գտնվելու էր ակնհայտորեն ո՛չ թե հռոմեական, այլ պարթևական ազդեցության շրջանակի մեջ։

Տրդատ Ա-ի հանդիսավոր թագադրությունը տասնամյա պատերազմից հետո և Արշակունյաց թագավորության հիմնումը Հայաստանում պատմական, իհարկե, խոշորագույն անցքեր էին, ուստի և հայ ժողովրդական ավանդություններում նրանց հիշողությունը պահպանվել էր երկար դարերի ընթացքում։ Ինչպես արդեն ցույց է տվել Գարագաշյանը[2], այդ ավանդությունները պահված են մասամբ Խորենացու Արտաշես Բ-ի պատմության մեջ, որի գլխավոր աղբյուրն էր «Հայոց երգն վիպասանաց»։

Վիպասանքի համապատասխան հատվածներից պարզ երևում է, որ առաջին Արշակունի թագավորը Հայաստանում, ինչպես և Պոլեմոն Ա-ի որդին՝ Զենոնը (Արտաշես Գ-ը), կոչվել էին Արտաշեսյան թագավորության հիմնադրի անունով Արտաշես, որ եղել է, հավանորեն, Հայաստանի թագավորների տիտղոսը, ինչպես Արշակը պարթևների և Կեսարը հռոմայեցիների մոտ։

Վիպասանքի մեջ հիշված է եղել, օրինակ, որ Հայաստան եկել էր և պատերազմում էր Արտաշեսի դեմ «Դոմետ ոմն», որը, իհարկե, ո՛չ թե Դոմետիանոս կայսրն է, ինչպես սխալմամբ ենթադրում է Խորենացին, այլ հռոմայեցիների զորավար Դոմետիոս Կորբուլոնն է։

«Այս բանը կամենալով երգել առասպելների մեջ,—պատմում է Խորենացին,—ասում են, թե եկել էր մի ոմն Դոմետ, որ ինքը Դոմետիանոս կայսրն է. բայց ո՛չ թե ինքն էր եկել այստեղ, այլ նրա հրամանը և զորքերը այլաբանորեն նրա անունովն են կոչվում»։

[«Զայս կամելով երգել յառասպելսն՝ Դոմետ զոմն ասեն եկեալ, որ է ինքն կայսրն Դոմետիանոս. ոչ ինքն եկեալ

---

[1] Römische Geschichte, V, էջ 384։

[2] Տե՛ս «Քննական պատմություն», Բ., էջ 242—250։

այսր, այլ զհրաման նորա և զզօրս այլաբանելով յանուն նորա կոչեն»][1]։

Տրդատ Ա-ի մասին, բացի Վիպասանքի հիշատակությունից, գոյություն են ունեցել և այլ պատմական ավանդություններ, սակայն Խորենացու և Ագաթանգեղոսի մոտ այդ տեղեկությունները վերագրվել են Տրդատ Մեծին (297—330 մեր թվ. հ.)։ Տրդատ անունով նրանց հայտնի է եղել միմիայն Տրդատ Մեծն թագավորը։

Օրինակ, Ագաթանգեղոսի Պատմության 126-րդ գլխում մանրամասն նկարագրված է Տրդատ Մեծի ճանապարհորդությունը Կոստանդիանոսի մոտ Հռոմ ուղեկցությամբ Գրիգոր Լուսավորչի, Արիստակեսի և Աղբիանոսի, նաև չորս բդեշխների, նախարարների ու բազմաթիվ զորքի, որոնց թիվը, Ագաթանգեղոսի ասելով, հասնում էր մոտ 70.000-ի։ Գարագաշյանը միանգամայն ճիշտ է մատնանշում, որ Տրդատ Մեծի և Լուսավորչի այս երթը Հռոմ «լոկ կեղծիք» է[2] և արձագանք է Տրդատ Ա-ի ուղևորությանը Հռոմ, որ մանրամասն նկարագրված է հունա-հռոմեական աղբյուրներում։

Նույն այս Տրդատ Ա-ի ճանապարհորդությանն է վերաբերում, Ադոնցի կարծիքով[3], անգիր հին զրույցներից վերցված Ագաթանգեղոսի նաև մի այլ վկայությունը, որը վերագրված է դարձյալ Տրդատ Մեծին։ Խոսելով իր Պատմության 11-րդ գլխում Տրդատ Մեծի պատժական արշավանքների մասին Պարսկաստան և Ասորեստան՝ Ագաթանգեղոսը նրա այս անվերջ ասպատակությունների առթիվ տալիս է հետևյալ հետաքրքիր վկայությունը։

«Այս առթիվ,—ասում է Ագաթանգեղոսը,—պատշաճ համարվեցին հետևյալ խոսքերը, որ գտնվում էին առակների կարգի ասացվածքներում, թե «իբրև խրոխտ Տրդատը, որը խիզախաբար ավերեց գետերի թումբերը և իր հանդուգն լինելովը մինչև իսկ ցամաքեցրեց ծովերի հորձանքները»։ [«Վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս ի բանս կարգի առակաց, թէ «իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ ի սիգալն իւրում զյորձանս ծովուց»][4]։

Այս խոսքի իմաստն այն է, ասում է Ադոնցը, որ թագավորը ծովով ճանապարհորդել էր այնպես, ինչպես ցամաքով[5]։

---

[1] Տե՛ս Մովսես Խորենացի, II, ԾԴ, էջ 185 (Տփղիս, 1913)։

[2] «Քննական պատմություն». Գ., էջ 358—361։

[3] „Армения в эпоху Юстиниана", էջ 433, ծան. 2։

[4] Ագաթանգեղոս, ԺԱ, էջ 71 (Թիֆլիս, 1914, Ղուկասյան մատենադարան)։

[5] „Армения в эпоху Юстиниана", էջ 433, ծան. 2։

Մեջբերված այս պատմական աղոտ հիշողությունները հայ Արշակունիների հարստության հիմնադրի մասին, որ համապատասխանում են օտար աղբյուրների հաղորդած վերոհիշյալ տեղեկություններին՝ պարզ ցույց են տալիս, որ Տրդատ Ա-ի ժամանակի պատմական անցքերը խոր տպավորություն էին թողել և նյութ էին դառել անգիր բանահյուսության։

61 թվին (մեր թվ. հ.), տասնամյա պատերազմից հետո, Հայաստանում սկսվեց Արշակունիների դինաստիայի իշխանությունը և նրա մեջ այնուհետև սկսեց, բնականաբար, ավելի ևս ուժեղանալ իրանական պետականության և իրանական կուլտուրայի ազդեցությունը։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՕՏԱՐ ԴԻՆԱՍՏԻԱՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԸ

1. Աղեքսանդր, Անտոնիոսի և Կլեոպատրայի որդին, 34—31 մ. թ. ա.
2. Արիոբարզան, Ատրպատականի Արտավազդ թագավորի որդին, 2—4 մ. թ. հ.
3. Արտավազդ Դ, Արիոբորզանի որդին, շուրջ 4—6 մ. թ. հ.
4. Տիգրան Ե, Հրեաստանի Հերովդես Մեծի թոռը, շուրջ 6 մ. թ. հ.
5. Վոնոն, պարթևների Հրահատ Դ թագավորի որդին, մոտավորապես 11 թ. մ. թ. հետո մինչև 16 մ. թ. հ.
6. Զենոն կամ Արտաշես Գ, Պոնտոսի Պոլեմոն թագավորի և Պիթոդորիսի որդին, 18—34 մ. թ. հ.
7. Արշակ, պարթևների Արտավան Գ թագավորի մեծ որդին, 34—35 մ. թ. հ.
8. Միհրդատ, վրաց Փարասման թագավորի եղբայրը, 35—37 և 43—51 մ. թ. հ.
9. Հռադամիզդ, վրաց Փարասման թագավորի որդին, 51—52
10. Տրդատ, պարթևների Վաղարշ Ա թագավորի եղբայրը, 52—60 մ. թ. հ.
11. Տիգրան Զ, Տիգրան Ե-ի Աղեքսանդր եղբոր որդին, 60—61 մ. թ. հ.
12. Տրդատ, պարթևների Վաղարշ Ա թագավորի եղբայրը 62 թվից հետո (66 թվին Հայաստանի թագը ստացավ Հռոմում Ներոնից)։

Ազգացուցակ Տիգրան Ե և Տիգրան Զ թագավորների

*Հերովդես Մեծ, Հրեաստանի թագավոր* — *Արքեղայոս, Կապադովկիայի թագավոր (կինը՝ հայ թագավորի աղջիկ)*

*Աղեքսանդր,* *կինը՝* *Գլափյուրա*

*Աղեքսանդր* — *Տիգրան Ե (շուրջ 6 մ. թ. ա.) թգ. Հայոց*

*Տիգրան Զ թգ. Հայոց (60—61 մ. թ. ա.)*

## ՀԱՄԱՌՈՏ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԵՎ ՑԱՆԿ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ

### *ա. ՊԱՏՄԱԿԱՆ ԵՐԿԵՐ*


*Anderson J. G. C.*, Cambridge Ancient History, vol. X, 1934, էջ 254—264, 273—282, 743—772։

*Aslan Kévork*, Études historiques sur le peuple arménien, Paris, 1909.

**Բասմաջյան Կ. Յ.**, *Իսկական պատմություն Հայոց, Կ. Պոլիս, 1914։*

*Брюсов В.*, Летопись исторических судеб армянского народа, М., 1918.

**Գաթրճյան Հ.**, *Տիեզերական պատմություն, հատ. Ա և Բ, Վիեննա 1849—1852.*

**Գարագաշյան Ա. Մ.**, *Քննական պատմություն Հայոց, Ա—Գ, Թիֆլիս, 1895.*

**Գելցեր Հ.**, *Համառոտ պատմութիւն Հայոց, թարգմ. Հ. Գր. վ.- Գալեմքյարյանի, Վիեննա, 1897.*

*Gutschmid Alf. von*, Ceschichte Irans und seiner Nachbarländer von Alexander dem Grossen bis zum Untergang der Arsaciden, Tübingen, 1888.

**Դաղբաշյան Հ.**, *Ստույգ Հայոց պատմություն, Թիֆլիս, 1914։*

*Duruy Victor*, Histoire des Romains, t. II, Paris, 1890.

*Drumann*, Geschichte Roms, bearbeitet von *P. Groebe*, Band IV, Berlin, 1899.

**Լեո**, *Հայոց պատմություն, հատ. Ա, Թիֆլիս, 1917։*

*Халатьянц Г.*, Очерк истории Армении, М., 1910.

*Carcopino* J., Histoire Générale *Գլոցի*, Histoire ancienne, troisième partie, Histoire Romaine, t. II, 2—César, Paris, 1937.

*Cary M.*, *Ormerod H. A.*, *Tarn W. W.*, Cambridge Ancient History, vol. IX, The Roman Republic 133—44 b. c., *գլուխներ՝* VIII, IX, XIV.

*Костанянц К.*, История Армении, краткий очерк, М., 1911.

*Homo Léon*, Histoire Générale *Գլոցի*, Histoire ancienne, troisième partie, Histoire Romaine, t. III, Le Haut-empire, Paris, 1933.

*Huart Cl.*, La Perse antique et la civilisation iranienne, Paris, 1925.

*Моммсен Ф.*, Римская история, том второй, перевод *В. Н. Неведомского*, М., 1887.

*Նույնի*, Римская история, том третий, перевод *А. Веселовского*, М., 1887.

*Mommsen Th.* Römische Geschichte, Bd. V, dritte Auflage, Berlin, 1886.

*Morgan J.*, Histoire du peuple armenien, Nancy—Paris—Strasbourg, 1919.

*Justi F.*, Geschichte Irans, Grundriss der iranischen Philologie, II Band, 5. Lieferung, Strassburg, 1903.

*Низе Б.,* Очерк римской истории и источниковедения, издание третье, СПб. 1910.

*Нич К. В.,* История римской республики, М., 1908.

**Չամչյան Մ.,** *Պատմություն Հայոց, Ա., Վենետիկ, 1784։*

**Պալասանյան Ստ.,** *Պատմություն Հայոց, երկրորդ տպագրություն, Թիֆլիս, 1895.*

*Rostovtzeff M.,* Gesellschaft und Wirtschaft im römischen Kaiserreich, Bd. I, Leipzig, 1929.

*Sandalgian Jos.,* Histoire documentaire de l'Arménie, t. II, Rome, 1917.

*Tarn W. W.,* Cambridge Ancient History, v. X, Cambridge, 1934, *էջ 31—34, 47—50, 71—82, 112—114.*

*Tournebize* F., Histoire politique et religieuse de l'Arménie, Paris, 1900.

*Ферреро Г.,* Величие и падение Рима, т. 1, перевод *А. Захарова,* М., 1915.

### *Բ. ԱՅԼԵՎԱՅԼ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

**Աբեղյան Մ.,** *Հայ ժողովրդական առասպելները, Վաղարշապատ, 1899—1901.*

*Адонц Н.,* Армения в эпоху Юстиниана, СПб., 1908.

**Ասատուրյան Հ. Յ.,** *«Քաղաքական վերաբերումները ընդմէջ Հայաստանի և Հռովմայ 190-էն ն. Ք. մինչև 428 յ. Ք», Վենետիկ, 1912.*

*Джавахов И.,* Государственный строй древней Грузии и древней Армении, СПб., 1905.

*Эмин Н. О.,* Исследования и статьи, М., 1896.

*Энгельс Ф.,* Происхождение семьи, частной собственности и государства, М., 1932.

*Lehmann-Haupt* C. F., Armenien einst und jetzt, Bd. I, Berlin, 1910.

*Халатьянц Г.,* Армянский эпос в Истории Армении Моисея Хоренского. М., 1896.

Его же, Армянские Аршакиды в Истории Армении Моисея Хоренского, М., 1903.

*Christ W.,* Geschichte der griechischen Litteratur bis auf die Zeit Justinians, dritte Auflage, München, 1898.

*Kiepert H.,* Lehrbuch der alten Geographie, Berlin, 1878.

**Հյուբշման Հ.,** *Հին Հայոց տեղւոյ անունները, թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1907, Ազգ. մատեն. ԾԳ։*

*Hübschmann H.,* Armenische Grammatik, Leipzig, 1895.

*Hultsch Fr.,* Griechische und römische Metrologie, zw. Bearbeitung. Berlin, 1882.

*Манандян Я. А.,* О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Ереван, 1930.

**Մանանդյան Հ.,** *Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Երևան, 1934։*

*Նույնի, Հայաստանի գլխավոր ճանապարհներն ըստ Պևտինգերյան քարտեզի, Երևան, 1936.*

*Նույնի, Տիգրան Բ և Հռոմը, նոր լուսաբանությամբ ըստ սկզբնաղբյուրների, Երևան, 1940.*

*Նույնի, Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում, Երևան, 1930.*

*Markwart J.*, Eranschahr nach der Geographie des Ps. Moses Choren., Berlin, 1901.

***Նույնի,*** Die Entstehung und Wiederherrstellung der armenischen Nation, Potsdam, 1919.

***Նույնի,*** Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen, Wien, 1930.

*Марр Н. Я.*, Кавказский культурный мир и Армения, Петроград, 1915.

*Miller Konrad,* Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Tabula Peutingeriana, Stuttgart, 1916.

*Chapot Vtctor*, La province romaine prōconsulaire d'Asie, Paris, 1904.

***Նույնի,*** La frontière de l'Euphrate de Pompée à la conquête Arabe, Paris, 1907.

*Wachsmuth Curt,* Einleitung in das Studium der alten Geschichte, Leipzig, 1895,

*Вебер Макс,* Аграрная история древнего мира, перевод под редакцией Д. И. Петрушевского, М.

**Քարամյան Ն.,** ***Պարթևները Պարսկաստանում և նրանց հարաբերությունները Հայոց հետ, Վաղարշապատ, 1897։***

## ԳԼՈՒԽՆԵՐ Ա—Զ

Ա. Արմենների զաղթը և նրանց հնագույն հայրենիքը։—Բ. Արմենների ներգաղթի ուղղությունը և նրանց հնագույն գաղթավայրերը։—Գ. Արմենները դաշնակից մեդացիների։—Դ. Արմենները Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության տակ։—Ե. Արևելյան և արևմտյան Արմենիան ըստ Քսենոփոնի։—Զ. Արմենների տնտեսական և հասարակային կենցաղն ըստ Քսենոփոնի։

*Հայերի ծագման մասին գոյություն ունեն երկու կարգի աղբյուրներ։ Առաջին կարգի աղբյուրներն են Հին Կտակարանը և Մար Աբասի կամ Անանունի ու Մովսես Խորենացու պատմական երկերը, որոնց մեջ մանրամասն պատմված է հայերի նախահայր Հայկ Նահապետի առասպելը։ Այս կարգի տեղեկությունները, թեև հետաքրքիր են, սակայն, իրապես, կամ քրիստոնեական շրջանի հայ և օտար մատենագիրների կռահումներ են և կամ առասպելական ավանդություններ են, որոնք չեն կարող համարվել ստույգ և արժանահավատ։*

*Տնորհիվ պատմագիտության, լեզվագիտության և այլ գիտությունների անսահման զարգացմանը 19-րդ և 20-րդ դարերում հայերի ծագումը այժմ լուսաբանվում է լեզվաբանության, մարդաբանության և արևելագիտության նոր տվյալների ու նաև արձանագրական ու մատենագրական օտարազգի հին աղբյուրների վկայությունների օգնությամբ, որոնք մատչելի են դառել մեզ միայն նոր ժամանակներում։*

*Հին Հայաստանի պատմության հնագույն շրջանի համար կարևորագույն աղբյուրներն են, նախ և առաջ, ուրարտյան, ասորեստանյան և, մանավանդ, հին պարսկական բևեռագիր արձանագրությունները։ Հատկապես այս վերջինների մեջ հիշատակված են առաջին անգամ հայերի նախնիքների և նրանց երկրի արմինիյա* (Arminiya) *և Արմինա* (Armina) *անունները, իսկ հռչակավոր Բեհիստունի արձանագրության մեջ մանրամասն նկարագրված է*

նաև արմենների 521—520 թ. ապստամբությունը Վշտասպյան Դարեհ Ա-ի դեմ։

Ուշադրության արժանի են, գլխավորապես, հին-պարսկական հետևյալ արձանագրությունները՝

1. Բեհիստունի ժայռի վրա (Bisutun, Βαγίστανα, τὸ Βαγίστανον ὄρος Համադանից Բաղդատ տանող ճանապարհի վրա) փորագրված Դարեհ Ա-ի (522—486 մեր թվ. առաջ) երեքլեզվյան ընդարձակ արձանագրությունը։

2. Հին Պարսկաստանի Պերսեպոլիս մայրաքաղաքում գտնված Դարեհ Ա-ի արձանագրությունը։

3. Նաքշ-ի՝ Ռուստամում գտնվող (Պերսեպոլսից 15 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք) Դարեհ Ա-ի գերեզմանի պատի վրա փորագրված արձանագրությունը։

4. 1935 թվին Պերսեպոլսում գտնված Քսերքսեսի նոր մեծ արձանագրությունը[1]։

5. Վանա ժայռի հարավային ճակատի վրա գտնված Քսերքսեսի արձանագրությունը։

Վերոհիշյալ հինգ գլուխների համար հիմնական աղբյուր են նաև հույն-հռոմեական հին հեղինակների, գլխավորապես, Քսենոփոնի, Հերոդոտի և Ստրաբոնի կարևոր վկայություններն Արմենիայի ու արմենների մասին, որ մասնանշված են կամ թարգմանաբար մեջ են բերված իմ այս աշխատության բնագրում և հավելվածում։

Նշանավոր այս հույն հեղինակներից առաջինը, Քսենոփոնը (մոտավորապես 430—355 մեր թվ. ա.), մասնակցել էր Կրտսեր Կյուրոսի արշավանքին իր եղբոր՝ Արտաքսերքսես Մնեմոնի դեմ և Կունաքսայի մոտ տեղի ունեցած ճակատամարտից հետո հունական արշավազորի հետ վերադարձել էր Հայաստանի և Տրապիզոնի վրայով Հունաստան (401—400 մեր թվ. ա.)։ Իր Ἀνάβασις կամ «Արշավանք» աշխատության մեջ նա նկարագրում է հույների նահանջը և թանկարժեք տեղեկություններ է հաղորդում, ի միջի այլոց, նաև Արմենիայի այն շրջանների մասին, որոնց միջով անցել էին հույները[2]։ Նույն այս հեղինակը գրել է նաև Κύρου παιδεία («Կյուրոսի կրթությունը») երկը, որը թեև քաղաքական վեպ է,

---

[1] Տե՛ս Л. Ельницкий, Новая надпись Ксеркса. Вест. древ. ист., 1940, 1 (II), էջ 168—172։

[2] Տե՛ս Anabasis, գիրք. III, գլ. 5, 15—18. IV, 1, 1—28. 2, 1—28. 3, 1—34. 4, 1—22. 5, 1—36. 6, 1—27. 7, 1—27. V, 5, 1 և 16—17. 6, 36. VII, 8, 25։

*սակայն իր մեջ պարունակում է ուշագրավ հին ավանդություններ արմենների մասին[1], որոնք ըստ իրենց էության կարող են որոշ չափով լինել պատմական։*

*Արմենիայի և հատկապես արմենների ծագման և արևմուտքից արևելք գաղթի մասին առանձնապես կարևոր են Հերոդոտոսի և Ստրաբոնի հաղորդած տեղեկությունները։ Հերոդոտոսը (մոտավորապես 484—425 մեր թվ. առ.), որը ծնվել էր Փոքր Ասիայի ծովափնյա Հալիկարնաս քաղաքում՝ պատմական իր հռչակավոր երկը հույն-պարսկական պատերազմների մասին, որոնց մասնակցել էին նաև արմենները՝ գրել էր Եգիպտոսում ու Առաջավոր Ասիայում կատարած իր երկար ճանապարհորդություններից հետո։ Ավելի քան հավանական է, որ նա ևս, ինչպես և Քսենոփոնը, նույնպես անձամբ եղել էր Հայաստանում և արմենների ու նրանց երկրի մասին[2] գրել էր, գլխավորապես, այն, ինչ որ ինքը տեսել էր կամ լսել էր իր ճանապարհորդությունների ընթացքում։*

*Իսկ հույն աշխարհագիր Ստրաբոնը (մոտավորապես 64 մեր թվ. առաջ—19 մեր թվ. հ.), որը ծնվել էր Փոքր Հայքի հարևան պոնտական Ամասիա քաղաքում՝ իր Աշխարհագրության մեջ մանրամասն նկարագրել է Հին Հայաստանը, Իբերիան և Աղվանքը, տեղ տալով նաև այդ երկրների պատմությանը։ Հատկապես Արտաշեսյան Հայաստանի աշխարհագրության պատմության համար Ստրաբոնի աշխատությունը խիստ արժեքավոր է՝ իբրև գրեթե ժամանակակից աղբյուր։*

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

**Հին Կտակարան, Ծննդոց, գլ. Ժ, 2—3, Ա. Մնացորդաց, գլ. Ա, 5—6. Մարգար. Երեմիայի, գլ. ԾԱ, 27. Մարգար. Եզեկիելի, գլ. Իէ, 14 և գլ. ԼԸ, 6։**

*Diodori*, Bibliotheca Historica, ex recens. *L. Dindorfii*, vol. I—V, Lipsiae, 1866—1868.

*Eudoxos*, ***Ստեփանոս Բյուզանդացու մոտ*** 'Αρμενία=*Eustathios*, Comment ad Dionysii Periegesin, V, 694. ***տե՛ս*** *C. Müller*, Geogr. Graeci minores, II, ***էջ 341։***

*Herodoti*, Historiarum libri IX, Bibl. Teubn. ***տե՛ս նաև*** История в 9-ти книгах, перев. *Ф. Г. Мищенко*, т. I—II. Москва, 1885—6, 2-е изд. —М. 1888.

*Homeri*, Ilias, ed. *Guil. Dindorf*, Leipzig.

*C. Plinii Secundi*, Naturalis Historiae, ***տե՛ս*** Histoire naturelle de Pline, avec la traduction en français, par *M. È. Littré*, t. I—II. Paris, 1883.

---

[1] ***Տե՛ս*** Cyropaedia, II, 1, 6. 4, 9—32. III, 1, 1—43. 2, 1—31. 3, 1—5. V, 3, 38 ***և*** VIII, 4, 24.

[2] ***Տե՛ս*** *Herod.*, I, 72, 180, 194. III, 93, 94. V, 49, 52. VII, 73, 79.

*Strabonis*, Geographica, recogn. *A. Meineke*, vol. I—III, Lipsiae, 1915—1925. *տե՛ս նաև* „География Страбона в семнадцати книгах", перевод *Ф. Г. Мищенко*, M., 1879.

*Xenophontis*, Expeditio Cyri (Ἀνάβασις), recensuit *Arnoldus Hug*. Lipsiae, 1878.

*Նույնի*, Cyropaedia, recen. *A. Hug*, Lipsiae, 1878.

«Ագաթանգեղայ, *Պատմութիւն Հայոց*», *աշխատ*. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանի, *Տփղիս, 1909*.

«Կորիւն, *Պատմութիւն վարուց և մահուան Մեսրոպայ վարդապետի*», *Վենետիկ, 1894*.

«Մովսիսի Խորենացւոյ, *Պատմութիւն Հայոց*», *աշխատ*. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, *Տփղիս, 1913*.

«Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, *Պատմութիւն Հայոց*», *Թիֆլիս, 1912*.

«Սեբէոսի եպիսկոպոսի, *Պատմութիւն ի Հերակլն*», *Ս. Պետերբուրգ, 1879*.

«Փաւստոսի Բուզանդացւոյ, *Պատմութիւն Հայոց*», *երկրորդ տպագր., Վենետիկ, 1889*.

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ադոնց Ն., *Տորք աստված հին Հայոց, Հուշարձան, Վիեննա, 1911, էջ 389—394*։

***Նույնի, «Արուեստ Դիոնիսեայ քերականի և հայ մեկնութիւնք նորին», Պետրոգրադ, 1915***։

Բասմաջյան Կ., *«Դարեհի արշաւանքն ի Հայս», Բանասեր, հատ. Ա, Պարիս, 1899, էջ 6—45*։

Գաթըրճյան Հ. Հ., *«Քսենոփոնտեայ Կիւրոսի խրատու պատմութիւնք», Վիեննա, 1843*։

*Götze Alb.* Das Hettiter Reich, Der alte Orient, 1929.

*Delitzsch Fr.*, „Wo lag das Paradies?", Leipzig, 1881.

*Նույնի*, Neuer Kommentar über die Genesis, Leipzig, 1887.

*Эмин Н. О.*, Династический список Хайкидов, Москва, 1884.

*Lehmann-Haupt C. F.*, Reisebriefe, Sitzungsberichte der Berl. Akademie, 1900.

*Kiepert H.*, Die geographische Stellung der nördlichen Länder in der phönikisch-hebräischen Erdkunde, Monatsberichte der Königl. Preuss. Akademie der Wissenschaften zu Berlin, 1859.

*Նույնի*, Ueber älteste Landes-und Volksgeschichte von Armenien, Monatsberichte der Kön. Preuss. Akademie der Wiss. zu Berlin, 1869.

*Նույնի*, Lehrbuch der alten Geographie, Berlin, 1878.

*König Fr. W.*, Relief und Inschrift des Königs Dareios I, Leiden, 1938.

*Контено Ж. и Захаров А.*, Хетты и хеттская культура, М.—Л., 1924.

*Kretschmer Paul*, Einleitung in die Geschichte der griechischen Sprache, Göttingen, 1896.

*Նույնի*, Der nationale name der Armenier Haikh, Anzeiger der Akademie der Wissenschaften in Wien, philos.-histor. Klasse, I—VII, 1932, *էջ 1—9. տե՛ս նաև «Հանդէս Ամսօրեայ», 1933, հուլիս—օգոստոս, էջ 429—432*։

*Капанцян Гр.*, Chetto-armeniaca, Ереван, 1932.

*Նույնի,* К происхождению национального имени грузии Kharthveli *Երևանի պետական համալսարանի «Գիտական աշխատություններ», հատ.* XI, *Երևան, 1939, էջ 5—21։*

*Hrozny B.*, Die Sprache der Hethiter, Leipzig, 1916—1917.

*Նույնի,* Хеттские народы и языки, Вест. др. ист., № 2, 1938, *էջ 18—33.*

Մանանդյան Հ., *Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1928։*

*Марр Н. Я.,* Бог Sabazios у армян, СПб., 1911, Известия Имп. Академии Наук, 1911.

*Նույնի,* Ани, Л.—М., 1934.

*Markwart J.*, Untersuchungen zur Geschichte von Eran, I, Göttingen, 1896, *տե՛ս նաև* Philologus, Bd. 54 *և* 55.

*Նույնի,* Untersuchungen zur Geschichte von Eran, II, Leipzig, 1905, *տե՛ս նաև* Plilologus, Supplementband X, Heft 1.

*Նույնի,* Le berceau des Arméniens, Revue des ètudes arméniennes. Paris, 1928, t. VIII, fasc. 2, p. 210—245.

*Նույնի, «էջ մը Հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն», «Հանդէս Ամսօրեայ», 1906, թ. 2, փետրվար.*

*Meyer Ed.*, Geschichte des Altertums, Bd. II, 1 Abt., 1928.

*Murad Fr.*, Ararat und Masis, Studien zur armenischen Altertumskunde und Litteratur, Heidelberg, 1901.

*Никольский М. В.,* Клинообразные надписи ванских царей, открытые в пределах России, М., 1893, *տե՛ս* Древн. Восточные, т. 1, вып. 3.

Շտրեք Մ., *«Հայաստան, Քրդստան և արևմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեան սեպագրերու համաձայն», թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1904։*

*Partsch Jos.*, Geologie und Mythologie in Kleinasien, Berlin, 1888.

*Патканов К.*, Ванские надписи и значение их для истории Передней Азии, СПб., 1881.

*Пиотровский Б. Б.,* Урарту древнейшее государство Закавказья, Ленинград, 1939.

*Roth Karl,* Die Bedeutung des Armenischen, *«Հանդէս Ամսօրեայ», 1927, 11—12, նոյեմբեր—դեկտեմբեր, էջ 741—750.*

*Sayce A. H.,* The cuneiform Inscriptions of Van, dechiphered and translated, Journal of the Royal Asiatic Society, 1882—1930.

*Weissbach F. H.,* Die altpersischen Inschriften, Grundriss der Iranischen Philologie, Bd. II, Lieferung 5, Strassburg, 1903, *էջ 54—74.*

*Weissbach* F. *und Bang* W., Die altpersischen Keilinschriften, Leipzig, 1893.

Տաշյան Հ., *«Ուսումն դասական հայերէն լեզուի», Վիեննա, 1920։*

*Tomaschek W.*, Die alten Thraker, I—II, Wien, 1893—1894.

*Forrer E.* und *Ungrad.* Alzi, Reallex. der Assyriologie, I, 88—90, 1928.

## ԳԼՈՒԽՆԵՐ Է — Թ

Է. Արմենական երկրները Աղեքսանդր Մակեդոնացու և նրա հաջորդների ժամանակաշրջանում։— Ը. Մեծ Հայքը, Ծոփքը և Փոքր Հայքը Սելևկյանների տիրապետության շրջանում։— Թ. Արտաշեսյան և Զարեհյան թագավորությունների հաստատումը Հայաստանում։

*Աղեքսանդր Մակեդոնացու ժամանակաշրջանի պատմության համար ամենակարևոր վստահելի աշխատությունն է փոքրասիական հույն պատմագիր Փլավիոս Արրիանոսի «Աղեքսանդրի արշավանք»* (Ἀλεξάνδρου ἀνάβασις) *երկը, որը թեև գրված է երկրորդ դարում մեր թվականությունից հետո, սակայն հիմնված է, գլխավորապես, Աղեքսանդրի արևելյան արշավանքին մասնակցողների՝ Եգիպտոսի թագավոր Պտղոմեոս Ա-ի (323—285 մեր թվ. առաջ) և Արիստոբուլոսի հիշատակարանների վրա։*

*Բացի Արրիանոսից Աղեքսանդր Մեծի և նրա արշավանքների ընդարձակ պատմությունը գրել է (հավանորեն, առաջին դարում մեր թվ. հ.) նաև հռոմեական պատմագիր Կվինտուս Կուրտիուս Ռուփուսը, որն օգտվել էր, մեծ մասամբ, հունական մեզ անհայտ աղբյուրներից։ Սրա «Աղեքսանդր Մեծի Մակեդոնացու պատմությունը»* (Historiae Alexandri Magni Macedonis) *շարադրված է ճարտասանական արվեստի կանոնների համաձայն և, թեև, մեծ մասամբ, կասկածելի է ու անարժանահավատ, բայց, այնուամենայնիվ, հետաքրքիր է ու կարևոր այն տեսակետից, որ Աղեքսանդր Մակեդոնացու մասին տեղ-տեղ նրա մեջ արձագանք են գտել թշնամական կարծիքները հակառակորդ կուսակցության։*

*Աղեքսանդր Մակեդոնացու հաջորդների և, մասնավորապես, Հայաստանի մեջ այդ ժամանակաշրջանում տեղի ունեցած պատմական անցքերի մասին թռուցիկ ու հարևանցի տեղեկություններ հաղորդում են մեզընդմեջ, գլխավորապես, Դիոդորոս Սիկիլիացին և Պոլիբիոսը։*

*Դիոդորոսը, որը ծնվել էր Սիկիլիայի Անգյուրիոն քաղաքում առաջին դարի սկզբներում մեր թվականությունից առաջ՝ գրել է ընդհանուր կամ տիեզերական ընդարձակ պատմություն, որը կրում է «Պատմական գրադարան»* (Βιβλιοθήκη ἱστορική) *անունը։ Նրա այս երկը բաղկացած է 40 գրքից և գրեթե ամբողջությամբ բանաքաղված է կարևոր հին աղբյուրներից։ Նրա քաղվածքները, որ վերաբերում են Աղեքսանդրի հաջորդներին, առանձնապես կարևոր են, որովհետև իր գրքի այդ մասում Դիոդորոսն օգտվել է պատմական աշխատությունից Հիերոնիմոս Կարդիացու, որը Աղեքսանդր*

Մեծի Եվմենես զորավարի մտերիմ բարեկամն էր և հետաղեքսանդրյան շրջանի ամենանշանավոր ու լուրջ պատմագիրներից մեկն էր։ Հավանորեն, հենց այս Հիերոնիմոսի երկից կարող էր մասամբ օգտված լինել նույնպես և Պլուտարքոսը Եվմենեսի կենսագրությունը գրելիս[1], որն, ինչպես տեսանք, Աղեքսանդր Մակեդոնացու մահից հետո նշանակվել էր Կապպադովկիայի կուսակալ։

Հայոց պատմության ավելի ուշ ժամանակների՝ Արտաշեսյան ու Զարեհյան թագավորությունների սկզբնական շրջանի համար՝ ուշագրավ աղբյուրներ են, բացի Ստրաբոնի աշխարհագրությունից, Պոմպեյուս Տրոգուսի և Պոլիբիոսի պատմական երկերը։

Այս հեղինակներից առաջինը Օգոստոս կայսեր իշխանության ժամանակ, առաջին դարի վերջերում մեր թվականությունից առաջ, գրել է լատիներեն լեզվով պատմական ընդարձակ մի աշխատություն, որի վերնագիրն է «Փիլիպպոսյան պատմութիւնք»։ Իր այդ 44 գրքից բաղկացած աշխատության մեջ Պոմպեյուս Տրոգուսը շարադրել էր ըստ հունական հին աղբյուրների այն բոլոր ժողովուրդների ու թագավորությունների պատմությունը, որոնք առաջացել էին Աղեքսանդր Մակեդոնացու աշխարհակալ պետության քայքայումից հետո։ Տրոգուսի այս խիստ կարևոր աշխատությունից, դժբախտաբար, պահպանվել են միայն գրքերի նախաբանները ու նաև համառոտ հատվածներ, որ անշնորհք ու անփույթ կերպով քաղել ու համառոտել է II կամ III դարի (մեր թվ. հ.) հեղինակ Յուստինուսը։

Նույն այս ժամանակաշրջանի մյուս կարևոր աղբյուրն է խոշոր ու նշանավոր հույն պատմագիր Պոլիբիոսը, որը II դարում մեր թվականությունից առաջ գրել է նույնպես ընդհանուր պատմություն ('Ιστορίαι) և նկարագրել է 220—146 թվերի (մեր թվ. առաջ) պատմական անցքերը, այսինքն՝ այն ժամանակաշրջանը, երբ Հռոմը սկսել էր նվաճել և քաղաքականապես իր ազդեցությանը ենթարկել Միջերկրական ծովի շուրջը գտնվող հունական և արևելյան երկրները։ Միջանկյալ կերպով Պոլիբիոսը թանկարժեք տեղեկություններ է հաղորդում նաև իրեն ժամանակակից Մեծ Հայաստանի, Փոքր Հայքի, Ծոփքի և Ատրպատականի թագավորությունների մասին։

ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

*Appiani Alexandrini,* Historia Romana, lib. XI, De rebus syriacis, տե՛ս ed. L. *Mendelssohn*, 2 vol., Bibl. Teubn. (Lipsiae, 1879).

---

[1] Տե՛ս *Wachsmuth*, Einleitung in das Studium der Alten Geschichte, Leipzig, 1895, էջ 583։

*Arriani*, De expeditione Alexandri, recogn. *Robertus Geier*, Lipsiae, 1873.

*Diodori*, Bibliotheca Historica, ex recens. *L. Dindorfii*, vol. I—V, Lipsiae, 1866—1868.

*Herodoti*, Historiarum libri IX, Bibl. Teubn.

*Curtius Rufus*, Historiae Alexandri Magni, edidit *E. Hedicke*, Lipsiae, 1816.

*Memnonis*, Historiarum Heracleae Ponti, ed. *C. Orellius*, Lipsiae, 1816.

*Justini M. Juniani*, Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, ex recens. *Fr. Ruehl*, Lipsiae, 1915.

*C. Plinii Secundi*, Naturalis Historiae, *տե՛ս* Histoire naturelle de Pline, avec la traduction en français, par *M. É. Littré*, t. I—II, Paris, 1883.

*Plutarchi* vitae, graece et latine, *հրատ. Th. Döhner-ի և F. Dübner-ի*, vol. II, Eumenes, Parisiis, 1877.

*Polyaeni*, Strategematicon libri octo, rec. *Ed. Wollfflin*, ed. Teubn.

*Polybii* historiae, rec. *L. Dindorf*, Bibl. Teubn., *տե՛ս նաև* „Всеобщая история в 40 книгах", перевод *Ф. Г. Мищенко*, 3 тома, М., 1890—1899.

*Strabonis*, Geographica, recogn. *A. Meineke*, vol. I—III, Lipsiae, 1915—1925.

*Xenophontis*, Expeditio Cyri, rec. *A. Hug*, Lipsiae, 1878.

Fragmenta historicorum graecorum, ed. *K. Müller*, II և IV.

«Մովսիսի Խորենացւոյ *Պատմութիւն Հայոց*», *աշխատ.* Մ. Աբեղյանի *և* Ս. Հարությունյանի, *Տփղիս, 1913.*

*«Համառօտ պատմութիւն Վրաց, ընծայեալ* Ջուանշէրի *պատմիչի», Վենետիկ, 1884.*

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Babelon Ernest*, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, 1890.

*Beloch Julius*, Griechische Geschichte, dritter Band, I und II Abteil., Strassburg, 1904.

*Droysen J. G.*, Histoire de l'Hellénisme, II և III, Paris, 1884—1887.

*Kiepert H.*, Monatsschrift der K. Akademie der Wissenschaften zu Berlin, 1873.

*Манандян Я. А.*, Маршруты понтийского похода Помпея и путь отступления Митридата в Колхиду, Вест. древн. истории, 3—4 (12—13). М., 1940.

*Markwart J.*, Die Genealogie der Bagratiden und das Zeitalter des Mar Abas und Ps. Moses Choren., Caucasica, Fasc. 6, 2 Teil, Leipzig, 1930.

*Նույնի*, Untersuchungen zur Geschichte von Eran, I, Göttingen, 1896.

Մելիքսեթ-Բեկ Լ., *Վրաց աղբյուրները Հայաստանի և Հայերի մասին, Հատ. Ա., Երևան, 1934։*

*Meyer Ed.*, Blüte und Niedergang des Hellenismus in Asien, Berlin, 1925.

*Նյութեր Հին Հայաստանի պատմության, Երևան, 1935։*

*Reinach Th.*, Mithridate Eupator roi de Pont, Paris, 1890.

*Тер-Аветисян С. В.* Археологическое обследование городища и крепости «Древний Армавир», Научный сборник Армфана, Ереван, 1941.

Տեր-Հակոբյան Ս., *Արմավիրի երկրորդ նորագյուտ արձանագրությունը, «Նյութեր Հին Հայաստանի պատմության», Երևան, 1935, էջ 145—150.*

Տոմաշեկ Վ., *Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, թարգմ. Հ. Բ. Պիլեզիկյանի, Վիեննա, 1896.*

*Орбели И. А.*, Расшифровка древних надписей, «Известия», 31 января 1941 г.

*Fabricius,* Theophanes von Mitylene und Q. Dellius als Quellen der Geographie des Strabons, Strassburg, 1888.

## ԳԼՈՒԽՆԵՐ Ժ—ԺԶ

**Ժ. Տիգրան Բ-ը և հայ-պոնտական դաշինքը։—ԺԱ. Հայաստանն աշխարհակալ մեծ պետություն։—ԺԲ. Հելլենիզմի զորեղացումը Հայաստանում և Տիգրանակերտ քաղաքի հիմնումը։—ԺԳ. Միհրդատի պարտությունը և փախուստը Հայաստան ու նոր պատերազմի պատրաստությունը հայերի դեմ։—ԺԴ. Լուկուլլոսի արշավանքը Հայաստան և Տիգրանակերտի առումը։—ԺԵ. 68—67 թվերի կռիվները և Լուկուլլոսի նահանջը։—ԺԶ. Պոմպեյոսի արշավանքը և Տիգրանի հաշտությունը նրա հետ.**

*Տիգրան Երկրորդի դարաշրջանը քաղաքական ու սոցիալական ցնցումների ալեկոծ մի ժամանակաշրջան էր, երբ վճռական ու արմատական փոփոխության էր ենթարկվում ո՛չ միայն Հայաստանի, այլև Արևմտյան Ասիայի ճակատագիրը։ Սակայն այդ մեծ հեղաշրջումը և, մանավորապես, այն պատմական անցքերը, որ տեղի էին ունեցել Հայաստանում՝ խեղաթյուրված են մեծ չափով պատմագիտական բոլոր երկերում և մինչև իսկ դասական համարված ուսումնասիրություններում։*

*Խեղաթյուրումների գլխավոր պատճառներից մեկը պետք է համարել, անտարակույս, սկզբնաղբյուրների կողմնապահ ու աչառու տեղեկությունները, որ անվերապահ կերպով հյուրընկալվել են պատմական նորագույն երկերում։*

*Միհրդատ-Տիգրանյան դարաշրջանի հիմնական սկզբնաղբյուրներն են ականատեսների և ժամանակակից հեղինակների գրությունները՝*

*1. Սուլլայի, Լուկուլլոսի, Պոմպեյոսի պաշտոնական տեղեկագրերը.*

*2. Սուլլայի հիշատակարանը.*

*3. Թեոփանես Միտիլենացու գրած Պոմպեյոսի կռիվների պատմությունը.*

*4. Արքիաս Անտիոքացու վիպերգը.*

*5. Սալլուստիուսի պատմությունը և*

*6. Կիկերոնի ճառերը։*

Գլխավորապես հենց այս սկզբնաղբյուրներից օգտված պիտի լինեին, անշուշտ, մեծագույն մասը հետագա պատմիչների։ Բայց հիշյալ զեկուցագրեր, ինչպես և նման կարգի գրություններ, համաձայն քննական նորագույն հետազոտությունների՝ միանգամայն անվստահելի են։

«Զեկուցագրերի հեղինակները,— ասում է Ռեյնաքը[1],— վստահ լինելով, որ իրենց ստերը չեն մերկացվի՝ ուռցնում էին իրենց հաջողությունները, թաքցնում իրենց անհաջողությունները, իսկ երբեմն իրենց պարտությունները հայտարարում էին իբրև հաղթություններ,—Մուրենան, օրինակ, որը պարտություն էր կրել՝ արժանացել էր հաղթահանդեսի։ Նրանք ծայր աստիճան չափազանցրել են թշնամիների զորաթվերն ու կորուստները, իսկ իրենցը համապատասխան չափերով պակասեցրել։ Օրինակ, իր զեկուցագրում Տիգրանակերտի կռվի մասին Տիգրանի զորքերի թիվը Լուկուլլոսը ցույց է տվել մոտ 250.000 մարդ, մինչդեռ ուրիշ աղբյուրներ նույն զորքի թիվը հաշվում են միայն 80.000 մարդ[2]։ Նույն այս կռվում իր կորուստը նա համարում է 5 սպանված և 100 վիրավոր, մինչդեռ թշնամու կորուստը ենթադրում է առնվազն 30.000 մարդ։ Եվ Լուկուլլոսն այդ արել է, հետևելով Սուլլայի օրինակին, ու կարելի է վստահ լինել, որ Պոմպեյոսը՝ միևնույն ուսուցչի աշակերտը, առավել ևս գերազանցել է իր նախորդներին»։

Նման չափազանցված ու սուտ տեղեկություններ հաղորդում են իրենց հովանավորների՝ Լուկուլլոսի և Պոմպեյոսի մասին՝ նաև Արքիաս Անտիոքացին ու Թեոփանես Միտիլենացին։

Համեմատաբար ավելի արժանահավատ են համարվում Սալլուստիոսը և Կիկերոնը։ Սակայն հռոմեական այս հեղինակները ևս, որոնք օգտվել էին, հավանորեն, վերոհիշյալ զեկուցագրերից կամ նման աղբյուրներից՝ զերծ չեն բստ իս որոշ չափազանցություններից։

Հռոմեական և հունական ավելի ուշ շրջանի աղբյուրները պետք է բաժանել երկու խմբի։

Առաջին խմբին են պատկանում հռոմեական սկզբնաղբյուրների վրա հիմնված երկերը, իսկ երկրորդ խմբին՝ այն հունական աշխատությունները, որոնց աղբյուր են ծառայել փոքրասիական բանավոր ավանդությունները և կամ գրավոր կորած երկերը։

---

[1] Տե՛ս Mithridate Eupator, 418—419.

[2] Տե՛ս Մեմնոն, գլ. 57։

Առաջին խմբի պատմական աղբյուրներից առանձնապես կարևոր է համարվում հայրենասիրական ոգով գրված, աշառու ու կողմնապահ Տիտուս Լիվիուսի պատմությունը, որը համառոտել են կամ մեծ չափով օգտագործել Ֆլորուսը, Եվտրոպիուսը, Օրոզիուսը, Փրոնտինուսը և ուրիշները։ Նույն այս խմբի աղբյուրներ են համարվում նաև Պլուտարքոսը և Ապպիանոսը, որոնց մոտ Տիգրան Բ-ի ու Հայաստանի վերաբերյալ մանրամասն տեղեկությունները պահպանված են ամբողջությամբ։

Առաջինն այս հեղինակներից, Պլուտարքոսը, գրել է, ինչպես հայտնի է, Սուլլայի, Լուկուլլոսի և Պոմպեյոսի կենսագրությունները։ Սակայն Պլուտարքոսի այս գրվածքները պարզապես ներբողներ են ու խրատական պատմվածքներ, որոնց մեջ պատմական փաստերը հաճախ քողարկված են կամ գունավորված են, մեծ մասամբ, հօգուտ մեծարված ու հերոսացված հռոմեական զորավարների։ Եվ ուշագրավ է, որ հենց Պլուտարքոսի չափազանցություններն ու ակներև հերյուրանքները մեջ են բերվում շարունակ պատմագիտական նորագույն երկերում։

Մյուս հեղինակը, Ապպիանոսը, բացի Լիվիուսից օգտվել է նաև փոքրասիական կորած աղբյուրներից, հավանորեն, Նիկոլայոս Դամասկացուց և Պոսիդոնիոսից։ Հատուկ ուշադրության արժանի են Ապպիանոսի պատմության այն մասերը, որոնք քաղված են փոքրասիական չեզոք այս հեղինակներից։

Երկրորդ խմբի՝ հելլենիստական Արևելքի հունական երկերը՝ դժբախտաբար, շատ քիչ են և չեն պահպանված իրենց ամբողջական բովանդակությամբ։ Այս աղբյուրներից կարևորագույնն է Մեմնոնի «Հերակլեյայի պատմությունը», որի մեջ միջանկյալ կերպով տեղեկություններ են հաղորդված Լուկուլլոսի արշավանքի մասին Հայաստանում։ Մեմնոնի այն վկայությունները, որոնք քաղված են Հերակլեյայի հին ժամանակագրություններից՝ ավելի ճիշտ են ու արժանահավատ, քան հռոմեական ինքնագործ ու միտումնավոր հաղորդագրությունները։

Միանգամայն վստահելի է ու արժանահավատ բացի Մեմնոնից նաև Ստրաբոնը, որը ծնվել էր պոնտական Ամասիա քաղաքում 63 թվին (նախքան մեր թվ.)։ Սրա նախնիքները բարձր պաշտոններ են վարել Պոնտական թագավորության մեջ և եղել ենականավոր զինվորականներ։ Իր ազգականներից ու հայրենակիցներից նա լսած կլիներ, անշուշտ, և հավաքած տեղեկություններ Միհրդատյան մեծ դարաշրջանի մասին, որը նա նկարագրել էր իր «Պատմական հիշողություններ» („Ἱστορικὰ ὑπομνήματα) աշխատության

մեջ։ Նա օգտվել էր միաժամանակ բազմաթիվ պոնտական հին պատմագիրների երկերից, որոնց նա իր աշխարհագրության մեջ անվանում է «Միհրդատյան մատենագիրներ» (τὰ Μιθριδατικὰ συγγράφαντες)[1]։ Նրա պատմական մեծ աշխատության կորուստը պետք է համարել, անշուշտ, պատմական գրականության ամենամեծ կորուստներից մեկը։

Ստրաբոնի երկերից պահպանվել է միմիայն նրա աշխարհագրությունը, որի մեջ կան, բարեբախտաբար, միջանկյալ ու համառոտ տեղեկություններ թե Միհրդատյան կռիվների և թե Արտաշեսյան Հայաստանի ու Տիգրան Բ-ի մասին։

Մի քանի կարևոր վկայություններ, որ քաղված են, ըստ երևույթին, փոքրասիական չեզոք աղբյուրներից, ունի նաև Փլեգոն Տրալլեսցին իր «Օլիմպիականք»-ում։

Ինչպես տեսնում ենք, երկրորդ խմբի երկերից մնացել են միմիայն հատուկտոր և ընդմիջվող վկայություններ, որոնք չեն կարող հիմք ծառայել պատմական անցքերի մանրամասն վերականգնման։ Սակայն պահպանված այս վկայությունները, որոնք դիմակազերծ են անում հռոմեական աղբյուրների ստերն ու աղավաղումները՝ պարզ ցույց են տալիս, որ այս վերջինների մինչև իսկ ընդունելի համարված վկայություններից պետք է օգտվել ամենամեծ զգուշությամբ։

Այդ անհրաժեշտ զգուշավորությունը բնավ չէ պահված, դժբախտաբար, ո՛չ եվրոպական և ո՛չ էլ հայկական գիտական երկերում։

Մեր աշխատության մեջ ճշտված են ըստ հնարավորության, աղբյուրների համեմատական ուսումնասիրությամբ, հռոմեական հեղինակների հերյուրանքներն ու չափազանցությունները, և Տիգրան Բ-ի ու նրա դարաշրջանի պատմությունը տրված է նոր լուսաբանությամբ։

## Ա. ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀՌՈՄԵԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

1. Սուլլայի, Լուկուլլոսի, Պոմպեյոսի պաշտոնական տեղեկագրերը՝ ուղարկված հռոմեական սենատին Դարդանոսի դաշնագրից, Տիգրանակերտի առումից և Միհրդատի մահից հետո։

Այս գրություններից, որոնք չեն հասել մեր ձեռքը, օգտվել են Կիկերոնը, Ապպիանոսը, Պլուտարքոսը և ուրիշները։

2. Սուլլայի հիշատակարանից (Commentarium rerum gestarum), որը նույնպես կորած է՝ օգտվել են Պլուտարքոսը, Լիվիուսը և ուրիշները։ Որոշ հատվածներ, որ պահպանվել են այդ հիշատակարանից՝ հրատարակել է Պե-

[1] Տե՛ս Str., XI, 2, 14.

ները. տե՛ս *Peter*, Historicorum Romanorum fragmenta, երկրորդ հրատարակություն, էջ 127 ևն։

3. Սալլուստիուս (87—34 մեր թվ. առաջ), տե՛ս Historiarum fragm., ed. *Fr. Kritzius*, Leipzig, 1853 և Historiarum reliquiae, ed. *B. Maurenbrecher*, fasc. I—II, 1891, 1894։ Սալլուստիուսի երկը, որից պահպանվել են կարևոր հատվածներ՝ լավագույն աղբյուրն է համարվում Լուկուլլոսի արշավանքների մասին։

4. Կիկերոն (106—43 մեր թվ. առաջ)—ճառեր, նամակներ են, տե՛ս Pro lege Manilia կամ De imperio Gn. Pompeii, Pro Murena, Pro Sestio, Pro Archia poeta, Pro Flacco և Academicorum libri duo։ Համեմատե ճառերի ռուսերեն թարգմանությունը՝ „М. Туллий Цицерон, Полное собрание речей в русском переводе“, под ред. *Ф. Зелинского*, т. I, СПб. 1901.

## Բ. ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀՈՒՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

1. Պոսիդոնիոս Ապամեացին (մոտավ. 135—51 մեր թվ. առաջ), որը գրել է Պոլիբիոսի պատմության շարունակությունը, նաև, հավանորեն, ինչպես ենթադրում է Ռեյնաքը[1], Պոմպեյոսի արշավանքների պատմությունը (տե՛ս Str., XI, 1, 6)։ Պահպանված են և հրատարակված են հատվածներ. տե՛ս *C. Müller*, Fragmenta historicorum graecorum, III։

2. Թեոփանես Միտիլենացին, որն անձամբ մասնակցել էր Պոմպեյոսի արշավանքներին, տվել է սրանց պատմությունը՝ գունավորված ի նպաստ Պոմպեյոսի։ Պահպանված հատվածները հրատարակված են Մյուլլերի ժողովածուի երրորդ հատորում. տե՛ս Fragm. hist. graec., III։

3. Արքիաս Անտիոքացին, որն ուղեկցել էր Լուկուլլոսին և մասնակցել նրա արշավանքներին՝ գրել է հատուկ մի վիպերգ ի մեծարումն Լուկուլլոսի։ Ուշագրավ է, որ նաև այս կորած բանաստեղծական ներբողն աղբյուր է ծառայել Լիվիուսին և Պլուտարքոսին (տե՛ս *Reinach*, Mithridate Eupator, էջ 427)։

## Գ. ՀՌՈՄԵԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ ՕԳՈՍՏՈՍՅԱՆ ԵՎ ԱՎԵԼԻ ՈՒՇ ՇՐՋԱՆՆԵՐԻ

1. Տիտոս Լիվիուսի (59 թ. մեր թվ. առաջ—17 մեր թվ. հետո) ընդարձակ պատմությունից, որ վերաբերում է Տիգրան Բ-ի շրջանին՝ պահպանվել են համապատասխան գրքերի համառոտ բովանդակությունները (periochae) և քաղվածքներ Ֆլորուսի, Եվտրոպիուսի, Օրոզիուսի և ուրիշ հեղինակների երկերում։

2. Պոմպեյուս Տրոգուսը, որը ժամանակակից էր Լիվիուսին՝ գրել է ընդհանուր պատմություն (Historiae Philippicae), որի նախաբանները և համառոտ բովանդակությունը պահպանվել են Յուստինուսի երկում. տե՛ս *M. Juniani Justini*, Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, ex rec. *Fr. Ruehl*, Lipsiae, 1915.

3. Վելլեյուս Պատերկուլուսը, որը ժամանակակից էր Տիբերիոս կայսեր (14—37 մեր թվ. հ.), գրել է համառոտ հռոմեական պատմություն, տե՛ս *Vellei Paterculi*, Ex historiae Romanae libris duobus quae supersunt, ed. *C. Halm*, Bibl. Teubn..

---

[1] Mithridate Eupator, էջ 426։

4. Ֆրոնտինուսը, որը ժամանակակից էր Դոմիտիանոսի (81—96 մեր թվ. հ.)՝ գրել է Strategematon libri 4, Bibl. Teubn.

5. Ֆլորուսը գրել է երկրորդ դարի առաջին կիսում (մեր թվ. հ.) հռոմեական պատերազմների պատմությունը մինչև Օգոստոս։ Նա օգտվել է, գլխավորապես, Լիվիուսի ընդարձակ պատմությունից. տե՛ս *Flori Juli*, Epitomae de T. Livio bellorum annorum DCC libri II, ex rec. *C. Halm.* Bibl. Teubn.

6. Եվտրոպիուսը կազմել է չորրորդ դարում համառոտ մի ձեռնարկ հռոմեական պատմության մինչև 364 թ. (մեր թվ. հ.), տե՛ս *Eutropii* Breviarium histor. Roman., rec. *Fr. Ruehl*, Bibl. Teubn.

7. Օրոզիուս քահանայի Սպանիայում գրված հեթանոսական աշխարհի համառոտ պատմությունը պարունակում է իր մեջ քաղվածքներ հնագույն երկերից և ունի կարևոր մանրամասնություններ Լուկուլլոսի և Պոմպեյոսի արշավանքների մասին. տե՛ս *Orosii Pauli*, Historiarum adversus paganos libri VII, recen. *C. Zangemeister*, Bibl. Teubn.

## Դ. ՀՈՒՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ ՕԳՈՍՏՈՍՅԱՆ ԵՎ ԱՎԵԼԻ ՈՒՇ ՇՐՋԱՆՆԵՐԻ

1. Ստրաբոն (63 մեր թվ. ա.—19 մեր թվ. հ.). տե՛ս *Strabonis*, Geographica, recogn. *A. Meineke*, vol. I—III, Lipsiae, 1915—1925.

2. Նիկոլայոս Դամասկացին, Հերովդես Մեծի (37—4 մեր թվ. առ.) քարտուղարը, գրել է ընդհանուր պատմություն, որից մնացել են միայն հատվածներ. տե՛ս C. *Müller* Fragm. hist. graec., III: Այս պատմությունն աղբյուր է ծառայել Ապպիանոսին։

3. Պլուտարքոսը (մոտ. 46—120 մեր թվ. հ.) գրել է Սուլլայի, Լուկուլլոսի, Պոմպեյոսի, Սերտորիուսի, Կրասսոսի և այլ կենսագրություններ. տե՛ս *Plutarchi* vitae graece et latine, Փարիզի հրատ. *Th. Döhner*-ի և F. Dübner-ի, հատ. I—V, 1846—1855։

4. Հովսեպոս Փլավիոսը (ծնվ. է 37/38 թվ. մեր թվ. հ.) գրել է «Հրեական պատերազմ» և «Հրեական հնախոսություն» երկերը. տե՛ս *Josephi Flavii*, opera omnia, recogn. *Eman. Bekker*, Bibl. Teubn.։

5. Փլեգոն Տրալլեսցին, Հադրիանոս կայսեր (117—138 մեր թվ. հ.) ժամանակակից հեղինակը՝ գրել է ժամանակագրական մի երկ «Օլիմպիադներ» վերնագրով ('Ολυμπιάδες), որից մնացել են հատվածներ. տե՛ս *C. Müller*, Fragm. hist. graec., III.

6. Ապպիանոս Աղեքսանդրիացին, որը ժամանակակից էր Հադրիանոս (117—138 թ. մեր թվ. հ.) և Անտոնինոս (138—161 մեր թվ. հ.) կայսրների՝ գրել է հռոմեական պատմություն, որի մեջ Տիգրան-Միհրդատյան դարաշրջանի անցքերը նկարագրված են 11-րդ և 12-րդ գրքերում (XI—Συριακὴ, XII—Μιθριδάτειος). տե՛ս *Appiani* Alexandrini, Historia Romana, ed. *L. Mendelssohn*, 2 vol. Bibl. Teubn.

7. Մեմնոնը (ժամանակն անհայտ) գրել է Հերակլեյայի պատմությունը. տե՛ս *Memnonis*, Historiarum Heracleae Ponti, ed. *C. Orellius*, Lipsiae, 1816։

8. Կասսիուս Դիոնը (մոտավ. 155—235 մեր թվ. հ.) գրել է հռոմեական պատմություն. տե՛ս *Cassii Dionis Cocceiani*, Historiarum Romanorum quae supersunt, *ed. Boissevain*, vol. I, Berolini, 1895։

## Ե. ՕԺԱՆԴԱԿ ԱՅԼ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


1. *Diodorus*, Biblioth. histor., ex recensione *L. Dindorfii.*

2. *Isidori Characeni*, Stathmoi Parthicoi տե՛ս *C. Müller*, Geogr. graeci min., I.

3. *Lucianus*, Макrobioi, Bibl. Teubn.

4. *Herodoti*, Historiarum libri IX, Bibl. Teubn., տե՛ս նաև ռուսերեն թարգմանությունը՝ *Ф. Г. Мищенко-ի*, M., 1885.

5. *C. Plinii* Secundi, Naturalis Historiae. տե՛ս Histoire naturelle de Pline, avec la traduction en français, par *M. É. Littré*, t. I—II, Paris, 1883.

6. *Polybii* historiae, Bibl. Teubn. տե՛ս նաև „Всеобщая история в 40 книгах“, перевод *Ф. Г. Мищенко*, т. I—III, M., 1890—1899.

7. *Ptolemaei* Geographia, ed. *C. Müller*, Parisiis, 1901.

8. *Valeri Maximi* factorum et dictorum memorabilium libri IX, rec. *C. Kempt*, Bibl. Teubn.

9. *C. Cornelii Taciti* opera, *adc. Weise*, t. I, Annalium libri XVI, Lipsiae, 1829.

*10.* «Մովսիսի Խորենացւոյ, *Պատմութիւն Հայոց», աշխատութ.* Մ. Աբեղյանի Ս. Հարությունյանի, *Տփղիս, 1913։*

*11.* «Փաւստոսի Բուզանդացւոյ, *Պատմութիւն Հայոց», երկրորդ տպագր., Վենետիկ, 1889։*


## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


*Belck W.*, Majafarkin und Tigranakerta, Zeitschrift für Ethnologie, 1889.

*Նույնի*, Der Weg Xenophons auf seinem Rückzuge bis in die Ebene von Alaschgert, Verhandl. der Berl. anthropol. Gesellschaft, 1899.

*Gutschmid Alf. von*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroëne, Mém. de l'Acad. Imper. des sciences de St.-Pét., 1887.

*Eckhardt Kurt*, Die armenischen Feldzüge des Lukullus, Klio, Bd. IX, Heft 4 և Bd. X, Heft 1—2. *տե՛ս նաև* Վ. Գարանֆիլյանի *հայերեն թարգմանությունը, «Տիգրան Բ և Հայ-լուկուլլյան պատերազմները», Վիեննա, 1926. Ազգ. մատ. ԾԺԳ։*

*Karbe Hans*, Der Marsch der Zehntausend vom Zapates zum Phasis-Araxes. Wissenschaftliche Beilage zum Jahresbericht des Königstädtischen Gymnasiums zu Berlin, 1898.

Կարրիեր Ա., *Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի և Խորենացւոյ համեմատ, թարգմ. Հ. Հ.* Վ. Տաշյանի, *Վիեննա, 1899. Ազգ. մատ.* ԼԵ:

*Kiepert H.*, Ueber die Lage der armenischen Hauptstadt Tigranokerta Monatsberichte der Akademie der Wissenschaften zu Berlin, 1873.

*Kiepert H.*, Atlas von Kleinasien in 24 Blättern, 1902—1906.

*Манандян Я. А.*, Круговой путь Помпея в Закавказье, «Вестник древней истории». M., 1939, № 4.

*Markwart J.*, Untersuchungen zur Geschichte von Eran, I, Göttingen, 1896, Philologus, Bd. 54—55.

*Նույնի*, Das Itinerar von Artaxata nach Armastica auf der römischen. Weltkarte, Skizzen zur historischen Topographie und Geschichte von Kaukasien, Handes Amsorya. 1927, № 11.

*Նույնի*, Die Genealogie der Bagratiden und das Zeitalter des Mar Abas und Ps. Moses Choren., Caucasica, Fasc. 6,2 Teil, Leipzig, 1930.

*Meyer Ed.*, Blüte und Niedergang des Hellenismus in Asien, Berlin, 1925.

*Moltke H. von*, Briefe über Zustände und Begebenheiten in der Türkei (1835—1839), Berlin.

*Mommsen Th.*, Die Lage von Tigranokerta, Hermes, IX, 1887.

*Reinach Th.*, Mithridate Eupator roi du Pont, Paris, 1890.

*Sachau E.*, Ueber die Lage von Tigranocerta, Abhandl der kgl. Akademie der Wissensch. zu Berliñ, 1880.

*Taylor E. G.*, Journal of a tour in Armenia, Kurdistan and upper Mesopotamia, *տե՛ս ռուսերեն թարգմանությունը Н. Астафьев-ի*, Материалы для географии Азиат. Турции, прилож. к тому II, Изв. Кавк. Отд. Рус. Геогр. Общ., Тифлис, 1874.

*Fabricius*, Theophanes von Mitylene und Q. Dellius als Quellen der Geographie des Strabons, Strassburg, 1888.

## ԳԼՈՒԽ ԺԷ—ԻԱ

ԺԷ. Կրասսոսի արշավանքը և Արտավազդ Բ-ի դաշնակցությունը պարթևների հետ:—ԺԸ. Անտոնիոսի պարթևական արշավանքը և Արտավազդ Բ-ի ողբերգական մահը:—ԺԹ. Արտաշես Բ-ի և նրա հաջորդների համառ պայքարը Հայաստանի անկախության համար:—Ի. Օտարազգի թագավորների անկայուն իշխանությունը Հայաստանում:—ԻԱ. Հռոմեա-պարթևական տասնամյա պատերազմը և Արշակունյաց թագավորության հաստատումը Հայաստանում:

*Կրասսոսի արշավանքի և Արտավազդ Բ-ի մասին մեր ձեռքը հասել են երկու իրարից անկախ կարևոր աղբյուրներ՝ Կասսիուս Դիոնը և Պլուտարքոսը, որոնք, ինչպես շատ ճիշտ նկատել է Գուտշմիդը*[1], *իրար ճշտում են և լրացնում։ Կասսիուս Դիոնը (մոտավ. 155—235 մեր թվ. հ.), որը ականավոր պաշտոնյայի զավակ էր և ծնվել էր Բիթանիայի Նիկիա քաղաքում՝ կայսերական շրջանի ամենանշանավոր պատմագիրն է և գրել է «Հռոմեական պատմություն»* ('Ρωμαϊκὴ ἱστορία) *էնեասից սկսած մինչև 229 թիվը (մեր թվ. հ.)։ Կրասսոսի ժամանակաշրջանի համար (գիրք XL, 12—30) նրա գլխավոր աղբյուրը եղել է հռոմեական հայտնի պատմագիր Տիտոս Լիվիուսը (59 մեր թվ. առ.—17 մեր թվ. հ.), որը գրեթե ժամանակակից էր այդ շրջանի անցքերին։*

*Իսկ Պլուտարքոսը*[2], *որը գրել է Կրասսոսի կենսագրությունը,*

[1] *Տե՛ս* Geschichte Irans, *էջ 88, ծան. 2։*

[2] *Տե՛ս Plut.*, Crassus, XVI—XXXIII։

թեև մասամբ նույնպես օգտվել էր Լիվիուսից, սակայն նա հավանաբար այս կենսագրության համար ունեցել է իր ձեռքի տակ ինչ-որ փոքրասիական իրազեկ հույն պատմագրի մեծարժեք մի աշխատություն։ Գուտշմիդը ենթադրում է, որ այդ կարևոր երկը կարող էր լինել Հերովդես Մեծի (37—4 մեր թվ. առ.) խորհրդատու Նիկոլայոս Դամասկացու պատմությունը։

Անտոնիոսի պարթևական և հայկական արշավանքների մասին թեև մենք ունենք տարբեր հեղինակների վկայություններ, սակայն, ինչպես ենթադրում են, նրանք հիմնված են, մեծ մասամբ, Անտոնիոսի մոտ բարեկամ Դելլիուսի հաղորդակցությունների վրա, որոնք համարվում են կասկածելի։ Մանրամասն կերպով այդ արշավանքները նկարագրել է Պլուտարքոսն Անտոնիոսի կենսագրականում[1], որի մեջ նա դեպի Անտոնիոսն ունի, ընդհանրապես, բարեկամական վերաբերմունք։

Ավելի թշնամական են Անտոնիոսի հանդեպ Կասսիուս Դիոնի[2] և հռոմեական մանր պատմագրերի՝ Ֆլորուսի, Եվտրոպիուսի և ուրիշների՝ հաղորդագրությունները, որոնք բոլորն էլ օգտվել են, գլխավորապես, Տիտուս Լիվիուսի պատմությունից, որի բուն բնագրի մեծագույն մասը մեր ձեռքը չէ հասել։

Արտավազդ Բ-ի և նրա հաջորդների ժամանակ տեղի ունեցած պատմական խոշոր անցքերը հիշատակված են նաև հրեական պատմագիր Հովսեպոսի «Հնախոսություն» (Ἰουδαϊκὴ ἀρχαιολογία) և «Հրեական պատերազմ» (Περὶ τοῦ Ἰουδαϊκοῦ πολέμου) երկերում։ Այս նշանավոր հեղինակը, որը ծնվել է Երուսաղեմում 37 թվին մեր թվականությունից հետո և իր աշխատությունները գրել է առաջին դարում՝ կարևոր է այն տեսակետից, որ օգտվել է ո՛չ թե հռոմեական, այլ, գլխավորապես, հրեական և փոքրասիական-հելլենիստական ուրույն ու անկախ աղբյուրներից։

Բացի Կասսիուս Դիոնից և Փլավիոս Հովսեպոսից Օգոստոսյան շրջանի Հայաստանի պատմության համար հիմնական աղբյուր է «Գործք հանգուցյալ Օգոստոսի» (Res gestae Divi Augusti) կամ «Հիշատակարան Անկյուրական» (Monumentum Ancyranum) կոչվող հայտնի արձանագրությունը, որը փորագրված է լատիներեն և հունարեն լեզուներով ի պատիվ Օգոստոս կայսեր կառուցված և նրա անունը կրող Անկյուրայի (Անգորայի) տաճարի պատերի

---

1 *Plut.*, Ant., XXXVII—LIV.

2 *Տե՛ս Cass. Dio*, XLIX, 23—34.

վրա։ Այս արձանագրությունը պատմեն է իր գործունեության մասին Օգոստոսի կազմած հաշվետվություն, որ նա հրամայել էր զետեղել իր դամբարանի մուտքի մոտ։ Հիշատակարանի մեջ կարևոր տեղեկություններ են հաղորդված, ի միջի այլոց, Օգոստոս կայսեր արտաքին քաղաքականության և, մասնավորապես, նաև Հայաստանի մասին[1]։

Հետօգոստոսյան շրջանի պատմության, ինչպես և հռոմեա-հայկական և հռոմեա-պարթևական տանսամյա պատերազմի համար մեր գլխավոր աղբյուրն է Կոռնելիոս Տակիտոսը, որ հռոմեական ամենախոշոր պատմագիրն է կայսերական ժամանակաշրջանի։ Տակիտոսը (մոտավ. 55—120 մեր թվ. հ.), որը բարձր պաշտոնյա էր և անդամ էր հռոմեական ծերակույտի՝ գրել է ընդհանուր պատմական երկու աշխատություն՝ «Տարեգրություններ» (Annales), որի մեջ տրված է Հռոմեական կայսրության պատմությունը Օգոստոսի մահից (14 մեր թվ. հ.) մինչև 69 թիվը, և «Պատմություն» (Historia), որը շարունակությունն է Տարեգրությունների և ընդգրկում է 69—96 թվերի ժամանակաշրջանը։

Օտարազգի թագավորների իշխանությունը Հայաստանում և, գլխավորապես, Կորբուլոնի ու Պետուսի արշավանքները՝ ընդարձակ կերպով պատմված են Տակիտոսի վերոհիշյալ «Տարեգրություններում», իսկ Տրդատի ճանապարհորդությունը և նրա հանդիսավոր թագադրությունը Հռոմում մանրամասն նկարագրված են Կասսիուս Դիոնի Հռոմեական պատմության մեջ։

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐ


*Appiani Alexandrini*, Historia Romana, lib. II, De bellis civilibus, ed. *L. Mendelssohn*, Lipsiae, 1879.

*Dionis Cassii Cocceiani*, Historia Romana, ed *L. Dindorf*, vol. I—V, Lipsiae, 1863—1865.

*Eutropii*, Breviarium histor. Rom., rec. *Fr. Buehl*, Lipsiae, Bibl. Teubn.

*Ciceronis* M. *Tullii*, Epistola ad familiares (XV) և Epistola ad Atticum (V), տե՛ս հրատարակ. Müller-ի, Lipsiae.

*Horatii Flacci*, Q., opera, recens. *O. Keller et A. Holder*, 2 vol., Lipsiae, 1869—70.

*Josephi Flavii*, opera omnia, recogn. *Imman. Bekker*, Bibl. Teubn.

*C. Plinii Secudi*, Naturalis Historiae, տե՛ս Histoire naturelle de Pline, avec la traduction en français, par M. *È. Littré*, t. I—II, Paris, 1883.


[1] Տե՛ս Res gestae, Anc. V, 25—32. 39—43. VI, 1—6. 10—13.

*Plutarchi*, Crassus et Antonius. *տե՛ս* Plutarchi vitae, graece et latine, *Փարիզի հրատարակ. Th. Döhner-ի և F. Dübner-ի*, vol. I—V, 1846—1855.

„Res gestae divi Augusti“ (Monumentum Ancyranum), ed. *Th. Mommsen*, Berlin, 1883.

*Seneca*, De tranquill. animi, rec. *Fr. Haase*, Lipsiae, Bibl. Teubn.

*Strabonis*, Geographica, rec. A *Meineke*, vol. I—III, Lipsiae, 1915—1925,

*Suetoni Tranquilli*, De vita caesarum libri VIII, ed. M. *Ihm* (editio minor), Lipsiae, 1923.

*Vellei Paterculi*, Ex historiae Romanae libris duobus quae supesunt, ed. *C. Halm*, Lipsiae, Bibl. Teubn.

*Vergili Maronis*, Aeneis, rec. *O. Ribbeck*, Lipsiae, Bibl. Teubn.

*Taciti, Cornelii* libri qui supersunt, ed. *C. Halm*, 2 tomi, Lipsiae, Bibl. Teubn. *տե՛ս նաև* **Կ. Տակիտոս,** *քաղեց և լատիներենից թարգմանեց* **Գ. Սոտնիկյան,** *Երևան, 1941։*

*Rufi Festi* (*Sexti*), Breviarium rerum gestarum populi Romani, ed. *Förster*, 1874.

*Flori, L. Arnaei*, Epitomae de T. Livio bellorum annorum DCC libri II, ex recens. *C. Halm*, Lipsiae, 1879.

*Xiphilini*, Epitome, ed. *Dindorf, Teubner*, vol. V.

*Ovidius Naso, P.*, ex recens. *R. Merkelii*, t. III, Tristia etc., Lipsiae, Bibl. Teubn.

**«Ագաթանգեղայ,** *Պատմութիւն Հայոց», աշխատ.* **Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս, 1909:**

*«Պատմութիւն* **Ղևոնդեայ** *մեծի վարդապետի Հայոց», երկ. տպ., Ս. Պետերբ., 1887։*

**«Մովսիսի Խորենացւոյ,** *Պատմութիւն Հայոց», աշխատ.* **Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի,** *Տփղիս, 1913։*

*«Պատմութիւն* **Սեբէոսի** *եպիսկոպոսի ի Հերակլն», ի լոյս ած Ք. Պ., Ս.—Պետերբ., 1879։*

**«Փաւստոսի Բուզանդացւոյ,** *Պատմութիւն Հայոց», երկ. տպ., Վենետիկ, 1889։*

## *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Andersen* G., Review of Henderson's Chronology, Jahresbericht des philol. Vereins zu Berlin, XXVII, 1901, *էջ 318։*

*Babelon M. Ernest*, Les rois de Syrie, d'Armenie et de Commagène, Paris, 1890.

*Gutschmid Alf. von.*, Ueber die Glaubwürdigkeit der armenischen Geschichte des Moses von Khoren, Berichte über die Verhandlungen d. Königl. Sächs. Gesellschaft der Wissenschaften, 1876.

*Gwatkin W. E.*, Cappadocia as a Roman procuratorial province. Univ, of Missouri Studies, Columbia, Miss., 1930.

*Cary M.*, Classical Review, XXV, 1911, *էջ 107։*

**Հայկունի Ս.,** *Բագրեանդ չրաբաշխ գավառ, էջմիածին, 1894։*

*Henderson B. W.*, The Life and Principate of the emperor Nero, London, 1903.

*Նույնի*, The Chronology of the wars in Armenia A. D. 51—63, Classical Review, XV, 1901։

*Herzfeld E.*, Sakastan, Archaeolog. Mitteilungen aus Iran, IV, 1932․ էջ 1 ևն։

*Huntigton Ellsworth*. Verhandl. der Berlin. Anthropol. Gesell., 1900, էջ 149։

*Markwart* J., Beiträge z. Geschichte und Sage von Eran, Zeitsch. d, Morgenl. Gesell. XLIX, 1895, էջ 628—673։

*Meyer Ed.*, Blüte und Niedergang des Hellenismus in Asien, Berlin, 1895.

**Շուր Վերներ**, *Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը, թարգմ. Մ. Հապողյանի, Վիեննա, 1930.*

*Spiegel* F., Eranische Alterthumskunde, Bd, I—III, Leipzig, 1871—1878.

*Rawlinson H.*, Journ. Geogr. Society, Bd. X.

# ՀԱՎԵԼՎԱԾ

## ՔՍԵՆՈՓՈՆ—«ԱՆԱԲԱՍԻՍ»

### ՀԱՏՎԱԾ 1

**Գիրք III, գլ. 5, 16—17:—(16)** *Ասում էին, որ սրանք [Կարդուխները] բնակվում են լեռներում և ռազմիկ են ու թագավորին չեն հպատակվում. Նույնիսկ նրանց վրա հարձակվել էր երբեմն արքայական զորքը թվով 120.000 հոգի, սակայն և ո՛չ մեկը նրանցից չէր վերադարձել երկրի դժվարանցանելիության պատճառով։ Բայց նրանք մի ժամանակ համաձայնություն էին եկել դաշտային շրջանի սատրապի հետ, որ հաղորդակցություն ունենան թե իրենք նրանց հետ և թե նրանք իրենց հետ։ (17) Զորավարները որոշեցին, որ պետք է լեռների միջով ներխուժել Կարդուխների երկիրը, որովհետև, ինչպես ասում էին, անցնելով նրանց միջով՝ իրենք կգան Արմենիա, որը մեծ է ու բարեկեցիկ և գտնվում է Օրոնտասի իշխանության տակ։ Այստեղից ասում էին, որ ամեն մեկը կարող է հեշտությամբ գնալ, ուր որ կամենա։ Այնուհետև նրանք զոհ բերին, որպեսզի՝ ինչպես որ որոշել էին՝ ճանապարհն անցնեին հարմար ժամանակ։ Նրանք երկյուղ էին կրում, որ լեռնանցքը կարող էր գրավել առաջուց թշնամին։ Եվ հրամայեցին, որ ընթրիքից հետո բոլորը պատրաստվեն ճանապարհ գնալու ու հանգստանան, և երթի ելնեն, հենց որ նոր հրաման կտրվի։*

### ՀԱՏՎԱԾ 2

**Գիրք IV, գլուխ 1, 5—13:—(5)** *Երբ արդեն գիշերվա երրորդ պահն էր և գիշերվանից այնքան էր մնացել, որքան բավական էր դաշտը մթնով անցնելու համար՝ նրանք վեր կացան ըստ հրամանի և, ճանապարհ ընկնելով՝ հասան լուսաբացին լեռան մոտ։ (6)*

Այժմ զորքին առաջնորդում էր Խեյրիսոփոսը, վերցնելով իր հետ եղածներին ու բոլոր թեթևազեններին, իսկ ետևից վերջապահ ծանրազենների հետ գնում էր Քսենոփոնը, որը չուներ ոչ մի թեթևազեն։ Թվում էր, որ ոչ մի վտանգ չկար, եթե սարը բարձրացողների վրա որևէ մեկը չհարձակվեր հետևից։ (7) Եվ Խեյրիսոփոսը բարձրացավ լեռան գագաթն առանց նկատելու թշնամիներից որևէ մեկին, իսկ հետո առաջ գնաց, և գագաթն անցնող զորքի մասերը ևս շարունակ հետևից գնում էին գյուղերը, որոնք գտնվում էին լեռների կիրճերում ու ձորերում։ (8) Արդ՝ Կարդուխները, թողնելով տները՝ կանանց ու երեխաների հետ փախչում էին դեպի լեռները։ Պաշարեղեն այստեղ շատ կար վերցնելու, և տները կահավորված էին բազմաքանակ պղնձե ամաններով, որոնցից ոչինչ չտարան Հելլենները, ոչ էլ մարդկանց հետապնդեցին, այլ նրանց խնայում էին, հուսալով, թե գուցե Կարդուխները, որոնք թշնամի էին թագավորին՝ կհոժարեին, որ իրենք այդ տեղերով անցնեին, որպես բարեկամական երկրի միջով։ (9) Իսկ պաշարեղեն, ուր որ մեկին պատահում էր՝ վերցնում էին, որովհետև անհրաժեշտ էր։ Բայց Կարդուխները ո՛չ նրանց դիմումներն ուշադրության առան, ո՛չ էլ այլ կերպ բարեկամություն հաստատեցին։ (10) Երբ լեռան գագաթից իջնում էին գյուղերը Հելլենների վերջին խմբերը՝ արդեն մութն էր—ճանապարհը նեղ լինելու պատճառով նրանց լեռը բարձրանալը և ցած իջնելը տևել էր ամբողջ մի օր—և այժմ Կարդուխներից ոմանք, հավաքվելով միասին՝ հարձակվեցին սրանց վրա և քարերով ու նետերով ոմանց սպանեցին ու վիրավորեցին։ Կարդուխները թվով քիչ էին, որովհետև Հելլենները նրանց վրա հարձակվել էին անսպասելի կերպով։ (11) Եթե այդ ժամանակ միասին հավաքվածները թվով ավելի շատ լինեին՝ զորքի մեծ մասը կարող էր մատնվել կորուստի։ Եվ այդ գիշերը Հելլենները բանակեցին այդպես գյուղերում, իսկ Կարդուխները լեռների վրա չորս կողմը կրակ էին վառում շատ տեղերում և իրար ազդանշան էին տալիս։ (12) Երբ լուսացավ՝ Հելլենների զորավարները և վաշտապետները ժողով արին և որոշեցին առաջ գնալ, վերցնելով իրենց հետ նուսաբարձ գրաստներից միայն այն մասը, որն անհրաժեշտ էր և դիմացկուն, իսկ մյուսներին թողին, և արձակեցին նաև բոլոր վերջին ժամանակներում գերի ընկած ու զորքի մեջ եղած ստրուկներին։ (13) Եթե գրաստները և գերվածները շատ լինեին՝ ճանապարհը դժվար էր դառնալու, և շատերը, որոնք դրանցով էին զբաղված՝ անմարտունակ էին լինելու, բացի այդ, մարդկանց շատ լինելու պատճառով՝ հարկավոր էր ճարել ու տա-

նել կրկնապատիկ կենսամթերք։ Այս որոշելուց հետո՝ ազդարարեցին կոչնակի միջոցով, որ այդպես անեն։

## ՀԱՏՎԱԾ 3

Գիրք IV, գլուխ 2, 22:—(22) *Այնուհետև հելլենական ամբողջ զորքը միացավ և բանակ դրեց այստեղ [Կարդուխների երկրում] բազմաթիվ ու գեղեցիկ տներում, որոնք հարուստ էին պաշարեղենով. և գինի էլ շատ կար, որ պահում էին ծեփված հորերում։*

## ՀԱՏՎԱԾ 4

Գիրք IV, գլուխ 2, 27—28:—(27) *Բարբարոսները [Կարդուխները] շատ նեղություններ էին պատճառում երբեմն նրանց, որոնք բարձրանում էին, ու նորից, երբ ցած էին իջնում։ Նրանք շատ արագաշարժ էին, այնպես որ մոտիկից փախչում էին և խույս էին տալիս. նրանք ուրիշ ոչինչ չունեին, այլ միայն աղեղներ և պարսատիկներ։ (28) Ամենալավ նետաձիգներն էին. աղեղներ ունեին մոտավորապես երեք կանգուն երկարությամբ, իսկ նետեր՝ ավելի քան երկու կանգուն։ Նետ արձակելիս լարերը քաշում էին աղեղից դեպի ցած և ձախ ոտքն առաջ դնում։ Նետերն անցնում էին վահանների և զրահների միջով։*

## ՀԱՏՎԱԾ 5

Գիրք IV, գլուխ 3, 1 —5:—(1) *Այդ օրը Հելլենները գիշերեցին գյուղերում հարթավայրից վերև Կենտրիտես գետի[1] մոտ, որի լայնությունն էր մոտավորապես երկու պլեթրոն[2] և որը բաժանում էր իրարից Արմենիան ու Կարդուխների երկիրը։ Հելլեններն այնտեղ հանգստացան և ուրախացան, տեսնելով դաշտը։ Գետը Կարդուխների լեռներից հեռու էր 6 կամ 7 ստադիոն[3]։ (2) Արդ՝ այժմ նրանք մեծ հաճույքով գիշերեցին՝ ունեին պաշարեղեն և հիշում էին հաճախակի բազմաթիվ անցյալ նեղությունները։ Այն յոթը օրը, որ նրանք Կարդուխների միջով էին անցել՝ բոլոր ժամանակ մարտ էին վարել և ենթարկվել էին ավելի աղետների, քան այն բոլորը միասին, որ կրել էին թագավորի և Տիսսափերնեսի կողմից։ Արդ՝ երբ ազատված այդ բոլորից՝ նրանք հանգիստ քնեցին։*

---

1 *Արևելյան Տիգրիսը, որ այժմ կոչվում է Բոհտան-սու։*

2 *Հունական պլեթրոնի երկարությունը հավասար էր այժմյան չափով 30,83 մետրի, տե՛ս* Fr. Hultsch, Griechische und römische Metrologie, Berlin, 1882, *էջ 697։*

3 *Հավասար է 184,98 մետրի։*

(3) Հետևյալ առավոտ գետի մյուս կողմը նրանք տեսան զինված ձիավորներ, որոնք արգելելու էին գետն անցնել, և ձիավորներից վերև բլուրների վրա շարքերով կանգնած էին հետևակ զորքեր, որոնք արգելելու էին դուրս գալ Արմենիա։ (4) Սրանք Օրոնտասի և Արտուխասի Արմեններն էին և Մարդերը և խալդայները վարձկան։ Ասում էին, որ խալդայներն ազատ են ու ռազմասեր. իբրև զենք նրանք գործ էին ածում երկար վահաններ ու նիզակներ։ (5) Բլուրները, որոնց վրա սրանք դասավորված էին, գետից հեռու էին երեք կամ չորս պլեթրոն։ Միակ տեսանելի ճանապարհը, որ դեպի վեր էր տանում, կարծես թե ձեռակերտ լիներ։ Այստեղ Հելլենները փորձեցին գետն անցնել։

## ՀԱՏՎԱԾ 6

Գիրք IV, գլուխ 4, 1—22:—(1) Գետն անցնելուց հետո Հելլենները դասավորված շարքերով ճանապարհ ընկան Արմենիայի միջով մոտավորապես կես օրին և անցան դաշտավայրով ու լերկ բլուրներով ոչ ավելի, քան 5 փարսախ։ Կռիվների պատճառով Կարդուխների դեմ գետի մոտ գյուղեր չկային։ (2) Այն գյուղը, ուր նրանք եկան՝ մեծ էր, ուներ սատրապի համար ապարանք-ամրոց և տների մեծագույն մասի վրա կային աշտարակներ։ Պաշարեղենն էլ շատ առատ էր։ (3) Այստեղից գնացին երկու օրվա ճանապարհ, տասը փարսախ, մինչև որ անցան Տիգրիս գետի ակունքները։ Այնուհետև գնացին երեք օրվա ճանապարհ, 15 փարսախ, մինչև Տելեբոաս գետը[1]։ Այս գետը գեղեցիկ էր, բայց ոչ մեծ. գետի շուրջը կային բազմաթիվ գյուղեր։ (4) Իսկ այս երկիրը կոչվում էր արևմտյան Արմենիա և նրա հյուպարքոսն էր Տիրիբազը, որը, թագավորին բարեկամ լինելով՝ երբ ներկա էր լինում, նրան ձիու վրա ինքն էր նստեցնում և ոչ ուրիշը։ (5) Սա ձիավորների ուղեկցությամբ մոտեցավ և, ուղարկելով մի թարգման՝ ասաց, որ ցանկանում է բանակցել հրամանատարների հետ։ Զորավարները որոշեցին լսել և, մոտենալով այնքան որ կարողանան լսել՝ հարցրին թե ի՛նչ է կամենում։ (6) Իսկ նա ասաց, որ ցանկանում է պայման կապել, որի համաձայն ո՛չ ինքը պիտի վնաս հասցնե Հելլեններին, ո՛չ էլ նրանք պիտի այրեն տները, իսկ պաշարեղեն կարող են վերցնել, որքան հարկավոր է։ Զորավարները համաձայնություն տվին դրան և կապեցին այդպիսի պայման։ (7) Այստեղից նրանք գնացին

[1] Ըստ Մարկվարտի՝ Մեղ, այժմյան Կարա-սու, Տե՛ս Untersuchungen zur Geschichte von Eran, Philologus X, erstes Heft, էջ 237, համեմատե նաև «Հանդէս Ամսօրեայ», 1906, փետր., էջ 43։

*երեք օրվա ճանապարհ՝ դաշտի միջով 15 փարսախ։ Իսկ Տիրիբազը նրանց հետևում էր իր զորքի հետ մոտ 10 ստադիոն հեռավորության վրա։ Եվ նրանք եկան մի ապարանք-ամրոցի մոտ, որի շուրջը կային բազմաթիվ գյուղեր, լի բազում պաշարեղենով։ (8) Երբ նրանք արդեն բանակել էին՝ գիշերը շատ ձյուն եկավ, և լուսաբացին նրանք վճռեցին զորաշարքերը և զորավարներին տեղավորել գյուղերում, որովհետև ոչ մի թշնամի չէին տեսնում և կարծում էին, որ վտանգից ազատ են ձյան շատության պատճառով։ (9) Այստեղ նրանք ունեին ամեն տեսակ պաշար, որ լավագույնն էր՝ մսացու անասուններ, հաց, հին անուշահոտ գինիներ, չամիչ, ամեն տեսակ ընդեղեն։ Բայց ոմանք, որոնք բանակից դուրս էին ցրվել՝ ասում էին, որ իբր գիշերը տեսել են շատ լուսավորվող կրակներ։ (10) Արդ՝ զորավարները կարծում էին, որ վտանգավոր կլինի զորքը տեղավորել բնակարաններում, այլ պետք է զորքը նորից հավաքել։ Ուստի և նրանք միասին հավաքվեցին, մանավանդ որ թվում էր՝ թե եղանակը պարզվում է։ (11) Նրանց գիշերելու ժամանակ անչափ շատ ձյուն եկավ, որ ծածկեց և զենքերը և պառկած մարդկանց. ձյունը կաշկանդեց նաև գրաստների ոտքերը։ Մարդիկ մեծ դանդաղությամբ էին վեր կենում, որովհետև եկած ձյունը մինչև իր հալչելը տաքացնում էր պառկածներին։ (12) Բայց երբ Քսենոփոնը սիրտ արեց, մերկ վեր կացավ և սկսեց փայտ կոտրել՝ մի ուրիշն էլ շուտով վեր կացավ և, ձեռքից առնելով՝ սկսեց ինքը կոտրել։ Այնուհետև վեր կացան և մյուսները, կրակ վառեցին և յուղ քսվեցին։ (13) Յուղեր այստեղ շատ կային, որ գործ էին ածում ձիթայուղի տեղ՝ խոզի ճարպ, կնճիթ, դառն նշի և բևեկնի յուղ։ Կար նաև սրանցից պատրաստված անուշահոտ յուղ։ (14) Ապա այնուհետև նորից որոշվեց, որ պետք է տեղավորվել գյուղերում և բնակարաններում։ Արդ՝ զինվորները մեծ աղմուկով ու ցնծությամբ եկան դեպի բնակարաններն ու պաշարեղենը։ Եվ նրանք, որոնք առաջ հեռանալիս ամբարտավանաբար այրել էին տները՝ տուժեցին և վատ տեղավորվեցին։ (15) Հետո մի խումբ մարդկանց հետ ուղարկեցին գիշերը դեպի լեռները Դեմոկրատես Տեմենիտեսին, ուր, ինչպես բանակից հեռացողներն էին ասել՝ կրակներ էին հեռվից տեսել։ Թվում էր, որ սա առաջ էլ շատ այդպիսի լուրեր ճշտել էր, եղածը՝ որպես եղած, և չեղածը՝ որպես չեղած։ (16) Սա գնաց, բայց ասաց որ կրակներ չի տեսել, և վերադարձավ, բռնելով ու բերելով իր հետ մի մարդ, որն ուներ պարսկական աղեղ, կապարճ և երկսայրի տապար, որ ունեն ամազոնուհիները։ (17) Սրան հարցին, թե ո՛րտեղացի է. ասաց, որ պարսիկ է, գնում է*

*Տիրիբազի բանակի կողմից, որպեսզի պաշար վերցնե։ Իսկ նրանք սրան դարձյալ հարցրին, թե որքան է զորքը և ինչու համար է հավաքված։ (18) Սա ասաց, որ Տիրիբազն է, որն ունի թե իր ուժերը և թե վարձկան խալյուբներ ու Տաոխներ։ Եվ Տիրիբազը պատրաստվում է, ասաց նա, որ, սարն անցնելու ժամանակ՝ հարձակվի Հելլենների վրա այնտեղ կիրճերում, ուր գտնվում է միակ ճանապարհը։ (19) Այս լսելուց հետո՝ զորավարները վճռեցին զորքը հավաքել։ Եվ նրանք գնացին իսկույն այնտեղ գերված մարդու առաջնորդությամբ, թողնելով մնացողների մոտ պահապաններ և Սոֆայնետոս Ստյումֆալացուն՝ իբրև զորապետ։ (20) Երբ նրանք լեռներն անցնում էին՝ թեթև վահանակիրները առաջ ընկան և, տեսնելով բանակը, չսպասեցին ծանրազեններին, այլ աղաղակելով վազեցին դեպի բանակը։ (21) Իսկ բարբարոսները, երբ լսեցին աղմուկը՝ չդիմացան, այլ փախան։ Բայց նրանցից ոմանք, այնուամենայնիվ, սպանվեցին ու գրավվեցին մոտ 20 ձի, գրավվեցին նաև Տիրիբազի վրանը և նրա մեջ արծաթե ոտքերով գահույքները և ըմպանակները, բռնվեցին նույնպես հացարարներն ու մատռվակները, ինչպես իրենք էին ասում։ (22) Իսկ երբ ծանրազենների զորապետներն այդ իմացան՝ նրանք վճռեցին վերադառնալ, որքան կարելի է շուտ, բանակ, որպեսզի այնտեղ մնացողների վրա որևէ հարձակում չլինի։ Եվ իսկույն, փողը հնչեցնելով՝ նահանջի նշան տվին ու ետ գնացին և նույն օրն եկան հասան բանակ։*

## ՀԱՏՎԱԾ 7

Գիրք IV, գլուխ 5, 1—36:—(1) *Հետևյալ օրը նրանք [Հելլենները] վճռեցին, որ պետք է առաջ գնալ, որքան կարելի է արագ, նախքան նորից կհավաքվի թշնամի զորքը և կբռնե կիրճերը։ Նրանք պատրաստվեցին և իսկույն ճանապարհվեցին խոր ձյան միջով, ունենալով բազմաթիվ առաջնորդներ։ Եվ նույն օրն եկած նրանք անցան լեռան կատարը, ուր Տիրիբազը մտադիր էր հարձակում գործել, և այնտեղ բանակ դրին։ (2) Այստեղից գնացին երեք օրվա ճանապարհ անմարդաբնակ երկրով, 15 փարսախ, մինչև Եփրատ գետը և անցան նրան, թրջվելով մինչև պորտ։ Ասում էին, որ նրա ակունքները հեռու չէին։ (3) Այստեղից նրանք խոր ձյան ու դաշտի միջով գնացին երեք օրվա ճանապարհ՝ 10 փարսախ (՞)*[1]*։ Երրորդ օրվա ճանապարհը խիստ ծանր էր. հյուսիսային քամին*

---

[1] *Հունարեն ձեռագրերն ունեն տարբեր թվեր, որոնք հնարավորություն չեն տալիս վերականգնել բուն բնագիրը։*

փչում էր դեմից և ամեն ինչ միջով սառցնում էր ու ցրտահար էր անում մարդկանց։ (4) Այդ ժամանակ գուշակներից մեկն ասաց, որ պետք է զոհ բերեն քամուն. և նրանք զոհ բերին ու բոլորը պարզորեն զգացին, որ քամու սաստկությունը դադարում է։ Ձյան խորությունն էր մեկ գրկաչափ, ուստի և գրաստներից ու գերիներից շատերը կորստի մատնվեցին և զինվորներից ևս մոտ 30 հոգի։ (5) Նրանք խարույկներ վառեցին ու գիշերն անցկացրին դրանց շուրջը։ Փայտ կայանատեղում շատ կար, սակայն ուշ եկողները փայտ չունեին։ Արդ՝ նրանք, որոնք ավելի շուտ էին եկել ու կրակ վառել, ուշ եկողներին չէին թողնում կրակի մոտ, եթե սրանք իրենց չէին տալիս ցորեն կամ ուրիշ ուտելիք, եթե ունեին։ (6) Այդտեղ միմյանց նրանք տվին, ինչ-որ ամեն մեկն ուներ։ Որտեղ որ խարույկներ էին վառել՝ կազմվել էին ձյան հալվելու պատճառով մեծ փոսեր մինչև գետինը և այդ տեղերում կարելի էր ձյան խորությունը չափել։ (7) Հետևյալ ամբողջ օրը այդտեղից նրանք գնում էին ձյան միջով և շատերը մարդկանցից հիվանդացան արջառաքաղցով[1]։ Քսենոփոնը, որ վերջապահների առաջնորդն էր՝ հանդիպում էր վայր ընկած մարդկանց և չգիտեր, թե ինչ հիվանդություն էր այդ։ (8) Բայց երբ փորձառուներից մեկը ասաց նրան, որ դրանք ակներևաբար արջառաքաղցով են հիվանդ և, եթե մի բան ուտեն, վեր կկենան՝ Քսենոփոնը, շրջագայելով գրաստների մեջ՝ եթե որևէ մի տեղ տեսնում էր ուտելեղեն՝ տալիս էր ինքը կամ ուղարկում էր զանազան կողմեր այնպիսի մարդկանց միջոցով, որոնք կարող էին շտապ գնալ և տալ արջառաքաղցով հիվանդներին։ Երբ հիվանդները մի բան ուտում էին՝ վեր էին կենում և գնում։ (9) Առաջ գնացողներից Խեյրիսոփոսը հասնում է երեկոյան դեմ մի գյուղ և հանդիպում է աղբյուրի մոտ ամրության առջև ջուր տանող գյուղի կանանց ու աղջիկներին։ (10) Սրանք հարցրին Հելլեններին, թե ո՞վքեր են։ Իսկ թարգմանն ասաց պարսկերեն, որ թագավորի կողմից գնում են սատրապի մոտ։ Եվ նրանք պատասխանեցին, որ այդտեղ չէ, այլ հեռու է այդտեղից մոտ մեկ փարսախ։ Իսկ Հելլենները, որովհետև ուշ էր՝ ջուր տանողների հետ մտան ամրություն գյուղապետի մոտ։ (11) Արդ՝ Խեյրիսոփոսը և զորքի միջից նրանք, որոնք կարողացել էին առաջ գնալ՝ բանակեցին այնտեղ, իսկ մյուս զինվորները, որոնք չէին կարողացել ճանապարհը շարունակել՝ գիշերեցին առանց կերակրի ու կրակի. և այդ ժամանակ ևս զինվորներից ոմանք մահացան։ (12) Բայց թշնամիներից ոմանք, հավաքվելով

[1] Այսինքն՝ սաստիկ քաղցածությամբ կամ, ինչպես ասում են, գայլի քաղցածությամբ։

միասին՝ հետապնդում ու հափշտակում էին ուժասպառ գրաստներն ու կռվում էին իրար հետ սրանց պատճառով։ Զինվորներից ետ էին մնում նրանք, որոնք փչացրել էին աչքերը ձյան պատճառով կամ սառցրել էին ոտների մատները ցրտի պատճառով։ (13) Աչքերի համար ձյունից պաշտպանվելու մի միջոց էր, եթե մեկը աչքերի առջև ունենում էր գնալիս որևէ սև բան, իսկ ոտքերի համար բուժամիջոց էր, եթե մեկն անդադար շարժման մեջ էր գտնվում և գիշերը ոտնամանները հանում էր։ (14) Իսկ որ ոտնամաններով էին պառկում, խրացները խրվում էին ոտքերի մեջ և ոտնամանները սառչում էին. որովհետև հները մաշվելուց հետո նրանց ոտնամանները գեղջկական էին՝ եզան նոր կաշուց պատրաստված։ (15) Ահա այս հանգամանքներն էին ստիպում, որ զինվորներից ոմանք ետ էին մնում։ Եվ սրանք, տեսնելով ինչ-որ մի սև տեղ, որ կազմվել էր ձյուն այնտեղ չլինելու պատճառով՝ կարծում էին թե հալվել է. և իսկապես հալվել էր ինչ-որ աղբյուրի պատճառով, որը մոտ էր գտնվում և գոլորշիանում էր անտառաձորում։ Հեռանալով այստեղ՝ նրանք նստել էին և ասում էին, որ այլևս առաջ չեն գնա։ (16) Իսկ Քսենոփոնը վերջապահների հետ, երբ նկատեց այդ՝ ամեն միջոցներով ու հնարներով թախանձում էր, որ ետ չմնան, ասելով որ հետապնդում են մեծ թվով թշնամիներ, որ միասին են հավաքվել. վերջ ի վերջո նա սկսեց բարկանալ։ Բայց նրանք պահանջում էին, որ իրենց սպանեն, որովհետև չեն կարող այլևս գնալ։ (17) Արդ՝ որոշվեց, որ ամենից լավն է, եթե հնար լինի՝ վախեցնել՝ հետապնդող թշնամիներին, որ չհարձակվեն հոգնածների վրա։ Եվ արդեն մութն էր և թշնամիները մոտենում էին մեծ աղմուկով, վիճելով ավարի առթիվ, որ ձեռք էին բերել։ (18) Այդ ժամանակ վերջապահները, որոնք առողջ էին՝ վեր կացան ու արշավեցին թշնամիների դեմ, իսկ ուժասպառները աղաղակ բարձրացրին, որքան կարող էին բարձր, և սկսեցին նիզակները խփել վահաններին։ Իսկ թշնամիները վախեցան ու փախան ձյան միջով անտառաձորը, և այլևս ոչ ոք ոչ մի տեղ աղմուկ չէր հանում։ (19) Քսենոփոնը և նրա հետ եղողներն ասացին հիվանդներին, որ հետևյալ օրը մի քանիսը կգան նրանց տանելու, և առաջ շարժվելով, հազիվ չորս ստադիոն անցած, պատահեցին ճանապարհին զինվորներին, որոնք ծածկված հանգստանում էին ձյան վրա. և ոչ մի պահապան չէր դրված. այս զինվորներին նրանք վեր կացրին։ Բայց սրանք ասում էին, որ առջևում եղողները առաջ չեն գնում։ (20) Քսենոփոնը մոտեցավ և, ուղարկելով թեթև վահանակիրներից ամենաուժեղներին՝ հրամայեց իմանալ՝ թե ինչն է արգելում։ Նրանք հայտնեցին,

որ ամբողջ զորքը հանգստանում է այդպես։ (21) Այնուհետև Քսենոփոնի հետ եղողները տեղավորվեցին նույն տեղում բացօթյա, առանց կրակի ու ընթրիքի, դնելով պահակներ, որքան կարող էին։ Երբ լուսանալու մոտ էր՝ Քսենոփոնը ուժասպառների մոտ ուղարկեց ամենաերիտասարդներին և հրամայեց վեր կացնել նրանց ու ստիպել, որ գան։ (22) Հենց այդ ժամանակ Խեյրիսոփոսն ուղարկում է գյուղում եղած մարդկանցից ոմանց, որ տեսնեն թե ի՛նչ դրության մեջ են գտնվում ետևինները։ Իսկ սրանք, տեսնելով նրանց՝ ուրախացան և հանձնեցին ուժասպառներին նրանց, որ տանեն բանակ։ Իրենք էլ գնացին և, քսան ստադիոն չանցած, հասան այն գյուղը, ուր իջևանել էր Խեյրիսոփոսը։ (23) Իրար հանդիպելուց հետո՝ որոշեցին, որ ապահով կլինի զորաշարքերը տեղավորել գյուղերում։ Արդ՝ Խեյրիսոփոսը մնաց նույն տեղում, իսկ մյուսները վիճակարկությամբ իրար մեջ բաժանեցին այն գյուղերը, որ տեսնում էին՝ և ամեն մեկը գնաց իր զորամասի հետ իր գյուղը։ (24) Այդ ժամանակ աթենացի Պոլյուկրատես վաշտապետը խնդրեց, որ թողնեն իրեն առաջ անցնել, և, վերցնելով իր հետ քաջագործներին՝ նա վազելով գնաց այն գյուղը, որ վիճակարկությամբ ստացել էր Քսենոփոնը։ Այնտեղ նա ձերբակալեց ներսում գտնվող բոլոր գյուղացիներին ու գյուղապետին և 17 ձիու քուռակ, որ սնուցանվում էին իբրև տուրք թագավորին, նույնպես և գյուղապետի աղջկանը, որ իններորդ օրն էր, որ ամուսնացած էր։ Իսկ նրա մարդը գնացել էր նապաստակ որսալու և գյուղում չգերվեց։ (25) Տներն այստեղ գետնափոր էին, մուտքը ջրհորի բերնի նման, իսկ ներքևն ընդարձակ։ Կենդանիների համար հատուկ մուտք կար փորված, իսկ մարդիկ իջնում էին ցած սանդուղքներով։ Տների մեջ կային այծեր, ոչխարներ, եզներ, հավեր և սրանց ձուտերը։ Բոլոր կենդանիները կերակրվում էին ներսում՝ խոտով։ (26) Բայց կար նաև ցորեն, գարի, ընդեղեններ և կարասներում՝ գարուց պատրաստված գինի, որի երեսին լողում էին իրենք գարու հատիկները։ Կարասների մեջ դրված էին մեծ ու փոքր եղեգներ, որոնք ծնկներ չունեին։ (27) Երբ մեկն ուզենար խմել՝ պետք է այդ եղեգները բերնին դներ ու ծծեր։ Եվ շատ թունդ էր, եթե ջուր չխառնեին. բայց սովոր մարդու համար խիստ ախորժելի խմիչք էր։ (28) Քսենոփոնն այս գյուղի պետին սեղանակից արեց, խրախուսեց, որ չվհատվի, և ասաց, որ նա զավակներից չի զրկվի և որ նրա տունը հեռանալիս կլցնեն պաշարեղենով, եթե նա օգնություն ցույց տա և առաջնորդ լինի զորքին, մինչև որ կլինեն ուրիշ ժողովրդի մեջ։ (29) Եվ գյուղապետը խոստացավ այդ և, բարեկա-

մանալով, ցույց տվեց, թե որտեղ էր թաղված գինին։ Արդ՝ այդ գիշերը բոլոր զինվորները տեղավորվեցին բնակարաններում և գիշերեցին այդպես լիառատ դրության մեջ, կալանավորված ու անդուլ հսկողության տակ պահելով գյուղապետին ու նրա զավակներին։ (30) Հետևյալ օրը Քսենոփոնը, վերցնելով իր հետ գյուղապետին՝ գնաց Խեյրիսոփոսի մոտ։ Ուր որ գյուղ էր մտնում՝ գնում էր գյուղերում եղողների մոտ և ամեն տեղ գտնում էր նրանց կերուխում անելիս և ուրախ։ Եվ ոչ մի տեղից բաց չէին թողնում՝ մինչև չմատուցանեին նրանց ամենաընտիր կերակուրները։ (31) Չկար մի տեղ, ուր չդնեին սեղանի վրա ոչխարի, այծի, խոզի, հորթի ու հավի միս և մեծ քանակությամբ գարու և ցորենի հաց։ (32) Երբ մեկը մտերմաբար կամենում էր մի ուրիշի կենացը խմել, քարշ էր տալիս նրան կարասի մոտ, և այնտեղ պետք էր խմել, կռանալով ու ծծելով եզան նման։ Գյուղապետին ևս թույլ տվին վերցնել՝ ինչ որ կամենում էր։ Իսկ նա ոչինչ չէր վերցնում, այլ երբ որևէ տեղ տեսնում էր ազգակիցներից մեկին՝ տանում էր միշտ իր մոտ։ (33) Երբ նրանք եկան Խեյրիսոփոսի մոտ, սրանց ևս գտան կերուխում անելիս՝ պսակված չոր խոտե պսակներով։ Սպասավորում էին արմենների երեխաները բարբարոսական զգեստներով և նրանք երեխաներին ցույց էին տալիս, իբրև մունջերի, թե ինչ պիտի անել։ (34) Երբ Խեյրիսոփոսը և Քսենոփոնն իրար ողջունեցին՝ սկսեցին միասին հարցափորձ անել գյուղապետին պարսկերեն խոսող թարգմանի միջոցով, թե ի՞նչ երկիր է այս։ Եվ նա ասաց, որ Արմենիան է։ Եվ դարձյալ հարցրին, թե ո՞ւմ համար են սնվում ձիերը։ Եվ նա ասաց, որ թագավորի համար՝ իբրև տուրք։ Հարևան երկիրը, ասաց, խալյուբներն են և ցույց տվեց, թե ո՛րն է ճանապարհը։ (35) Ապա Քսենոփոնը մեկնեց տանելով գյուղապետին նրա ընտանիքի մոտ, և իր պառավ ձին, որ ստացել էր՝ տվեց գյուղապետին, որ կերակրե ու զոհ բերե, որովհետև լսել էր՝ թե նվիրատրված է Արևին։ Նա վախենում էր, որ կսատակի, որովհետև ճանապարհին հալից ընկել էր։ Ինքը վերցրեց քուռակ ձիերից մեկը և մեկ մեկ քուռակ ևս տվեց իր մյուս զորավարներից ու վաշտապետներից յուրաքանչյուրին։ (36) Այստեղի ձիերը պարսկական ձիերից փոքր էին, բայց շատ ավելի կայտառ էին։ Հենց այդ ժամանակ գյուղապետը սովորեցրեց, որ ձիերի ու գրաստների ոտներին, ձյան վրայով գնալիս, պետք է պարկեր փաթթեն, որովհետև առանց պարկերի կխրվեն ձյան մեջ մինչև փորները։

## ՀԱՏՎԱԾ 8

Գիրք IV, գլուխ 6, 1—4։ —(1) *Երբ արդեն ութերորդ օրն էր, Քսենոփոնը տվեց Խեյրիսոփոսին՝ իբրև ուղեցույց գյուղապետին, իսկ սրա ազգականներին բաց թողեց, բացի որդուց, որը մոտ էր չափահասության։ Սրան Քսենոփոնը հանձնեց Ամֆիպոլսեցի Եպիսթենեսին, որ հսկողության տակ պահե, որպեսզի հետո, եթե գյուղապետը լավ առաջնորդե, վերադառնան միասին։ Գյուղապետի տունը ներս տարան, որքան կարելի էր, շատ պաշարեղեն, և պատրաստվեցին ու ճանապարհ ընկան։ (2) Գյուղապետը նրանց ցույց էր տալիս ճանապարհը ձյան միջով և կապված չէր։ Եվ արդեն երրորդ օրվա ճանապարհն էր, երբ Խեյրիսոփոսը բարկացավ նրա վրա, որ չէր առաջնորդել դեպի գյուղերը։ Իսկ նա ասում էր, որ այս տեղերում գյուղեր չկան։ Եվ Խեյրիսոփոսը նրան թակեց, բայց չկապեց։ Դրանից հետո գյուղապետը գիշերը փախավ, թողնելով իր որդուն։ (3) Այս դեպքը, ուղեցույցի հետ անգութ ու արհամարհական վարմունքը, միակ գժտությունն էր Խեյրիսոփոսի և Քսենոփոնի միջև ամբողջ ճանապարհի ընթացքում։ Իսկ Եպիսթենեսը սիրեց գյուղապետի երեխային, տարավ իր հետ տուն և վերաբերվում էր նրան իբրև ամենամտերիմի։ (4) Այնուհետև նրանք գնացին յոթը օրվա ճանապարհ, օրական 5 փարսախ, Փասիս գետի երկարությամբ, որի լայնությունն էր մոտ մեկ պլեթրոն։ Այստեղից նրանք գնացին երկու օրվա ճանապարհ, 10 փարսախ, և լեռնանցքից դեպի դաշտ անցնելու ժամանակ նրանց դեմ եկան Խալյուբները, Տաոխները և Փասիանները։*

## ՀԱՏՎԱԾ 9

Գիրք IV, գլուխ 7, 1—2։ —(1) *Այնուհետև նրանք գնացին դեպի Տաոխները հինգ օրվա ճանապարհ, երեսուն փարսախ, և նրանց ուտելիքի պաշարը սպառվեց։ Տաոխները բնակվում էին ամրացրած տեղերում, որոնց մեջ բերել ու պահում էին նաև ամբողջ պաշարեղենը։ (2) Երբ Հելլենները եկան այդ տեղը, որը չուներ միջնաբերդ ու տներ և որի մեջ հավաքվել էին տղամարդիկ և կանայք, նաև շատ կենդանիներ, Խեյրիսոփոսը, որն ավելի շուտ էր այստեղ հասել՝ հարձակվեց դրանց վրա։*

## ՀԱՏՎԱԾ 10

Գիրք IV, գլուխ 7, 15—20։ —(15) *Այստեղից նրանք գնացին Խալյուբների միջով յոթը օրվա ճանապարհ՝ 50 փարսախ։ Սրանք*

*բոլոր ժողովուրդներից, որոնց միջով անցել էին Հելլենները, ամենաքաջն էին և մարտի էին բռնվում։ Նրանք ունեին վուշից պատրաստված զրահներ մինչև փորը, իսկ զրահածայրերի փոխարեն՝ հաստ հյուսված քուղեր։ (16) Ունեին նաև սռնապաններ և սաղավարտներ ու գոտիների մոտ դաշույն՝ նման լակեդեմոնական կեռ փոքր դանակի, որով սպանում էին, ում որ կարողանում էին հաղթել, և, կտրելով ու վերցնելով գլուխները՝ մեկնում էին։ Նրանք երգում ու պարում էին, երբ թշնամիները կարողանում էին իրենց տեսնել։ Ունեին նաև նիզակ, որն ուներ մեկ ծայր մոտ տասնհինգ կանգուն երկարությամբ։ (17) Նրանք պաշտպանվում էին քաղաքավայրերում, և երբ Հելլենները մոտով անցնում էին՝ հետապնդում էին և պատրաստ էին միշտ կռվելու։ Ապրում էին ամուր տեղերում, որոնց մեջ հավաքված էր նաև պաշարեղենը. այնպես որ Հելլենները ոչինչ չկարողացան վերցնել այստեղից, այլ սնվում էին այն կենսամթերքներով, որ վերցրել էին Տաոխներից։ (18) Այնտեղից Հելլենները եկան դեպի Հարբազոս գետը, որի լայնությունն էր չորս պլեթրոն։ Այնուհետև նրանք գնացին Սկյութեններին միջով չորս օրվա ճանապարհ, քսան փարսախ՝ դաշտի միջով դեպի գյուղերը, որոնց մեջ մնացին երեք օր և մթերեցին իրենց համար կենսամթերքներ։ (19) Հետո անցան չորս օրվա ճանապարհ, քսան փարսախ, դեպի մեծ հարուստ և բազմամարդ մի քաղաք, որն անվանվում էր Գյումնիաս։ Այս քաղաքից երկրի իշխանավորն ուղարկեց Հելլեններին մի ուղեցույց, որպեսզի նրանց ուղեկցե հարևան երկրի միջով, որն իրենց թշնամի էր։ (20) Երբ ուղեցույցը եկավ՝ ասաց, որ նրանց կառաջնորդե հինգ օրվա ընթացքում մի տեղ, որտեղից նրանք կտեսնեն ծովը. և հայտնեց, որ, եթե չտեսնեն՝ թող իրեն մահվան դատապարտեն։ Սա առաջնորդեց նրանց և երբ ներս մտավ թշնամիների երկիրը, հորդորեց նրանց, որ այրեն և ոչնչացնեն երկիրը։ Այսպիսով հայտնի եղավ, որ նա միայն եկել է ո՛չ թե Հելլեններին բարեկամություն անելու, այլ հենց դրա համար։ (21) Եվ նրանք հասան լեռը հինգերորդ օրը, իսկ լեռան անունն էր Թեխես։ Երբ առջևինները լեռան վրա էին՝ մեծ աղմուկ բարձրացավ։*

## ՀԱՏՎԱԾ 11

**Գիրք IV, գլուխ 8, 1—3: —(1)** *Այնտեղից Հելլենները գնացին Մակրոնների միջով երեք օրվա ճանապարհ՝ տասը փարսախ։ Հենց առաջին օրը նրանք հասան այն գետի մոտ, որն իրարից բաժանում էր Մակրոնների և Սկյութենների երկրները։ (2) Հելլենների*

աջ կողմից վերև գտնվում էր ամրացրած մի վայր, որը խիստ դժվարամատչելի էր, իսկ ձախ կողմում՝ ուրիշ մի գետ, որի մեջ թափվում էր բաժանող գետը և որը հարկավոր էր անցնել։ Այս վերջինը բոլորովին ծածկված էր ծառերով, բայց ոչ հաստ, այլ խիտ։ Հելլենները, երբ մոտեցան՝ ծառերը կտրեցին, շտապելով, որպեսզի ամենաարագ կերպով դուրս գան այդ տեղից։ (3) Իսկ Մակրոնները, որոնք ունեին ծառերի ճյուղերից հյուսված կաշվեպատ վահաններ և տեգեր ու այծի մազից պատրաստված ըզգեստներ՝ շարքերով կանգնած էին գետանցքի մյուս կողմում և իրար քաջալերում էին ու քարեր էին նետում դեպի գետը, բայց վրիպում էին և ոչ ոք չէր վնասվում։

## ՀԱՏՎԱԾ 12

Գիրք V, գլուխ 5, 1: —(1) *Այս երկրի միջով, մերթ թշնամական և մերթ բարեկամական, Հելլենները գնացին ութ օրվա ճանապարհ և հասան Խալյուբների երկիրը։ Սրանք սակավաթիվ էին, գտնվում էին Մոսսյունոյկների իշխանության տակ և նրանցից մեծագույն մասի համար ապրուստի աղբյուր էր երկաթագործությունը։ Այնտեղից նրանք եկան Տիբարենների երկիրը։*

## ՀԱՏՎԱԾ 13

Գիրք V, գլուխ 5, 17—18: —(17) *Արդ՝ Կարդուխներին, Տաոխներին և Խալդայներին, թեև նրանք չէին գտնվում թագավորի իշխանության տակ, սակայն, այնուամենայնիվ, նրանց խիստ վտանգավոր լինելու պատճառով՝ համարեցինք մեզ թշնամիներ, պաշարեղեն վերցնելու անհրաժեշտությունից դրդված, որովհետև նրանք մեզ կենսամթերքներ չէին հայթայթում։ (2) Իսկ Մակրոններին, թեև բարբարոսներ էին, բայց որովհետև նրանք մեզ մատակարարում էին պարեն, որքան որ կարող էին՝ համարեցինք բարեկամ և նրանցից բռնի կերպով ոչինչ չվերցրինք։*

## ՀԱՏՎԱԾ 14

Գիրք VII, գլուխ 8,25:—(25) *Փասիանների և Հեսպերիտների [իշխանավորն էր,* ἄρχων *] Տիրիբազը, իսկ Կարդուխները, Խալյուբները, Խալդայները, Մակրոնները, Կոլխերը, Մոսսյունոյկները, Կոյտերը և Տիբարենները անկախ էին։*

## ՔՍԵՆՈՓՈՆ—«ԿԻՐՈՊԵԴԻԱ»

### ՀԱՏՎԱԾ 1

**Գիրք II, գլուխ 1, 6:—(6)** *«Դու, ուրեմն, ասաց Կյուրոսը, ասում ես, որ թշնամիների հեծելազորը մոտ 60.000 է, իսկ թեթև վահանակիրները և նետաձիգները ավելի քան 200.000 են։ Ապա ասա՛ նաև, թե ի՛նչ թիվ են կազմում քո ուժերը»։ «Մեդացիները, ասաց [Կիաքսարը], ունեն ավելի քան 10.000 հեծելազոր, իսկ թեթև վահանակիրները և նետաձիգները կլինեն մեր հենց երկրում գոնե 60.000։ Արմենների կողմից ևս, ասաց, որ մեզ սահմանակից են, կգան 4.000 հեծելազոր և 20.000 հետևազոր»։*

### ՀԱՏՎԱԾ 2

**Գիրք II, գլուխ 4, 9—25:—(9)** *Երբ Հնդիկները դուրս գնացին՝ Կյուրոսը ասաց Կիաքսարին հետևյալը..... (12) «Ես հիշում եմ, որ մի փոքր առաջ քեզանից լսել էի, որ Արմենների թագավորը քեզ այժմ արհամարհում է, որովհետև նա իմացել է, որ թշնամիները հարձակվելու են մեզ վրա. և նա ոչ զորք է ուղարկում, ոչ էլ տուրք է վճարում, որ պարտավորվել էր տալ»։ «Նա այդպես է վարվում իրոք, ո՜վ Կյուրոս,—ասաց Կիաքսարը,—ուստի և ես տատանվում եմ և չգիտեմ, թե ինչն է լավ՝ պատերազմել ու փորձ անել հարկադրելու նրան, թե՞ ավելի ձեռնտու է՝ հանդուրժել ներկա դրությունը, որպեսզի մյուս թշնամիների վրա չավելացնենք և այս թշնամուն»։ (13) Եվ Կյուրոսը նորից հարցրեց. «Իսկ նրա բնակավայրերը արդյոք ամո՞ւր տեղերում են, թե գուցե նաև մատչելի տեղերում»։ «Բնակավայրերը,—ասաց Կիաքսարը,—շատ ամուր տեղերում չեն և ինձ այդ չէ անհանգստացնում. կան սակայն լեռներ, ուր նա խույն կարող է գնալ ու վտանգից ազատվել, եթե մեկը մոտ նստած չպաշարե նրանց, ինչպես այդ արել էր իմ հայրը»։ (14) Այնուհետև Կյուրոսն ասաց հետևյալը. «Եթե կամենաս ինձ ուղարկել, տալով այնքան հեծելազոր, որքան բավական կլինեն՝ կարծում եմ, որ աստվածների օգնությամբ կհարկադրեմ նրան, որ քեզ զորք ուղարկե ու տուրք վճարե. ես հույս ունեմ նաև, որ նա ավելի բարեկամ կդառնա մեզ, քան այժմ»։ (15) Եվ Կիաքսարն ասաց. «Ես հուսով եմ, որ նրանք ավելի շուտ քեզ մոտ կգան, քան ինձ։ Որովհետև լսել եմ, որ նրա որդիներից ոմանք քեզ որսակից են եղել. այնպես որ, հավանորեն, դարձյալ կգան քեզ մոտ։ Իսկ եթե նրանք*

*ենթարկվեն մեր իշխանության՝ ամեն ինչ կլինի այնպես, ինչպես մենք կամենում ենք»։ «Արդ՝ ի՞նչպես ես կարծում,—ասաց Կյուրոսը,—լավ չի՞ լինի, որ այդ մենք որոշենք թաքուն կերպով»։ «Իհարկե,—ասաց Կիաքսարը,—չէ՞ որ նրանցից որևէ մեկը կարող է ավելի հեշտ կերպով մեր ձեռքն ընկնել, և եթե որևէ մեկն ուզենա նրանց վրա հարձակվել՝ կարելի կլինի նրանց բռնել հանպատրաստից»։ (16) «Լսի՛ր այժմ,—ասաց Կյուրոսը,—թե ինչ պիտի ասեմ քեզ։ Ես բոլոր իմ մարդկանց հետ հաճախ որսի եմ գնացել քո և Արմենների երկրի սահմանների մոտ և, այն ժամանակ ես վերցնելով այստեղի իմ ընկերներից որոշ քանակությամբ ձիավորներ՝ գնացել եմ այնտեղ»։ «Ուրեմն նաև այժմ նույնն անելիս,—ասաց Կիաքսարը,—կարող ես կասկածի տակ չընկնել։ Բայց եթե զորքը շատ ավելի թվա, քան այն, որով սովորաբար որսի ես գնում՝ այդ արդեն կարող է կասկածելի լինել»։ (17) «Այլ կարելի է,—ասաց Կյուրոսը,—որևէ պատճառ հնարել և ոչ այս դեպքում անհավատալի, և եթե որևէ մեկն այնտեղ լուր տարածե, որ ես ցանկանում եմ մեծ որս անել՝ այդ դեպքում ես կարող եմ քեզանից բացահայտ կերպով խնդրել հեծյալներ։»։ «Շատ լավ ես ասում,—ասաց Կիաքսարը,—իսկ ես չեմ համաձայնի քեզ տալ հեծյալներ բացի չափավոր քանակությամբ մի քանիսից, որովհետև իբր թե ինքս եմ ցանկանում գնալ դեպի Ասորիքի մոտ գտնվող ամրությունները։ Եվ իրոք որ ուզում եմ գնալ, որպեսզի նրանց, որքան կարելի է, լավ ամրացնեմ։ Իսկ երբ դու քո զորքի հետ առաջ գնաս և արդեն երկու օր որս անես՝ կուղարկեմ քեզ բավականաչափ հեծյալ ու հետևակ զորք իմ մոտ հավաքված զորքերից, որոնց դու կվերցնես և իսկույն առաջ կշարժվես։ Բայց ինքս մյուս զորքերի հետ կաշխատեմ ձեզանից հեռու չլինել, որպեսզի, եթե որևէ տեղ կարևոր լինի՝ իսկույն երևան գամ»։ (18) Այսպես ուրեմն, Կիաքսարը իսկույն ամրությունների մոտ հավաքեց հեծելազորն ու հետևազորը, և պարենամթերքի սայլերը նախօրոք ուղարկեց այն ճանապարհով, որը տանում էր դեպի ամրությունները։ Իսկ Կյուրոսը զոհ բերեց արշավանքի առթիվ և, մարդ ուղարկելով միաժամանակ Կիաքսարի մոտ՝ խնդրեց տալ իրեն ավելի երիտասարդ հեծյալներին։ Բայց սա, թեև խիստ շատերն էին ուզում գնալ՝ նրան շատ զորք չտվեց։ Արդ՝ երբ Կիաքսարն իր հեծյալ ու հետևակ ուժերով արդեն առաջ էր շարժվել այն ճանապարհով, որը տանում էր դեպի ամրությունները՝ Կյուրոսի զոհերն արմենական արշավանքի առթիվ բարենպաստ էին եղել. ուստի և նա երթի ելավ, իբր թե պատրաստվում էր որսի։*



25—318

(19) Երթի ժամանակ առաջին իսկ վայրում դուրս ելավ իսկույն մի նապաստակ, սակայն բարենշան մի արծիվ մոտ թռավ և, տեսնելով որ նապաստակը փախչում է, վրա հասնելով խփեց նրան, բռնեց ու վեր բարձրացրեց և, բերելով մոտակա մի բլրի վրա՝ այնպես վարվեց որսի հետ, ինչպես ինքը ցանկանում էր։ Արդ՝ Կյուրոսը, տեսնելով այս նախագուշակությունը՝ ուրախացավ և երկրպագեց Արամազդ աստծուն և ասաց ներկա եղողներին. «Մեր որսը, իհարկե, լավ կլինի, ո՜վ արք, քանի որ այդ կամենում է աստված»։ (20) Իսկ երբ նա սահմանամերձ շրջաններումն էր գտնվում՝ ըստ իր սովորության իսկույն որսի գնաց, և հետևակ ու ձիավոր զորքի բազմությունը գնում էր շարքով նրա առջև, որպեսզի հալածե և դուրս հանե գազաններին։ Իսկ ավելի ականավորները՝ ինչպես հետևակները, նույնպես և ձիավորները, կանգնած էին որոշ տարածության վրա և դուրս ելածներին որսում էին և հետապնդում։ Եվ սրանք որսացին բազմաթիվ վարազներ, եղջերուներ, վայրի այծեր և վայրի էշեր, այս տեղերում վայրի էշեր շատ կան նույնպես և այժմ։ (21) Որսը վերջացնելուց հետո Կյուրոսը, մոտենալով Արմենների սահմաններին՝ ճաշեց։ Հետևյալ օրը նորից որսի գնաց մոտ գալով լեռներին, ուր նա ձգտում էր գնալ։ Երբ այս որսը ևս վերջացրեց՝ նորից ճաշեց։ Իսկ երբ նա իմացավ, որ Կիաքսարի ուղարկած զորքը մոտենում է՝ թաքուն կերպով նրանց մոտ մարդ ուղարկեց և հրամայեց, որ նրանք ճաշեն, գտնվելով իրենից մոտ երկու փարսախ տարածության վրա։ Նա այդ հեռատեսաբար արեց, որպեսզի դրանով օժանդակած լինի, որ թշնամին գլխի չընկնի։ Երբ սրանք ճաշում էին՝ հրամայեց, որ նրանց պետն իր մոտ գա։ Իսկ ճաշից հետո իր մոտ հրավիրեց հարյուրապետներին։ Եվ երբ նրանք եկան՝ խոսեց այսպես.

(22) «Սիրելի՜ արք, Արմենների թագավորն առաջ դաշնակից էր ու հնազանդ էր Կիաքսարին, իսկ այժմ, նկատելով, որ նրա վրա հարձակվում են թշնամիները՝ արհամարհում է մեզ և ոչ զորք է ուղարկում մեզ, ոչ էլ տուրք է վճարում։ Արդ՝ այժմ մենք, եթե կարողանանք, պետք է որսանք նրան։ Եվ թվում է, որ պետք է անենք հետևյալ կերպով։ Դու, ո՜վ Խրյուսանտաս, երբ, ինչպես հարկն է, կհանգստանաս՝ վերցրո՜ւ պարսիկների կեսը, որոնք մեզ հետ են, գնա՜ լեռնային շրջանը և գրավի՜ր լեռները, ուր նա, ինչպես ասում են, փախչում է, երբ որևէ բանից վախենում է։ Ուղեցույցներ ես քեզ կտամ։ (23) Ասում են, որ այդ լեռներն անտառապատ են, այնպես որ հույս կա, որ ձեզ չեն տեսնի։ Համենայն դեպս, լավ կլինի, եթե մինչև քո զորքի գնալը նախապես ուղարկես արագաշարժ մարդիկ, որոնք թվով ու հագուստով ավա-

*զակների են նման։ Սրանք, եթե հանդիպեն Արմեններից ոմանց՝ նրանց մի մասը պետք է բռնեն և արգելք լինեն, որ չկարողանան լուր տանել, իսկ մյուս մասը որոնց հնարավոր չլինի բռնել՝ պետք է ցրեն ու խանգարեն, որ նրանք չտեսնեն քո ամբողջ զորքը, այլ կարծեն, որ գողերի հետ գործ ունեն։ (24) Դու, ասաց, այդպես արա՛, իսկ ես կվերցնեմ ինձ հետ լուսաբացին հետևազորի մյուս կեսը և ամբողջ հեծելազորը և կգնամ դաշտի միջով ուղիղ թագավորի ապարանք-ամրոցը։ Եթե նա դիմադրություն ցույց տա՝ պարզ է որ հարկավոր կլինի կռվել, իսկ եթե ճակատամարտի դաշտից հեռանա՝ պարզ է որ հարկավոր կլինի հետամտել։ Բայց եթե լեռները փախչի՝ այնտեղ արդեն քո պարտքը կլինի, որ քեզ մոտ եկողներից ոչ ոքու բաց չթողնես։ (25) Իմացիր, որ՝ ինչպես և որսի ժամանակ՝ մենք կլինենք որս որոնողները, իսկ դու ցանցերի մոտ հսկողը։ Հիշի՛ր նաև այն, որ նախքան որսի գազանների շարժվելը պետք է շտապ կերպով փակել փախուստի ելքերը։ Եվ պետք է նաև աննկատելի մնան նրանք, որոնք գտնվում են ելքերի մոտ, եթե նրանք ուզում են, որ մոտ եկող գազանները ետ չդառնան»։*

## ՀԱՏՎԱԾ 3

**Գիրք II, գլուխ, 4, 30—32:—(30)** *Խրյուսանտասը, լսելով այդ ամենը և հպարտ լինելով, որ Կյուրոսն իրեն հանձնարարություն է տալիս՝ վերցրեց առաջնորդներին, հեռացավ և, հրաման տալով նրանց, որ իր հետ գնալու էին, ինչ որ պետք էր՝ գնաց հանգստանալու։ Երբ սրանք քնեցին այնքան, որքան որ բավական էր թվում՝ նա շարժվեց դեպի լեռները։ (31) Իսկ Կյուրոսը, երբ լուսացավ՝ ուղարկեց դեսպան Արմենների թագավորի մոտ ու կանխապես կարգադրեց, որ նրան ասեն հետևյալը. «Կյուրոսը, ով Արմեն թագավոր, հրամայում է, որ դու այնպես անես, որ, որքան կարելի է շուտ, բերես և՛ տուրքը և՛ զորքը։ Եթե նա հարցնե, թե որտեղ եմ ես՝ ասա՛ ճիշտը, որ սահմանների մոտ եմ։ Եթե հարցնե, թե արդյոք ես ինքս էլ գալի՛ս եմ, ասա՛ դարձյալ ճիշտը, որ չգիտես։ Եվ եթե ուզենա տեղեկանալ, թե մենք որքան ենք՝ խորհուրդ տուր նրան, որ ուղարկե մեկին ու իմանա»։ (32) Արդ՝ այդ ամենը հանձնարարելով դեսպանին՝ ուղարկեց նրան, կարծելով որ այդպես ավելի բարեկամորեն կլինի, քան թե գնար առանց նախազգուշացնելու։ Եվ ինքը, իր զորքը կարգավորելով լավագույն կերպով, թե ճանապարհն անցնելու և թե հարկավոր դեպքում նաև կռվելու համար՝ ճանապարհ ընկավ։ Զինվորներին նա հրամայեց, որ ոչ ոքի հետ*

*անարդար չվարվեն. և եթե Արմեններից որևէ մեկը հանդիպի՝ հայտնեն, որ անհանգիստ չլինեն, և ասեն, որ ցանկացողները ծախու ապրանքները բերեն ուր որ իրենք են գտնվելու, եթե նրանք կամենում են ծախել կամ ուտելիք և կամ խմիչք։*

## ՀԱՏՎԱԾ 4

Գիrf III, գլուխ 1, 1—43:—(1) *Կյուրոսն այդ գործերով էր զբաղված։ Իսկ Արմենների թագավորը, երբ լսեց դեսպանից Կյուրոսի հանձնարարությունները՝ խիստ վախեցավ։ Նա գիտակցում էր, որ ինքն անարդար է վարվել, քանի որ ոչ տուրք է վճարել, ոչ էլ զորք է ուղարկել։ Իսկ ամենից շատ նա վախենում էր, որ նկատվելու է, որ ինքն սկսել էր ամրոցներ կառուցել, որպեսզի կարողանար ցույց տալ դիմադրություն։ (2) Հենց այդ պատճառով, նա ամբողջապես ահով լցված՝ ո՛չ միայն ուղարկեց ոմանց զանազան կողմեր հավաքելու իր ուժերը, այլև լեռներն ուղարկեց իր կրտսեր որդուն՝ Սաբարիսին ու կանանց՝ իր և որդու, նաև աղջիկներին։ Նրանց հետ միասին ուղարկեց նույնպես և զարդերն ու ամենաարժեքավոր կահկարասիքը, և տվեց նրանց ուղեկիցներ։*

*Բայց միևնույն ժամանակ մարդիկ ուղարկեց, որպեսզի գաղտնի կերպով դիտեն, թե ի՞նչ է անում Կյուրոսը, և միաժամանակ Արմեններից, որ ներկա էին, կազմեց մարտակարգ։ Բայց շուտով եկան ուրիշները և ասացին, որ արդեն մոտ է գտնվում ինքը Կյուրոսը։ Այնուհետև նա այլևս չհամարձակվեց կռվի բռնվել և հեռացավ։ (3) Երբ Արմենները տեսան, որ նա այդպես է անում, նրանք էլ բոլորը փախան իրենց տները և ուզեցին հեռու տեղ տանել և իրենց գույքը։ Արդ՝ երբ Կյուրոսը տեսավ, որ դաշտը լցված է փախչողներով ու հեռացողներով՝ մարդ ուղարկեց և հայտնեց, որ մնացողներից ոչ ոքի հետ կռիվ չի անի։ Սակայն հայտարարեց, որ եթե փախչողներից որևէ մեկին բռնե, նրա հետ կվարվի որպես թշնամու հետ։*

*Այսպիսով նրանց մեծ մասը մնաց, բայց ոմանք էլ հեռացան թագավորի հետ միասին։ (4) Իսկ երբ նրանք, որոնք կանանց հետ առաջ էին անցել՝ դեմ դիպան լեռան վրա գտնվողներին՝ իսկույն աղմուկ բարձրացրին և շատերը սրանցից բռնվեցին փախչելիս։ Վերջ ի վերջո նրանց ձեռքն ընկան նաև թագավորի որդին, կանայք և աղջիկներն ու նաև այն հարստությունները, որ իրենց հետ տանում էին։ Թագավորը երբ իմացավ, թե ինչ է պատահել նրանց հետ՝ տատանվում էր և չգիտեր, թե ուր գնա, և ապաստարվեց*

ինչ-որ մի բլրի վրա։ (5) Իսկ Կյուրոսը, տեսնելով այդ՝ բլուրը շրջապատեց այն զորքերով, որ իր հետ էին, նաև, մարդ ուղարկելով խրյուսանտասի մոտ, հրամայեց նրան թողնել լեռան վրա պահակ և գալ իր մոտ։ Զորքը հավաքվեց այժմ Կյուրոսի մոտ։ Նա ուղարկեց Արմենների թագավորի մոտ մունետիկ և նրան ասաց այսպես. «Ասա՛ ինձ, ո՜վ Արմեն, ուզում ես արդյոք այդտեղ մնալով՝ քաղցի ու ծարավի հետ կռվել, թե ուզում ես իջնել դաշտը և կռվել մեզ հետ»։ Արմենների թագավորը պատասխանեց, որ նա դրանցից ոչ մեկի հետ չէ ուզում կռվել։ (6) Կյուրոսը նորից մարդ ուղարկեց և հարցրեց. «Ինչո՞ւ համար նստել ես այդտեղ և ցած չես իջնում»։ «Դժվար դրության մեջ եմ,—ասաց,—և չգիտեմ, թե ինչ պետք է անեմ»։ «Այլ ամենևին,—ասաց Կյուրոսը,—դժվարանալու պետք չունես, որովհետև կարող ես ցած իջնել դատվելու համար»։ «Իսկ ո՞վ կլինի,—ասաց թագավորը,—դատավորը»։ «Պարզ է,—ասաց Կյուրոսը,—որ դատավորը կլինի նա, ում աստված հնարավորություն է տվել վարվել քեզ հետ և առանց դատ անելու այնպես, ինչպես որ կամենում է»։ Այնուհետև Արմենների թագավորը, երբ հասկացավ որ այդ անխուսափելի է, ցած իջավ։ Իսկ Կյուրոսը, տեղավորելով մեջտեղում նրան ու մյուս բոլորին՝ բանակ դրեց, ունենալով արդեն միևնույն այս տեղում ամբողջ իր զորքը։ (7) Նույն այդ ժամանակ վերադառնում էր ճանապարհորդությունից Արմենների թագավորի մեծ որդին, Տիգրանը, որը երբեմն Կյուրոսի որսի ընկերն էր եղել։ Երբ նա լսեց, թե ինչ է պատահել՝ իսկույն գնաց, ինչպես որ էր, Կյուրոսի մոտ։ Եվ տեսնելով, որ հայրը, մայրը, եղբայրներն ու նաև իր կինը գերի են բռնվել՝ լաց եղավ, ինչպես պետք էր սպասել։ (8) Իսկ Կյուրոսը, տեսնելով նրան՝ բարեկամական որևէ այլ վերաբերմունք ցույց չտվեց, այլ միայն ասաց՝ «Ժամանակին ես եկել, որ լսես, ներկա գտնվելով՝ հորդ դատը»։ Նա իսկույն կանչեց Պարսիկների ու Մեդացիների զորավարներին, հրավիրեց նաև պատվավոր Արմեններին, որոնք ներկա էին։ Նաև կառքերի մեջ գտնվող կանանց, որոնք ներկա էին, նա չհեռացրեց, այլ թույլ տվեց, որ լսեն։ (9) Իսկ երբ ամեն ինչ հարմարեցված էր՝ սկսեց խոսել և ասաց. «Ո՜վ Արմենների թագավոր, ամենից առաջ ես խորհուրդ եմ տալիս քեզ դատի ժամանակ խոսել ճիշտը, որպեսզի հեռու մնա քեզանից գոնե այն, ինչ որ ամենաատելին է։ Լավ իմացի՛ր, որ սուտ խոսողը երևան կբերվի և որ մարդկանց համար այդ ամենամեծ արգելքն է հանդիսանում որևէ ներողամտության։ Բացի այդ, ասաց, քո որդիները և այս կանայք ու նաև Արմեններից ներկա եղողները գիտեն այն բոլորը, ինչ որ դու արել ես։ Եթե նրանք նկատեն, որ դու այլ բաներ ես ասում և ոչ այն,

ինչ որ պատահել է՝ նրանք կմտածեն, որ դու ինքդ դատապարտում ես քեզ ամենածանր պատիժները կրելու, եթե ես կարողանամ ճիշտը իմանալ»։ «Այլ հարցրու,— ասաց Թագավորը,— ո՛վ Կյուրոս, ինչ որ ուզում ես, իսկ ես հարկավ կասեմ ճիշտը, ինչ էլ որ ինձ հետ այնուհետև դրա պատճառով պատահի»։ (10) «Ասա՛ ինձ,— ասաց Կյուրոսը, կռվե՞լ ես դու երբևիցե իմ մոր հոր, Աստյուագեսի, և այլ Մեդացիների հետ»։ «Այո», ասաց Թագավորը։ «Հաղթված լինելով նրանից՝ համաձայնե՞լ էիր, որ տուրք կվճարես, պատերազմի կգնաս միասին, ուր որ ասե, և ամրություններ չես ունենա»։ «Այդպես է»։ «Արդ՝ ինչո՞ւ այժմ ոչ տուրք ես վճարում, ոչ զորք ես ուղարկում և սկսել ես ամրություններ շինել»։ «Ես,— ասաց Թագավորը,— ազատության էի ձգտում, որովհետև լավ էի համարում, որպեսզի թե ինքս ազատ լինեմ և թե որդիներիս ազատություն թողնեմ»։ (11) «Իհարկե,— ասաց Կյուրոսը,— գեղեցիկ բան է կռվելը, երբ մեկը չէ ուզում լինել երբևիցե ծառա։ Սակայն եթե երևան գա, որ որևէ մեկը, որը պատերազմում հաղթվել է կամ սարկացվել է որևէ այլ կերպ, նախաձեռնում է տերերից հեռանալ՝ դրան հենց առաջինն ինքդ լա՞վ մարդ և գեղեցի՞կ գործ կատարող կհամարես, թե կհամարես անարդար գործ կատարող և, եթե բռնես՝ կպատժես»։ «Կպատժեմ,— ասաց Թագավորը,— չէ՞ որ դու թույլ չես տալիս, որ սուտ խոսեմ»։ (12) «Արդ՝ պարզ պատասխան տուր,— ասաց Կյուրոսը,— ամեն մեկ հարցին առանձին. եթե մի իշխանավոր ունենաս, և նա հանցանք գործե՝ արդյոք թույլ կտաս որ նա՞ իշխե, թե նրա փոխարեն կնշանակես մեկ ուրիշին»։ «Կընշանակեմ մեկ ուրիշին»։ «Արդ՝ ի՞նչպես կվարվես, եթե նա շատ դրամ ունենա՝ թույլ կտաս, որ հարստանա՞, թե նրան չքավոր կդարձնես»։ «Եթե դրամ ունենա,— ասաց Թագավորը,— կառնեմ»։ «Իսկ եթե իմանաս, որ նա թշնամիների կողմն է անցել՝ ի՞նչ կանես»։ «Կսպանեմ,— ասաց Թագավորը,— ո՞րն է ավելի գերադասելի՝ մեռնել, բռնվելով որ սուտ եմ խոսում, թե մեռնել, ճիշտը խոսելով»։ (13) Այդ ժամանակ նրա որդին, հենց որ այս լսեց՝ հանեց խույրը գլխից և սկսեց շորերը պատառոտել, իսկ կանայք, աղմուկ բարձրացնելով՝ երեսները ճանկռտում էին, որ իբր թե կորստյան էր մատնվում իրենց հայրը և կորչում էին արդեն իրենք էլ բոլորը։ Իսկ Կյուրոսը հրամայեց լռել և ասաց. «Թող լինի այդպես. քո դատավճիռները դրանք են, ով Արմենների Թագավոր, բայց դու ի՞նչ խորհուրդ կտաս այս բոլորից հետո»։ Արդ՝ Արմենների Թագավորը լռեց, որովհետև դժվարանում էր վճռել, թե արդյոք խորհուրդ տա Կյուրոսին սպանել իրեն, թե առաջարկե հակա-

*ռակն այն բոլորի, որ ինքն ասաց, թե կաներ»։ (14) Ապա նրա որդին՝ Տիգրանը հարցրեց Կյուրոսին. «Ասա՛ ինձ, ո՜վ Կյուրոս, քանի որ հայրս, ինչպես երևում է, դժվարանում է, թույլ կտրվի՞ արդյոք, որ ես նրա մասին այնպիսի խորհուրդ տամ քեզ, որը կարծում եմ, որ կլինի քեզ համար ամենալավը»։ Կյուրոսը, ի նկատի ունենալով, որ Տիգրանը մի ժամանակ իր հետ որսի էր գնում և որ նա եղել էր աշակերտ իմաստասիրության ինչ-որ մի ուսուցչի, որը Տիգրանին զարմանք էր պատճառում՝ շատ ուզեց լսել, թե ինչ է նա ասելու, և հրամայեց որ համարձակ կերպով ասե այն, ինչ որ մտածում է։*

[Գիրք III, գլուխ 1, 15—30: *Տիգրանը երկար խոսում է և խնդրում է Կյուրոսին, որ ներե իր հորը, որը խախտել էր դաշնադրությունը, ձգտելով ազատության, և համոզում է նրան, որ այսուհետև իր հոր բարեկամությունը կլինի հաստատուն և անխախտ*]։

## ՀԱՏՎԱԾ 5

Գիրք III, գլուխ 1, 31—37:—(31) *Կյուրոսը, լսելով այդ՝ խիստ ուրախացավ, որովհետև մտածեց, որ ամեն ինչ այնպես եղավ, ինչպես Կիաքսարին խոստացել էր, որ պիտի անե։ Նա հիշեց, որ ասել էր, թե կարծում է, որ Արմենների թագավորին ավելի մոտ բարեկամ կանե, քան առաջ։ Արդ՝ այնուհետև նա հարց տվեց Արմենների թագավորին. «Եթե ես այդ բաներում ձեզ հավատ ընծայեմ՝ ասա՛ ինձ, ո՜վ Արմեն, ո՞րքան ինձ զորք կուղարկես և ո՞րքան դրամ կմուծես պատերազմի համար»։ (32) Այդ հարցին Արմենների թագավորը պատասխանեց. «Ավելի պարզը և արդարացին այն կլինի, ո՜վ Կյուրոս, որ ես ասեմ ու ցույց տամ իմ ունեցած ամբողջ զինվորական ուժը, իսկ դու որոշես՝ թե որքան զորք, քո կարծիքով, պետք է վերցնես և որքան պիտի թողնես երկրի պաշտպանության համար։ Նույնպես և իմ կարողության նկատմամբ արդարացի է, որ ես ցույց տամ քեզ իմ ամբողջ հարստությունը, իսկ դու ինքդ պետք է դատես, թե դրանից որքան ես կամենում առնել և որքան ես կամենում թողնել»։ (33) Կյուրոսն ասաց. «Արդ՝ ասա՛ ինձ, որքան է քո զինվորական ուժը, և ասա՛ նաև, թե որքան է քո կարողությունը»։ Ապա Արմենների թագավորն ասաց. «Արմենների հեծելազորը մոտ ութը հազար է, և հետևազորը՝ մոտ քառասուն հազար. իսկ իմ կարողությունը, այն հարստությունների հետ միասին, որ թողել է իմ հայրը, հաշվելով*

*արծաթ դրամով՝ ավելի է քան երեք հազար տաղանդ»*[1]*։ (34) Կյուրոսն առանց հապաղելու ասաց. «Որովհետև քո դեմ պատերազմում են հարևան խալդայները՝ զորքից ինձ հետ կուղարկես կեսը, իսկ փողից, որովհետև չես վճարել Կիաքսարին տուրքը՝ հիսուն տաղանդի փոխարեն, որ նրան վճարում էիր՝ կտաս կրկնակին։ Ինձ էլ, ասաց, կտաս իբրև պարտք հարյուր տաղանդ։ Եվ ես խոստանում եմ քեզ, որ եթե աստված հաջողություն տա՝ ինձ տված պարտքի փոխարեն կամ կվարձատրեմ քեզ ավելի արժեքավոր կերպով և կամ կվճարեմ փողը, եթե կարողանամ։ Իսկ եթե չկարողանամ և պարզվի, որ հնարավորություն չունեմ վճարելու՝ կարծում եմ, որ անիրավացի կլինի համարել ինձ անարդար»։ (35) «Ի սեր աստվածների, մի՛ այդպես խոսիր, ո՜վ Կյուրոս,—ասում է Արմենների թագավորը,—ապա թե ոչ՝ ինձ կվհատեցնես. այլ գիտցի՛ր, որ քոնն է ո՛չ միայն այն, ինչ որ հետդ տանում ես, այլև այն, ինչ որ թողնում ես»։ «Լավ,—ասաց Կյուրոսը,—իսկ որպեսզի կինդ հետ ստանաս, ո՞րքան ինձ փող կտաս»։ «Որչափ որ կարողանամ»,—ասում է թագավորը։ «Հապա ի՞նչ կտաս զավակներիդ համար»,—ասում է Կյուրոսը։ «Դրանց համար էլ կտամ, որքան որ կարողանամ»,—ասում է թագավորը։ «Ուրեմն,—ասում է Կյուրոսը,—այդ արդեն կկազմե քո կարողության կրկնակին»։ (36) «Դու էլ, ո՜վ Տիգրան,—ասում է Կյուրոսը,—ասա՛ ինձ, ո՛րքան կվճարես, որպեսզի հետ ստանաս կնոջդ»։ Եվ Տիգրանը, որը նոր էր ամուսնացել և շատ էր սիրում իր կնոջը, ասաց՝ «Ես, ո՜վ Կյուրոս, իմ անձը գլխովին կտամ, որպեսզի իմ կինը երբեք ծառա չլինի»։ (37) «Դու Տիգրան,—ասում է Կյուրոսը,—ա՛ռ կնոջդ, ես չեմ համարում, որ նա գերի է բռնվել, որովհետև դու երբեք չես լքել մեզ։ Դու էլ, ո՜վ Արմենների թագավոր, տար կնոջդ ու զավակներիդ առանց որևէ վճարի, որպեսզի նրանք տեսնեն, որ ազատ վերադառնում են քո մոտ։ Իսկ այժմ ճաշեցեք մեզ մոտ և ճաշելուց հետո գնացեք, ուր կամենում եք»։ Այնուհետև նրանք մնացին։*

---

[1] *Ընդունելով բաբելոնական-պարսկական տաղանդի կշիռը մոտ 32 կիլ. 640 գր.՝ Արմենների թագավորի հարստությունը իր կշռով հավասար կլինի 3000×32,640=97.920 կիլ. արծաթ դրամի։ Իսկ եթե արծաթի և ոսկու հարաբերությունը ենթադրենք այդ ժամանակ մոտավորապես 1:10, որ հավանական է՝ այդ հարստության դրամական արժեքը համապատասխան կլինի մոտ 12 միլիոն ոսկի ռուբլու։*

## ՀԱՎԵԼՎԱԾ 6

**Գիրք III, գլուխ 1, 41—43:**—(41) *Երբ նրանք տուն էին գնում՝ նրանցից ինչ-որ մեկը խոսում էր Կյուրոսի իմաստության մասին, մի ուրիշը, արիության, մի ոմնը՝ հեզության, ոմանք էլ գեղեցկության ու հասակի մասին։ Այդ ժամանակ Տիգրանը հարցրեց իր կնոջը. «Իսկ քեզ, ասաց, ո՛վ արմենուհի, թվո՞ւմ է նույնպես, որ Կյուրոսը գեղեցիկ է»։ «Վկա է աստված,—ասաց կինը,—որ ես նրան չէի նայում»։ «Հապա ո՞ւմ էիր նայում»,—հարցրեց Տիգրանը։ «Վկա է Արամազդը,—ասաց կինը,—որ ես նրան էի նայում, որ ասաց թե իր անձը գլխովին կտա, որպեսի ծառա չդառնամ»։ Այնուհետև, այս բոլորից հետո, ինչպես հարկն էր, նրանք իրար հետ միասին հանգստացան։ (42) Հետևյալ օրը Արմենների թագավորը Կյուրոսին ու ամբողջ զորքին ուղարկեց իբրև հյուրերի ընծաներ։ Նա հայտնեց իր մարդկանց, որոնք պետք է ռազմի ելնեին, որ գան երրորդ օրը, և փող, որի մասին ասել էր Կյուրոսը, վճարեց կրկնապատիկ։ Սակայն Կյուրոսը վերցրեց, որքան որ ասել էր և մնացածը ետ ուղարկեց։ Նա հարցրեց, թե ո՛վ է առաջնորդելու զորքը՝ որդի՞ն թե ինքը։ Եվ նրանք միասին ասացին. հայրը ասաց այսպես՝ «Ում որ դու կհրամայես», իսկ որդին այսպես՝ «Ես քեզանից չեմ բաժանվի, ո՛վ Կյուրոս, եթե անգամ հարկադրված լինեմ հետևել քեզ իբրև գումակազինվոր»։ (43) Կյուրոսը ծիծաղելով ասաց. «Մի՞թե դու կցանկանաս, որ կինդ լսե թե դու բեռներ ես կրում»։ «Սակայն բնավ հարկավոր չի լինի,—ասաց Տիգրանը,—որ նա այդ լսե, որովհետև ես նրան հետս կտանեմ, որպեսզի նա կարողանա տեսնել, թե ես ինչ եմ անում»։ «Ժամանակն է արդեն,—ասաց Կյուրոսը,—որ պատրաստվեք ճանապարհ գնալու»։ «Հավատացած եղիր,—ասաց Տիգրանը,—որ երբ մենք պատրաստ կլինենք ճանապարհ գնալու՝ կներկայանան և նրանք, որոնց հայրս է տալու»։ Այնուհետև զինվորները հյուրընկալվեցին և գնացին քնելու։*

## ՀԱՎԵԼՎԱԾ 7

**Գիրք III, գլուխ 2, 1—26:**—(1) *Հետևյալ օրը Կյուրոսը, վերցնելով իր հետ Տիգրանին, մեդական հեծելազորից ամենաուժեղներին և իր ընկերներից նրանց, որոնք, կարծում էր, որ կարևոր են՝ շրջագայության ելավ երկրում և, նայելով շուրջը՝ խորհրդածում էր, թե որտեղ բերդ պիտի շինե։ Եվ երբ եկան մի ինչ-որ լեռան գագաթի մոտ՝ նա հարցրեց Տիգրանին, թե ո՛րոնք են այն լեռները,*

որտեղից խալդայները ցած են արշավում և կողոպտում։ Տիգրանն այդ լեռները ցույց տվեց։ Եվ նա հարցրեց նորից. «Այդ լեռներն այժմ անմարդաբնա՞կ են»։ «Հարկավ ո՛չ,— ասաց Տիգրանը,— այլ միշտ այնտեղ են նրանց լրտեսները, որոնք մյուսներին ազդանշանով իմաց են տալիս, ինչ որ տեսնում են»։ «Իսկ ի՞նչ են անում դրանք,— ասաց Կյուրոսը,— երբ տեղեկանում են»։ «Օգնության են գալիս,— ասաց Տիգրանը,— դեպի գագաթները՝ ամեն մեկն ըստ իր ուժերի»։ (2) Այս բոլորը Կյուրոսը լսեց. և, զննելով շուրջը, նա նկատեց, որ Արմենների երկրի մի խոշոր մասն անմշակ է ու անմարդաբնակ պատերազմի պատճառով։ Ապա նրանք վերադարձան բանակ և ընթրելուց հետո քնեցին։ (3) Հետևյալ օրը եկավ ինքը Տիգրանը, պատրաստ ճանապարհվելու, և նրա հետ նաև ի մի հավաքած զորքը՝ չորս հազար ձիավոր, տասը հազար նետաձիգ և նույնչափ այլ թեթև վահանակիր։ Երբ նրանք հավաքվում էին՝ Կյուրոսը զոհ էր անում, և, որովհետև զոհի նշանները բարեհաջող էին՝ նա ժողովի հրավիրեց Պարսիկ ու Մեդացի հրամանատարներին։ (4) Եվ երբ նրանք հավաքվել էին՝ ասաց հետևյալը.

«Այրք սիրելիք, այս լեռները, որ մենք տեսնում ենք, խալդայներինն են։ Եթե մենք այս լեռները գրավենք և նրանց գագաթի վրա լինի մեր ամրությունը՝ մեր հանդեպ ստիպված կլինեն զգաստ լինել և Արմենները և խալդայները։ Արդ՝ զոհերը մեզ համար բարեհաջող էին. որպեսզի կարելի լինի այդ մարդկային ջանքերով անել՝ ո՛չ մի բան այնքան շատ չէ օժանդակելու մեզ, որքան արագությունը։ Եթե մենք լեռներն ավելի շուտ բարձրանանք, մինչև թշնամիների հավաքվելը՝ մենք գագաթը կգրավենք կամ բոլորովին առանց կռվի և կամ մեր դեմ կունենաք քիչ և թույլ թշնամիներ։ (5) Ճիգերից ոչ մեկն ավելի հեշտ ու ավելի անվտանգ չէ, որքան շտապ կերպով եկողներին դիմադրելը։ Ուրեմն, ի զեն։ Դուք, Մեդացիներ, գնացեք մեզանից ձախ կողմով, իսկ դուք, Արմեններ, կեսը՝ աջ կողմով, իսկ մյուս կեսը՝ մեր առջևից։ Իսկ դուք, ձիավորներ, եկեք ետևից, խրախուսելով ու առաջ մղելով մեզ, և մի՛ք թույլ տա, եթե մեկը մեղկանա»։ (6) Այդ ասելուց հետո՝ Կյուրոսն առաջնորդեց զորքը, կազմելով նրանից վաշտասյուներ։ Իսկ խալդայները, երբ տեսան, որ նրանք արագընթաց կերպով վերև են շտապում՝ իսկույն ազդանշաններով իմաց տվին իրենց ցեղակիցներին, կանչեցին իրար և հավաքվեցին միասին։ Ապա Կյուրոսը հրամայեց. «Այրք Պարսիկներ, նրանք մեզ են նշան տալիս որ շտապենք, որովհետև եթե մենք ավելի շուտ վերև հասնենք՝ թշնամիների ջանքերը ոչ մի արդյունք չեն կարողանա տալ»։ (7) Խալ-

դայներն ունեին ծառերի ճյուղերից հյուսված կաշվեպատ վահաններ և երկուական նիզակներ։ Ասում էին, որ նրանք ամենառազմիկ ժողովուրդն են այդ երկրում ապրող բնակիչներից։ Նրանք ծառայում են զորքի մեջ վարձով, եթե մեկը նրանց աջակցության կարիք ունենա, որովհետև նրանք, խիստ ռազմունակ լինելով՝ միաժամանակ աղքատ են. նրանց երկիրը լեռնոտ է և հարուստ է միայն չնչին մասը։ (8) Երբ Կյուրոսի զորքը մոտեցավ ավելի գագաթներին՝ Տիգրանը, որը գնում էր Կյուրոսի հետ՝ ասաց·

«Ո՜վ Կյուրոս, գիտե՞ս արդյոք, որ խիստ անհրաժեշտ կլինի, որ իսկույն մենք ինքներս կռվի բռնվենք, որովհետև Արմենները, իհարկե, չեն կարողանա դիմանալ թշնամու հարձակմանը»։ Կյուրոսն ասաց, որ նա այդ գիտե, և իսկույն հրամայեց Պարսիկներին, որ նրանք պատրաստ լինեն, որովհետև հարկավոր կլինի թշնամուն արագ հետապնդել, հենց որ Արմենները փախչեն, դեպի իրենց քաշելով թշնամիներին, որպեսզի սրանք մեզ մոտ գան։ (9) Արդ՝ Արմեններն այդպես առջևից էին գնում, իսկ Խալդայներից նրանք, որոնք մոտ էին, երբ Արմենները մոտեցան՝ իսկույն աղաղակ բարձրացրին և, ինչպես սովոր էին՝ վազեցին նրանց վրա։ Իսկ Արմենները, նույնպես ըստ իրենց սովորության՝ նրանց գրոհին չընդդիմացան։ (10) Երբ հետապնդող Խալդայները տեսան, որ դիմացից վերև են գալիս սուսերավորները՝ ոմանք, որ նրանց մոտեցել էին, իսկույն սպանվեցին, ոմանք փախան, ոմանք էլ նրանցից գերի ընկան։ Եվ շուտով գագաթները գրավվեցին։ Երբ Կյուրոսի զորքերը գագաթները գրավեցին՝ նրանք վերևից տեսան Խալդայների բնակարանները և նկատեցին, որ սրանք փախչում էին մոտակա բնակարաններից։ (11) Եվ Կյուրոսը, երբ բոլոր զինվորները հավաքվել էին՝ հրամայեց նախաճաշել։ Երբ նրանք նախաճաշել էին՝ նա, նկատելով որ այն տեղը, ուր գտնվում էին Խալդայների լրտեսները՝ ամուր ու ջրառատ է, սկսեց անհապաղ շինել այդտեղ ամրություն։ Նա հրամայեց Տիգրանին մարդ ուղարկել հոր մոտ և հայտնել, որ նա գա ու բերե իր հետ հյուսներ ու քարագործներ, որքան որ կլինեն։ Սուրհանդակը գնաց Արմենների թագավորի մոտ, իսկ Կյուրոսը սկսեց շինել ամրությունը ներկա եղողների օգնությամբ։ (12) Հենց այդ ժամանակ Կյուրոսի մոտ բերին կապված գերիներին, որոնցից մի քանիսը վիրավորված էին։ Երբ նա նրանց տեսավ՝ իսկույն հրամայեց կապերը քանդել և, հրավիրելով բըժիշկներ, հրամայեց վիրավորներին բժշկել։ Այնուհետև նա Խալդայներին ասաց, որ եկել է ոչ թե նրանց ոչնչացնելու դիտավորությամբ կամ նրանց դեմ պատերազմելու նպատակով, այլ, ցան-

կուԹյուն ունենալով՝ խաղաղուԹյուն հաստատել Արմենների ու խալդայների միջև։ «Ես գիտեմ, որ դուք,—ասաց նա,—նախքան այս գագաԹների գրավումը մեր կողմից՝ կարիք չեք զգացել խաղաղուԹյան, որովհետև մասամբ ձեր գույքն ապահով է եղել, մասամբ էլ կողոպտել եք Արմեններին։ (13) Արդ՝ այժմ լսեցեք, Թե ինչ դրուԹյան մեջ եք։ Ես այժմ ձեզ, բանվածներիդ, ազատ կարձակեմ, որ գնաք տուն, և հնարավորուԹյուն կտամ, որ խորհրդակցեք մյուս խալդայների հետ, Թե արդյոք կամենում եք պատերազմել մեր դեմ Թե լինել բարեկամ։ Եվ եԹե դուք կգերադասեք պատերազմը՝ երբեք, Թե խելք ունեք, մի՛ք գա այստեղ առանց զենքի, իսկ եԹե վճռեք, որ կարիք ունեք խաղաղուԹյան՝ եկեք առանց զենքերի։ Իսկ ես, եԹե բարեկամ լինեք՝ կհոգամ, որպեսզի ձեր գործերը լավ գնան։ (14) Երբ խալդայներն այս լսեցին՝ շատերը հավանուԹյուն տվին, շատերն էլ հրաժեշտ տվին ու նրանք գնացին տուն։

Իսկ Արմենների Թագավորը, հենց որ տեղեկուԹյուն ստացավ Կյուրոսի հրավերի ու ձեռնարկման մասին՝ վերցրեց հյուսներին և ուրիշներին, որոնք կարծում էր որ պետք կլինեն, և եկավ անհապաղ Կյուրոսի մոտ։ (15) Երբ նա տեսավ Կյուրոսին՝ ասաց. «Ո՛վ Կյուրոս, Թեև մենք, մարդիկս, քիչ բան կարող ենք նախատեսել ապագայի նկատմամբ, բայց ձեռնարկում ենք շատ բան անել։ Արդ՝ հենց այժմ ես և աշխատեցի ազատուԹյուն ձեռք բերել, բայց ծառա դառա ավելի, քան երբևիցե։ Երբ մենք գերի ընկանք, կարծեցինք, որ ակներև կերպով կորստի ենք մատնվել, սակայն այժմ պարզվում է, որ մենք փրկված ենք առավել, քան երբևիցե։ Սրանք, որ երբեք դադար չունեին և մեզ անընդհատ չարիք էին պատճառում՝ այժմ, ինչպես տեսնում եմ, այնպիսի վիճակի մեջ են գտնվում, ինչպես ես էի ցանկանում։ (16) Եվ ա՛յս իմացիր, ո՛վ Կյուրոս, որ ես, որպեսզի կարողանայի դեն քշել խալդայներին այս գագաԹներից՝ շատ ավելի փող եմ տվել, քան դու ստացել ես այժմ ինձանից։ Եվ այն բարիքները, որ դու խոստացել էիր Թե կանես մեզ, որովհետև փող էիր ստացել՝ արդեն քո կողմից արված են, ուստի և պարզ է, որ մենք քեզ պարտ ենք այլ երախտիքներ, որ մենք կամաչենք, եԹե անազնիվ չենք, որ քեզ չհատուցանենք։ Եվ նույնիսկ, եԹե փոխհատուցանենք, մենք հասկանում ենք, որ այդքանն անելով՝ մենք ոչ մի արժանի բան արած չենք լինի դրանով մեր բարերարի հանդեպ։ (17) Արմենների Թագավորն այդպես ասաց։

Իսկ խալդայները եկան և խնդրեցին Կյուրոսին, որ իրենց հետ հաշտություն կնքե։ Եվ Կյուրոսը հարցրեց նրանց. «Արդյոք ճիշտ չէ՞, ո՛վ խալդայներ, որ դուք այժմ նրա համար եք խաղաղություն ցանկանում, որովհետև կարծում եք, որ ավելի անվտանգ կարելի է ապրել խաղաղության դեպքում, քան պատերազմի, քանի որ մեր ձեռքն են գտնվում բարձունքները։ Խալդայները դրական պատասխան տվին։ (18) Եվ նա ասաց. «Ի՞նչ կասեք, եթե խաղաղության պատճառով դուք ստանաք և այլ բարիքներ»։ «Ավելի ևս,—ասացին,—կուրախանանք»։ «Արդ՝ ճիշտ չէ՞,—ասաց Կյուրոսը,—որ դուք այժմ աղքատ եք, ինչպես ինքներդ գիտեք, լավ հողերի կարիք ունենալու պատճառով»։ Նրանք հաստատեցին և այդ։ «Արդյոք չէ՞իք ցանկալ,—ասաց Կյուրոսը,—որ դուք ևս վճարեիք նույնը, ինչ որ մյուս Արմենները, և թույլտվություն ստանայիք մշակելու Արմենիայի հողերը, որքան որ կամենայիք»։ «Եթե մենք հավատացած լինեինք,—ասացին խալդայները,—որ նրանք մեզ չեն նեղացնելու»։ (19) «Իսկ դու, ո՛վ Արմենների թագավոր,—ասաց Կյուրոսը,—չէի՞ր ցանկա, որ քո այժմյան անմշակ հողերը դառնային պտղաբեր, եթե մշակողները համաձայնեին վճարել քեզ մոտ ընդունված տուրքերը»։ «Այդ,—ասաց Արմենների թագավորը,—շատ մեծ արժեք կունենար, որովհետև խիստ կավելանար եկամուտը»։ (20) «Իսկ դուք,—ո՛վ խալդայներ,—որ լավ սարեր ունեք, արդյոք չէիք թույլ տա, որ Արմեններն օգտվեն նրանցից իբրև արոտատեղերից, եթե արածացնողները ձեր համաձայնեն վճարել արդար տուրք»։ «Մեծ օգուտ կստանայինք,—ասացին խալդայները,—առանց աշխատելու»։ «Իսկ դու,—ասաց Կյուրոսը,—ո՛վ Արմենների թագավոր, արդյոք չէի՞ր ցանկա օգտվել այս արոտներից, եթե խալդայներին մի փոքր օգուտ տալով՝ ինքդ ավելի մեծ օգուտ ստանայիր»։ «Իհարկե, կցանկայի,—ասաց Արմենների թագավորը,—եթե գիտենայի, որ կարելի է անվտանգ կերպով արոտներից օգտվել»։ «Չէ՞ որ դուք անվտանգ կերպով արոտատեղերից կօգտվեք,—ասաց Կյուրոսը,—եթե գագաթները լինեն ձեզ դաշնակից»։ «Այդպես է»,—ասաց Արմենների թագավորը։ (21) «Այլ վկա է աստված,—ասացին խալդայները,—որ մենք անվտանգ կերպով չենք կարողանա մշակել ոչ միայն նրանց, այլև մեր հողերը, եթե գագաթները լինեն նրանցը»։ «Իսկ եթե,—ասաց Կյուրոսը,—գագաթները լինեն ձե՞ր դաշնակիցը»։ «Այդպես,—ասացին նրանք,—իհարկե, մեզ համար լավ կլինի»։ «Այլ վկա է աստված,—ասաց Արմենների թագավորը,—մեզ համար լավ չի լինի, եթե սրանք նորից գագաթները ստանան, մանավանդ

*եթե դրանք լինեն ամրացված»։ (22) Եվ Կյուրոսն ասաց. «Ուրեմն ես հետևյալ կերպ կանեմ՝ ձեզանից և ոչ մեկին գազաթները ես չեմ տա, այլ մենք կպահենք նրանց մեր ձեռին, և եթե որևէ մեկը ձեզանից անարդարություն գործե՝ մենք անարդարություն կրողների կողմը կլինենք»։*

*(23) Երբ երկու կողմն էլ այդ լսեցին՝ հավանություն տվին և ասացին, որ խաղաղությունը կարող է հաստատուն մնալ միայն այդ ձևով։ Այնուհետև բոլորն էլ իրար հավատարմության խոստում տվին և համաձայնության եկան, որ երկու կողմն էլ իրար հանդեպ կպահպանեն իրենց ազատությունը. նրանք իրավունք կունենան փոխադարձ ամուսնության, իրար հողերի ու արոտատեղերի օգտագործման և կպաշտպանեն իրար ընդհանուր ուժերով, եթե իրենցից որևէ մեկին անարդարություն արվի։ (24) Արդ՝ այսպես կարգադրվեց այն ժամանակ ու նաև այժմ խալդայների և Արմենիայի իշխանավորի միջև կնքված այն դաշինքը դեռ մնում է անխախտ։ Այս համաձայնությունը կնքելուց հետո երկու կողմն էլ հոժարությամբ շինեցին խկույն ամրությունը, որը լինելու էր ընդհանուր, ու բերին այնտեղ պաշարեղեն։ (25) Երեկոյան դեմ Կյուրոսը հրավիրեց նրանց իր մոտ հյուր՝ արդեն իբրև բարեկամների։ Երբ միասին խնջույք էին անում՝ խալդայներից մեկն ասաց, որ այս ամենը ցանկալի են իրենց բոլորին, սակայն խալդայների մեջ կան ոմանք, որոնք ապրում են թալանով և որոնք ո՛չ գիտեն, և ո՛չ էլ կարող են զբաղվել երկրագործությամբ, որովհետև սովոր են իրենց ապրուստ հայթայթել պատերազմի միջոցով։ Նրանք միշտ կամ թալանով են զբաղվել և կամ ծառայել են վարձով՝ երբեմն հնդկական թագավորի մոտ, որը, ինչպես ասում են, շատ հարուստ մարդ է, երբեմն էլ նաև Աստիագեսի մոտ։ (26) Կյուրոսը ասաց. «Ինչո՞ւ նրանք չեն ծառայում այժմ վարձով և ինձ մոտ։ Ես կվճարեմ այնքան, որից ավելին մի ուրիշը երբեք չէ վճարել»։ Նրանք հավանություն տվին և ասացին, որ ցանկացողներ, անշուշտ, շատ կլինեն։*

## ՀԱՏՎԱԾ 8

Գիրք III, գլուխ 3, 1—5։—(1) *Հետևյալ օրը Կյուրոսն ուղարկեց դեսպան [Հնդկաստանի թագավորի մոտ], հանձնարարելով նրան այն, ինչ որ ասել էր։ Արմենների թագավորը և խալդայները դեսպանի հետ միասին ուղարկեցին նաև իրենց մարդկանց, որոնք, ինչպես կարծում էին, ամենից ընդունակներն էին և կարող էին*

*թե աջակցել և թե ասել Կյուրոսի մասին այն, ինչ որ պատշաճ էր։ Այնուհետև Կյուրոսը տրամադրեց ամրությանը բավականաչափ բերդապահներ ու ամեն տեսակ կենսամթերքներ և, թողնելով դրանց իբրև պետ մի Մեդացու, որը խիստ հավատարիմ էր, իր կարծիքով, Կիաքսարին՝ ինքը հեռացավ, վերցնելով թե այն զորքը, որի հետ եկել էր, և թե այն, որ ստացել էր Արմեններից, նաև Խալդայներից ևս մոտ չորս հազար զինվոր, որոնք, ինչպես կարծում էին, ավելի լավ էին, քան բոլոր մյուսները։ (2) Երբ Կյուրոսն իջավ մարդաբնակ շրջանը՝ Արմեններից ոչ ոք չմնաց տան ներսում՝ ոչ տղամարդ, ոչ էլ կին. այլ բոլորը, ուրախ լինելով խաղաղության վրա՝ դիմավորեցին նրան, իրենց հետ բերելով այն, ինչ որ ամեն մեկն ուներ ու համարում էր թանկարժեք։ Եվ այդ բանը Արմենների թագավորին բնավ դժգոհություն չէր պատճառում։ Նա այնպես էր կարծում, որ Կյուրոսին ընդհանուր այդ հարգանքն ավելի մեծ ուրախություն կպատճառէ։ Վերջ ի վերջո եկավ նրան դիմավորելու և Արմենների թագավորի կինը դուստրերի և կրտսեր որդու հետ ու բերեց իր հետ մյուս ընծաների հետ նաև ոսկի, որն առաջ Կյուրոսը չէր ուզեցել վերցնել։ (3) Կյուրոսը, տեսնելով այդ՝ ասաց. «Դուք մի՛ք անե այնպես, որ, ես, այս ու այն կողմ շրջելով՝ բարեգործություն անեմ վարձատրության համար, այլ դու, տիկին, ա՛ռ այդ փողը, որ բերում ես, և գնա՛, ու այլևս մի՛ տա Արմենների թագավորին, որ նա այդ գետնի մեջ թաղե։ Դու ուղարկի՛ր որդուդ զորքի մեջ ու նրանցով ամենագեղեցիկ կերպով նրան զարդարի՛ր. իսկ մնացածով քեզ, ամուսնուդ, դուստրերիդ ու որդիներիդ համար գնի՛ր այնպիսի բաներ, ինչ որ ձեռք բերելով և ինչով որ զարդարվելով՝ ձեր կյանքը կանցկացնեք ավելի գեղեցիկ ու ավելի ուրախ կերպով։ Իսկ հողի մեջ բավական կլինի, որ մեր մարմինները թաղվեն, երբ մեզանից որևէ մեկը վախճանվի»։ (4) Կյուրոսն այս ասաց և նրանց մոտով անցավ։ Իսկ Արմենների թագավորը և բոլոր մյուս մարդիկ նրան ճանապարհ դրին միասին, կոչելով նրան բարձրաձայն՝ բարի մարդ ու բարերար։ Եվ այդ անում էին, մինչև որ Կյուրոսը հեռացավ երկրից։ Արմենների թագավորը ուղարկեց նրա հետ ավելի շատ զորք, որովհետև իր երկրում խաղաղություն էր տիրում։ (5) Արդ՝ Կյուրոսը մեկնեց այդպես, ունենալով իր տրամադրության տակ ոչ միայն այն փողերը, որ նա առել էր, այլև իր համար պատրաստ ունենալով այդպիսով դրանից ավելի ևս շատ, որ կարող էր վերցնել, երբ պետք ունենար։ Եվ ապա Կյուրոսը բանակ դրեց սահմանավայրերում։ Հետևյալ օրը նա ուղարկեց զորքը և փողը Կիաքսարին, որը, ինչպես ասվեց, մոտ*

*էր գտնվում։ Իսկ ինքը Տիգրանի ու Պարսիկների ավագանու հետ որսի էր գնում այն տեղերը, ուր հանդիպում էին վայրի կենդանիներ, և զվարճանում էր այսպես։*

## ՀԱՏՎԱԾ 9

Գիրք V, գլուխ 3, 38։—(38) *«Նրանցից հետո,—ասաց Կյուրոսը,—թող Արտաբազոսը առաջնորդե Պարսից թեթև վահանակիրներին ու նետաձիգներին, ապա Անդամյուաս Մեդացին՝ Մեդացիների հետևազորը, ապա Էմբասը՝ Արմենների հետևազորը, ապա Արտուքասը՝ Հյուրկաններին, ապա Թամբրադասը Սակերի հետևազորը և ապա Դամատասը՝ Կադուսիներին»։*

## ՀԱՏՎԱԾ 10

Գիրք VIII, գլուխ 4, 24։—(24) *Այնուհետև նա [Կյուրոսը] բերեց Տիգրանին կնոջ զարդ և հրամայեց տալ կնոջը, որովհետև նա արիաբար մասնակցել էր պատերազմին ամուսնու հետ միասին։*

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԱՂՅՈՒՍԱԿ

| | Մ. թ. առաջ |
|---|---|
| Արմենների գաղթը Հայաստան . . . . . . . . | VII դ. կամ VI դ. սկիզբը |
| Ասորեստանի Նինվե քաղաքի կործանումը . . . . | 612 |
| Ասորեստանի տերության անկումը . . . . . . | 605 |
| Մեծ պատերազմը Մեդիայի և Լյուդիայի միջև Հալիս գետի մոտ . . . . . . . . . . | 585 |
| Աքեմենյան Պարսկաստանի տիրապետությունը Արմենիայի վրա . . . . . . . . . . | 550—330 |
| Կյուրոս Մեծ . . . . . . . . | 550—529 |
| Դարեհ Ա . . . . . . . . | 522—486 |
| Արմենների ապստամբությունը պարսից դեմ . . . | 521—520 |
| Քսենոփոնի և հունական զորքի նահանջը Արմենիայի վրայով դեպի Տրապիզոն . . . . . . . . | 401—400 |
| Աղեքսանդր Մակեդոնացի . . . . . . . | 336—323 |
| Աքեմենյան Պարսկաստանի նվաճումը . . . . . . | 330 |
| Սելևկոս Նիկատոր . . . . . . . | 312—281 |
| Սելևկյան տիրապետության հաստատումը Առաջավոր Ասիայում . . . . . . . . | 312 |
| Պարթևական թագավորության հիմնումը . . . . . | 249/248 |
| Անտիոքոս Մեծի պարտությունը Մագնեսիայի ճակատամարտում . . . . . . . . . . | 190 |
| Արտաշեսը և Զարեհն իրենց հայտարարում են անկախ թագավորներ Մեծ Հայքի ու Ծոփքի . . . | 189 |
| Արտաշես Ա-ի մասնակցությունը Փոքր Ասիայի հինգ թագավորների խաղաղության դաշինքին . . . | 180 |
| Արտաշատ քաղաքի հիմնումը . . . . . . . . . | 166 |
| Սելևկյան Անտիոքոս Դ-ի արշավանքը Հայաստան . | 165 (*) |
| Տիգրան Բ-ի ծնունդը . . . . . . . . . | 142/141 |
| Տիգրան Բ-ի գահակալությունը . . . . . . . | 95 |
| Տիգրան Բ-ի դաշինքը Միհրդատ Եվպատորի հետ . . | 95/94 |
| Ծոփքի միացումը Մեծ Հայաստանին . . . . . | 94 |
| Տիգրան Բ-ի առաջին արշավանքը Կապպադովկիա . . | 93 |
| Կիլիկիայի փոխպրետոր Սուլլան վերադարձնում է Կապպադովկիան . . . . . . . . | 92 |
| Միթրաաս և Բագոաս զորավարների նոր հարձակումը Կապպադովկիայի վրա . . . . . . . | 91 |
| Տիգրան Բ-ի հաղթական կռիվներն ընդդեմ Պարթև Արշակունիների և սրանց արևելյան երկրների նվաճումը . . . . . . . . . . | 89—85 |



26—318

| | |
|---|---|
| Հռոմեական-պոնտական առաջին պատերազմը | 88—84 |
| Դարդանոսի բանավոր դաշնագրությունը | 84 |
| Տիգրան Բ-ը նվաճում է Ասորիքը և Դաշտային Կիլիկիան | 84/83 |
| Հռոմեական-պոնտական երրորդ պատերազմը | 73—71 |
| Մետրոդորոս Սկեփսացին ուղարկվում է Հայաստան իբրև դեսպան | 71 (ամառը) |
| Միհրդատ Եվպատորի պարտությունը և փախուստը Հայաստան | 71 (աշնանը) |
| Դեսպան Ապպիոս Կլավդիոսը պահանջում է, որ Միհրդատը հանձնվի Լուկուլլոսին | 71 թվի վերջերին |
| Լուկուլլոսի վերադարձը պրովինցիա Ասիա և պատերազմի ավարտման հանդիսատոնները | 70 |
| Լուկուլլոսի գաղտագողի ու անսպասելի արշավանքը Հայաստան | 69 (գարնանը) |
| Մեհրուժանի և հայկական փոքրաթիվ հեծելազորի գրոհը թշնամու վրա | » » |
| Տիգրանակերտի պաշարումը | |
| Հայկական հեծելազորի գիշերային մուտքը Տիգրանակերտ և Տիգրանի կանանոցի ազատումը | » » <br> 69 (գարնանը) |
| Տիգրան Բ-ի տեսակցությունը և խորհրդակցությունը Միհրդատի հետ | 69 (ամառը) |
| Ճակատամարտը Տիգրանակերտի մոտ | 69 (հոկտ. 6-ին) |
| Հռոմեական-հայկական կռիվներն Արածանիի հովիտներում | 68 (ամառը) |
| Արածանիի ճակատամարտը | 68 (սեպտեմբերին) |
| Լուկուլլոսը պաշարում և գրավում է Մծբինը | 68 թվի վերջերին |
| Հռոմեական զորքի բարոյալքումը և Լուկուլլոսի նահանջը դեպի Գալատիա | 67 (ամառը) |
| Պոմպեյոսի արշավանքը Միհրդատի դեմ | 66 (գարնանը) |
| Կրտսեր Տիգրանի ապստամբությունը հոր դեմ. | » » |
| Պոմպեյոսի արշավանքը Հայաստան և հաշտությունը Տիգրանի հետ | 66 (աշնանը) |
| Պոմպեյոսի վերադարձը Փոքր Հայք | 64 (գարնանը) |
| Տիգրան Մեծի մահը | 56/55 |
| Արտավազդ Բ. | 56/55 |
| Կրասսոսի պարթևական արշավանքը և հռոմեական զորքի ծանր պարտությունը | 53 |
| Պարթևական-հայկական զորքերի պարբերական արշավանքները Ասորիք | 52—40 |
| Պարթևական իշխանության հաստատումը Ասորիքում, Փյունիկիայում և Պաղեստինում | 40 |
| Պարթևների պարտությունը Գինդարոսի մոտ և Բակուրի մահը | 38 |
| Կանիդիոսը հաշտություն է կնքում Արտավազդ Բ-ի հետ և արշավում է Իբերիա ու Ալբանիա | 37 |
| Անտոնիոսի և Արտավազդ Բ-ի արշավանքը պարթևների դեմ | 36 |

| | |
|---|---|
| Արտավազ Բ-ի ձերբակալումը և Հայաստանի նվաճումը | 35 |
| Անտոնիոսի պարտությունը Ակտիումի մոտ Հունաստանում | 31 |
| Արտավազդ Բ-ի գլխատումը | 31/30 |
| Արտաշես Բ | 30—20 |
| Տիբերիոսը, գալով Հայաստան, հանդիսավոր կերպով թագավոր է պսակում Տիգրան Գ-ին | 20—շուրջ 8 |
| Տիգրան Դ և Էրատո | 8—5 |
| Հռոմեական զորքի օգնությամբ Հայաստանի գահը ստանում է Արտավազդ Գ-ը | շուրջ 5—2 |
| Հայերի ապստամբությունը և Տիգրան Դ-ի ու Էրատոյի վերահաստատումը գահի վրա | 2 մ. թ. ա.—1 մ. թ. |
| Կայոս Կեսարը Հայաստանի թագավոր է պսակում Ատրպատականի Արիոբարզան թագավորին | 2—4 |
| Արտավազդ Դ՝ Արիոբարզանի որդին | շուրջ 4—6 |
| Տիգրան Ե | շուրջ 6 |
| Էրատոյի կարճատև թագավորությունը | 6 թվից հետո |
| Հայաստանի գահը ստանում է գահընկեց արված պարթևական Վոնոն թագավորը | 11 թվից հետո մինչև 16 |
| Գերմանիկոսը, գալով Արտաշատ, Հայաստանի թագավոր է պսակում Զենոնին | 18—34 |
| Արտավան Գ-ի Արշակ որդու գահակալությունը Հայաստանում և նրա եղերական մահը | 34 |
| Իբերիայի Փարսման թագավորի և նրա եղբոր Միհրդատի արշավանքը Հայաստան | 35 |
| Արտավան Գ-ի որդու՝ Օրոդեսի պարտությունը Հայաստանում | 35 |
| Փարսմանի եղբոր՝ Միհրդատի կարճատև թագավորությունը Հայաստանում | 35—37 |
| Միհրդատի կալանավորումը | 37 |
| Հայկական գահը նորից տրվում է Միհրդատին | 43 թվից հետո—51 |
| Հռադամիզդ | 51—54 |
| Հայաստանի գրավումը պարթևների կողմից | 54 |
| Կորբուլոնի արշավանքը Հայաստան և Հայկական պատերազմը | 54—59 |
| Արտաշատ քաղաքի հիմնահատակ կործանումը | 58/59 |
| Տիգրանակերտ քաղաքի առումը | 59 |
| Տիգրան Զ-ը Հայաստանի թագավոր | 60—61 |
| Հռոմեական-պարթևական պատերազմը | 61—62 |
| Պետուսի պարտությունը և Հռանդեյայում կնքված զինադադարի դաշինքը | 62 |
| Խաղաղության բանակցությունները և Տրդատի հանդիսավոր խոստումն իր թագը ստանալու Ներոնի ձեռից Հռոմում | 64 |
| Տրդատի հանդիսավոր թագադրությունը Հռոմում և վերադարձը Հայաստան | 65—66 |

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Գլուխ իններորդ



Գլուխ տասներորդ



Գլուխ տասնմեկերորդ



Գլուխ տասներկուերորդ



Գլուխ տասներեքերորդ



Գլուխ տասնչորսերորդ



Գլուխ տասնհինգերորդ



Գլուխ տասնվեցերորդ



Գլուխ տասնյոթերորդ



Գլուխ տասնութերորդ



Գլուխ տասնիններորդ



Գլուխ քսաներորդ

## Գլուխ քսանմեկերորդ



## ՔԱՐՏԵԶՆԵՐ



## ՏԻԳՐԱՆ Բ ԵՎ ՀՌՈՄԸ
## ՆՈՐ ԼՈՒՍԱԲԱՆՈՒԹՅԱՄԲ ԸՍՏ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

## ՔԱՐՏԵԶՆԵՐ